Հրատարակութիւն Թ. Նեֆեւեան ազգ. հայերէն գրքերի հրատ.

Թ. 28.

ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴԱՐԴԵԼԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Տ. Տ. ՄԱԿԱՐԱՅ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։



Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ.
ՏՊԱՐԱՆ Ի. Ն. ՍԿՈՐՈԽՈԴՈՎԻ
1891.

ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴԱՐԴԵԼԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

Հրատարակութիւն–Ընկ–ն Թիֆլիսի ընկ. հայերէն գրքերի հրատ.

Թ. 28.

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴԱՐԴԵԼԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՈՑ



Ի ՀԱՑՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Տ. Տ. ՄԱԿԱՐԱՑ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ:




Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ.
ՏՊԱՐԱՆ Ի. Ն. ՍԿՕՐՕԽՕԴՕՎԻ
1891.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Հայաստանեայց եկեղեցի,*
*Յորում կաթեաց շողն երկնային։*

*Ներսէս Շնորհալի.*

## Ա.

Կիլիկիան Փոքր-Ասիայի ամենահին և ամենանշանաւոր նահանգներից մէկն է։ Անատոլեան թերակղզին, որի մի մասն է կազմում և Կիլիկիան, միացնում է նորան Եւրոպայի հետ. իսկ Միջագետքի և Ասորիքի միջոցով մօտենում է նա Ասիային և Աֆրիկէին։ Այդ երկրի պատմութիւնը սկսւում է առասպելախառն աւանդութիւններով։

Ամենից առաջ այնտեղ բնակուելուս են եղել սեմական ցեղին պատկանող ժողովուրդները. նոցանից յետոյ երևան են գալիս պելասգեան և այլ ազգեր։ Տարսոն քաղաքը դեռևս Փիւնիկեցիների ժամանակ արդէն նշանաւոր վաճառատեղի էր համարւում։ Կիլիկիան հետզհետէ անցնելով Ասորեստանի և Մարական պետութիւնների սահմանները, վերջապէս ընկաւ Պարսկական իշխանութեան տակ և կազմում էր նորա բազմաթիւ սատրապութիւններից մէկը։ Աղէքսանդր Մեծի միապետութեան կործանումից յետոյ, որի արշաւանքը այդ աշխարհում յայտ-

նի է Խոսայի նշանաւոր յաղթանակով, Կիլիկիան ընկաւ Սելևկեան իշխանների ձեռքը և մնաց նոցա իշխանութեան տակ մինչև Հռոմայեցիների արշաւերը դէպի Փոքր Ասիայ և մինչև Տիգրան Բ-ի և Միհրդատի պարտութիւնը Հռոմայեցիներից. իսկ երբոր Թէոդոս կայսեր Օրով Հռոմէական հզօր պետութիւնը բաժանուեց երկու մասի, այն ժամանակ Կիլիկիան անցաւ Բիւզանտական կայսրութեան։ Ութերորդ դարում տեղի ունեցաւ Արաբների տիրապետութիւնը։ Երկու դար յետոյ Յոյները Նիկիփոր Փոկայ և Յովհաննէս Չմշկիկ կայսրների առաջնորդութեամբ կրկին յետ նուաճեցին այդ աշխարհը Արաբներից, բայց շուտով ստիպուած եղան թողնել նորան Սելջուկեան տաճիկներին, որոնք ԺԱ դարու երկրորդ կիսում նուաճեցին Կիլիկիայի մի մասը և առան Տարսոն քաղաքը, որին այդ ժամանակ տիրում էին Հայազգի Ապլղարիպեան Արծրունիքը՝ կայսեր հրամանով։ Գլխաւորապէս այդ ժամանակներին է սկսում Հայերի գաղթականութիւնը դէպի Կիլիկիա, որտեղ և հաստատում են նոքա իրենց իշխանութիւնը։

Մի քանի խօսքով ահա այս էր Կիլիկիայի պատմական վիճակը մինչև խաչակիրների գալուստը։

Գալով Կիլիկիայի բնակիչներին, նոցա ծագումը անմիջական հետևանք է այդ աշխարհի պատմական անցեալին. այդտեղ ապրել են ասորիները, հրէաները, Թուրքերը, յոյները, հայերը, Ֆրանկները և փուլանները, որոնք խառնուրդ են ասորիների և արաբների՝ եւրոպացիների հետ [1])։

---

[1]) Wilbrand v. Oldenb. c. XXVII inhabitatur (Armenia) a Francis, Grecis, Surianis, Turcis et reliquis. Tamen ipsi Hormenii dominantur.

Տեղական բնակիչների մէջ առաջին տեղը բռնում էին Ասորիները։ Յոյների տիրապետութեան տակ նոքա կորցրին իրենց ազգային եկեղեցական ծէսերը և սկսեցին յունարէն լեզուով կատարել կրօնական արարողութիւնները։ Ասորի Մարոնիտները գործ էին ածում ասորերէնը, բայց արաբացիների իշխանութեան ներքոյ նոքա էլ ընդունեցին արաբական լեզուն և մինչև անգամ իրենց ընտանեկան կեանքի մէջ ենթարկուեցին արաբացիների ազդեցութեան։ Փրանկների իշխանութեան տակ գտնուող նահանգներում նոքա Ֆրանկների հետ հաւասար իրաւունքներ էին վայելում։ Թէև նոքա ցրուած էին ամեն տեղ և առաւելապէս ծովեզրեայ քաղաքներում, բայց նոցա գլխաւոր կեդրոնը կազմում էին Լիբանանի լեռնոտ շրջականները։ Ասորիները պարապում էին երկրագործութեամբ և գինեգործութեամբ, նոցա ձեռքին էր նմանապէս շաքարի գործը․ բացի սորանից քաղաքներում զբաղւում էին նաև արհեստներով և մանրավաճառութեամբ։ Նոքա չէին խորշում արուեստներից և գիտութիւններից․ նոցա տաճարներից շատերը և այդ տաճարներում պահպանուած ասորական գեղարուեստի մնացորդները, ըստ վկայութեան Ռենանի, նշանաւոր չափով լրացընում են բիւզանդական գեղարուեստի պատմութիւնը։ Ասորիներից շատերը իրենց ժամանակին յայտնի են եղել իբրև նշանաւոր բժիշկներ․ Աբդուլ-Փարաջին յիշում է Հալէպի եպիսկոպոս Միքայէլի մասին, որը Տրիպոլիսի նշանաւոր բժիշկն էր [1])։ ԺԳ դարում Սսում յայտնի էին Իզա և Հասնուն անունով ասորի բժիշկները։

Անտիոք քաղաքում նստում էր Յակոբիտների պատ-

---

[1]) ... rem medicam optime naverat, in libris philosophorum versatus, conversatione amenus omnibus gratus erat.

Հրատարակութիւն Թիֆլիսի ընկ. հայերէն գրքերի հրատ.

Թ. 28.

## ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴԱՐԴԵԼԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

# ՀԱՅՈՑ



Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ Տ. Տ. ՄԱԿԱՐԱՅ Վ․ԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ:




Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ.
ՏՊԱՐԱՆ Ի. Ն. ՍԿՕՐՕԽՕԴՈՎԻ
1891.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

*Հայաստանեայց եկեղեցի,*
*Յորում կաթեաց շողն երկնային։*
*Ներսէս Շնորհալի.*

## Ա.

Կիլիկիան Փոքր-Ասիայի ամենահին և ամենանշանաւոր նահանգներից մէկն է։ Անատոլեան Թերակղզին, որի մի մասն է կազմում և Կիլիկիան, միացնում է նորան Եւրոպայի հետ. իսկ Միջագետքի և Ասորիքի միջոցով մօտենում է նա Ասիային և Աֆրիկէին։ Այդ երկրի պատմութիւնը սկսւում է առասպելախառն աւանդութիւններով։

Ամենից առաջ այնտեղ բնակուելուս են եղել սեմական ցեղին պատկանող ժողովուրդները. նոցանից յետոյ երեւան են գալիս պելասգեան և այլ ազգեր։ Տարսոն քաղաքը դեռևս Փիւնիկեցիների ժամանակ արդէն նշանաւոր վաճառատեղի էր համարւում։ Կիլիկիան հետզհետէ անցնելով Ասորեստանի և Մարական պետութիւնների սահմանները, վերջապէս ընկաւ Պարսկական իշխանութեան տակ և կազմում էր նորա բազմաթիւ սատրապութիւններից մէկը։ Աղէքսանդր Մեծի միապետութեան կործանումից յետոյ, որի արշաւանքը այդ աշխարհում յայտ-

նի է Իսսայի նշանաւոր յաղթանակով, Կիլիկիան ընկաւ Սելեւկեան իշխանների ձեռքը և մնաց նոցա իշխանութեան տակ մինչև Հռոմայեցիների արշաւերը դէպի Փոքր Ասիայ և մինչև Տիգրան Բ-ի և Միհրդատի պարտութիւնը Հռոմայեցիներից. իսկ երբոր Թէոդոս կայսեր օրով Հռոմէական հզօր պետութիւնը բաժանուեց երկու մասի, այն ժամանակ Կիլիկիան անցաւ Բիւզանդական կայսրութեան։ Ութերորդ դարում տեղի ունեցաւ Արաբների տիրապետութիւնը։ Երկու դար յետոյ Յոյները Նիկիփոր Փոկայ և Յովհաննէս Զմշկիկ կայսրների առաջնորդութեամբ կրկին յետ նուաճեցին այդ աշխարհը Արաբներից, բայց շուտով ստիպուած եղան թողնել նորան Սելջուկեան տաճիկներին, որոնք ԺԱ դարու երկրորդ կիսում նուաճեցին Կիլիկիայի մի մասը և առան Տարսօն քաղաքը, որին այդ ժամանակ տիրում էին հայազգի Ապլղարիպեան Արծրունիքը՝ կայսեր հրամանով։ Գլխաւորապէս այդ ժամանակներին է սկսում հայերի գաղթականութիւնը դէպի Կիլիկիա, ուրտեղ և հաստատում են նոքա իրենց իշխանութիւնը։

Մի քանի խօսքով ահա այս էր Կիլիկիայի պատմական վիճակը մինչև խաչակիրների գալուստը։

Գալով Կիլիկիայի բնակիչներին, նոցա ծագումը անմիջական հետևանք է այդ աշխարհի պատմական անցեալին. այդտեղ ապրել են ասորիները, հրէաները, Թուրքերը, յոյները, հայերը, Ֆրանկները և փուլանները, որոնք խառնուրդ են ասորիների և արաբների՝ եւրոպացիների հետ [1])։

[1]) Wilbrand v. Oldenb. c. XXVII inhabitatur (Armenia) a Francis, Grecis, Surianis, Turcis et reliquis. Tamen ipsi Hormenii dominantur.

Տեղական բնակիչների մէջ առաջին տեղը բռնում էին Ասորիները։ Յոյների տիրապետութեան տակ նոքա կորցրին իրենց ազգային եկեղեցական ծէսերը և սկսեցին յունարէն լեզուով կատարել կրօնական արարողութիւնները։ Ասորի Մարոնիտները գործ էին ածում ասորերէնը, բայց արաբացիների իշխանութեան ներքոյ նոքա էլ ընդունեցին արաբական լեզուն և՝ մինչև անգամ իրենց ընտանեկան կեանքի մէջ ենթարկուեցին արաբացիների ազդեցութեան։ Ֆրանկների իշխանութեան տակ գտնուող նահանգներում նոքա Ֆրանկների հետ հաւասար իրաւունքներ էին վայելում։ Թէև նոքա ցրուած էին ամեն տեղ և առաւելապէս ծովեզրեայ քաղաքներում, բայց նոցա գլխաւոր կեդրոնը կազմում էին Լիբանանի լեռնոտ շրջանները։ Ասորիները պարապում էին երկրագործութեամբ և գինեգործութեամբ, նոցա ձեռքին էր նմանապէս շաքարի գործը. բացի սորանից քաղաքներում զբաղւում էին նաև արհեստներով և մանրավաճառութեամբ։ Նոքա չէին խորշում արուեստներից և գիտութիւններից. նոցա տաճարներից շատերը և այդ տաճարներում պահպանուած ասորական գեղարուեստի մնացորդները, ըստ վկայութեան Ռենանի, նշանաւոր չափով լրացնում են բիւզանդական գեղարուեստի պատմութիւնը։ Ասորիներից շատերը իրենց ժամանակին յայտնի են եղել իբրև նշանաւոր բժիշկներ. Աբուլ-Ֆարաջին յիշում է Հալէպի եպիսկոպոս Միքայէլի մասին, որը Տրիպոլիսի նշանաւոր բժիշկն էր [1]։ ԺԳ դարում Սսում յայտնի էին Իզա և Հասնուն անունով ասորի բժիշկները։

Անտիոք քաղաքում նստում էր Յակոբիտների պատ-

---

[1]) ... rem medicam optime naverat, in libris philosophorum versatus, conversatione amenus omnibus gratus erat.

րիարքը, որից կախումն ունէին այնտեղ քաղաքներում նստող շատ եպիսկոպոսներ։ Իսկ Մարոնիտների պատրիարքի կամ կաթուղիկոսի աթոռը գտնւում էր Բաղդադում։ Փրանկ պատմագիրները ասորիներին անւանում են խարդախ, խորամանգ, կաշառասող և թուլասիրտ։ Փրանկների թշնամական յարաբերութիւնները ասորիների հետ շատ տխուր հետևանքներ ունեցան խաչակիրների համար—ասորիները աւելի համակրութիւն էին ցոյց տալիս դէպի մահմեդականները և գաղտնի յարաբերութիւններ էին հաստատում նոցա հետ։

Հրէաները սակաւաթիւ էին Ասորիքում և Կիլիկիայում և այն էլ միմիայն քաղաքներում. նոքա վայելում էին հաւասար իրաւունքներ և նոցա վկայութիւնը ընդունելի էր դատարաններում։ Հրէաները գլխաւորապէս պարապում էին վաճառականութեամբ և սեղանաւորութեամբ։ Նոցա ձեռքին էին ապակու և ներկի գործարանները. նոցանից շատերը պարապում էին գիտութիւններով և մանաւորապէս բժշկականութեամբ։

Յոյները Կիլիկիայի ազգաբնակութեան նշանաւոր տարրերից մէկն էին, քանի որ Կիլիկիան երկար ժամանակ գտնւում էր Բիւզանտական իշխանութեան տակ։ Նոքա մեծ քանակութեամբ ապրում էին Հայկական թագաւորութեան, Եդեսիայի կոմսութեան և Անտիոքի իշխանութեան սահմաններում։ Եդեսիայի կոմսերը և Անտիոքի իշխանները մինչև անգամ իրենց դրամները կոխում էին յունարէն տառերով։ Հայկական թագաւորութեան մէջ գտնւում էին շատ յոյն աւատական իշխաններ. նոքա բռնում էին նաև նշանաւոր պաշտօններ Հայ թագաւորների պալատներում։ Նոցա և Ֆրանկների մէջ մեծ տարբերութիւն կար թէ քաղաքական

և թէ կրօնական տեսակէտից։ Յոյները առ հասարակ վատ անուն ունէին Ֆրանկների և միւս ազգերի մէջ. Նոքա համարում էին նենգաւոր և խաբեբայ մարդիկ, որոնց ոչ խօսքին կարելի է հաւատալ և ոչ էլ երդման։ «Ոչ մի յոյնի չէ կարելի հաւատ ընծայել, թէև նա ձեռքերը երկինք բարձրացնելով երդում կերած լինի» ասում է Ռուդոլֆը [1])։ «Յոյները ուխտադրուժ մատնիչներ են. Յուդայից էլ աւելի վատթար» վկայում է մէկ ուրիշը [2])։ «Յոյները ուղիղ պատասխանից փախչելու համար միշտ դիմում են անորոշ բառերի և երկդիմի խօսքերի» գանգատում է երրորդը [3])։ Ֆրանկների այդ վկայութիւնները հաստատում են նաև արաբացի գրողները։ Աւելի ներքև, երբ կանգնենք հայերին, մէջ կբերենք նաև ժամանակակից հայ պատմիչների կարծիքը յոյների մասին։ Այդ երկու ազգերի մէջ, ինչպէս շուտով ցոյց կտանք և ինչպէս իրաւացի նկատում է Յակոբոս Վիտրիակացին տիրում էր անհաշտելի ոսոխութիւն [4])։

Արաբների մասին մեր տեղեկութիւնները աւելի սահմանափակ են. Նոցա մեծ մասը նստական կեանք էր վարում։ Պարապում էին հողերի կապալով և մշակութեամբ. Նոցա ձեռքին էին բրդեայ և մանաւանդ մետաքսեայ

---

[1]) «Nec e$t fides in aliquo graeco, etiamsi manu inraverit». Radulf Diceto II, 60.

[2]) «Sec graeci perfidi Juda preditores nequiores». Gesta Ludovici VII. Duchesne IV. 395.

[3]) «Verborum enigmata, qualia graeci quaelibet cavillantes perplexis ambagibus respondere solent». Wilh. Tyr. XVIII. 22. p. 827.

[4]) «Inter Armenios et graecos odium implacabile». Jacob. a Vitriaco I. c. 79.

գործուածների արդիւնաբերութիւնը. Նոցանից շատերը վարում էին գրագրի և թարգմանչի պաշտօններ[1])։

Տաճիկները համեմատաբար աւելի նոր տարր էին. Նոքա կազմում էին զօրաբանակներ քաղաքներում և բերդերում և վարում էին հարկահանների և հարկերի վերակացուների պաշտօնները։

Ֆրանկները Փոքր Ասիայում, մանաւանդ ծովեզերեայ քաղաքներում և Պաղեստինում, սկսել են երևալ խաչակրաց արշաւանքից շատ դարեր առաջ։ Դեռ ևս Ը. և Թ. դարերում յանցաւոր և անբարոյական վարդապետներին ուղարկում էին Պաղեստին ապաշխարելու և իրենց մեղքերը քաւելու համար. այնուհետև սկսեցին աքսորել մարդասպաներին, իսկ աւելի ևս ուշ սովորութիւն դարձաւ լեզուահատութեան դատապարտուածների պատիժը փոխարինել ուխտագնացութեամբ դէպի Երուսաղէմ։ Այդ ակամայ ուխտագնացների հետ միասին դիմում էին Պաղեստին ապաշխարող կանայք, փախստական միանձնուհիները, ամուսիններից փախած կանայք և պոռնիկները, պատժից խոյս տուող մեղապարտները, ձրիակեր մարդիկ, որոնք ապրում էին մահմետականութեան դէմ պատերազմելու համար ժողովուած գումարով, և վերջապէս հասարակ ժողովրդից շատերը, որոնք գունդագունդ գնում էին երկրպագելու սուրբ վայրերին։ Այդ ուխտագնացութեան համար նոքա կատարում էին երկար ճանապարհորդութիւն։ Հարուստ և աղքատ, անբարոյական և բարոյական, տղամարդիկ և կանայք հա-

---

[1]) Արաբների, նոցա տիրապետութեան և հայերի հետ ունեցած յարաբերութեան մասին, մենք արդէն առիթ ենք ունեցել աւելի մանրամասն խօսելու մեր հրատարակած Ղևոնդ երէցի պատմութեան յառաջաբանում։

բիւրներով խռնւում էին նաւերի նեղ տախտակամածների վերայ կամ վրանների տակ: Ազատուելով իրենց հայրենիքի հասարակական զսպող պայմաններից և կարծելով թէ խաչի նշանը կրելով արդէն պատկանում են այն առանձաշնորհուած դասակարգին, որին ամեն բան թոյլ է դրւում՝ մինչև անգամ մեղանչելը, նոքա անձնատուր էին լինում ամենատեսակ մոլութիւնների. այնպէս որ մինչև անգամ այն անձինք, որոնք դուրս էին եկել Եւրոպայից մաքուր սրտով, մինչև Երուսաղէմ հասնելը ճանապարհին արդէն կորցնում էին իրենց բարոյականութիւնը: Արևմտեան ժամանակակից պատմագիրները պնդում են որ Ֆրանկները Պաղեստինում միանգամայն սուզուած էին ա՛ բարոյականութեան և մոլութեան մէջ. ամուսնութեան սրբութիւնը և արիւնակցութեան կապերը ոչ մի տեղ այնպէս արհամարհուած և պղծուած չէին ինչպէս Պաղեստինում: միևնոյնը վկայում են նաև արաբացի պատմիչները: Այդպէս ահա Ֆրանկների բարոյականութիւնը դարից դար և սերնդից սերունդ սկսում է աւելի և աւելի ապականուել. և այդ բարոյական անկումն էր պատճառներից մէկը որ խաչակրաց արշաւանքը այնպիսի անյաջող վախճան ունեցաւ: Ֆրանկները առհասարակ թըշնամաբար էին վերաբերւում դէպի խաչակիրները, չնայելով նորան որ սոցա արշաւանքի նպատակն էր պաշտպանել նոցա մահմեդականների դէմ: Այդ թշնամութեան պատճառը այն էր որ Ֆրանկները երկիւղ էին կրում թէ մի գուցէ խաչակիրների յաջողութիւնը արգելք լինի այն շահերին, որ ունէին նոքա արևելքում: Մահմեդականները այդ կողմից աւելի անվտանգ էին, որովհետև նոքա չգիտէին օգուտ քաղել երկրի հարստութիւնից: Հայերի յարաբերութիւնները Ֆրանկների հետ սկսւում է

խաչակրաց արշաւանքից. իսկ Հայկական Թագաւորու-թեան սահմաններում նոքա սկսեցին տարածուել և հաստատուել գլխաւորապէս Երուսաղէմի անկումից յետոյ։

**Փուլաններ.** (fullo լատ. pullus)։ Այդպէս անուանւում էին այն անձինք, որոնք սերուած էին Ֆրանկների և տեղացի բնիկների ամուսնութիւնից. երբեմն նաև այն Ֆրանկները, որոնք ծնուել էին ոչ թէ Եւրոպայում այլ Ասիայում։ Փուլանները փափկասէր էին և թուլամորթ. նոքա բոլորովին անտարբեր էին դէպի կրօնը, դէպի անհաւատների դէմ մղած պատերազմը և առհասարակ դէպի ամենայն ինչ, որ կապ չունէր նոցա անմիջական շահերի հետ։ Խաչակիրներին օգնելու փոխանակ նոքա աշխատում էին ամեն կերպ օգտուել նոցանից. նոքա էին պանդոկների և հիւրանոցների տէրերը. նոքա էին եւրոպացիների սեղանաւորները և դրամափոխները։ Մեծ մասամբ սերուած լինելով մահմետական մայրերից, նոքա իրենց ընտանեկան և կրօնական շրջանում միանգամայն գտնւում էին մուսուլման կանանց ազդեցութեան տակ։ Այդպիսով փուլանները խառնուրդ էին ոչ միայն արիւնով այլ և կրօնքով։

## Բ.

**Հայերի** գաղթականութեան մասին դէպի Ասորիք առաջին անգամ տեղեկանում ենք Թովմա Արծրունուց— «Տէր Քրիստափոր կաթողիկոս (515—522) գրէ առ կողմանս Ասորեստանի զգուշացուցանելով մի՛ խառնիլ ընդ Նեստորականսն»[1])։

Արաբացիների տիրապետութեան ժամանակ Հայերի

---

[1]) Թ․ոմ. Արծր. պատմ. էջ 81.

թիւը Կիլիկիայում արդէն այնքան շատանում է [1]) որ Խաչիկ կաթողիկոսը (972 թ. Անիում) հարկաւոր է համարում «ձեռնադրել եպիսկոպոսունս յԱնտիոք Ասորւոց և ի Տարսոն Կիլիկեցւոց և ի Սուլընդայ և յամենայն գաւառս յայնոսիկ» [2])։ Բայց հայերի ամենամեծ գաղթականութիւնը Կիլիկիայ կատարւում է յունաց տիրապետութեան միջոցին, ԺԱ դարու սկզբներում։ Սելջուկեան տաճկների արշաւանքները և աւերածութիւնները աւելի ևս զարկ տուին հայերի այդ շարժման։ Այդպէս օրինակ՝ դեռ ևս Ժ դարու սկզբում «Գաւիթ կուրապաղատ Տայոց, զի ոչ գոյր նորա որդի կամ եղբայր որ ժառանգէր զաթոռ թագաւորութեան նորա, յանձն արարեալ է զագատագունդ և զաշխարհ իւր թագաւորին յունաց Վասիլի» [3])։ «Յայնմ ժամանակի, ասում է մի այլ պատմագիր, վախճանեցաւ կուրապաղատն Գաւիթ անժառանգ գոլով և տայ անդարձագրով զմայրենիսն իւր ի Վասիլ, զՈւխտիսն, զՄամրուան, զքաղաքն Ապահունեաց զՄանծկերտ և զամենայն ինչս» [4])։

Այնուհետև, ԺԱ դարու սկզբում Վասպուրականի Սենեքերիմ թագաւորը «տայ զմայրենի ժառանգութիւն իւր, զտունն Վասպուրականի յինքնակալն Վասիլ և առ-

[1]) «Սրժագործ այլազգիքն յապահովս կացեալք յերկիւղէ քաջացն զօրաց և զմնացեալ ընտանիս հրակիզելոցն գերի առեալ ածէին ի Գուլին քաղաք և անտի յուղարկեալ տանէին ի Դամասկոս»։ Յովհ. կաթողիկոս. 125.

[2]) Ասողիկ 258.

[3]) Id. գլ. ԽԳ.

[4]) Վարդան Բարձ. Բ. 125—126։ Աւելի մանրամասն տեղեկութիւններ Գաւիթ կուրապաղատի մահուան մասին, որին խեղդամահ արեց վրաց մետրապօլիտը տես Մատթ. Ուռհ. 46.

նու փոխարէն զքաղաքն Սեբաստիա և որ շուրջ զնովաւ գաւառք»[1]) կամ ըստ Վարդանայ «առնու փոխան զՍեբաստ, և զԼառիս և յոլով պռաստինս...»[2]) «Գէմ եռեալ գնացին յաշխարհն յունաց Ժ·Պ·Ր·Ս· արամբք Թող զկանայս և զմանկտին, աւելացնում է Թովմա Արծրունին, և անկան ընդ լծով ծառայութեան Հոռոմոց»[3]):

Այդ ժամանակ, Լաստիվերտցու վկայութեամբ, Յովհաննէս արքան էլ «պատուէր տուեալ Հայրապետին (Պետրոսի) եթէ գրէ գիր և տուր պատուէր Թագաւորին զի յետ իմոյ վախճանին զիմ քաղաքս և զերկիրս նմա տաց ի ժառանգութիւն»[4]). իսկ իբրև փոխարէն այդ ամենի նա պայմանէր դնում «զի եթէ պահէ զնա զկուրապաղա-

---

1) Արիստ. Լաստ. 14.
2) Վարդ. Բարձ. 125.
3) Թովմա Արծր. 307—8.

Մատթ. Ուռհայեցին չէ յիշում այդ գաղթականութեան մասին. նորա ասելով Սենեքերիմը մեռել և թաղուել է Վարագայ վանքում. «Յայսմ ամի (Վասիլ Բ. կայսեր մահուան տարին) մեռաւ և Սենեքերիմ Թագաւորն Հայոց և տարան զնա ի գերեզմանատունն հարց իւրոց, ուր և առաջին Նախարարքն հայոց Նախնեաց կան ի Վարագ, ի վանքն սրբոյ Նշանին և անդ Թաղեցին զՍենեքերիմ ընդ հօրն իւր և հաստատեալ լինէր Թագաւորական իշխանութիւն տանն Հայոց յաւագ որդին իւր ի Դաւիթ». տես Ա. Լ.Թ. 62. Dalaurier-ն իւր Մատթ. Ուռհայեցու Թարգմանութեան ծանօթութիւնների մէջ հետևելով Չամչեանին հետևեալ կերպով է բացատրում հեղինակի այդ կտորը—il ordonna en mourant à ses fils en même temps, qu'ils iraient l'ensevelir à Varak (p. 393): Սակայն Չամչեանի յիշած հեղինակներից ոչ մէկի մօտ (Լաստիվերտցի, Ուռհայեցի, Վարդան) մեք չկարողացանք գտնել այդպիսի ցուցմունք:

4) Լաստ. եր. 12.

ղատն ինեղչաց» [1]): Արիստակէս Լաստիվերտցին յունաց կայսրին գրած նամակը բացականչելով անուանում է «Հայոց կորստեան գիր և նամակ» որովհետև այդ նամակը առիթ տուեց Կոստանդին Մոնոմաքոսին զրկել Գագիկ Բ-ին իւր ժառանգական կալուածներից, որոնց փոխանակ Գագկին տուին «զԿալօն—պեղատն և զՊիզու» [2]) կամ ինչպէս Վարդանն է անուանում «զԿալան պաղատն և զՊիզու» [3]) որոնք գտնւում էին Կապադովկիայում [4]): Յովհաննէս արքայի օրինակին հետևում է և Գրիգոր Մագիստրոսը, որը «տայ զքանալին Բջնոյ [5]) ցԹագաւորն և զամենայն զիւր մայրենի ժառանգութիւն և մեծարեալ ի նմանէ առնու զպատիւ մագիստրոսութեան և զտեղիս բնակութեան ի սահմանս միջագետաց գեօղս և քաղաքս գրով և ոսկի մատանեաւ յազգէ յազգ մինչև յաւիտեան» [6]): Երբոր Արփասլանը Անին վերցրեց «Գագիկ Թագաւորն Կարուց նեղեալ յերկիւղէ Թուրքացն տայ զմայրենիս իւր ի յոյնս և առնու զԾամնդաւ, զԼառիսա, զԱմասիա, զԿոմանայ և զպռաստինս հարիւր, որ է գեօ-

---

1) Վարդ. Բարձ. 126.
2) Մատթ. Ուռհ. 111.
3) Վարդ. Բարձ. 133.
4) Այդ քաղաքների ճիշտ տեղը մեզ անյայտ է: Կեդրէնը, որ այլ կերպ է պատմում յիշեալ դէպքի մասին, ասում է որ Գագիկը ստացաւ ընդարձակ կալուածներ Կապադովկիայում Charsianum castrum et Lycandrus-ի մօտ: Նիկիփորոս Բոտոնիատէս կայսեր օրով Գագիկի յաջորդները ամենքըն էլ սպանուեցին և նոցա կալուածները անցան կայսրութեան:
5) Ըստ Վարդանայ «զԲջնին և զԿայան և զԿայծնէ». 33.
6) Լաստ. 41—42.

ղեան»[1]։ «Նու անդ եղեալ Գագիկ ազատօք իւրովք և թողեալ զտունն Հայրենեաց» աւելացնում է Մատթ. Ուռհայեցին[2]։

Մեք յիշեցինք միմիայն գլխաւոր կալուածատէր իշխաններին, որոնք գաղթեցին Կիլիկիա իրենց «ազատներով» և հպատակ ժողովրդով։

Անտարակոյս նրանց օրինակին հետևեցին և ուրիշ շատերը թէ՛ իշխաններից և թէ՛ հասարակ ժողովրդից։ Բիւզանդական կառավարութիւնը քաղաքական խորհրդներից դրդուած խրախուսում էր գաղթականութիւնը և հրապուրում էր գաղթականներին թէ պաշտօններով և թէ պատուաւոր տիտղոսներով։ Այսպիսով նա ցանկանում էր հեռացնել Հայաստանից կալուածատէր իշխաններին և առհասարակ թուլացնել այնտեղ հայկական տարրը։ Բայց հայկական տարրի թուլանալը վնասակար էր նոյն իսկ յոյների համար։ Թուլացնելով իրենց հարևան և օգնական ժողովրդին, նոքա միևնոյն ժամանակ զրկւում էին իրենց բնական դաշնակիցներից և ճանապարհ էին բաց անում օտար թշնամիների առաջ։ Այս է պատճառը որ քիչ ժամանակից յետոյ Սելջուկեան տաճիկները առանց դժուարութեան տիրեցին Հայաստանին։ «Անթիւ զօրութեամբ գան ի յաշխարհն Հայոց, ասում է Ուռհայեցին, վասն զի ի ձեռացն Հոռոմոց գտացին անտէր և անպահապան զամենայն աշխարհն Հայոց, զի զարս քաջս և հզօրս քակեալ հանին յարևելից Հոռոմք և կուրդ զօրապետօք ջանացին պահել զաշխարհն Հայոց և զամենայն տունն Արևելից»[3]... «Ո՜վ նոցա (յունաց)

---

1) Վարդ. Բարձ. 136—7.
2) Մատթ. Ուռհ. 181.
3) Մատթ. Ուռհ. Գ. Ա. 120. 162—3.

շնորհիւ ելին Հայք յերկրէն իւրեանց և այլազգիք զօրացան և եկեալ տիրեցին ամենայնի» 1)—աւելացնում է Գրիգոր երէցը։ «Վասնզի յորժամ այր քաջ և զօրաւոր գտանէին (Յոյնք), շարունակում Մաթ. Ուռհայեցին, զաչսն խաւարեցուցանէին և կամ ի ծով ձգեալ խեղդամահ սատակէին. և այն էր փոյթ յօժարութեանց նոցա որպէս զամենայն իշխանսն Հայոց և զքաջ զօրականսն հանին յարևելից և բերին բնակեցուցին ի Յոյնք» 2)։

Այդպիսով ԺԱ դարու սկզբում Փոքր Ասիայի հիւսսային և արևելեան մասերում գտնւում էին բազմաթիւ հայ գաղթականութիւններ, գլխաւորապէս Մարաշում, Եփրատեան գաւառում, Առաջին Հայքում և Միջագետքում։ Հայերը հաստատուած էին լեռներում և կիրճերում. նոցա ձեռքումն էին Ասորիքի, Փոքր Ասիայի և Եփրատի անցքերը։ Նոքա քաջ էին և պատերազմասէր. կռւում էին հարևան էմիրների հետ, խլում էին յոյներին պատկանող հողերը և կամաց կամաց ընդարձակում էին իրենց երկրի սահմանները։ Նրանցից մի քանիսը ընդունում էին Բիւզանտիայի կայսեր գերիշխանութիւնը, իսկ միւսները ոչ։ Շնորհիւ այս կամ այն իշխանի անձնական յատկութիւններին ծագում և ընդարձակւում էին նոր-նոր իշխանութիւններ, որոնք նոյն արագութեամբ ևս կործանւում էին։ Բացառութիւն էր կազմում միմիայն Ռուբէն իշխանի տոհմը։

Խաչակիրները Կիլիկիա մտած ժամանակ այդտեղ գտնւում էին հետևեալ հայ իշխանները։

Մարաշում իշխում էր Փիլառտոսը, որ տիրել էր շատ

---

1) Գրիգոր երէց 536.
2) Նշ 163.

քաղաքների և բերդերի—Մարաշ, Կեսուն, Մելիտինէ. անցել էր Եփրատից այն կողմ և վերցրել էր Եդեսիա քաղաքը։ Բիւզանդական կառավարութիւնը շտապեց ուղարկել նորան ընծաներ և սեբաստի պատուաւոր տիտղոսը։ Բայց շուտով նորա ձեռքից յետ խլեց կալուածների մի մասը։ Այն ժամանակ Փիլառտոսը դիմեց Բաղդադի խալիֆային և քրիստոնէութիւնը ուրանալով կամեցաւ յետ ստանալ կորցրած կալուածները. իսկ երբ այդ էլ չյաջողուեց «զղջացաւ և դարձաւ ի հաւատս իւր և գնաց յապաշխարութիւն ի վանս» [1]։ Մատթէոս Ուռհայեցին նկարագրում է նորան իբրև խստասիրտ և չարաբարոյ. համարում է նորան թէև հայկական ծագումից բայց յունադաւան [2]։

Եդեսիային տիրում էր Հեթումի որդի Թորոս կամ Թէոդորոս կիւրապաղատը։ Միքայէլ Ասորին ասում է որ նա Հայ էր. Եդեսիա քաղաքը ստացաւ Փիլառտոսից և տուեց խաչակիրներին [3]։ Մատթէոս Ուռհայեցին չէ յիշում նորա հայկական ծագման մասին (որը այսու ամենայնիւ ապացուցւում է իւր և իւր հօր անուամբ) և ասում է որ Եդեսիան նա ստացել է Տուտուշ էմիրից [4]։

Օշինը, որ եկել էր Գանձակից, ստանում է կայսրից Լամբրոն բերդը և յետոյ նաև Տարսոնը, որը կառավարում էր Բազունին [5]։ Բայց Տարսոնը, ինչպէս երևում է, երկար չմնաց նորա ձեռքում, որովհետև խաչակիրների

---

1) Միք. ասորի 399—403.
2) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃԶ. ՃԺԱ. ՃԻԲ. ՃԻԳ. ՃԻԸ.
3) Միք. ասորի. 403—4.
4) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃԿԵ. ՃԿԶ. ՃԿԷ.
5) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃՂԸ. 314.

գալու ժամանակ նա արդէն գտնւում էր տաճիկների իշխանութեան տակ։

Փիլառտոսից յետոյ Ռեւոունը անցաւ «մեծ իշխան Հայոց» գող Վասլին, որ յայտնի էր իւր քաջութեամբ, ազնւութեամբ և առատաձեռնութեամբ։ «Առ նա էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց և ամենայն զօրքն Բագրատունեաց և Պահլաւունեաց. և որդիք Թագաւորացն Հայոց հանդերձ ազատագունդ զօրօքն առ նա կային հանգուցեալ մեծաւ փառաւորութեամբ. և աթոռ Հայրապետութեան Հայոց աշխարհին աստ եղաւ, վասն զի տիրեալ էր քաղում. գաւառաց իւրով զօրութեամբն. և ամենայն երամք կրօնաւոր եպիսկոպոսաց, հարց և վարդապետաց առ սա ժողովեցան և առ հասարակ կային մեծաւ ուրախութեամբ»։ ... Գող Վասլի մահուանից յետոյ իշխանութիւնը անցաւ «աղայ Վասլին ... որ էր գեղեցկատեսիլ և առիւծադէմ, յաջողական և սրագլուխ, այր քաջ և պատերազմող, ամաց քսան և հնգից. զսա նստուցին յաթոռ մեծ իշխանին Վասլին և նմա հնազանդեցան ամենայն զօրքն վասնզի յոյժ առատաձեռն և մեծատուն եղև, սիրեցեալ յաչս ամենեցուն և զօրացն... և եղև ուրախութիւն ի վերայ տանն Հայոց»[1]։ Ուռհայի կոմս Բալդվինը, որը շատ անգամ յարձակուել էր իշխանի կալուածների վերայ և միշտ յաղթուել էր նորանից, մատնութեամբ ձերբակալեց նորան և գրաւեց նորա բոլոր երկիրները։ Վասիլը ստիպուած եղաւ ունայնաձեռն փախչել Կ. Պոլիս։

Բարձրբերդում հաստատուած էր Ռուբէն իշխանը[2]),

---

1) Մատթ. Ուռհ. Պ.. Պ.. գլ. Մժ.. եր. 404—405.
2) Կիրակոս, 57.

որ «ունէր զՏօրոս և բազում զաւառաց տիրեալ էր[1])»։ Հայ պատմիչներից մի քանիսը համարում են Ռուբէնին միայն «ի զօրացն Գագկայ»[2]) իսկ միւսները «արեանառու Գագկայ»[3])։ Կիրակոսը[4]) և Միք. Ասորին առաջացնում են նրան Վասպուրականի Արծրունի իշխաններից։ Բայց այդ մի ընդհանուր երևոյթ է պատմութեան մէջ որ ամէն մի նոր թագաւորական տան ծագումը աշխատում են կապել նախկին թագաւորական տան հետ։ Խաչակիրները մտան Կիլիկիա Ռուբէնի յաջորդ Կոստանդնի օրով, որը ընդարձակեց հօրից ստացած ժառանգութիւնը, հաստատեց իւր գահը Վահկայ ամրոցում և դարձաւ անկախ Բիւզանդիոյ կայսրից։ «Դատ արար Աստուած զրկելոցս—բացականչում է Մխիթար Այրիվանեցին—զի Հոռոմն եբարձ զմեր թագաւորութիւնս, իսկ Աստուած զերկիր նոցա ետ Հայոց, որ և այժմ թագաւորեն ի նմա»[5])։ Կոստանդինը միւս հայ

---

1) Մատթ. Ուռհ. Պ. Բ. գլ. ՃԾԱ. 312.

2) Ibid.

3) Վահրամ, 192. Սամուէլ Անեցի և Հեթում պատմիչ։

Վահրամը հետևեալ խօսքերով է որոշում այն տեղը, ուր Ռուբէնը առաջին անգամ հաստատեց իւր իշխանութիւնը.

«Ռուբէն անուն վերաձայնեալ,
Զկոսիտառայ ամրոց կալեալ,
Յորժամ զԳագկայ մահն լուեալ,
Իւրով զարմիւքըն յարուցեալ
Եւ ի Տօրոս լեառըն ելեալ,
Ի փռիւգիոյ կողմանսն իջեալ
Դիմեալ ի գեղ մի կոչեցեալ
Կոռմօզօլօ և անդ բնակեալ»։

4) Կիրակոս. 61.

5) Մխիթ. Այրիվ. 74.

իշխանների հետ միասին օգնական հանդիսացաւ խաչակիրներին, որոնք սարսափելի կարօտութիւն էին քաշում Անտիոքի պարիսպների տակ։ Սորա փոխարէն նա ստացաւ Ֆրանկներից կոմսի և մարկիզի տիտղոսները[1]։ Կոստանդինը իւր աղջիկը տուեց Եդեսիոյ Ժոսլէն կոմսին, իսկ եղբօրաղջիկը Գոտֆրիտոսի եղբօր՝ Բալդուինին, որը իւր եղբօր մահուանից յետոյ ժառանգեց նորա գահը Երուսաղէմում։ Այսպիսի համակրութեամբ Հայերը ընդունեցին խաչակիրներին մտածելով թէ դոքա պէտք է նոցա դաշնակից լինէին թէ յոյների և թէ մանաւանդ մահմետականների դէմ. «արք փառաւորք և թագաւորազուն, հաւատով և ամենայն աստուածպաշտութեամբ զարդարեալք և էին անեալք ի գործս բարութեան»[2]—ասում է Մատթ. Ուռհ.։ Բայց շատ շուտ համոզուեցան Հայերը, թէ նոցա այդ յոյսը բոլորովին ի զուր է, թէ Ֆրանկները նոցա համար չեն տարբերւում մահմետականներից։ Նոյն Մատթ. Ուռհ. վկայում է թէ Ֆրանկները «թողին զուղղորդ ճանապարհն Աստուծոյ և սկսան գնալ ընդ ճանապարհն մեղաց, զորս ոչ հրամայեաց նոցա Աստուած.... ազգն Ֆրանկաց խոտորեցան ի ճանապարհն ձախակողմեանս... զՀայ և զՀոռոմ, զԱսորի և զՎրացի մերժեցին յամենայն ուխտից»[3]։ Ֆրանկների պար-

---

1) «Ի փռանկաց ազգէն պատուեալ....
Որոց եղև նիզակակցեալ,
Ընդդէմ Թուրքին պատերազմեալ,
Ում կոմսութեան պատիւ շնորհեալ,
Գունտ և մարքիզ վերաձայնեալ»։

Վահրամ. 193.

2) Մատթ. Ուռհ. էջ 308.

3) Էջ 335.

յոյների և արաբների ազդեցութիւնից ոչ միայն իրենց կրօնը այլ և իրենց լեզուն և ազգային բարք ու սովորութիւնները։ Շատ բան ընդունելով արաբական հարուստ կուլտուրայից, միևնոյն ժամանակ նոքա չափազանց հակամէտ էին եւրոպական քաղաքակրթութեան, որը սկսել էր մուտք գործել խաչակիրների հետ միասին. նոքա հեշտութեամբ և կարճ միջոցում իւրացրին մինչև անգամ Ֆրանսիական լեզուն։ Բարսեղ վարդապետը, որի խօսած դամբանական ճառը Մարաշի իշխան Բալդուինի վերայ (1140 թուին) հասել է մեր ձեռքը, հաւասար հեշտութեամբ կարողանում էր քարոզել երկու լեզուով ևս։ Այդ ազդեցութիւնը աւելի ևս նկատելի է այն ձևերի մէջ, որ հայերը վերցրին Ֆրանկներից իրենց պետական կազմակերպութեան, քաղաքական, զինուորական և դատաստանական հիմնարկութիւնների համար։ Բացի սորանից հայերը հաստատեցին վաճառականական ընդարձակ յարաբերութիւններ Եւրոպայի հետ։ Վաճառականութեան գլխաւոր նիւթերն էին—երկաթ, փայտ, գինի, ցորեն և չորացրած պտուղներ։ Հայկական ձիերը և ջորիները նոյնպէս յարգի էին Եւրոպայում։ Մեք կանգ չենք առնիլ ոչ Կիլիկիայի հայկական թագաւորութեան կազմակերպութեան և ոչ էլ նոցա վաճառականական յարաբերութիւնների վերայ Ասիայի և Եւրոպայի հետ. այդ ամենը իւր ժամանակին արդէն գիտնական հետազօտութիւնների նիւթ է եղել եւրոպացի գիտնականների կողմից, որպիսիք են Լանգլուա, Դիւլօրիէ, Հէյդ և ուրիշները, որոնց հետախուզութիւնները մեծ խնամքով և մանրամասնօրէն ժողովուած են Հ. Գ. Ալիշանի Սիսուանում։

Այդպիսով հայերը միաժամանակ օգուտ են քաղում թէ արևելեան և թէ արևմտեան քաղաքակրթութիւնից։

տութիւնը և նոցա արած չարիքը պատմելուց յետոյ շարունակում է ժամանակակից և ականատես Ուռհայեցին. «Այս այսպէս գործեցաւ ի մոլի ազգէն Ֆրանկաց վասն զի փառաւոր իշխանքն և գլխաւորքն նոցա հատան և իշխանութիւն նոցա յանարժան ձեռս անկաւ. և վասն այսորիկ յարուցին հալածանս և չարչարանս ի վերայ հաւատացելոց Քրիստոսի ի ձեռն սաստիկ արծաթասիրութեան իւրեանց» 1). «Բազում անիրաւութիւնս նոցա կամէի գրել, բայց ոչ համարձակեցայ. զի ընդ իշխանութեամբ նոցա էաք» 2): Փոխադարձ յարաբերութիւնները այդպէս որոշուելուց յետոյ, Հայերը ևս շատ անգամ միաբանումէին նոցա դէմ մահմետականների հետ:

Նուրէդդինը հիւսիսային Ասորիքում ունեցած յաջողութիւնների համար պարտական է այն անբաւականութեան, որ Հայերը տածում էին դէպի Ֆրանկները: Լատինական և հայկական թագաւորական տների մէջ տեղի ունեցող յաճախակի ամուսնութիւններն անգամ չէին կարող բարւոքել այդ յարաբերութիւնները, որովհետև այդ պսակները մեծ մասամբ կատարւում էին քաղաքական և դրամական դիտումներով և շատ անգամ պատճառ էին լինում սաստիկ երկպառակութիւնների:

Արևմտեան պատմագիրների վկայութեամբ Հայերը վայելումէին թէ քրիստոնեաների և թէ մահմետականների յարգանքը. նոցա քաջութեան համար թէ առաջինները և թէ վերջինները շատ անգամ աշխատումէին վայելել նոցա դաշնակցութիւնը:

Հայերը անասելի եռանդով կարողացան պահպանել

---

1) Լչ 338.
2) Լչ 317—424.

յոյների և արաբների ազդեցութիւնից ոչ միայն իրենց կրօնը այլ և իրենց լեզուն և ազգային բարք ու սովորութիւնները։ Շատ բան ընդունելով արաբական հարուստ կուլտուրայից, միևնոյն ժամանակ նոքա չափազանց հակամէտ էին եւրոպական քաղաքակրթութեան, որը սկսել էր մուտք գործել խաչակիրների հետ միասին. Նոքա հեշտութեամբ և կարճ միջոցում իւրացրին մինչև անգամ Ֆրանսիական լեզուն։ Ներսէս վարդապետը, որի խօսած դամբանական ճառը Մարաշի իշխան Բալդուինի վերայ (1140 թուին) հասել է մեր ձեռքը, հաւասար հեշտութեամբ կարողանում էր քարոզել երկու լեզուով ևս։ Այդ ազդեցութիւնը աւելի ևս նկատելի է այն ձևերի մէջ, որ Հայերը վերցրին Ֆրանկներից իրենց պետական կազմակերպութեան, քաղաքական, զինւորական և դատաստանական հիմնարկութիւնների համար։ Բացի սորանից Հայերը հաստատեցին վաճառականական ընդարձակ յարաբերութիւններ Եւրոպայի հետ։ Վաճառականութեան գլխաւոր նիւթերն էին—երկաթ, փայտ, գինի, ցորեն և չորացրած պտուղներ։ Հայկական ձիերը և ջորիները նոյնպէս յարգի էին Եւրոպայում։ Մեք կանգ չենք առնիլ ոչ Կիլիկիայի հայկական թագաւորութեան կազմակերպութեան և ոչ էլ նոցա վաճառականական յարաբերութիւնների վերայ Ասիայի և Եւրոպայի հետ. այդ ամենը իւր ժամանակին արդէն գիտնական հետազօտութիւնների նիւթ է եղել եւրոպացի գիտնականների կողմից, որպիսիք են Լանգլուա, Դիւլօրիէ, Հէյդ և ուրիշները, որոնց հետախուզութիւնները մեծ խնամքով և մանրամասնօրէն ժողովուած են Հ. Գ. Ալիշանի Սիսուանում։

Այդպիսով Հայերը միաժամանակ օգուտ են քաղում թէ արևելեան և թէ արևմտեան քաղաքակրթութիւնից։

քաղաքների և բերդերի—Մարաշ, Քեսուն, Մելիտինէ. անցել էր Եփրատից այն կողմ և վերցրել էր Եդեսիա քաղաքը։ Բիւզանդական կառավարութիւնը շտապեց ուղարկել նորան ընծաներ և սեբաստի պատուաւոր տիտղոսը։ Բայց շուտով նորա ձեռքից յետ խլեց կալուածների մի մասը։ Այն ժամանակ Փիլառտոսը դիմեց Բաղդադի խալիֆային և քրիստոնէութիւնը ուրանալով կամեցաւ յետ ստանալ կորցրած կալուածները. իսկ երբ այդ էլ չյաջողուեց «զղջացաւ և դարձաւ ի հաւատս իւր և գնաց յապաշխարութիւն ի վանս» [1])։ Մատթէոս Ուռհայեցին նկարագրում է նորան իբրև խստասիրտ և չարաբարոյ. համարում է նորան թէև հայկական ծագումից բայց յունադաւան [2])։

Եդեսիայի տիրում էր Հեթումի որդի Թորոս կամ Թէոդորոս կիւրապաղատը։ Միքայէլ Ասորին ասում է որ նա հայ էր. Եդեսիա քաղաքը ստացաւ Փիլառտոսից և տուեց խաչակիրներին [3])։ Մատթէոս Ուռհայեցին չէ յիշում նորա հայկական ծագման մասին (որը այսու ամենայնիւ ապացուցւում է իւր և իւր հօր անուամբ) և ասում է որ Եդեսիան նա ստացել է Տուտուշ էմիրից [4])։

Օշինը, որ եկել էր Գանձակից, ստանում է կայսրից Լամբրոն բերդը և յետոյ նաև Տարսոնը, որը կառավարում էր Բազունին [5])։ Բայց Տարսոնը, ինչպէս երևում է, երկար չմնաց նորա ձեռքում, որովհետև խաչակիրների

---

1) Միք. ասորի 399—403.
2) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃԶ. ՃԺԸ. ՃԻԲ. ՃԻԳ. ՃԻԵ.
3) Միք. ասորի. 403—4.
4) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃԽԵ. ՃԽԶ. ՃԽԷ.
5) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃՂԸ. 314.

գալու ժամանակ նա արդէն գտնւում էր տաճիկների իշխանութեան տակ։

Փիլառտոսից յետոյ Ռեսունը անցաւ «մեծ իշխան Հայոց» գող Վասլին, որ յայտնի էր իւր քաջութեամբ, ազնուութեամբ և առատաձեռնութեամբ։ «Առ նա էին ժողովեալ մնացեալ զօրքն Հայոց և ամենայն զօրքն Բագրատունեաց և Պահլաւունեաց. և որդիք թագաւորացն Հայոց հանդերձ ազատագունդ զօրօքն առ նա կային համագունդեալ մեծաւ փառաւորութեամբ. և աթոռ Հայրապետութեան Հայոց աշխարհին աստ եղաւ, վասն զի տիրեալ էր բազում. գաւառաց իւրով զօրութեամբն. և ամենայն երամք կրօնաւոր եպիսկոպոսաց, հարց և վարդապետաց առ սա ժողովեցան և առ հասարակ կային մեծաւ ուրախութեամբ»։ ... Գող Վասլի մահուանից յետոյ իշխանութիւնը անցաւ «տղայ Վասլին ... որ էր գեղեցկատեսիլ և առիւծադէմ, յաջողական և սրագլուխ, այր քաջ և պատերազմող, ամաց քսան և հնգից. զսա նստուցին յաթոռ մեծ իշխանին Վասլին և նմա հնազանդեցան ամենայն զօրքն վասնզի յոյժ առատաձեռն և մեծատուն եղև, սիրեցեալ յաչս ամենեցուն և զօրացն... և եղև ուրախութիւն ի վերայ տանն Հայոց»[1]։ Ուռհայի կոմս Բալդվինը, որը շատ անգամ յարձակուել էր իշխանի կալուածների վերայ և միշտ յաղթուել էր նորանից, մատնութեամբ ձերբակալեց նորան և գրաւեց նորա բոլոր երկիրները։ Վասիլը ստիպուած եղաւ ունայնաձեռն փախչել Կ. Պօլիս։

Բարձրբերդում հաստատուած էր Ռուբէն իշխանը[2],

---

1) Մատթ. Ուռհ. Գ. Գ. գլ. Մժ. եր. 404—405.
2) Կիրակոս, 57.

որ «ունէր զՏօրոս և բազում գաւառաց տիրեալ էր[1])»։ Հայ պատմիչներից մի քանիսը համարում են Ռուբէնին միայն «ի զօրացն Գագկայ»[2]) իսկ միւսները «արեանառու Գագկայ»[3])։ Կիրակոսը[4]) և Միք. Ասորին առաջացնում են նորան Վասպուրականի Արծրունի իշխաններից։ Բայց այդ մի ընդհանուր երևոյթ է պատմութեան մէջ որ ամեն մի նոր թագաւորական տան ծագումը աշխատում են կապել նախկին թագաւորական տան հետ։ Խաչակիրները մտան Կիլիկիա Ռուբէնի յաջորդ Կոստանդնի օրով, որը ընդարձակեց հօրից ստացած ժառանգութիւնը, հաստատեց իւր գահը Վահկայ ամրոցում և դարձաւ անկախ Բիւզանդիոյ կայսրից։ «Դատ արար Աստուած զրկելոցս—բացականչում է Մխիթար Այրիվանեցին—զի Հոռոմն եբարձ զմեր թագաւորութիւնս, իսկ Աստուած զերկիր նոցա ետ Հայոց, որ և այժմ թագաւորեն ի նմա»[5])։ Կոստանդինը միւս Հայ

---

[1]) Մատթ. Ուռհ. Գ. Բ. գլ. ՃԾԱ. 312.
[2]) Ibid.
[3]) Վահրամ, 192. Սամուէլ Անեցի և Հեթում պատմիչ։

Վահրամը հետևեալ խօսքերով է որոշում այն տեղը, ուր Ռուբէնը առաջին անգամ հաստատեց իւր իշխանութիւնը.

«Ռուբէն անուն վերաձայնեալ,
Զկոսիտառայ ամրոց կալեալ,
Յորժամ զԳագկայ մահն լուեալ,
Իւրով զարմիւքըն յարուցեալ
Եւ ի Տօրոս լեառըն եկեալ,
Ի Փռիւգիոյ կողմանսն իջեալ
Դիմեալ ի գեղ մի կոչեցեալ
Կոռմօզօլը և անդ բնակեալ»։

[4]) Կիրակոս. 61.
[5]) Մխիթ. Այրիվ. 74.

իշխանների հետ միասին օգնական հանդիսացաւ խաչակիրներին, որոնք սարսափելի կարօտութիւն էին քաշում Անտիոքի պարիսպների տակ։ Սորա փոխարէն նա ստացաւ Ֆրանկներից կոմսի և մարկիզի տիտղոսները[1]։ Կոստանդինը իւր աղջիկը տուեց Եդեսիոյ Ժոսլէն կոմսին, իսկ եղբօրաղջիկը Գոփրիտոսի եղբօր՝ Բալդինին, որը իւր եղբօր մահուանից յետոյ ժառանգեց նորա գահը Երուսաղէմում։ Այսպիսի համակրութեամբ Հայերը ընդունեցին խաչակիրներին մտածելով թէ դոքա պէտք է նոցա դաշնակից լինէին թէ յոյների և թէ մանաւանդ մահմետականների դէմ. «այլք փառաւորք և թագաւորազուն, հաւատով և ամենայն աստուածպաշտութեամբ զարդարեալք և էին սնեալք ի գործս բարութեան»[2]—ասում է Մատթ. Ուռհ.։ Բայց շատ շուտ համոզուեցան Հայերը, թէ նոցա այդ յոյսը բոլորովին ի զուր է, թէ Ֆրանկները նոցա համար չեն տարբերւում մահմետականներից։ Նոյն Մատթ. Ուռհ. վկայում է թէ Ֆրանկները «թողին զուղղորդ ճանապարհն Աստուծոյ և սկսան գնալ ընդ ճանապարհն մեղաց, զորս ոչ հրամայեաց նոցա Աստուած.... ազգն Ֆրանկաց խոտորեցան ի ճանապարհն ձախակողմեանս... զՀայ և զՀոռոմ, զԱսորի և զՎրացի մերժեցին յամենայն ուխտից»[3]։ Ֆրանկների պար-

---

1) «Ի Փռանկաց ազգէն պատուեալ....
Որոց եղև նիզակակցեալ,
Ընդդէմ Թուրքին պատերազմեալ,
Ում կոմսութեան պատիւ շնորհեալ,
Գունտ և մարքիզ վերաձայնեալ»։
Վահրամ. 193.

2) Մատթ. Ուռհ. էջ 308.
3) Նչ 335.

տութիւնը և նոցա արած չարիքը պատմելուց յետոյ շարունակում է ժամանակակից և ականատես Ուռհայեցին. «Այս այսպէս գործեցաւ ի մոլի ազգէն Փրանկաց վասն զի փառաւոր իշխանքն և գլխաւորքն նոցա հատան և իշխանութիւն նոցա յանարժան ձեռս անկաւ. և վասն այսորիկ յարուցին հալածանս և չարչարանս ի վերայ հաւատացելոց Քրիստոսի ի ձեռն սաստիկ արծաթասիրութեան իւրեանց» [1]. «Բազում անիրաւութիւնս նոցա կամէի գրել, բայց ոչ համարձակեցայ. զի ընդ իշխանութեամբ նոցա էաք» [2]: Փոխադարձ յարաբերութիւնները այդպէս որոշուելուց յետոյ, Հայերը ևս շատ անգամ միաբանումէին նոցա դէմ մահմետականների հետ:

Նուրէդդինը հիւսսային Ասորիքում ունեցած յաջողութիւնների համար պարտական է այն անբաւականութեան, որ Հայերը տածում էին դէպի Փրանկները: Լատինական և Հայկական թագաւորական տների մէջ տեղի ունեցող յաճախակի ամուսնութիւններն անգամ չէին կարող բարւոքել այդ յարաբերութիւնները, որովհետև այդ պսակները մեծ մասամբ կատարւում էին քաղաքական և դրամական դիտումներով և շատ անգամ պատճառ էին լինում սաստիկ երկպառակութիւնների:

Արևմտեան պատմագիրների վկայութեամբ Հայերը վայելումէին թէ քրիստոնեաների և թէ մահմետականների յարգանքը. նոցա քաջութեան համար թէ առաջինները և թէ վերջինները շատ անգամ աշխատումէին վայելել նոցա դաշնակցութիւնը:

Հայերը անասելի եռանդով կարողացան պահպանել

---

1) Նչ 338.
2) Նչ 317—424.

յոյների և արաբների ազդեցութիւնից ոչ միայն իրենց կրօնը այլ և իրենց լեզուն և ազգային բարք ու սովորութիւնները։ Շատ բան ընդունելով արաբական հարուստ կուլտուրայից, միևնոյն ժամանակ նոքա չափազանց հակամէտ էին եւրոպական քաղաքակրթութեան, որը սկսել էր մուտք գործել խաչակիրների հետ միասին. նոքա հեշտութեամբ և կարճ միջոցում իւրացրին մինչև անգամ Ֆրանսիական լեզուն։ Բարսեղ վարդապետը, որի խօսած դամբանական ճառը Մարաշի իշխան Բալդուինի վերայ (1140 թուին) հասել է մեր ձեռքը, հաւասար հեշտութեամբ կարողանում էր քարոզել երկու լեզուով ևս։ Այդ ազդեցութիւնը աւելի ևս նկատելի է այն ձևերի մէջ, որ հայերը վերցրին Ֆրանկներից իրենց պետական կազմակերպութեան, քաղաքական, զինուորական և դատաստանական հիմնարկութիւնների համար։ Բացի սորանից հայերը հաստատեցին վաճառականական ընդարձակ յարաբերութիւններ Եւրոպայի հետ։ Վաճառականութեան գլխաւոր նիւթերն էին—երկաթ, փայտ, գինի, ցորեն և չորացրած պտուղներ։ Հայկական ձիերը և ջորիները նոյնպէս յարգի էին Եւրոպայում։ Մեք կանգ չենք առնիլ ոչ Կիլիկիայի հայկական թագաւորութեան կազմակերպութեան և ոչ էլ նորա վաճառականական յարաբերութիւնների վերայ Ասիայի և Եւրոպայի հետ. այդ ամենը իւր ժամանակին արդէն գիտնական հետազօտութիւնների նիւթ է եղել եւրոպացի գիտնականների կողմից, որպիսիք են Լանգլուա, Դիւլօրիէ, Հէյդ և ուրիշները, որոնց հետախուզութիւնները մեծ խնամքով և մանրամասնօրէն ժողովուած են Հ. Ղ. Ալիշանի Սիսուանում։

Այդպիսով հայերը միաժամանակ օգուտ են քաղում թէ արևելեան և թէ արևմտեան քաղաքակրթութիւնից։

## Բ

Լեռների մէջ ամրացած նոքա պահպանում են իրենց նախնեաց դաւանութիւնը և սովորութիւնները, իւրացընում են այն ամէն քաղաքական, զինուորական և դատաստանական ձևերը, ինչոր կարողացել էր մինչև այդ օրը մշակել եւրոպական քաղաքակրթութիւնը, ստեղծում են սեփական հարուստ գրականութիւն և վերջապէս տալիս են նշանաւոր ներկայացուցիչներ գիտութեան այլ և այլ ճիւղերում։ Յիշենք միմիայն յայտնի ճարտարագէտ Աւետիքի անունը, որը նշանաւոր հանդիսացաւ իւր հնարած պատերազմական գործիքներով Տիրոսի պաշարման ժամանակ 1124-ին։ Հայերը պահպանեցին իրենց անկախութիւնը պաշտպանելով միևնոյն ժամանակ ամբողջ քրիստոնէութեան շահերը արևելքում նաև այն ժամանակ, երբոր Ֆրանկների հիմնած իշխանութիւնների հետքըն անգամ չէր մնացել այդ երկրում։

## Գ.

Կիլիկիայի բոլոր այդ խառնիխուռն ցեղերը գտնուում էին անվերջ և անհաշտ կռուի մէջ մէկը միւսի դէմ։

Նախ և առաջ նոքա բաժանւում էին երկու գլխաւոր ճիւղի—քրիստոնեաներ և մահմետականներ։ Սոցանից ամէն մէկը իւր կրօնքի հիմնական սկզբունքների համեմատ աշխատում էր տարածել իւր դաւանութիւնը. քրիստոնեաները աշխատում էին քարոզել Աստուծոյ խօսքը, իսկ մահմետականները պարտական էին նուաճել անհաւատներին։ Այս պատճառով ահա այդ երկու գլխաւոր ճիւղերը մշտապէս և անընդհատ կռւում էին միմեանց հետ։

Բայց նոյն իսկ քրիստոնեաները անհաշտ էին իրար մէջ և շատ անգամ կամ ուղղակի անցնում էին մահմետականների կողմը և կամ գրգռում էին նոցա միւս քրիստոնեաների դէմ: Ամենից առաջ անհաշտ էին երկու գլխաւոր քրիստոնեայ ազգերը—հայերը և յոյները: Այդ թշնամութիւնը ծագում էր երկու պատճառից—քաղաքական և կրօնական, թէև այդ երկու պատճառներն էլ սերտ կերպով կապուած էին իրար հետ և փոխադարձ ազդում էին միմեանց վերայ:

Մեզ յայտնի է թէ ինչպէս յոյները նենգութեամբ տիրեցին Հայոց Թագաւորութեան և Անի մայրաքաղաքին, թէ ինչպէս նոքա աշխատում էին անմարդաբնակ դարձնել Հայաստանը՝ հեռացնելով այնտեղից իշխանական ցեղերը և թէ ինչպիսի թշուառ հետևանքներ ունեցաւ այդ քաղաքականութիւնը թէ Բիւզանդիայի և թէ մանաւանդ Հայաստանի համար: Սակայն Կիլիկիա գաղթած հայերին յաջողուեց հիմնել այնտեղ նոր իշխանութիւններ, որոնցից աւելի հզօրները, օգտուելով իրենց բռնած աշխարհագրական յաջող դիրքից և Կ. Պոլսում տեղի ունեցող խռովութիւններից, սկսեցին ձգտել կատարեալ անկախութեան:

Կոստանդնի յաջորդները—Թորոսը և Լևոնը ընդարձակեցին իրենց իշխանութեան սահմանները: Յովհաննէս Կոմնենոս կայսրը չկարողանալով տանել հայերի այդ յաջողութիւնը, արշաւեց Կիլիկիա, վերցրեց Անարզաբան և ուրիշ դաշտային քաղաքները և վերջապէս եկաւ պաշարեց Վահկայ բերդը, ուրտեղ գտնւում էր Լևոնի ընտանիքը: Վերցնելով այդ բերդը՝ Լևոնին իւր երկու որդիների հետ շղթայակապ գերի տարաւ Կ. Պոլիս, ուրտեղ և սպանել տուաւ նորան և նորա անդրանիկ որդի

Ռուբէնին։ Օգտուելով Յովհաննէս Կոմնենոսի մահուանից յետոյ տեղի ունեցող խռովութիւններից, Լևոնի երկրորդ որդին Թորոսը փախաւ Կ. Պոլսից, կրկին յետ առաւ Վահկայ բերդը և իւր եղբայրների (Ստեփանէ և Մլեհ) օգնութեամբ, որոնք գտնւում էին Եդեսիայում, սկսեց վերականգնել իւր հօր իշխանութեան սահմանները։ Մանուէլ կայսրը ևս չկարողանալով տանել հայկական անկախ թագաւորութեան վերականգնումը, աշխատեց առատ ընծաներով համոզել Իկոնիայի սուլթանին պատերազմի ելնել Թորոսի դէմ. բայց Թորոսը կարողացաւ բարեկամութիւն հաստատել սուլթանի հետ։ Այդ անյաջողութիւնից զրգռուած՝ կայսրը իւր ազգական Անդրոնիկոսի հրամանատարութեամբ զօրքեր ուղարկեց Կիլիկիա. բայց Թորոսը յաղթեց այդ բանակը և կայսրը խաղաղութեան դաշն կապելու համար ստիպուած եղաւ դիմել Անտիոքի իշխանի միջնորդութեան։ Անդրոնիկոսը երկրորդ անգամ ուղարկուեց Կիլիկիա, բայց Թորոսը դարձեալ յաղթեց նորան։ Աւելի անյաջող անցաւ Անդրոնիկոսի յաջորդ Կոստանդին Կոլոմանի արշաւանքը, որին Թորոսը մինչև անգամ գերի բռնեց։ Այդպիսով նա տիրեց համարեա ամբողջ Կիլիկիային. Տարսոնը, Անարզաբան, Մամեստրան և Սիսը անցան նորա իշխանութեան տակ։ Սորանից յետոյ կայսրը երկու անգամ ընծաներով և խոստումներով աշխատեց գրգռել Իկոնիայի սուլթանին Թորոսի դէմ, բայց երկու անգամն էլ յաղթութիւնը մնաց Թորոսի կողմը։ Նոյնպէս անյաջող անցան Միքայէլ Բրանասի և Անդրոնիկ Եւփորբէնի արշաւանքները. այդ վերջինը Թորոսի ձեռքից ազատուելու համար մինչև անգամ ստիպուած եղաւ դիմել Երուսաղէմի թագաւորի միջնորդութեան։ Յոյն պատ-

մագիրները ասում են որ Թորոսը վերջ ի վերջոյ ընդունեց կայսեր իշխանութիւնը և վերադարձրեց նորան Անարզաբան և Մամեստրան և ի փոխարէն ստացաւ նորանից պատիւներ և պան-սեբաստոսի տիտղոսը։

Բոլոր այդ դէպքերը, որոնք տեղի ունեցան Լևոն Ա-ի և Թորոս Բ-ի թագաւորութեան ժամանակ, սկսած 1130 թուից մինչև 1169-ը, լի են բազմաթիւ չարագործութիւններով և հայերի ու յոյների փոխադարձ ատելութեամբ։ Թորոսի եղբայր Ռուբէնի նենգաւոր սպանումից յետոյ, նորա միւս եղբայրը—Մլեհ (Միքայէլ), վրէժխնդրութեան զգացումից դրդուած, միացաւ Նուրէդդինի հետ և նորա հետ միասին յարձակուեց յունական սահմանների վրայ։

Այսպէս Բիւզանդիայի աւանդական քաղաքականութեան համաձայն կամենում էր ոչ միայն զէնքի զօրութեամբ կործանել հայկական անկախութիւնը, այլ և ցանկանում էր ոչնչացնել նոցա կրօնական անկախութիւնը եկեղեցիների միութեան պատրուակով. այդպիսով նա ձգտում էր ջնջել հայերի ազգայնութիւնը։ Բայց այդ խնդիրը աւելի լաւ պարզելու համար հարկաւոր է նախապէս ծանօթացնել հայերի այն ժամանակուայ քաղաքական և կրօնական դրութեան և, նոցա փոխադարձ յարաբերութիւնների հետ։

Յոյների հետ մղած այդ բոլոր պատերազմներում հայկական իշխաններից մի քանիսը, մանաւանդ Լամբրոնի իշխանները, Օշինի յաջորդները, միշտ յոյների կողմն էին լինում և նոցանից ոչ պակաս ատելութեամբ էին վերաբերւում դէպի Ռուբէնի տոհմը, որը ձգտում էր քաղաքական լիակատար անկախութեան։ «Քանզի ի վաղուց հետէ Ռուբինեանք և Հեթումեանք մախային ընդ

միմեանս» ասում է Սմբատ պատմիչը։ Օշին Բ-ը գերի էր ընկել Թորոսի ձեռքը և ահագին գումար վճարեց այդ գերութիւնից ազատուելու համար, իսկ նորա եղբայրը սպանուեց Մամեստրայի պաշարման ժամանակ։ Չնայելով որ Օշինը և Թորոսը մինչև անգամ խնամութիւն հաստատեցին, բայց Օշինը չէր դադարում անդադար թշնամութիւն ցոյց տալ և գրգռել Թորոսի դէմ Թուրքերին, որոնց հետ միացած յարձակուեց Եդանայի վերայ և «քաղում կոտորածս արար և 500 կոյս աղջիկ տարան» (Սմբ. 113)։ Երբոր Թորոսը վճռեց պատժել Օշինին, այն ժամանակ Ներսէս Շնորհալին՝ Գրիգոր Գ-ի պատուէրով՝ «ի սէր հարազատ ընտանեաց» մէջ մտաւ և հաշտեցրեց միմեանց հետ։ Թորոսի յաջորդները— Մլեհ և Ռուբէն շարունակում էին անդադար կռուել Օշինի յաջորդ Հեթումի հետ, որը Ներսէս Լամբրոնացու եղբայրն էր, «վասն հին մախանացն, զոր նախկին ունէին ընդ միմեանս»։ Լևոն Բ-ը, ըստ վկայութեան Կիրակոսի «խորհէր. իմաստութեամբ փետտել զԹևս նոցա և ցածուցանել զքարձրայօն հպարտութիւն նոցա». [1]) այդ պատճառով տիրելով Լամբրոն բերդին նա վճռեց «ոչ ևս այլ տալ զնա իշխանին ումեք, բայց միայն արքունի լինել. զի հանապազ տեարք նորա ապստամբ լեալ են վասն ամրութեանն»։ Այսպիսով միանգամայն հաստատեց Լևոնի այդ իմաստուն հեռատեսութիւնը։ Հայկական այդ երկու նշանաւոր տոհմերի ատելութիւնը նկատելի է Կիլիկիայի հայ թագաւորութեան ամբողջ ընթացքում և չէ դադարում նոյն իսկ այն ժամանակ երբ երկու տոհմերը արդէն ձուլուել էին և գահը անցել էր Օշինի ցե-

---

[1]) Կիր. 101—2.

ղեց Հեթում Ա-ի ձեռքը (1227 Թ.)։ Այդ թշնամութիւնը մեծ ազդեցութիւն ունէր ոչ միայն քաղաքական այլ և կրօնական անցքերի վերայ։

Այդ ժամանակ կաթուղիկոսական գահի վերայ բարձրանում են մի շարք հայրապետներ Պահլաւունեան ցեղեց, որոնք օժտուած էին անձնական բարձր յատկութիւններով [1])։ Պահլաւունիները ազգական էին Լամբրոնի իշխաններին։ Թորոսի ժամանակակից Օշին իշխանի աղջիկներից մէկը ամուսնացած էր Գրիգոր Գ-ի և Ներսէս Շնորհալու եղբայր Վասիլի հետ, որոնք Գրիգոր Մագիստրոս Բջնեցու թոռներն էին։ Իսկ Վասիլի և Շնորհալու եղբօր դուստրը ամուսնացած էր Օշին Բ-ի հետ։ Օշինի որդիներից մէկն էր Սմբատը, որը յետոյ յայտնի եղաւ Ներսէս Լամբրոնացի անունով և որը հետևաբար Ներսէս Շնորհալու եղբօր թոռն է գալիս։

Հայրապետական աթոռը գտնւում էր Ռում-Կալէ կամ Հռոմկլայ ամրոցում՝ Եփրատ գետի վերայ [2])։ Այդ բերդը մի ժամանակ պատկանում էր Գող Վասիլին, յետոյ 1147-ին անցաւ Ֆրանկների ձեռքը և վերջապէս Ժոսլէնի այրին ընծայեց նորան Գրիգոր Գ-ին, որը Ծովքից իւր աթոռը փոխադրեց այդտեղ։ Պահլաւունի կա-

---

[1]) Գրիգոր Գ. 1113—66. Ներսէս Շնորհալի 1166—73. Գրիգոր Դ. Տղայ 1173—93. Այդ վերջինի ժամանակակից և ազգական էր Ներսէս Լամբրոնացին՝ Տարսոնի եպիսկոպոսը 1153—1198.

[2]) Այդ բերդի ամրութիւնը հետևեալ խօսքերով է նկարագրում Շնորհալին.

«Յալեաց ծովու ոչ երկընչի,
Ի մարդկանէ ոչ զարհուրի,
Որ է հնարից անյաղթելի»։

թողիկոսների ազգականութիւնը Օշինեան տան հետ, որը Ներսէս Լամբրոնացու ասելով պարծենում էր նորանով որ «հաւատարմապէս մնացեալ ի հնազանդութեան արքային Հոռոմոց» և նոցա Օշինեաններին ցոյց տուած մշտական պաշտպանութիւնը Ռուբինեանների առաջ «փսէր հարազատ ընտանեացն», ինչպէս վկայում է նոյն Ներսէս Լամբրոնացին, այդ ամենը բացատրում է մեզ Պահլաւունի կաթողիկոսների համակրական զգացմունքները դէպի յոյները և նոցա ակնյայտնի սառնութիւնը դէպի Ռուբինեան հզօր տոհմը։ Իսկ Ներսէս Լամբրոնացին, որը ամենից աւելի էր զգում այն բոլոր զրկանքները և հալածանքները, որ կրել էին ոչ միայն նորա տոհմը այլ և հայրը և եղբայրը, ուղղակի անտարբեր է հանդիսանում դէպի ամեն ինչ, որ հայկական է և թշնամութեամբ է վերաբերւում դէպի Ռուբինեանները։ Այդ հանգամանքն էր պատճառ որ Լևոնը օգուտ քաղելով Գրիգոր Զ. Ապիրատի մահուանից, որ տեղի ունեցաւ Սսում, ուր Գրիգոր Ապիրատը եկել էր միջնորդելու Ներսէս Լամբրոնացու եղբայր Հեթումի համար, պնդում էր որ կաթողիկոսական աթոռը անառիկ Հռոմկլայից փոխադրուի Սիս մայրաքաղաքը, ուրտեղ նա կարող էր անմիջական ազդեցութիւն ունենալ թէ կաթողիկոսական ընտրութեան և թէ կաթողիկոսների գործունէութեան վերայ։

Թէև կաթողիկոսական աթոռը քաղաքական պատճառներով բուն Հայաստանից փոխադրուել էր Կիլիկիա և թէև այդ կաթողիկոսները հեղինակութիւն ունէին և համայն ազգից ընդունուած էին, այսու ամենայնիւ ամենքը և նոյն իսկ իրենք հայրապետները խոստովանում էին որ նոքա իրենց պատմական հողի վերայ չեն, զգում էին իրենց կախումը բուն հայրենիքում մնացած հայ

ժողովրդից և հոգևոր իշխաններից. այնտեղ էին փընտըռում իրենց բարոյական նեցուկը և ամեն կերպ աշխատում էին տարաձայնութիւնների և երկպառակութեան տեղիք չտալ: «Այլ եմք իբրև զայծեամն յորսորդաց և ի շանց փախուցեալք ի քարանձաւս յայս բնակելով»[1]) ասում է Ներսէս Շնորհալին: Մի ուրիշ տեղ նա հետևեալ կերպով է բացատրում հայրապետական աթոռի տարագրութիւնը. «Բայց քանզի աթոռ թագաւորութեան մերոյ, որով և քահանայապետականն իշխանութիւն յառաջանայ, բարձեալ է այժմ ի բռնակալութենէ այլազգեաց, նորին աղագաւ և հայրապետութեանս հալածեալ ի հայրենին աշխարհէ և յաթոռոյ, օտար աշխարհ տարաբերի պանդխտութեամբ»: Միևնոյն հոգևոր կախումը և միևնոյն զգուշութիւնը դէպի Մեծ Հայքի հոգևոր իշխանները զգում էին նաև Ներսէս Շնորհալու յաջորդները— Գրիգոր Տղան և ուրիշները, թէև ոչ նոյնպիսի քրիստոնէական հեզութեամբ և սիրով, որով օժտուած էր Ներսէս Շնորհալին: Զննելով քաղաքական ճնշուած վիճակին՝ հոգևոր կեանքը Մեծ Հայքում, մանաւանդ վրաց իշխանութեան տակ գտնուող մասում, ծաղկում և զարգանում էր, առաւելապէս Հաղբատում, Սանահնում և Զորագետում: Կիրակոսի վկայութեամբ, Գրիգոր կաթողիկոսի հայրապետութեան օրով «էին յարևելս արք անուանիք և գիտնականք», որոց թւումն էին Անանիա Շիրակացին, Յովհաննէս սարկաւագ վարդապետը, Դաւիթ Քոբայրեցին, Յովհաննէս Սանահնեցին, Մխիթար Գօշը և ուրիշ շատերը «աստի և անտի, հանդերձ երևելի քահանայիւք վանաց և քաղաքաց և գիւղից»[2]):

[1]) Շնորհ. Ընդհանր. էջ 147, 186.
[2]) Կիր. 63, 99—100.

Դէպի բոլոր այդ անձինք մեծ յարգանքով էին վերաբերւում Ներսէս Շնորհալին և Գրիգոր Տղան։

Այդպիսով հայրապետական գահի Կիլիկիայում գտնուելը համարւում էր հանգամանքներից յառաջացած թշուառութիւն, մի ժամանակաւոր դէպք։ Բայց միևնոյն ժամանակ, ինչպէս յիշեցինք, Մեծ Հայքում շարունակում էին բարգաւաճել նորանոր վանքեր, որտեղ ժամանակակից անձինք ապաստան էին գտնում աշխարհային արկածներից և անձնատուր էին լինում հոգևոր և մտաւոր զբաղմունքներին։ Այդ վանքերը վայելում էին բարոյական հեղինակութիւն նոյն իսկ այնպիսի անձանց համար, որպիսին էր Ներսէս Շնորհալին։

## Գ.

Կրօնական թշնամութեան սկիզբը հայերի և յոյների մէջ շատ հին է. դեռ ևս Ե դարում Ս. Սահակ հայրապետը գանգատւում էր Թէոդոս կայսեր որ «ոչ հանդիպեցայ ընդունելութեան յիմում վիճակիս 'ի կողմանէ վերակացուացս սոցա. այնչափ ատեցեալ զմեզ մինչև զնշանագիրս անգամ ոչ ընկալան [1])»։ Այդ թշնամութիւնը գնալով աւելի աճում էր։ Այն հանգամանքը որ հայերը չէին ընդունում Քաղկեդոնի ժողովը, որ մերժեցին նոյն իսկ յոյները Վասիլիս, Զենոն և Անաստաս (474—518) կայսրների ժամանակ, և յոյների հրաժարուելը Մարկիանոս կայսեր օրով օգնել հայերին Պարսից Յազկերտ արքայի դէմ, այդ հանգամանքները ահա տեղի տուին հայերի և յոյների փոխադարձ թշնամութեան։ Իսկ երբ յոյ-

[1]) Խոր. Գ. 57.

ները սկսեցին ուժով ստիպել Հայերին միանալ յունական եկեղեցու հետ Մաւրիկիոս, Հերակլէս և Կոստանդին Բ. կայսրների օրով (602—669)[1]), այն ժամանակ այդ թշնամութիւնը աւելի ևս սաստկացաւ[2]) և մեծապէս նպաստեց Արաբների իշխանութեան տարածման և հաստատման Հայաստանում։ Այդպիսի պայմաններում Կ. Պօլսի պատրիարքներից մի քանիսի փորձերը՝ բանակցել եկեղեցիների միութեան համար, ոչ միայն ոչինչ հետևանք չունեցան այլ և ստիպեցին Հայոց կաթողիկոսներին հեռու պահել իրենց որևէ յարաբերութիւն ունենալու կայսերական կառավարութեան հետ, որպէս զի չլինի թէ կասկածանքի ենթարկուին որպէս թէ ցանկանում են ընդունել Քաղկեդոնի ժողովը։ Յովհաննէս կաթողիկոսը բացատրելով թէ նա ինչու չկարողացաւ ընդունել կայսեր հրաւէրը Կ. Պօլիս գնալու՝ ասում է. «Բէպէտ և ստէպ հրաւիրակն կոչէր սիրալիր կամօք երթալ ի պալատն առ կայսր, սակայն ես ոչ կամեցայ, զմտաւ ածեալ թէ գուցէ գտցի ոք և ընդ ակամբ հայեսցի զանդ

---

1) Սեբէոս 52, 101, 141. Ղևոնդ 87—98.

2) Հայ պատմիչների վկայութեամբ Եզրը խաբուել էր նորանով որ կայսեր ուղարկած հանգանակի մէջ յիշուած չէր Քաղկեդոնի ժողովի մասին. բացի սորանից նա «մեծարեալ յարքայէն և ընկալեալ զերիր մասն գիւղաքաղաքին Կողբայ և զաղս նորա բովանդակաբար, դառնայ մեծաւ շքով ի տեղի իւր»։ (Յովհ. կաթ. 100)...» Սակայն ժողովուրդը ոչ միայն դիմադրեց այլ և յանդիմանեց Եզրին։ Իսկ Ներսէս կաթողիկոսը, Կոստանդին Բ-ի ժամանակակիցը, կայսեր հեռանալուց յետոյ ինքն էլ ստիպուած եղաւ հեռանալ՝ անկարող լինելով առանց կայսեր պաշտպանութեան շարունակել հովւութիւնը. «Յետ գնալոյ կայսեր, ասում է Ղևոնդը, երկուցեալ Ներսէս իցասմանէ իշխանացն, փախչէ ի Տայս»։

երթալն իմ՝ ի քաղկեդոնիտան յարակցել ինձ համարեալ. և ապա այսպէս ոչ կամեցայ գնալ ի գայթակղութիւն մտաց տկարաց»[1])։ Իսկ բռնի միջոցներով էլ ոչինչ չէին կարող անել յոյները քանի որ Հայաստանը գտնւում էր Արաբների իշխանութեան տակ։ Նոքա վախենում էին որ կրօնական հալածանքը աւելի ևս կմօտեցնէ հայերին արաբների հետ։ Բայց խալիֆայութեան անկումից յետ, յոյները նորից սկսեցին իրենց հալածանքները հայերի դէմ։ Այդպէս օրինակ Ռոմանոս կայսրը սպառնում էր բոլոր հայերին յունացնել և երբոր եկաւ Դարս՝ հրամայեց այրել այնտեղի փայտեայ եկեղեցին[2])։ Ալեքսիոս կայսրը, Մատթէոս Ուռհայեցու վկայութեամբ, «ի վերայ ազգիս յոյժ ատեցող երևեալ. սա գործեաց գործս, որ ոչ էր ըստ կամացն Աստուծոյ, հրամայեաց երկրորդ մկրտութիւն առնել և անարգեաց զՆիկիական մկրտութիւնն և զՔաղկեդոնի կարգն հաստատեաց և անամաչ զամենայն ազգն Հայոց մկրտէր»[3])։ Իսահակ Անգելոս կայսրը նոյնպէս «յարոյց հալածանս և չարչարանս ի վերայ հայադաւան ազգաց զի դարձցին յաղանդ նոցա»[4])։ Ժամանակակից հայ պատմիչների հաղորդած աւանդութիւնը յոյն մետրապօլիտի մասին, որը իւր շանը Արմէն անուն էր տուել, Գագիկի տուած չարաչար պատիժը այդ մետրապօլիտին և նոյն ինքն Գագիկի մահը—այդ ամենը բացայայտ կերպով ցոյց է տալիս յոյների և հայերի յարաբերութեան վիճակը խաչակրաց արշաւանքների ժամանակ։ Այս է պատճառը որ ոչ մի ժամանակակից պատմիչ յոյն բառը չէ արտա-

1) Յովհ. կաթ. եր. 357.
2) Վարդան 123.
3) Մատթ. Ուռհ. 432.
4) Վարդան 175.

սանում առանց հետևեալ ածականներից մէկի կամ մէկ քանիսի—նենգ, չար, վատ, պիղծ, կանացի, թուլամորթ, անողորմ, անիրաւ, դառնացեալ, Աստուածասպան եւայլն[1]). Աչքի առաջ ունենալով երկու Քրիստոնեայ ազգերի այդ դարաւոր թշնամութիւնը և վատ յարաբերութիւնները, Ներսէս Շնորհալին իւր առաջին պատասխանում Մանուէլ կայսեր, որը առաջարկում էր միացնել եկեղեցիները, հետևեալ խօսքերն է գրում. «Քանզի վեց հարիւր ամ աւելի եղելոյ ժամանակաց բաժանման ի միմեանց անդամոցս Քրիստոսի և ի մէջ յօդուածոցն յոլովագունից մտանելով ախտից ատելութեան և զօր ատելութիւնն ծնանիցի՝ թշնամանաց և հայհոյութեանց. և այսուքիկ կարծրացեալք և պնդեալք, մինչ զի երկրորդ բնութիւն հնացեալ սովորութեամբն լինել, կարօտ է բազում հոգևոր բժշկական իւղոց օծմանց, այսինքն՝ սիրոյ, գթութեանց և ողորմութեանց... այլ և ձեռօքդ եկեղեցական դասուց և ռամիկ ժողովրդոց հրամայեցէք ի բաց յայնպիսի պատերազմասէր բարուց լինել և սիրով և խաղաղութեամբ բերել առ նժդեհս և պանդուխտս, որք ի հակառակացն Քրիստոսի հալածեալք վասն արդարութեան առ.

---

1) Վարդանը (էջ 117) գովելով Լևոն կայսեր ասում է «այր առատ ի տուրս և ոչ նման Հոռոմի»: Իսկ Ներսէս Լամբրոնացին իւր ատենաբանութեան մէջ վկայում է թէ «հայն միշտ աղաղակէ, Աստուած իմ գոհանամ զքէն զի չարարեր զիս հոռոմ և հոռոմն զնոյն բան երկրորդէ՝ թէ որ ոչ արարեր զիս հայ»: Եր. 196—200: Մաղաքիա Աբեղան ասում է «պիղծ և ուրացող ազգն հոռոմոց, սուտ քրիստոնեայքն և ստոյգ քաղկեդոնիկքն եղեալ էին ի մտի քակել զվանորայս և զհաւատացեալսն ի յաղանդս նոցա պահել և զոչ հաւանեալսն բառնալ ի միջոյ»: Եր. 52.

*

ձեզ որպէս յամուր ապաստանի դիմեալք են խաղաղանալ։ Զի համբաւ այսպիսի բարեաց տարածելով յարևելեայս՝ անաշխատ իւրաքանչիւր ոգի յօժարեսցին ի սէր միաբանութեան գալ ինքնակամ հաճութեամբ. և մի՛ այլ լիցի որպէս մինչև ցայժմ պատճառ փախչելոյ մերոյ ի ձէնջ աւերումն եկեղեցեաց և սեղանոյ Աստուծոյ կործանումն և նշանաց Քրիստոսի խորտակումն և քաղաքաց նեղութիւնք պաշտօնէից և պէսպէս չարչարութիւնք որպէս և ոչ է մեզ նշանաւորաց Քրիստոսի, յորս մերձ էաք։ Զի այսպիսի գործ ոչ միայն և զբաժանեալսն միաւորէ այլ և զմիաւորեալսն պառակտէ ի միմեանց» [1]։ Ըստ ժամանակակից հայ և յոյն պատմիչների, Ներսէս Շնորհալին պատահմամբ հանդիպելով Մանուէլ Կոմնենոս կայսեր փեսայ պրոտոստրատոր Ալէքսէի հետ 1165 թուին խօսակցում են հայ և յոյն եկեղեցիների մէջ եղած տարաձայնութիւնների վերայ և այդ իբր թէ պատահական խօսակցութիւնը պատճառ է լինում կրօնական միութեան խնդրի նորից զարթուցանելուն. սակայն հազիւ թէ այդ դէպքը պատահական լինէր։ Ալէքսէի ցանկութեան համաձայն Ներսէս Շնորհալին գրաւոր կերպով տալիս է նորան իւր բերանացի արած բացատրութիւնները, որոնք բովանդակում են հայկական եկեղեցու դաւանութիւնը։ Մանուէլ կայսրը այդ դաւանագիրը ստանալով յատուկ մարդ է ուղարկում Գրիգոր Գ. կաթողիկոսին և խնդրում է որ նա ուղարկէ իւր եղբայր Ներսէսին բանակցելու եկեղեցիների միութեան համար։ Բայց դեսպանը կենդանի չէ գտնում Գրիգոր Գ-ին, իսկ Ներսէսն էլ այդ ժամանակ արդէն կաթողիկոս էր դարձած, այնպէս որ կայսեր խնդիրքը մնում է անգործադրելի։

---

[1]) Ընդհ. եր. 107—9.

Այսու ամենայնիւ Ներսէսը ուղարկում է Հայաստանեայց եկեղեցու վարդապետութեան աւելի ընդարձակ դաւանագիրը հանդերձ առանձին նամակով, որը վերջանում է հետեւեալ խօսքերով. «Այլ և զայս ևս հայցեմք ի ներող-քաղցրութենէ ձերմէ, զի թէ տնօրինեսցէ Աստուած մեզ խօսել առ միմեանս, մի՛ եղիցի որպէս տեառն առ ծառայս և ծառայից առ տեարս. զի դուք զմերն պակասութիւն դնէք մեր առաջի և մեք ոչ համարձակիմք ի ձերոց ինչ, յորոց գայթակղիմք, ծանուցանել ձեզ. և այս մարմնաւորաց է օրէն և ոչ հոգևորաց. զի թէպէտև նիւթականացս զբարձրագոյնն ունիք ամենայնիւ և յիմաստութիւն առաւելեալ քան զմեաւս, այլ աննիւթական շնորհաւն մի եմ հաւատացեալք ի Քրիստոս մեծամեծք և փոքունք՝ ըստ Պօղոսի» 1): Կայսրը ուղարկում է Շնորհալու մօտ Թէորիանին և Փիլիպպոպոլսի հայ քահանայ Յովհաննէսին՝ մականուանեալ Ութման: Շնորհալին պատասխանում է թէ առանց նախապէս համաձայնելու Հայաստանեայց եպիսկոպոսների հետ «անմարթ է կատարելապէս գրել պատասխանի... զի հիմն հաստատութեան մերոյ նոքա են» 2). Եւ այդ թղթի հետ միասին ուղարկում է նաև այն բոլոր հարցերի պատասխանները, որոնք առաջարկուած էին երկու եկեղեցիների մէջ եղած տարբերութիւնների առիթով: «Իսկ զկատարեալն բան, աւելացնում է Շնորհալին, յաղագս ամենայն խնդրոց որքան է ի միջի մերում անհաւասարութիւն ինչ, ի հաւաքումն ժողովոյն ըստ վերագրելոյդ՝ գրեալ տացուք առաջի սուրբ Թագաւորութեան Ձերոյ» 3): Այնու-

1) Ընդհ. 111.
2) Ներս. էջ. 147.
3) Ընդհ. 145.

հետև Ներսէսը «ժողովոյ հրաման հանէր յամենայն Հայաստանեայց. սակայն անքննին դատաստանն Աստուծոյ, ի նոյն ամի (1173) վերափոխէր զերանելի Հայրապետն» [1]։ Նորան յաջորդում է Գրիգոր Դ. Տղան, որը Մանուէլ կայսեր գրած առաջին նամակում ցոյց է տալիս իւրեն «նորին (Ներսէսի) է բանիցն աշակերտ և փափագող առ ի զչննուածսն աւարտել». յետոյ պատճառ բերելով հին ժամանակուայ «հնացեալ մախանացն չարութիւն», խնդրում է որ կայսրը իւր նախկին պահանջների թիւը պակասեցնէ. «Են բազումք, ընդ որս ոչ կարեմք խօսել» [2]) Կայսրը այդ նամակը ստանալով նախկին ինը կէտերը կրճատեց և թողեց միայն չորսը. և հրամայեց շուտով ժողով գումարել Հռոմկլայում։ Այդ ժողովը իսկապէս կայացաւ և նորա որոշումները ուղարկուեցին կայսեր։ Սակայն ճանապարհների վատութեան և անապահովութեան պատճառով (ինչպէս գոնէ ասումէին) պատգամաւորները տեղ չհասած վերադարձան յետ. իսկ երբ յաջորդ տարին կրկին նոր պատգամաւորներ գնացին, նոքա արդէն մեռած գտան Մանուէլ կայսրին, սորանով էլ վերջացաւ եկեղեցիների միութեան խնդիրը։ Ահա այդ խնդրի համառօտ պատմութիւնը։

---

1) Մեք զզուանքով մերժում ենք ստախօս յոյն Թէորիանոսի Ներսէս Շնորհալուն վերագրած նամակագրութիւնը կայսեր հետ, որի մէջ Շնորհալին իբր թէ խարդաւանում է թէ եկեղեցու և թէ հայ եպիսկոպոսների դէմ։ Առաւել ևս զարմանում ենք որ Հ. Ալիշանը հաւատ է ընծայում ստախօս յոյնի բարբանջանքներին և կարելի է համարում մի այդպիսի գործ հաշտեցնել այն գերազանց հոգեկան յատկութիւնների հետ, որը ինքը Հ. Ալիշանը վերագրում է Շնորհալուն։ Տես Ալիշան Ներս. Շնորհ. 424—8.

2) Անդ. 154.

Գլխաւոր պահանջը կայանում էր նորանում որ հայերը ընդունեն Քաղկեդոնի ժողովը հանդերձ Լևոն Ա. պապի տոմարով և խոստովանեն Քրիստոսի մէջ երկու բնութիւն, երկու կամք և երկու ներգործութիւն։ Մանուէլ կայսեր և Ներսէս Շնորհալու օրով այդ պահանջների թիւը հասնում էր իննի, որոնցով ի միջի այլոց կամենում էին ջնջել հայկական եկեղեցու առանձին և սեփական աւանդութիւնները. վերջին կէտը պահանջում էր որ կաթողիկոսը նշանակուի կայսեր հաստատութեամբ։ Հռոմկլայի ժողովը ընդունելով որ երկու եկեղեցիները միանգամայն համաձայն են, միևնոյն ժամանակ շատ անորոշ կերպով ասում է որ դաւանում են «զՔրիստոս յերկուց բնութեանց միաւորեալ» (այլ ոչ «յերկուս բնութիւնս», ինչպէս որ յոյներն են դաւանում), չեն յիշում Քաղկեդոնի ժողովը ընդունելու մասին, պնդում են հաղորդութեան խորհուրդը անխմոր հացով և անապակ գինով կատարելու վերայ և պահանջում են որ Հայոց կաթողիկոսի իշխանութեան տակ լինեն Անտիոքի պատրիարքութիւնը և նորա իրաւասութեան տակ գտնուող բոլոր արևելեան և արևմտեան եկեղեցիները։ Այդպիսով Հռոմկլայի ժողովը վճռեց ոչ թէ եկեղեցիների միութեան խնդիրը այլ միայն մշակեց այն պայմանները, որոնց հիման վերայ, ըստ կարծեաց այդ ժողովում մասնակցողների, կարող էր կայանալ միութիւնը։ Իսկ այդ պայմաններով հազիւ թէ կարելի լինէր միութիւն կայացնել եթէ մինչև անգամ կայսրը կենդանի լինէր։ Յունաց եկեղեցին ոչ Անտիոքի նման հին և մեծ վիճակը կարող էր թողնել հայերին և ոչ էլ կհամաձայնէր ընդունել հայոց առաջարկութիւնը հաղորդութեան խորհրդի վերաբերութեամբ։ Այդպիսով, ինչպէս Վարդան Բարձրբերդցին

է ասում, «Միայն գործն անկատար, որպէս ցուցանեն ըն-դարձակ մատենագիրք» [1]:

Ակներեւ է որ այդ բոլոր խնդրի իսկական շարժառի-թը կրօնական չէ եղել: Թէ Բիւզանդական կառավարու-թիւնը եւ թէ Հայերը, երկուսն էլ ունէին իրենց բուն ազգային եւ քաղաքական շարժառիթները: Այդ է պատ-ճառը որ անկեղծութիւն ասած բանը միանգամայն հե-ռու էր այդ յարաբերութիւններից: Մինչդեռ Շնորհալին եւ իւր համախոհները մի կողմից հաւատացնում էին կայ-սեր թէ Հայոց եկեղեցին միանգամայն համաձայն է յու-նականի հետ եւ թէ իրենք անկեղծ կերպով ցանկանում են օր առաջ իրագործուած տեսնել միութեան գործը, միւս կողմից նոքա անդադար համոզում եւ հանդարտեցը-նում են այդ բանակցութիւնների պատճառով յուզուած հայ ժողովրդին, հաւատացնելով որ նոքա հաստատուն կեր-պով կանգնած են իրենց մայր եկեղեցու վերայ եւ ոչինչ փոփոխութիւն չպիտի մտցնեն հայ եկեղեցու հայրերից հաստատուած կարգերի եւ վարդապետութեան մէջ: Նո-քա յայտնում են որ ստիպուած են այդ յարաբերութիւն-ները պահպանել որպէս զի տեղիք չտան հալածանքներ յարուցանելու այն բազմաթիւ հայերի դէմ, որոնք ապ-րում էին Բիւզանդական սահմաններում [2]: Ահա թէ ինչ է գրում Գրիգոր Տղայ կաթողիկոսը Տուտէորդու մեղադրանքների դէմ ուղղած պատասխանի մէջ. «Ունիս քեզ վարդապետս զբանս սրբոցն, զորս յիշատակեցեր ի

---

1) Վարդ. Բարձ. եր. 168.

2) «Գոն եւ յոլովք ընդ իշխանութեամբ նոցա ի մերայինս ազգէ քրիստոնեայք, եւ էին ի մեծի տարակուսանս յայս հարցա-փորձութիւն եւ աղմուկ»: Գրիգոր կաթ. պատ. վարդ. հիւս. 89.

վկայութիւն միա–ընեան բնա–ընեանցն. ընդունելիք են և աստուածահաճոյք և առ. իւրնէն երկրպագեալք և խոստովանեալք... զՔաղկեդոն ոչ գիտեմ և ոչ զԼևոն ճանաչեմ. իսկ եթէ բարիք են՝ անձանց և ժողովրդեանն և եթէ չարք՝ անձանց և ժողովրդեանն... Հաւատափոխք ոչ լինիմք, ըստ քոյդ տարակարծ մտաց» [1]։ Նոյն Գրիգոր կաթողիկոսը արևելեան վարդապետներին գրած թղթի մէջ հետևեալ խօսքերով է արդարացնում իրեն. «Եւ այսմ ամենայնի հակառակ և դիմամարտ ես էի յառաջն. և իմս գրով և բանիւ հազիւ ուրեմն ածի յայդ, զի անուանեցի զմեզ եղբարս զրպարտեալս ի միմեանց» [2]։ Իսկ մի ուրիշ տեղ էլ բացականչում է — «վասն զի հայ եմ ճշմարիտ և աներկբայ սրտիւ» [2]։

Անկեղծութեան բացակայութիւնը պարզ ապացուցանւում է և նորանով որ յոյների յետ համարեա թէ միաժամանակ սկսուել էին բանակցութիւններ նաև լատինների հետ։ Այդպէս օրինակ Գրիգոր Գ-ը մասնակցում էր Անտիոքում և Երուսաղէմում կայացած լատինական ժողովներին։

## Ե.

Հռոմկլայի ժողովում առանձնապէս աչքի է ընկնում Տարսոնի եպիսկոպոս Ներսէս Լամբրոնացին։ Նա, ինչպէս արդէն վերևը յիշուած է, ազգական էր պահլաւունի կաթողիկոսներին և շառաւիղ Լամբրոնի իշխաններին. հետևաբար իւր տոհմական աւանդութիւններով կուսա-

---

[1]) Գր. Տղ. Պատ. Տուտ. Վենետ. 1865.
[3]) Նոյ. 58.
[3]) Նոյ. 68, 77.

կից էր յոյների և հակառակորդ Ռուբինեան տան։ Այդ բանը պարզ երևում է Լևոն Թագաւորին գրած նամակի շատ տեղերում, որը ներկայացուցիչ էր բուն հայկական ազգային ինքնուրոյնութեան։ Այդ պատճառով մինչդեռ կաթողիկոսները միութեան խնդրին վերաբերւում էին միայն ձևականօրէն և այն էլ Բիւզանդական կառավարութիւնը չզրգռելու համար, Ներսէս Լամբրոնացին հոգւով և սրտով միանգամայն հասակից էր այդ գաղափարին։ Թէև նա իւր ձգտումների շարժառիթը ցոյց է տալիս քրիստոնէական սէրը, բայց նորա այդ սէրը աւելի հետևանք է կրօնական մի տեսակ անտարբերութեան։ «Գիտելի է իմաստուն քննողաց—գրում է նա Լևոն Թագաւորին—որ քրիստոնէից ազգք բացադրին ի միմեանց իւիք իւիք. իսկ շնորհն Աստուծոյ զօրացոյց զիս զայս ամենայն աւանդութիւնս նոցա գիտութեամբ արհամարհել և զսէրն նախապատուել. և է ինձ հայն որպէս զլատինացին և լատինացին որպէս զհելլենացին և հելլենացին որպէս զեգիպտացին և եգիպտացին որպէս զասորին… ընդ իւրաքանչիւրսն, որ միմեանց թշնամիք են, խառնիմ… որով բարեհռչակիմ և ի լատինացւոց եկեղեցիսն և ի հելլենացւոց և յասորւոց և ի Հայաստան. և ի սոսա անշարժ և ի նոցա աւանդութիւնն անփոփոխ… Փարիմք սիրով և զՀայաստանեօքս և զլատինացւովքն, զհելլենացւովքն և զամենեսեան մի գիտեմք ի Քրիստոս Աբրահամու հաւատոցն զաւակ՝ ըստ Առաքելոյ. և կարող եմ շնորհիւ գիտութեանն, զոր ունիմք ի սուրբ գիրս ափիբերան առնել զհելլենացին, թէ զհայն խորթեալ կարծիցէ յուղղափառութենէ. և զհայն՝ թէ զայլ ազգս» [1]։ Մեք դժուարանում ենք բացատրել թէ ինչպէս

[1]) Ներս. Լամբր. Թուղթ առ Լևոն 220—35.

կարելի է հաւատացող քրիստոնեայ լինելով` արհամարհել վերոյիշեալ եկեղեցիների մէջ եղած ծիսական և դաւանական տարբերութիւնները և ամեն մէկին առանձին առանձին ապացուցանել իւրաքանչիւր եկեղեցու ուղղափառութիւնը։ Առաւել ևս դժուար է հասկանալ Ներսէսի այն տեսակէտը, որով նա իւր թեմի մէջ մտցրած եկեղեցական նորափոխութիւնները համեմատում է այն փոփոխութիւնների հետ, որ թագաւորը մտցնում է իւր պալատի մէջ։ Նա ասում է որ ինքը պատրաստ է յետ վերցնել իւր մտցրած փոփոխութիւնները եթէ թագաւորն էլ համաձայնի դառնալ նախկին պալատական կարգերին։ «Արդ փոխեցէք Դուք զայս լատինացի ձևս և զանուանս ըստ Ձեր հարց և բարեզարդեցէք զՁեր արքունիսդ առաջնոցն սովորութեամբ և մեք հաւանիմք Զօրոգետացեացն և փոխեմք զմերս»[1]։

Մեք գիտենք թէ ինչ յարգ և ազդեցութիւն էին վայելում բուն Հայաստանում գտնուող եկեղեցականներից շատերը, մանաւանդ Հաղբատի և Սանահնի միաբանները[2]։ Հռոմկլայի ժողովը և Լամբրոնացու իւր թեմում թոյլ տուած նորափոխութիւնները տեղի տուին սաստիկ յուզման և բողոքի բոլոր հայերի և մանաւանդ Հաղբատի միաբանների կողմից, որոնք սպառնում էին մինչև անգամ նոր կաթողիկոս ընտրել իրենց համար։ Իսկ Զօրագետի միաբանները բողոքով դիմեցին նոյն իսկ Լևոն թագաւորին։ Ներսէս Շնորհալին արժանավայել կերպով ուշադրութիւն էր առնում նոցա յուզումները և խելացի բացատրութիւններով աշխատում

1) Idem 238—41.

2) Ներս. Շնորհալի և պարագայ իւր, Ղևոնդ Ալիշան. Վենետիկ 1873. Գլ. Ժ. ԺԲ. 262, 264, 270.

էր տեղիք չտալ որ և է տարաձայնութեան։ Գրիգոր Տղայն թէև աւելի պակաս չափով բայց նոյնպէս հաւատացնում և համոզում էր որ ինքը պաշտպան է Հայ եկեղեցու վարդապետութեան և մերժելով մերժում է թէ՛ Քաղկեդոնի ժողովը և թէ Լևոնի տոմարը։ Նա անդադար կրկնում էր թէ «Հայ եմ ճշմարիտ և աներկբայ սրտիւ»։ Տեսնենք այժմ թէ ինչպէս էր վերաբերւում Ներսէս Լամբրոնացին այդ բողոքներին և տարաձայնութիւններին. այն Լամբրոնացին, որը իւր իսկ ասելով ոգևորուած և առաջնորդուած էր միմիայն քրիստոնէական սիրով։

Թէև մեր գիտնական բարեկամ Կար. Կոստանեանի հաղորդած տեղեկութիւններից մեզ յայտնի է որ Էջմիածնի մատենադարանում գտնւում են Մեծ Հայաստանի եկեղեցականների Գրիգոր Տղային ուղղուած անտիպ նամակները, բայց մեր ձեռքում այս րոպէին գտնւում է միմիայն մի նամակ, որը տպուած է Կ. Պոլսում 1825 թուին և արտատպուած է Երուսաղէմում 1876-ին։ Ահա թէ ինչպէս է սկսւում այդ գրութիւնը. «Սուրբ և Աստուածընկալ գլուխ մեր և պսակ պարծանաց Հայաստանեայց Գրիգոր կաթողիկոս, ամենանուաստ աղօթող աշակերտքս Լուսաւորչական Աթոռոյդ»... Այդ խօսքերից յետոյ մեծ պատկառանքով թոյլ են տալիս իրենց նկատել թէ «մեք զարմացաք վասն ձերոյդ կատարեալ իմաստութեան թէ զի՞րդ ոչ նախ ծանուցէք մեզ զձերն վասն հաւատոց նամակ առ նոսա. զի թէև գլխոյ է կենդանական զօրութիւն անդամոց մարմնոյ, այլ ոչ ներգործէ ինչ գլուխ առանց նոցին իսկ կարևորացն անդամոց յիւրոց ինչ անդաւոր գործոց։ Գիտեմք զի բաւական ես լցեալ հանճարով ուղղել զթիւրութիւն եթէ լինիցի. սակայն ի մերս դաւանութիւն չտեսանեմք ստիրիւր և զարտուղի ի նախնի

Հայոց վարդապետութենէ վասն սորին այսմիկ աշխատողաց հոգւոյն։ Այնուհետև գալիս է հերքումը յոյների առաջարկութեան՝ երկու բնութեանց և այլ խնդիրների մասին։ Նամակը վերջանում է հետևեալ խօսքերով. «Այլ զայս գրելով առ ձեզ ոչ ծանուցանելոյ վասն ձեզ զանգիտացեալն ի սոցունց, քանզի յաւէտ քան զբնաւս դու քաջ տեղեակ ես յայնոսիկ, այլ զի ծանիցի պահանջողացն զայս ոչ երկձայնս զհայաստանեայցս գոլ, այլ նոյնախորհ և միաբանեալ ընդ պատուիրանիդ գլխոյ։ Իսկ Դու, ով Աստուածարեալդ, որպէս ունիս զիմաստս և գիտակ ես ամենայնի, նաև աւանդապահ ճշմարիտ հայրենի աւանդութեան, այսպիսեօքս վայելչապէս պատասխանեսցես, որպէսզի չեմք ցանկացեալք մարմնականին պատուոյ և փառաց այլ որ առ ի միոյն Աստուծոյ»։

Մեք այդ կտորը մէջ բերինք ցոյց տալու համար մի կողմից հայկական եկեղեցու վարդապետութեան և անկախութեան պաշտպանների բարձր զգացումները և պատշաճաւոր ու վայելուչ լեզուն, միւս կողմից նոցա հակառակորդների գործ դրած խօսքերը և ձևերը։ Մեք մի կողմ ենք թողնում Գրիգոր Տղային, որը իւր պատասխանների մէջ չէ կարողանում միշտ հանդարտ և պաղարիւն մնալ ու շատ անգամ ընկնում է յուզման և բարկութեան մէջ, ինչպէս որ բնական է այն դէպքերում երբ մարդ ինքն իրեն միանգամայն անպարտ չէ զգում։ Անցնենք Ներսէս Լամբրոնացուն, որը Լևոն Թագաւորին ուղղած բացատրութեան մէջ հետևեալ կերպով է խօսում իւր հակառակորդների մասին—«Տխմարք և անկարգք և յիմար բանից շաղակրատողք, որ և բուն տգէտքն կարող են յայս երկրաքարշութիւնս զնոսին ճանաչել... լեզուագարք և անդուռն բերանք... այք, որոց բերանքն

անիծիւք և դառնութեամբ լի են, որ զԹոյնս իժից ունին ի ներքոյ շրթանց, որոց երագք են ոտք հեղուլ զարիւն, որք զճանապարհ խաղաղութեան ոչ ծանեան և ոչ երկիւղ առաջի աչաց նոցա... որք իբրև զշունս լիրբս հաջեն...» [1]): Համեմատութիւնը կատարեալ անելու համար չմոռանանք յիշել նաև որ Լամբրոնացին շատ անգամ վերագրում է իւրեն կատարեալ իմաստութիւն և պարծենում է իւր ազնուական ծագումով [2]):

Մեզ մնում է ցոյց տալ և այն դիտումները, որոնցով Ներսէսը աշխատում է արդարացնել իւր նորամուծութիւնները: Նա ասում է. «ի մտանելն (յունաց) ի մեր եկեղեցիս տեսանեմք զնոսա հաւատով երկրպագող և զՅիսուս չէ ընծայեն և լուսաւորեն և խնկեն և յիշեն, որ, Աստուծով ասեմ, ի նոցին ընծայաբերութենէն առնու Տարսոնի եկեղեցւոյն և վանիցս մեր օր ըստ օրէ պէտքն ի մոմեղինէ և ի խնկէ [3])... Ոչ է արտաքոյ բանիս և զայս ասել. յեցեսցուք զդրդուեալ եկեղեցի մեր ի զաւաղանն երկաթի, ստասցուք զօրավիգն գիրութեան մերոյ զնպատակն աշխարհի: Տառապանքս՝ հաւատամք զի մխիթարի ի շտեմարանացն արքունի և տարբերութիւնս՝ ի նաւահանգիստն անմատոյց» [4]) Ներսէսի մտումներին և գաղափարներին չէին համակրում ոչ միայն ժողովուրդը և եկեղեցականները այլև Թագաւորը և մինչև անգամ Գրիգոր Տղայն: Այդ երևում է նոյն իսկ Ներսէսի խօսքերից, որը Լևոնին ուղղած նամակում մէջ է բերում

[1]) Ներս. Լամբր. Թուղթ. առ Լևոն. եր. 209, 219, 228.

[2]) Id. եր. 211, 225.

[3]) Id. եր. 238.

[4]) Ատենաբանութիւն. եր. 194—195.

նաև Թագաւորի հրամանագրի բովանդակութիւնը։ «Տէրն իշխողն մեր Հեթում և եբեր առ իս ի ձեռն պատուէր հրամանի որպէս առ տհաս մանուկ, և յայս համառօտեան բանքն թէ անկարգ է իմ ընթացքս և անօգուտ և չէ ընդ շաւիղս երանեալ հարց մերոց Գրիգորիսի վկայասիրի և նորին համանուանն, որ յԵգիպտոս և որ զկնի նորին աստ հայրապետ Գրիգորիոս և նորին եղբայրն Ներսէս. և ես ստերիւրեալ գնամ ի նոցա շաւղաց և Դուք և այլ Հայք նոցին ընթացակիցք... Դուք աղաչեցէք զմեզ վասն զնոցա (Զորոյգիտացեացն) զայթակղութիւնն շինելոյ զառնալ ի մոլորմանէս. ապա թէ ոչ զրկիմք ի պատուոյն, զոր մինչև ցայժմ ի ձեռն եմք ընկալեալ» 1)։ Ինչպէս յիշեցինք Գրիգոր Տղայն նոյնպէս դատապարտում էր Ներսէսի ընթացքը. Լամբրոնացին ինքը ասում է իբր թէ «առաջին կաթուղիկոսն տէրն իմ Գրիգոր, որ առ Քրիստոս փոխեցաւ, ի ժամ վախճանին զայս ասաց թէ հարստահարեալ եմ ես զքո մարդասիրութիւնդ մարդահաճոյ կամօք» 2)։

Այդ բոլոր փաստերի հիման վերայ Ներսէս Լամբրոնացին ներկայանում է մի այնպիսի անձնաւորութիւն, որը իւր գործունէութեան մէջ առաջնորդւում էր ոչ այնչափ քրիստոնէական եղբայրսիրութեամբ, ինչպէս ինքն է աշխատում հաւատացնել, որչափ իւր անձնական կրքերով. նա չէր խնայում իւր հակառակորդներին և չէր քաշւում վիճաբանութեան ժամանակ ամբաստանել և դատապարտել նոցա այնպիսի մեղադրանքներով, որոնք ոչինչ կապ չունէին բուն խնդրի հետ։ Զափազանց

1) Ներս. Լամբր. Թուղթ առ Լևոն. եր. 213—14.
2) Idem եր. 231.

սիրահար էր դէպի օտարինը և ամեն տեղ ընկած էր ժողովրդականութեան ետևից. այս է պատճառը որ նա հաւասարապէս հաշտւում էր բոլոր եկեղեցիների վարդապետութիւնների հետ նոյն իսկ ամենաէական հարցերում։ Նա սնափառ էր և փառասէր, միևնոյն ժամանակ՝ հակառակ իւր կոչման՝ հեռու չէր աշխարհային շահերից։ Սակայն բոլորովին այլ կերպ են ներկայացնում նորան լատինացիները և առհասարակ նոքա, որոնք չեն համակրում Հայաստանեայց եկեղեցու անկախութեան գաղափարին։ Գալանուսը նորան համարում է արժանի յաւիտենական փառաբանութեան [1]), իսկ Մխիթարեանները գովում և փառաբանում են նորան։ Հ. Ղևոնդ Ալիշանը իւր Սիսուան աշխատութեան մէջ նուիրել է նորան մինչև անգամ մի առանձին «Գրուագ ի տուրքն և ի սիրելի Ներսէս Լամբրոնացի» [2]), որի մէջ անչափ՝ գովաբանելով թւում է նորա այն գործերը, որոնք իսկապէս դատապարտութիւն պէտք է լինեն Լամբրոնացու համար, ինչպէս են օրինակ նորա հայհոյութիւնները իւր հակառակորդների դէմ։ Ընդհակառակը Հ. Ալիշանը դատապարտում է Լամբրոնացու հակառակորդներին այնպիսի ընթացքի համար, որ կարող է միայն պատիւ բերել նոցա. այդպէս է օրինակի համար Գրիգոր Տուտէորդու հակառակամութիւնը հզօր Զաքարիայ սպասալարի պահանջների վերաբերութեամբ։ Զարմանալի է որ Նեյմանը իւր Լամբրոնացու առենաբանութեան թարգմանութեան յա-

---

[1]) Cujus egregia virtus digne plane est ut aeterna laude illustratur, nomenque ad ultimus terrarum partes immortali fama pervehatur. Galani Concil. ecclesiae Armenae cum eccles. Romae I. 325.

[2]) Սիսուան եր. 86—95.

առաջաբանում, չնայելով որ նա օգուտ է քաղել միմիայն Մխիթարեանների հրատարակութիւններից և կաթոլիկ աղբիւրներից, և այն էլ այն ժամանակ (1834) երբ Հայ պատմիչներից շատերը դեռ լոյս ընծայուած չէին, այսուամենայնիւ հասկացել է որ Ներսէս Լամբրոնացուն շռայլուած գովասանքները ներշնչուած են կուսակցական ոգւով[1]։ Մինչդեռ Էմինը կուրօրէն հետևելով կաթոլիկներին, մինչև անգամ կրկնում է որ իբր թէ Հայաստանեայց եկեղեցին սրբերի շարքումն է դասում Ներսէս Լամբրոնացուն. թէև յայտնի է որ ամեն անգամ երբ բարձրանում էր Հայոց եկեղեցին լատինականի հետ միացընելու խնդիրը, այդ բանն էլ լատինացւոց պահանջներից և պայմաններից մէկն էր դառնում և միշտ էլ՝ միւս պահանջների պէս՝ մնում էր առանց հետևանքի[2])։

[1]) Synodalride des Nerses von Lambron. Aus dem Armenischen übersetzt von D. C. F. Neumann. Leipzig 1834 Einleitung 10.

[2]) Տես Синодальное слово Нерсеса Ламбронскаго, Арх. Тарсонскаго. Перев. съ арм. Н. Эминъ. Москва, 1865. Այդ թարգմանութեան յառաջաբանում Էմինը ցոյց է տալիս կատարեալ անծանօթութիւն Կիլիկիայի Հայ թագաւորութեան և այն ժամանակուայ շրջանի հետ։ Ներսէս Շնորհալու, Գրիգոր Տղայի և Ներսէս Լամբրոնացու գործունէութիւնը նա համեմատում է այն անձանց գործունէութեան հետ, որոնք մի ժամանակ պատերազմ մղեցին Պարսից Յազկերտ թագաւորի դէմ և որոնք նորա ասելով «պաշտպանելով իրենց եկեղեցու անկախութիւնը, սորանով պաշտպանած էին լինում և իրենց քաղաքական անկախութիւնը»։ Նա կարծում է որ Ներսէսները և Գրիգորը «մտածում էին պաշտպանել իրենց հայրենիքի քաղաքական ինքնուրոյնութիւնը»։ Իսկ մեք տեսանք որ նոքա ընդհակառակը նպաստեցին իրենց հայրենիքի անկախութեան թշնամիների ազդեցութեան զօրանալուն։ Այնուհետև Էմինը ասում է թէ «նոքա երկուսը (Ներսէս

Բոլոր այդ բանակցութիւնները տեղի էին ունենում 1166—1179 թուականներին՝ Թորոս Բ-ի, Մլեհի և Ռուբէնի թագաւորութեան ժամանակ, որոնք միշտ հակառակ լինելով յոյներին՝ ի հարկէ չէին կարող համակրել յունասիրական ձգտումներին, թէև միևնոյն ժամանակ անզօր էին բացայայտ կերպով դէմ դնել այդ ուղղութեան: Բայց երբ իշխանութիւնը անցաւ Ռուբէնի եղբայր Լևոն Բ-ին, որ իմաստուն թագաւոր, քաջ զօրական և նուրբ քաղաքագէտ էր, այն ժամանակ Լևոնը վճռեց մէկ անգամից վերջ դնել յոյների խորամանգ ցանկութիւններին և յունասէրների ձգտումներին: Նա հասկացաւ որ փոխանակ իւր դարաւոր թշնամի բիւզանդական իշխանութիւնից կախումն ունենալու աւելի ձեռնտու է աւատական կախումն ունենալ հեռաւոր Գերմանական կայսրից, որը հէնց ինքը կարօտ էր Լևոնի աջակցութեան: Այդ մտքից դրդուած նա մի խիստ նամակ ուղղեց Ներսէս Լամբրոնացուն հրամայելով «դառնալ իմոլորմանէ, ապա թէ ոչ զրկելոց է ի պատուոյն»: Նմանապէս միջոցներ ձեռք առաւ աւելի ևս հաստատելու կաթողիկոսի կախումը թագաւորական գահից: Միևնոյն ժամանակ նա սկսեց բանակցել Հռոմայական կայսրի և պապի հետ, որոնք դեռ ևս առաջնորդ

(Շնորհալին և Գրիգոր Դ-ը) երկու եկեղեցիների միութիւնը համարում էին միակ միջոց՝ իրենց հայրենիքը եգիպտացիների աւերիչ ասպատակութիւններից ազատելու համար»: Դժուար է հասկանալ թէ եկեղեցիների միութիւնը ինչպէս կարող էր փրկել հայրենիքը քանի որ յոյները երբէք չէին գալ հայերի օգնութեան: Բացի սորանից եգիպտացիների ասպատակութիւնների մասին չէր կարող խօսք լինել քանի որ այդ ասպատակութիւնները տեղի են ունեցել շատ յետոյ:

և վարիչ էին համարում այն շարժման, որի նպատակն էր պաշտպանել քրիստոնէութեան շահերը Արևելքում։

## Զ.

Քրիստոնեաներին մուսուլմանների դէմ պատերազմի կանչելու գաղափարը, որը առիթ եղաւ խաչակրաց արշաւանքին, ծագումն առաւ Օթոն Բ. կայսեր օրով։ Այդ գաղափարից կամեցաւ օգուտ քաղել Գրիգոր Է. պապը, որը չբաւականանալով հոգևոր իշխանութեամբ ձգտում էր նաև համաշխարհային քաղաքական իշխանութեան։ Նա կամենում էր այդ ձեռնարկութեան քաղաքական ղեկավարութիւնը ձգել իւր ձեռքը որպէս զի ծառայեցնէ նորան պապութեան օգտին։ Իւր հայրապետական թղթերի մէջ նա հրաւիրում էր նուաճել Փոքր Ասիայի սելջուկներին և պաշտպանել Կ. Պօլիսը. սուրբ վայրերի ազատութիւնը յետոյ միայն դարձաւ ձեռնարկած արշաւանքի նպատակ։ Կ. Պօլսի պաշտպանութեան փոխարէն յունական եկեղեցին պէտք է ենթարկուէր պապի գերիշխանութեան, իսկ այդ հանգամանքը՝ Գրիգոր Է-ի կարծիքով՝ պէտք է նպաստէր միացնել Հռոմայ գահի հետ նաև հայերին և արևելքի այլ քրիստոնեաներին։ Այդ մտքերից դրդուած Գրիգոր Է-ը գրագրութիւն սկսեց Գրիգոր վկայասէր կաթողիկոսի հետ [1])։

[1]) Մենք աւելորդ ենք համարում կանգ առնել Մխիթարեաններից մի քանիսի յայտնած կարծիքի վերայ, որոնք աշխատում են այդ բանակցութեան հիման վերայ ապացուցանել հայկական եկեղեցու հպատակութիւնը Հռոմայ աթոռին։ Այդ ենթադրութիւնը աւելորդ է մինչև անգամ հերքել, քանի որ միանգամայն անհիմն է և հնարած է տգէտնե-

*

Այնուհետև մինչև ԺԲ. դարու կէսը ոչինչ տեղեկութիւն չենք գտնում Հայերի և Հռոմէական աթոռի յարաբերութիւնների մասին: Լուկիոս Գ. պապը 1184-ին ուղարկում է մի թղթակցութիւն Գրիգոր Տղայ կաթողիկոսին, իսկ 1189-ին Կղեմէս Գ-ը դիմում է Լևոն թագաւորին և նոյն Գրիգոր Տղային. բայց այդ բանակցութիւնները, մանաւանդ վերջինը, վերաբերում են գլխաւորապէս քաղաքական խնդիրներին: Կղեմէս Գ-ը խընդրում է օգնել և օժանդակութիւն ցոյց տալ այն խաչակիրներին, որոնց Փրեդերիկոս Բարբարոսան առաջնորդում էր Սալադինի դէմ՝ Փրկչի գերեզմանը ազատելու նպատակով: Փրեդերիկոսը դեռ ևս ճանապարհից երեք անգամ դիմելով Լևոնին և կաթողիկոսին խնդրում էր նոցա աջակցութիւնը: Լևոնը և կաթողիկոսը ընդունելով Փրեդերիկոսի խնդիրքը մեծ քանակութեամբ պաշար ուղարկեցին նորա բանակի համար, որը այդ ժամանակ ուտեստի պակասութեան պատճառով սովամահ էր լինում: Փրեդերիկոսը խոստացաւ Լևոնի աշխարհը հասնելուն պէս վարձատրել նորան թագաւորական կոչումով: Երբ նա հասաւ Սելևկիա՝ նորա առաջը դուրս եկան Լևոնը և կաթողիկոսը, որի մարդկանց թւում գտնւում էր և Ներսէս Լամբրոնացին:

Լսելով Փրեդերիկոսի հետ պատահած դժբաղդութիւնը և մահը, Լևոնը իւր մարդկանցով վերադարձաւ Տարսոն և շարունակեց օժանդակել խաչակիրներին: Այդպիսով Լևոնի թագաւորութիւնը յետաձգուեց[1]: 1194

---

րին խաբելու համար: Տես Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս և միութեան նորա ընդ եկեղեցւոյն Հռոմայ. Եղ. Պալճեան, Վիեննա 1878, գլ. Զ.

[1]) Վարդան. եր. 178.

թուին Լևոնը պատգամաւորներ ուղարկեց կայսեր և պապին՝ յիշեցնելու համար Փրեդերիկոսի խոստումը, որ խոստացել էր վարձատրել նորան թագաւորական թագով։ Առաջ ենք բերում այստեղ մեր ճշմարտախօս պատմաբան Կիրակոսի խօսքերը, որը անցնելով Լևոնի թագաւորութեան պատմութեան՝ ասում է. «Որ ինչ մինչև ցայս վայր էր պատմութիւնս երկօք աշխատութեան հաւաքեալ ի նախագրելոց. իսկ որ առաջիկայս մեզ ասպարէզ պատմութեանս՝ է՛ որ ականջալուր և է՛ որ ականատես»։ Այնուհետև յիշելով Լևոնի ուղարկած պատգամաւորութեան մասին, շարունակում է. «Եւ առաքեն նմա կայսրն և պապն հռովմայեցւոց թագ ազնիւ՝ զառաջին թագաւորացն և արծուէս մի պատուաւոր այսինքն արքեպիսկոպոս դնել զթագն ի գլուխ նորա. երկս իրս պահանջել ի նմանէ—տօնել զտօն Տեառն և ամենայն սրբոց յորում աւուր և հանդիպի. և միշտ յեկեղեցւոջն կատարել զաղօթս տունջեան և գիշերի, զոր ի վաղուց հետէ ոչ առնէին հայք ի հինահայրութեանցն Իսմայէլի, բայց միայն ի ժամ Ս. Պատարագին. և ոչ լուծանել զճրագալոյցսն բայց միայն ձկամբք և ձիթով. և յորժամ առնիցէք զայդ ոչինչ փոյթ մի առնիցէք զորոց և զընծայից կայսերն և պապին վասն թագին. ապա թէ ոչ առնիցէք հրաման ունիմ, ասէ, անչափ գանձս առնուլ ի ձէնջ ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց։ Իսկ Լևոնի կոչեալ զկաթողիկոսն և զեպիսկոպոսունս հարցանէր՝ թէ զինչ պատասխանի տացէ պատգամին Հռովմայեցւոց. և նոքա ոչ հաւանեցան առնուլ զխնդիրն. և ասէ ցնոսա Լևոն՝ դուք մի՛ ինչ հոգայք վասն այդորիկ. ես հաճեցից զմիտս նոցա առ անգամ մի կեղծաւորութեամբ։ Եւ պատասխանի արարեալ Լևոնի ասէ ցնո-

պիսկոպոսն Հռոմայեցւոյ. զոր ինչ հրամայէ ինքնակալ կայսրն և մեծ պապն անյապաղ առնեմք զամենայն։ Եւ նորա երդուեալ պահանջեալ ի նոցանէ երկոտասան եպիսկոպոսաց. և հաւանեցոյց Լևոն զեպիսկոպոսունս յանձն առնուլ զերդումն։ Եւ արարին եպիսկոպոսունք զբան երդմանն, յորոց մի էր Ներսէս եպիսկոպոս Տարսոնի Լամբրոնացի»... [1]։

Երևմտեան պատմիչների խօսքով Կեղեստին Գ. պապը ուղարկեց օծեալ ոսկի Թագ. իսկ Հենրիկոս Գ. կայսրը վարձատրեց պատգամաւորներին առատ ընծաներով և հողերով և խոստացաւ խաչակիրների գլուխը անցած անձամբ գալ և ներկայ լինել Թագադրութեան հանդէսին։ Լևոնի օրինակին հետևելով Կիպրոսի Ամալրիկոս Լուսինեան իշխանն ևս պատգամաւորների միջոցով խընդրեց Հենրիկոս Գ-ին բարձրացնել իրեն Թագաւորական աստիճանին։ Հենրիկոսը չկարողացաւ իրագործել իւր խոստումը և իւր փոխանակ խաչակիրների առաջնորդութիւնը ու Լևոնի և Ամալրիկոսի Թագադրութիւնը յանձնեց կայսրութեան կանցլեր Հիլդշէյմի արքեպիսկոպոս Կոնրադին, որը 1197 Թ. սեպտեմբեր ամսին ճանապարհ ընկնելով Մեսսինայից կանգ առաւ Կիպրոսում և Ամալրիկոսին Թագադրելուց յետոյ անցաւ Ակրայ։ Լևոնը պատգամաւոր ուղարկեց նորա մօտ Բեյրութ քաղաքը և խնդրեց շտապեցնել իւր Թագադրութիւնը. նա էլ անձամբ անկարող լինելով կատարել Լևոնի խնդիրքը իշխանութիւն տուեց Մայնցի արքեպիսկոպոս Կոնրադ Վիտտելսբախին յանուն կայսեր պսակել Լևոնին Թագաւոր։ Այդպիսով 1198 Թ. Յունուարի 6-ին Լևոնը

[1] Կիրակ. եր. 91—92.

Գրիգոր Ապիրատ կաթողիկոսի ձեռքով Տարսոնի Ս. Սոփիայ եկեղեցում օծուեց թագաւոր։

Բիւզանտիայի կայսրից եւս ընդունելով արքայական թագ, Լեւոնը պատգամաւորութիւն ուղարկեց Կ. Պօլիս իւր շնորհակալութիւնները յայտնելու և բանակցելու եկեղեցական խնդրի մասին, որը յոյները միշտ աշխատում էին վճռել իրենց օգտին։ Այդ պատգամաւորութեանը մասնակցում էին «պարոն Հայկամ քեռի Լեւոնի, եղբայր տեառն Պապեռոն բերդին, պարոն Գօղոս ոմն» և Ներսէս Լամբրոնացին, որին թագաւորը հաւանականաբար պատուիրել էր զգոյշ լինել իրեն յատուկ օտարասիրութիւնից։ Սակայն այդ բանակցութիւնը ոչինչ հետեւանք չունեցաւ. Լամբրոնացին վերադարձաւ վերին աստիճանի անբաւական մնալով յոյներից։ Ներսէս Լամբրոնացու մասնակցութիւնը այդ պատգամաւորութեան մէջ պարզ ցոյց է տալիս որ Լեւոնը իսկապէս ոչինչ հետեւանք չէր սպասում սկսած բանակցութիւնից։ Հայ եկեղեցին և հայ ժողովուրդը ոչ մի ժամանակ չէին ընդունիլ Ներսէս Լամբրոնացու կայացրած համաձայնութիւնը, քանի որ ոչ մի հաւատ չունէին դէպի նա։ Լեւոնը ուղարկելով Կ. Պօլիս բիւզանտական կառավարութեանը հաճելի եղած մի անձնաւորութիւն՝ կամենում էր սորանով հեռացնել յոյների ուշադրութիւնը պապի և կայսեր հետ սկսած բանակցութիւններից, որոնք աւելի համապատասխան էին նորա քաղաքական շահերին։ Լեւոնի բարեպաշտութիւնը [1]), նորա հաւատարմութիւնը հայկա-

[1]) «... եւ էր բնութեամբ բարի, ողորմած, աղքատասէր... սիրող եկեղեցեաց և պաշտօնէից Աստուծոյ. կարգէր վանորայս ընդ ամենայն կողմանս տէրութեան իւրոյ և բազմացուցանէր զպիտոյս նոցա... յորոց մի է ի վանորէիցն Ակ-

կան եկեղեցուն, որին յայտնի ապացոյց են նորա կառուցած վանքերը և Ներսէս Լամբրոնացուն ուղղած խօսքերը նոյնպէս և նորա յարաբերութիւնը դէպի պապի նուիրակի պահանջները և դէպի նոյն իսկ Իննովկենտիոս Գ. պապը, որի սպառնալիքը և անէծքը Տաճարականների և Անտիոքի իշխանի հետ ունեցած կռուի առիթով նա միանգամայն արհամարհեց—այդ ամենը պարզ ապացոյց է որ նա իւր սկսած բանակցութիւններով Հռոմայ աթոռի հետ աչքի առաջ ունէր միմիայն իւր երկրի քաղաքական շահերը և ոչ թէ, ինչպէս Հ. Գ. Ալիշանն է պնդում, ցանկանում էր «որդեգրել ընդ անձինն և զնորապսակ թագաւորութիւն ազգին ընդհանրական քահանայապետին Հռոմայ»[1]) և կամ իւր շահերը կամենում էր զոհել «ի հաճոյս քահանայապետին[2])... ի պատիւ վեհագունի անձին Քահանայապետին Հռոմայ, զոր ոչ միայն իւր հարանց հայր ճանաչէր այլ և յԱստուածուստ թագամատոյց»[3]):

---

ներն կոչեցեալ վանք, զոր կարգեաց նա հուչականուն, որ և մինչև ցարդ ևս վարի նովին կարգադրութեամբ»: Կիրակոս եր. 93.

Նոյնը վկայում է և Միքայէլ Ասորին. «... այր բարի և ազատամիտ և արիական և հեզ և մեծահաւատ, որ և բազմացոյց զարդիւնս աստուածպաշտութեան, ելից վանօրայիւք և անապատաւորօք զաշխարհն իւր և շինուածօք եկեղեցեաց. զմասն աղնիւ և զպարարտութիւն երկրի իւրոյ տալով նոցա և նուիրելով Աստուծոյ արձանագրութեամբ և կտակօք անլուծիւք»: Միք. Ասորի եր. 504.

1) Սիսուան. եր. 466, 468.

2) Նոյն. եր. 501.

3) Նոյն. եր. 503.

Իւր հրովարտակների մէջ Լևոնը կոչւում է Dei et Romani

Եդեսիայի իշխանութեան և Երուսաղէմի թագաւորութեան անկումից յետոյ, երկու քրիստոնեայ նոր թագաւորութիւնների ծագումը նպաստաւոր էր Փոքր Ասիայի քրիստոնէութեան համար։ Պապը ինքը կարօտ էր Լևոնի օգնութեան և աջակցութեան, քանի որ Փոքր Ասիայի քրիստոնեայ իշխանների մէջ նա ամենահզօրն էր. այս է պատճառը որ նա բաւականացաւ միայն 12 եպիսկոպոսների խոստմամբ և ուրիշ ոչ մի պահանջ չունէր և չէր էլ կարող ունենալ։ Ի զուր է հայր Ալիշանը տարակուսում Ճշմարտապատում Կիրակոս պատմագրի խօսքերի վերայ ենթադրելով որ «էին պահանջք գահուն Հռոմայ և խոստմունք կաթողիկոսին—և թէ—յաւուր միում յերեան գայցեն յիշատակարանք իրացս...»[1]։ Բայց եթէ Լևոնի կենդանութեան ժամանակ պապը չէր համարձակում պահանջել Հայոց եկեղեցու հպատակութիւնը Հռոմայ գահին և բաւականանում էր լոկ Լևոնի անորոշ խոստումներով, որ խոստանում էր աշխատել նպաստել այդ հպատակութիւնը գլուխ բերելու[2]), սակայն Լևոնի

---

imperii gratia rex Armeniae և կամ լոկ Dei gratia rex. իսկ «քահանայապետի որդեգրութեան» մասին ոչինչ չէ յիշում։

[1]) Նոյն. եր. 468—9.

[2]) Միևնոյնը յայտնում է և Գրիգոր Ի. կաթողիկոսը Իննովկենտիոս Գ. պապին գրած նամակում. «Զսահմանադրութիւնս ս. եկեղեցւոյ Հռոմայ Տեառն Յ—Ի+ ընկալաք և զայն ամենայն [illegible] է մէնջ [illegible] և օգնականք և սփռեալք ընդ աշխարհ և անհնարինն իսկ է յարդիւնս ածել զայն առանց խորհրդականաց, վասն այնորիկ ի ժողովել համօրէն առաջնորդաց եկեղեցեաց կամ բազմագոյն մասին ի սահմանեալ ժամանակի, նոցա հաւանութեամբ, յորժամ [illegible], խոստացաք ընդունել զի մի գայթակղութիւն ինչ ծնանիցի յեկեղեցւոջ»։ Տես Պատմ. կաթ. վարդ. ի Հայս Ս.Ղ. Պալճեանի. եր. 59—60.

թոյլ յաջորդների օրով այդ խոստումը արդէն առիթ էր տալիս պապին՝ ամէն անգամ երբ Կիլիկիայի թագաւորները դիմում էին նորա օգնութեան՝ պահանջել որ հայերը հրապարակապէս ընդունեն պապի գերիշխանութիւնը, փոխեն իրենց եկեղեցու դաւանութիւնը և սովորութիւնները։

Մի կողմից այդ բանակցութիւնները, միւս կողմից այդ պահանջներին բաւականութիւն տալու համար տեղական ժողովներ (conciliabula) կազմելու փորձերը, գրգռում էին հայ թագաւորների դէմ թէ մուսուլման իշխաններին և թէ նոյն իսկ հպատակ հայերին։ Այդպէս էին Սսի (1307), Ադանայի (1306) և այլ տեղերի ժողովները, որոնք մէկ մէկի ետևից գումարւում էին միևնոյն խնդիրները կրկնելու և տեղնուտեղը մոռանալու համար։ Հէնց այդ հանգամանքը որ անհրաժեշտ էր լինում անդադար միևնոյն բանը կրկնել և նորից ու նորից վաւերացնել, պարզ ցոյց է տալիս որ միութիւնը Հռոմայ եկեղեցու հետ տեղի ունեցած չէր. ուստի և անհիմն է Հ. Ալիշանի խօսքը թէ «յաւուր Լևոնի յելն ԺԴ. դարուն եղև հաստատ և յայտնի դաշն միաբանութեան Հայոց ընդ մեծի եկեղեցւոյն Հռոմայ» [1]։

Այդ ժողովներում ներկայ էին լինում միայն Կիլիկայում գտնուող հայ եկեղեցականները, որոնք գտնուում էին քաղաքական ծանր պայմանների և աշխարհական իշխանութեան ճնշման տակ. բայց և մասնակցող և միութիւնը ընդունող եպիսկոպոսները չէին համարձակում իրենց թեմերի եկեղեցիներում մտցնել ժողովի վճիռները. նոցանից մի քանիսը մինչև անգամ զոհ եղան այդ-

---

1) Սիսուան եր. 215.

պիսի ոտնձգութեան: Ժողովուրդը յուզւում էր այդ ժո-ղովներով և պապի հետ վարած բանակցութիւններով. կազմւում էին դաւադրութիւններ և ապստամբութիւն-ներ, որոնք երբեմն վերջանում էին նոյն իսկ թագաւորի գահընկեցութեամբ: Անբաւականութիւնը և ատելութիւ-նը այնքան սաստիկ էր որ հայերը դիմում էին իրենց հարևան մուսուլման իշխաններին և հրաւիրում էին նոցա նուաճել իրենց երկիրը: Այդպէս եղաւ օրինակ Փիլիպի[1], Լևոն Գ-ի և Կոստանդնի (Գուիդոն) ժամանակ: Դար-դելը պատմում է որ Լևոն վերջին թագաւորի դէմ եղած դաւադրութեան մասնակցում էր նոյն իսկ կաթո-ղիկոսը:

Այդպիսով Սսի իշխանների բանակցութիւնները պա-պի հետ և նոցա ցանկութիւնը եկեղեցիների միութեան միջոցով նպաստ և օգնութիւն ստանալ պապից և կամ պապի միջոցով արևմտեան թագաւորներից, միշտ առիթ էին լինում նորանոր թշուառութիւնների և նպաս-տում էին հայկական թագաւորութեան անկման: Մանա-ւանդ որ պապերը այդ ժամանակ արդէն անզօր էին իս-կապէս օգնութիւն հասցնելու: Խաչակրաց ժամանակի եռանդը արդէն սառել էր և ոչ ոք այլ ևս ականջ չէր դնում պապի հրաւէրին: Եւրոպայում տրտնջում էին այն միջոցների դէմ, որոնցով Հռոմայ եկեղեցին ահագին գումարներ էր հաւաքում արշաւանքների համար. շատե-

---

[1]) «... զի ատելի էր նմա ազգն Հայոց և զիւրն մանա-ւանդ պատուէր զֆրանկսն, երդմնազանց եղեալ ուխտին հայադաւան և հայասէր լինել»: Վարդան եր. 185.

«Ի թուին 671 բերին Պէյմուն (ի տպ. Ոսկանի—ի պայ-ման) որ հայենակ կենայր ու զեկեղեցին և զսեղանն հայե-նակ տանէր...»: Սմբատ եր. 121.

որը այդ արշաւանքները համարում էին մոլորութիւն և մեղադրում էին Հռոմէական եկեղեցուն։ Արդէն լսելի էին լինում ձայներ պապի գերիշխանութեան դէմ ինչպէս կաթոլիկ Թագաւորների այնպէս և յառաջադէմ եկեղեցականների և աշխարհականների կողմից։ Պապերը իրենց անզօրութիւնը դիմակաւորելու համար փոխանակ Հայոց Թագաւորների խնդիրներին բաւականութիւն տալու սկսում էին զանազան տեղեկութիւններ պահանջել իրենց ականջին հասած լուրերի մասին, որոնք վերաբերում էին Հայերի միութեան խախտում և տարտամ վիճակին։ Ժողովուրդը այն աստիճանի զզուած էր այդ բանակցութիւնների դէմ որ երբ Կոստանդին Ե. կաթողիկոսը հրաւէր ստացաւ Եւգէնիոս պապից մասնակցել Ֆլորէնտիայի ժողովին՝ նա չհամարձակուեց մասնակցել ոչ անձամբ և ոչ էլ անմիջական պատգամաւորների միջոցով։ Նա միայն թոյլ տուեց Թէոդոսիայում գտնուող Սարգիս վարդապետին մի քանի մարդով մասնակցել այդ ժողովին. բայց երբ նորա միութիւնը ընդունած վերադարձան՝ Կոստանդինը արդէն մեռած էր։ Այդ դէպքը վերջին կաթիլը դարձաւ Հայերի բազմամեայ համբերատարութեան։

Մեք տեսանք որ կաթողիկոսական աթոռի Կիլիկիայում գտնուելը համարւում էր իբրև հանգամանքներից յառաջացած ազգային թշուառութիւն, իբրև մի ժամանակաւոր և բացառիկ երևոյթ և բացատրւում էր ազգային քաղաքական իշխանութեան ժամանակակից դրութեամբ և պայմաններով։ Սակայն կամաց կամաց աշխարհական իշխանութիւնը սկսեց ձգտել եկեղեցին քաղաքական գործիք անել իւր ձեռքում և օգտուել նորանից նորա ոգուն միանգամայն օտար նպատակների համար։ Այդ բանը

ուելի եւ ակներեւ եղաւ այն ժամանակ, երբ իշխանութիւնը անցաւ բոլորովին այլացեղ և այլադաւան իշխանների ձեռքը, որոնց համար ոչինչ նշանակութիւն չունէին ոչ Հայոց ազգայնութիւնը և ոչ նոցա եկեղեցին։

Այդ էր պատճառը որ Մեծ Հայաստանից անդադար լսելի էին լինում բողոքներ և սպառնալիքներ՝ բաժանուել Սսի կաթողիկոսութիւնից։ Իսկ երբ Թագաւորութիւնը վերջացաւ և հոգևոր իշխանութիւնը դարձաւ խաղալիք մի քանի փառասէրների և ագէտների ձեռքում, այն ժամանակ Մեծ Հայաստանի եկեղեցականները վճռեցին տեղափոխել Հայրապետական աթոռը իւր նախկին տեղը— Ս. Էջմիածին։ Վաղարշապատի ժողովում, որը կայացաւ 1441-ին և որին մասնակցում էին 700-ի չափ եկեղեցականներ, առաջարկուեց Սսի նորընտիր կաթողիկոս Գրիգոր Թ. Մուսաբէկեանին փոխադրել իւր աթոռը Ս. Էջմիածին. իսկ երբ Մուսաբէկեանը հրաժարուեց այդ առաջարկութիւնից այն ժամանակ ընտրեցին Կիրակոս Վիրապեցուն։ Այդ ժամանակուանից ի վեր Հայաստանեայց Հայրապետութեան մայր աթոռը և ամենայն Հայոց միութեան կեդրոնը վերստին դառնում է Ս. Գրիգոր Լուսաւորչի ձեռքով հիմնած Ս. Էջմիածինը. իսկ նորա ազգընտիր գահակալ Հայրապետը միակ օրինաւոր ծայրագոյն պատրիարք և ամենայն Հայոց կաթողիկոս ու յաջորդ Ս. Լուսաւորչի։

Այդպիսով ինքն իրեն դադարեց և վերջ ստացաւ միութեան խնդիրը, որը դարերի և տարիների ընթացքում պատճառ էր դարձել այնքան երկպառակութիւնների, խռովութիւնների և թշուառութիւնների։ Եւ Հայաստանեայց Ս. եկեղեցին՝ ազգի «մեծագոյն, սրբագոյն իրը, ոգին և ոգևորիչը» ինչպէս կոչում է Հայր Ա-

լիշանը, կանգուն մնացած է պահելով իւր ազգային ինքնուրոյնութիւնը և անեղծ ու անխախտ պահպանելով Քրիստոսի առաքեալներից և եկեղեցու ս. հայրերից իրեն աւանդուած վարդապետութիւնը։ Եւ այդ ոչ թէ օտարների և կամ Հռոմայ պապերի բարեհաճ յօժարութեամբ, ինչպէս խոստովանում է նոյն հայր Ալիշանը, այլ նախ երկնային Նախախնամութեան շնորհիւ, որի Աջը միշտ հովանի և պահապան է եղել Հայոց ազգի և նորա եկեղեցու վերայ, և ապա շնորհիւ անդրդուելի հաւատարմութեան հայ ժողովրդի։

Մուսաբէկեանի ըմբոստութեան շնորհիւ մինչև այսօր էլ, ինչպէս յայտնի է, շարունակւում է հակաթոռ կաթուղիկոսութիւնը իբրև արձան և յիշատակ անցած թշուառութիւնների և ներկայ անօգնական վիճակի. և և այս՝ յուրախութիւն Հայաստանեայց եկեղեցու թըշնամիներին։

## Է.

Լեւոն Ե. ի մահուամբ ընդհատւում է Ռուբինեան տան արական ճիւղը, որը նշանաւոր հանդիսացաւ իւր քաջութեամբ և հաւատարմութեամբ դէպի ազգային եկեղեցու և ազգային ինքնուրոյնութեան շահերը։ Նոքա բարձր էին գնահատում բուն հայրենիքի հետ ունեցած կապը և այդ պատճառով սերտ յարաբերութիւն էին պահպանում Մեծ Հայաստանի հոգևոր և մարմնաւոր ներկայացուցիչների հետ։ Չնայելով մուսուլմանների անհնարին ճնշման և Եդեսիայի ու Երուսաղէմի քրիստոնեայ իշխանութիւնների անկման, նոքա քաջութեամբ պաշտպան էին հանդիսանում քրիստոնէութեան շահերին և

կարողացան թողնել իրենց ժառանգներին մի ընդարձակ թագաւորութիւն, որից վախենում էին մուսուլմանները և որին յարգում ու նորա դաշնակցութիւնն էին փնտռում եւրոպացիները։ Հեթում թագաւորից սկսած, որը Լևոնի դուստր Զապէլի հետ միասին ստացաւ և նորա գահը, Հայոց թագաւորութիւնը անցնում է Օշինեան տան։

Հեթումի օրով պատմութեան ասպարիզի վերայ հանդէս է գալիս մի բոլորովին նոր ժողովուրդ, որը ահագին ազդեցութիւն է գործում թէ ընդհանրապէս պատմական բոլոր անցքերի և թէ մասնաւորապէս հայկական թագաւորութեան վերայ։ Այդ նոր ժողովուրդն էին մոնղոլները։ ԺԲ. դարում մոնղոլները դեռ ևս նստական ժողովուրդ էին Մոնղոլեայի լեռնաշղթայում. նոքա ապրում էին մորթիներով ծածկած հիւղերում և բոլոր նոցա հարստութիւնը կազմում էին հօտերը։ 1155 թուին նոցա իշխաններից մէկին մի որդի եղաւ—Թեմուչի անունով. երբ նա ծնուեց նորա ափի մէջ գտան մի կտոր չորացած արիւն. այդ հանգամանքը նորան իրաւունք էր տալիս գերիշխան լինելու, մինչդեռ ուրիշները կամենում էին խլել նորանից այդ իրաւունքը։ Նուաճելով իւր իշխանութեան տակ բոլոր մոնղոլական ցեղերը նա ընդունեց Չինկիզ-խան տիտղոսը և անսալով ներքին ձայնին, որ ասում էր՝ «աշխարհը քեզ է պատկանում—վերցրու նորան», նա արշաւեց ամենից առաջ դէպի Չինաստան և չորս տարուայ ընթացքում (1211—1215) նուաճեց Չինաստանի բոլոր հիւսային մասը։ Այնուհետև նա տարածեց իւր իշխանութեան սահմանները մինչև Խովարէզմիայ, որտեղ նա դէմ առ դէմ հանդիպեց մահմետականութեան։ Սորանից յետոյ մէկ մէկու ետևից գրաւեց Սամարղանդը և Նիշափուրը։ 1221-ին նա տիրապետից ամ-

բողջ Պարսկաստանին և այստեղից արդէն նորա առաջ բացուեցին ճանապարհներ դէպի ամեն կողմ։ 1227-ին նոր արշաւանքների պատրաստութեան ժամանակ նա մեռաւ. Թագաւորութիւնը գրաւոր կտակի համաձայն բաժանուեց նորա որդիների և յաջորդների մէջ։ Այդ կտակով երրորդ որդին՝ Օգթայ կամ Օղոթայ ստացաւ բարձրագոյն իշխանութիւն միւսների վերայ և մեծ խանի տիտղոսը։ Չորրորդ որդին Հուլաղուն ստանալով արևելեան և արևմտեան Պարսկաստանը, արշաւեց դէպի Հայաստան և դէպի Վրաստան։ Օգթայը մեռաւ 1241-ին։ Նորա կինը, որ քրիստոնեայ էր, մեծ խանի աստիճանը տուեց իւր դեռատի որդի Գաւուգին. իսկ երբ 1247-ին նա վախճանուեց, այն ժամանակ մեծ խան ընտրուեց Մանգուն։ Աւելի խելացի համարելով հեռի պահել իրենից իւր եղբայրներին՝ Մանգուն պատուիրեց Հուլաղուին նուաճել առաջաւոր Ասիան։ Հուլաղուն նախ և առաջ հնազանդութիւն պահանջեց Պարսկաստանի, Ասորիքի և Միջագետքի բոլոր իշխաններից։ Ամենքը կատարեցին մոնղոլ զօրապետի պահանջը բացի Խալիֆայից, որը երկիւղ չէր կրում այդ հեռաւոր թշնամուց։

Յաջորդ տարուայ գարնանը Հուլաղուն խաղաց Ղազվին քաղաքի վերայ և բնաջինջ արաւ բոլոր Ասասիններին. այդտեղից նա թուղթ ուղարկեց Խալիֆային, որի մէջ պահանջում էր քանդել Բաղդադի մարտկոցները և ուղարկել պատգամաւորներ իւր կամքը և հրամանները լսելու։ Խալիֆան մերժեց այդ պահանջները և թէև աշխատեց ամոքել նորան հարուստ ընծաներով, բայց այսու ամենայնիւ Հուլաղուն յետ չկանգնեց պատերազմից և իւր բոլոր զօրքով դիմեց Բաղդադի վերայ։ Կարճատև պաշարումից յետոյ քաղաքը առնուեց և աւարի

մատնուեց. իսկ Խալիֆան և նորա բոլոր ազգականները սպանուեցին (1258)։ Այդպէս ահա վերջացաւ Աբբասեանների հարստութիւնը Բաղդադում։ Բաղդադի տիրապետութիւնից յետոյ Հուլաղուն դեռ՝ եւս Մանգուի կենդանութեան ժամանակ՝ ինքն իրեն ինքնիշխան հրատարակեց և սկսեց առաջ խաղալ դէպի Ասորիք։ Մոսուլը առանց կռուի անձնատուր եղաւ. իսկ Հալէպը ընկճուեց և կործանուեց։ Հալէպի օրինակից սարսափած Դամասկոսը, Համան և Հէմսը յօժարակամ անձնատուր եղան, իսկ նոցանից յետոյ միւս քաղաքները արդէն առանց դժուարութեան նուաճուեցին։ Քիթբուղային նշանակելով Ասորիքի տեղապահ, Հուլաղուն վերադարձաւ արևելեան Պարսկաստան (1260) և հրատարակեց իրեն Պարսկաստանի տիրապետ Իլէկ-խան տիտղոսով. իսկ երբ մեծ խանը իւր մայրաքաղաքը փոխադրեց Չինաստան, Հուլաղուի ինքնիշխանութիւնը աւելի եւս հաստատուեց և անցաւ նորա ժառանգներին, որոնք պահպանեցին նորա տէրութիւնը մինչև ԺԴ. դարու վերջը— մինչև Թամերլանի երևան գալը։

Երբոր Օգթայի զօրապետ Բաջուն յաղթելով Գոնիայի սուլթանին սկսեց մօտենալ Կիլիկիայի սահմաններին, Հեթումը բարւոք համարեց շտապել ձեռք բերելու նորա բարեկամութիւնը։ 1244-ին նա ընդունեց մեծ խանի իշխանութիւնը[1]) և երբ խանութիւնը անցաւ

---

[1]) «... առաքեաց առ նոսա դեսպանս և պատարագս արժանաւորս գտնել նոցա ընդ նմա ուխտ խաղաղութեան և նմա կալ նոցա ի հնազանդութեան»։ Կիրակոս եր. 167.

Այդ դէպքում Հեթումը ստիպուած էր ընդունել մի շատ ծանր պայման, այն է՝ խանի ձեռքը տալ Գոնիայի սուլթանի մօրը և կնոջ, որոնք ապաստանել էին նորա մօտ.

Գաուգին՝ նա իւր եղբայր Սմբատ սպարապետին ուղարկեց նորան շնորհաւորելու։ Իսկ երբ Մանգուն դարձաւ մեծ խան, Հեթումը ինքը անցնելով Մեծ Հայաստանից՝ Դերբենդի վրայով անձամբ գնաց ողջունելու նախ Բաթուին և նորա Սարդախ որդուն և ապա Մանգուին։ «Եւ մատուցեալ զընծայս մեծարեցաւ ի նմանէ ըստ արժանւոյն. և կացեալ ընդ նմա աւուրս յիսուն և տուեալ նմա հրովարտակ նշանաւոր զի մի՛ ոք իշխեսցէ նեղել զնա և զաշխարհ նորա, ետ և գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս. և յոյժ մեծարեալ ի նմանէ դարձաւ երևելի փառօք և հաւատարիմ հրովարտակօք տուեալ նմա զաւառս բազումս և բերդս յոլովս, որ յառաջ լեալ էր Լևոնի արքայի և զկնի մահուան էառ ի նոցունց Սլաջին սուլթանն Հոռոմոց» [1])։ Դժուար է մինչև անգամ երևակայել այն բոլոր ծանրութիւնները և վտանգները, որոնք կապուած էին այդ հեռաւոր ուղևորութեան հետ։ Վարդանի վկայութեամբ այդ ուղևորութիւնը տևեց մի տարի [2]). մեզ աւելի հաւանական է թւում Կուրիկոսի իշխան Հեթում պատմիչի վկայութիւնը թէ Հեթում թագաւորը վերադարձաւ $3^1/_2$ տարուց յետոյ։ Վահրամը նոյնպէս վկայում է թէ «զամս չորս անդէն կացեալ» [3])։ Հեթում պատմիչի խօսքով «Թագաւորն Հայոց յետ աւուրց ինչ աղաչեաց զԻնքնակալն վասն դաշին խաղաղութեան և այլոց իրաց, որոց ցանկայր. և ի հաճել ինքնակալին, առաջի ետ արքայն Հայ-

---

«լաւ էր իսկ եթէ զորդի իմ զԼևոն խնդրեալ էին յինէն քան թէ զնոսա»—ասում էր Հեթումը։ Կիրակոս 168։

[1]) Կիրակոս եր. 188.

[2]) Վարդան եր. 195.

[3]) Վահրամ եր. 220.

ոց զխնդիրս իւր։ Նախ աղաչեաց զինքնակալն, զի Համ-դերձ ազգաւն իւրով դարձցի ի Հաւատս Քրիստոսի և ընկալցի զմկրտութիւն։ Երկրորդ զի խաղաղութիւն և բարեկամութիւն. մշտնջենաւոր Հաստատեսցի ի մէջ նոցա։ Երրորդ զի յամենայն երկիրս Թաթարաց կարիցեն շինել եկեղեցիս քրիստոնէից. և Հայք ազատ լինիցին յամենայն կապալաց և յայլոց ծանրութեանց։ Չորրորդ զի զսուրբ երկիրն և զսուրբ գերեզմանն առցէ ի ձեռաց Թուրքաց և տացէ քրիստոնէից։ Հինգերորդ զի բարձցէ ի Բաղդադայ զԽալիֆայն, որ էր գլուխ դենի։ Վեցերորդ զի ամենայն Թաթարք յօգնականութիւն Հասցեն ի խնդրել իւրում։ Եօթներորդ, զի ամենայն գաւառք աշխարհին Հայոց, յորս տիրեալ էին Թուրքք, յինքն դարձուսցին»։ Խանը խոստացաւ Հեթումին կատարել նորա բոլոր խնդիրները[1]): Հեթում պատմիչը աւելցնում է նոյնպէս որ Մանգուն և նորա բոլոր պալատը քրիստոնէութիւն ընդունեցին և մկրտուեցին Հայ եպիսկոպոսի ձեռքով[2])։ Հուլաղուն, որ պսակուած էր քրիստոնեայ աղջկայ վերայ, նոյնպէս շատ բարի և գթած էր քրիստոնեաների Համար։ Վարդանի ասելով մոնղոլները «փոյան կտաւեայ

---

1) Հեթում պատմիչ եր. 43—44.

2) D'Ohsson-ը կասկածում է այդ տեղեկութեան ճշտութեան մասին. «Il est possible, ասում է նա, que Mangou ait été baptisë; car il suivait indifferemment les pratiques des divers cultes protégés à sa cour; mais il ne professait aucune réligion positive; et les Mongols regardaient sans doute le baptême comme une simple purification. Quant à l'exemption des charges publiques en faveur du clergé et des biens de l'église...' on à vu que d'après les reglements de Tchinguizkhan confirmé par Ogotaï les ministres de tous les cultes jouissaient de ce privilége». Տես Hist. des Mongols t. II, liv. II, chap. VI.

*

ի ձև եկեղեցւոյ շրջեցուցանէին ընդ նոսա, ի ձայն ժամահարի և աղօթից կարգաւորութեան և պատարագաց պաշտէին հանապազորդ քահանայք և սարկաւագունք, և գդյր դպրոցս և ուսմունս մանկանց համարձակութեամբ։ Ընդ հանգչէին եկեղեցականք, որ յամենայն կողմանց և ի լեզուաց քրիստոնէից գնացին խնդրել զխաղաղութիւն և գտանէին եւս և դառնային խնդութեամբ և պարգևօք» 1)։ Զափազանց հետաքրքրական է Վարդանի այցելութեան նկարագրութիւնը, թէ ինչպէս նա Հուլաղուի հրամաննով գնաց նորա բանակը, ինչպէս Հուլաղուն ընդունեց և պատուեց նորան և թէ ինչպէս խոստացաւ կատարել նորա խրատները և խնդիրքը։ Մանրամասն նկարագրելով այդ ամենը Վարդանը աւելացնում է. «Թերևս աւելորդ թուիմք գրելով զայս, այլ վասն բարեսէր և քաղցրաբարոյ մերոյ մեծի Հուլաւուին յիշատակի գրեցաք յօգուտ կամ յօրինակ այլոց, որ գալոց են յետ մեր. ո՞ գիտէ» 2)։ Հուլաղուի արշաւանքի ժամանակ Ասորիքում «եկն պատրիարք կաթողիկոսն Հայոց՝ օրհնեաց զնա և սիրեցաւ ի նմանէ։ Ընդ նմա էր ի յառնուլն զամենայն աշխարհն Շամայ և մեր պսակաւորն Հեթում, ազատելով ի մահուանէ զքրիստոնեայսն, զեկեղեցականս և զաշխարհականս յամենայն տեղիս լինելով» 3)։ Հեթում պատմիչի վկայութեամբ Ասորիքի նուաճումից յետոյ «Հուլաւուն ետ զմեծ մասն աւարին և զբազում ամրոցս մօտաւորս թագաւորութեան իւրում ի ձեռս թագաւորին Հայոց, որ ետ ամրացուցանել զնոսին ըստ կամս իւր» 4)։

1) Վարդան եր. 196.
2) Idem. 205—209.
3) Idem. 198.
4) Հեթում պատմիչ. եր. 48.

Այդպիսով մոնղոլների հզօր իշխանութեան ծագումը և ընդարձակումը նշանաւոր կերպով նպաստեց Կիլիկիայի Հայ Թագաւորութեան վիճակի բարւոքման։ Հայոց Թագաւորը ընդունելով մեծ խանի իշխանութիւնը՝ վայելում էր և նորա պաշտպանութիւնը։ Մոնղոլների այդ համակրութիւնը բացատրւում է նորանով որ մի կողմից իրենք մոնղոլները ատում էին մուսուլման ազգերին, միւս կողմից էլ նոքա առ հասարակ անտարբեր լինելով դէպի կրօնական խնդիրները, շատ անգամ իրենց քրիստոնեայ կանանց ազդեցութեան շնորհիւ անտարբերութիւնը փոխում էին համակրութեան և պաշտպան էին հանդիսանում քրիստոնէական եկեղեցուն և եկեղեցականներին՝ առանց կրօնի խտրութեան։

Բացի սորանից նոքա ունէին և քաղաքական նպատակ. նոցա ձեռնտու էր մահմետական թշնամի իշխանութիւններին կից ունենալ Հայոց Թագաւորի նման հզօր դաշնակից։ Սակայն մոնղոլների բարեկամութիւնը և դաշնակցութիւնը կարճ միջոցից յետոյ առիթ դարձաւ նորանոր թշուառութիւնների հայկական Թագաւորութեան համար, երբոր Ասորիքում հաստատեցին իրենց իշխանութիւնը Եգիպտական մամլուքները, որոնք և վերջին հարուածը տուին Կիլիկիայի Հայ Թագաւորութեան։

## Բ.

Սալադինը, որ մեռաւ Դամասկոսում 1193 թուին, մի ընդարձակ մահմետական պետութիւն հիմնեց, որի մէջ մտնում էին Եգիպտոսը, Ասորիքը և Երջանիկ Արաբիան։ Սալադինի որդիները, եղբայրները և եղբօրորդիները բաժանեցին իրենց մէջ նորա հիմնած ընդարձակ պետու-

լիշանը, կանգուն մնացած է պահելով իւր ազգային ինք-նուրոյնութիւնը և անեղծ ու անխախտ պահպանելով Քրիստոսի առաքեալներից և եկեղեցու ս. հայրերից իրեն աւանդուած վարդապետութիւնը։ Եւ այդ ոչ թէ օտարների և կամ Հռոմայ պապերի բարեհաճ յօժարութեամբ, ինչպէս խոստովանում է նոյն հայր Ալիշանը, այլ նախ երկնային Նախախնամութեան շնորհիւ, որի Աջը միշտ հովանի և պահապան է եղել Հայոց ազգի և նորա եկեղեցու վերայ, և ապա շնորհիւ անդրդուելի հաւատարմութեան հայ ժողովրդի։

Մուսաբէկեանի ըմբոստութեան շնորհիւ մինչև այսօր էլ, ինչպէս յայտնի է, շարունակւում է հակաթոռ կաթուղիկոսութիւնը իբրև արձան և յիշատակ անցած թշուառութիւնների և ներկայ անօգնական վիճակի․ և և այս՝ յուրախութիւն Հայաստանեայց եկեղեցու թըշնամիներին։

## Է.

Լևոն Ա.ի մահուամբ ընդհատւում է Ռուբինեան տան արական ճիւղը, որը նշանաւոր հանդիսացաւ իւր քաջութեամբ և հաւատարմութեամբ դէպի ազգային եկեղեցու և ազգային ինքնուրոյնութեան շահերը։ Նոքա բարձր էին գնահատում բուն հայրենիքի հետ ունեցած կապը և այդ պատճառով սերտ յարաբերութիւն էին պահպանում Մեծ Հայաստանի հոգևոր և մարմնաւոր ներկայացուցիչների հետ։ Չնայելով մուսուլմանների անհնարին ճնշման և Եդեսիայի ու Երուսաղէմի քրիստոնեայ իշխանութիւնների անկման, նոքա քաջութեամբ պաշտպան էին հանդիսանում քրիստոնէութեան շահերին և

կարողացան թողնել իրենց ժառանգներին մի ընդարձակ թագաւորութիւն, որից վախենում էին մուսուլմանները և որին յարգում ու նորա դաշնակցութիւնն էին փնտռում եւրոպացիները։ Հեթում թագաւորից սկսած, որը Լևոնի դուստր Զապէլի հետ միասին ստացաւ և նորա գահը, Հայոց թագաւորութիւնը անցնում է Օշինեան տան։

Հեթումի օրով պատմութեան ասպարիզի վերայ հանդէս է գալիս մի բոլորովին նոր ժողովուրդ, որը ահագին ազդեցութիւն է գործում թէ ընդհանրապէս պատմական բոլոր անցքերի և թէ մասնաւորապէս հայկական թագաւորութեան վերայ։ Այդ նոր ժողովուրդն էին մոնղոլները։ ԺԲ. դարում մոնղոլները դեռ ևս նստական ժողովուրդ էին Մոնղոլիայի լեռնաշղթայում. նոքա ապրում էին մորթիներով ծածկած հիւղերում և բոլոր նոցա հարստութիւնը կազմում էին հօտերը։ 1155 թուին նոցա իշխաններից մէկին մի որդի եղաւ—Թէմուր անունով. երբ նա ծնուեց նորա ափի մէջ գտան մի կտոր չորացած արիւն. այդ հանգամանքը նորան իրաւունք էր տալիս գերիշխան լինելու, մինչդեռ ուրիշները կամենում էին խլել նորանից այդ իրաւունքը։ Նուաճելով իւր իշխանութեան տակ բոլոր մոնղոլական ցեղերը նա ընդունեց Չինկիզ-խան տիտղոսը և անսալով ներքին ձայնին, որ ասում էր՝ «աշխարհը քեզ է պատկանում—վերցրու նորան», նա արշաւեց ամենից առաջ դէպի Չինաստան և չորս տարուայ ընթացքում (1211—1215) նուաճեց Չինաստանի բոլոր հիւսսային մասը։ Այնուհետև նա տարածեց իւր իշխանութեան սահմանները մինչև Խովարէզմիայ, որտեղ նա դէմ առ դէմ հանդիպեց մահմետականութեան։ Սորանից յետոյ մէկ մէկու ետևից գրաւեց Սամարղանդը և Նիշափուրը։ 1221-ին նա տիրապետեց ամ-

բողջ Պարսկաստանին և այստեղից արդէն նորա առաջ բացուեցին ճանապարհներ դէպի ամեն կողմ։ 1227-ին նոր արշաւանքների պատրաստութեան ժամանակ նա մեռաւ. Թագաւորութիւնը գրաւոր կտակի համաձայն բաժանուեց նորա որդիների և յաջորդների մէջ։ Այդ կտակով երրորդ որդին՝ Օգթայ կամ Օղոթայ ստացաւ բարձրագոյն իշխանութիւն Թաթարների վերայ և մեծ խանի տիտղոսը։ Չորրորդ որդին Հուլաղուն ստանալով արևելեան և արևմտեան Պարսկաստանը, արշաւեց դէպի Հայաստան և դէպի Վրաստան։ Օգթայը մեռաւ 1241-ին։ Նորա կինը, որ քրիստոնեայ էր, մեծ խանի աստիճանը տուեց իւր դեռատի որդի Գաուգին. իսկ երբ 1247-ին նա վախճանուեց, այն ժամանակ մեծ խան ընտրուեց Մանգուն։ Աւելի խելացի համարելով հեռի պահել իրենից իւր եղբայրներին՝ Մանգուն պատուիրեց Հուլաղուին նուաճել առաջաւոր Ասիան։ Հուլաղուն նախ և առաջ հնազանդութիւն պահանջեց Պարսկաստանի, Ասորիքի և Միջագետքի բոլոր իշխաններից։ Ամենքը կատարեցին մոնղոլ զօրապետի պահանջը բացի Խալիֆայից, որը երկիւղ չէր կրում այդ հեռաւոր Թշնամուց։

Յաջորդ տարուայ գարնանը Հուլաղուն խաղաց Դամավին քաղաքի վերայ և բնաջինջ արաւ բոլոր Ասասիններին. այդտեղից նա Թուղթ ուղարկեց Խալիֆային, որի մէջ պահանջում էր քանդել Բաղդադի մարտկոցները և ուղարկել պատգամաւորներ իւր կամքը և հրամանները լսելու։ Խալիֆան մերժեց այդ պահանջները և Թէև աշխատեց ամոքել նորան հարուստ ընծաներով, բայց այսու ամենայնիւ Հուլաղուն յետ չկանգնեց պատերազմից և իւր բոլոր զօրքով դիմեց Բաղդադի վերայ։ Կարճատև պաշարումից յետոյ քաղաքը առնուեց և աւարի

մատնուեց. իսկ Խալիֆան և նորա բոլոր ազգականները սպանուեցին (1258)։ Այդպէս ահա վերջացաւ Աբբասեանների հարստութիւնը Բաղդադում։ Բաղդադի տիրապետութիւնից յետոյ Հուլաղուն դեռ՝ ևս Մանգուի կենդանութեան ժամանակ՝ ինքն իրեն ինքնիշխան հրատարակեց և սկսեց առաջ խաղալ դէպի Ասորիք։ Մօսուլը առանց կռուի անձնատուր եղաւ. իսկ Հալէպը ընկճուեց և կործանուեց։ Հալէպի օրինակից սարսափած Դամասկոսը, Համան և Հէմսը յօժարակամ անձնատուր եղան, իսկ նոցանից յետոյ միւս քաղաքները արդէն առանց դժուարութեան նուաճուեցին։ Քիթբուղային նշանակելով Ասորիքի տեղապահ, Հուլաղուն վերադարձաւ արևելեան Պարսկաստան (1260) և հրատարակեց իրեն Պարսկաստանի տիրապետ Իլէկ-խան տիտղոսով. իսկ երբ մեծ խանը իւր մայրաքաղաքը փոխադրեց Չինաստան, Հուլաղուի ինքնիշխանութիւնը աւելի ևս հաստատուեց և անցաւ նորա ժառանգներին, որոնք պահպանեցին նորա տէրութիւնը մինչև ԺԴ. դարու վերջը— մինչև Թամերլանի երևան գալը։

Երբոր Օգթայի զօրապետ Բաջուն յաղթելով Կոնիայի սուլթանին սկսեց մօտենալ Կիլիկիայի սահմաններին, Հեթումը բարւոք համարեց շտապել ձեռք բերելու նորա բարեկամութիւնը։ 1244-ին նա ընդունեց մեծ խանի իշխանութիւնը[1]) և երբ խանութիւնը անցաւ

[1]) «... առաքեաց առ նոսա դեսպանս և պատարագս արժանաւորս դնել նոցա ընդ նմա ուխտ խաղաղութեան և նմա կալ նոցա ի հնազանդութեան»։ Կիրակոս եր. 167.

Այդ դէպքում Հեթումը ստիպուած էր ընդունել մի շատ ծանր պայման, այն է՝ խանի ձեռքը տալ Կոնիայի սուլթանի մօրը և կնոջ, որոնք ապաստանել էին նորա մօտ.

Գառուգին՝ նա իւր եղբայր Սմբատ սպարապետին ուղարկեց նորան շնորհաւորելու։ Իսկ երբ Մանգուն դարձաւ մեծ խան, Հեթումը ինքը անցնելով Մեծ Հայաստանից՝ Դերբենդի վրայով անձամբ գնաց ողջունելու նախ Բաթուին և նորա Սարդախ որդուն և ապա Մանգուին։ «Իւ մատուցեալ զընծայս մեծարեցաւ ի նմանէ ըստ արժանւոյն. և կացեալ ընդ նմա աւուրս յիսուն և տուեալ նմա հրովարտակ նշանաւոր զի մի՛ ոք իշխեսցէ նեղել զնա և զաշխարհ նորա, եւ և գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս. և յոյժ մեծարեալ ի նմանէ դարձաւ երևելի փառօք և հաւատարիմ հրովարտակօք տուեալ նմա զաւառս բազումս և բերդս յոլովս, որ յառաջ լեալ էր Լևոնի արքայի և զկնի մահուան էառ ի նոցունց Ալադին սուլթանն Հոռոմոց»[1])։ Դժուար է մինչև անգամ երևակայել այն բոլոր ծանրութիւնները և վտանգները, որոնք կապուած էին այդ հեռաւոր ուղևորութեան հետ։ Վարդանի վկայութեամբ այդ ուղևորութիւնը տևեց մի տարի[2]). մեզ աւելի հաւանական է թւում Կոռիկոսի իշխան Հեթում պատմիչի վկայութիւնը թէ Հեթում թագաւորը վերադարձաւ $3\frac{1}{2}$ տարուց յետոյ։ Վահրամը նոյնպէս վկայում է թէ «զամս չորս անդէն կացեալ»[3])։ Հեթում պատմիչի խօսքով «թագաւորն Հայոց յետ աւուրց ինչ աղաչեաց զինքնակալն վասն դաշին խաղաղութեան և այլոց իրաց, որոց ցանկայր. և ի հաճել ինքնակալին, առաջի եւ արքայն Հայ-

---

«լաւ էր իսկ եթէ զորդի իմ զԼևոն խնդրեալ էին յինէն քան թէ զնոսա»—ասում էր Հեթումը։ Կիրակոս 168։

1) Կիրակոս եր. 188.
2) Վարդան եր. 195.
3) Վահրամ եր. 220.

ոց զխնդիրս իւր։ Նախ աղաչեաց զինքնակալն, զի համ-դերձ ազգաւն իւրով դարձցի ի հաւատս Քրիստոսի և ընկալցի զմկրտութիւն։ Երկրորդ զի խաղաղութիւն և բարեկամութիւն. մշտնջենաւոր հաստատեսցի ի մէջ նո-ցա։ Երրորդ զի յամենայն երկիրս Թաթարաց կարիցեն շինել եկեղեցիս քրիստոնէից. և հայք ազատ լինիցին յա-մենայն կապալաց և յայլոց ծանրութեանց։ Չորրորդ զի զսուրբ երկիրն և զսուրբ գերեզմանն առցէ ի ձեռաց թուրքաց և տացէ քրիստոնէից։ Հինգերորդ զի բարձցէ ի Բաղդադայ զԽալիֆայն, որ էր գլուխ դենի։ Վեցե-րորդ զի ամենայն թաթարք յօգնականութիւն հասցեն ի խնդրել իւրում։ Եօթներորդ, զի ամենայն գաւառք աշխարհին Հայոց, յորս տիրեալ էին Թուրքք, յինքն դար-ձուսցին։ Խանը խոստացաւ Հեթումին կատարել նորա բո-լոր խնդիրները[1])։ Հեթում պատմիչը աւելցնում է նոյնպէս որ Մանգուն և նորա բոլոր պալատը քրիստոնէութիւն ըն-դունեցին և մկրտուեցին Հայ եպիսկոպոսի ձեռքով[2])։ Հուլաղուն, որ պսակուած էր քրիստոնեայ աղջկայ վե-րայ, նոյնպէս շատ բարի և գթած էր քրիստոնեաների համար։ Վարդանի ասելով մոնղոլները «խոլան կատաւեայ

---

1) Հեթում պատմիչ եր. 43—44.

2) D'Ohsson-ը կասկածում է այդ տեղեկութեան ճշտութեան մասին. «Il est possible, ասում է նա, que Mangou ait été baptisë; car il suivait indifferemment les pratiques des divers cultes protégés à sa cour; mais il ne professait aucune réligion positive; et les Mongols regardaient sans doute le baptême comme une simple purification. Quant à l'exemption des charges publiques en faveur du clergé et des biens de l'église...' ou à vu que d'après les reglements de Tchinguizkhan confirmé par Ogotaï les ministres de tous les cultes jouissaient de ce privilége». Տես Hist. des Mongols t. II, liv. II, chap. VI.

*

ի ձև եկեղեցւոյ շրջեցուցանէին ընդ նոսա, ի ձայն ժամահարի և աղօթից կարգաւորութեան և պատարագաց պաշտէին հանապազորդ քահանայք և սարկաւագունք, և դպիր դպրոցս և ուսմունս մանկանց համարձակութեամբ։ Ընդ հանգչէին եկեղեցականք, որ յամենայն կողմանց և ի լեզուաց քրիստոնէից գնացին խնդրել զխաղաղութիւն և գտանէին ևս և դառնային խնդութեամբ և պարգևօք» [1])։ Չափազանց հետաքրքրական է Վարդանի այցելութեան նկարագրութիւնը, թէ ինչպէս նա Հուլաղուի հրամանով գնաց նորա բանակը, ինչպէս Հուլաղուն ընդունեց և պատուեց նորան և թէ ինչպէս խոստացաւ կատարել նորա խրատները և խնդիրքը։ Մանրամասն նկարագրելով այդ ամենը Վարդանը աւելացնում է. «Թերևս աւելորդ թուիմք գրելով զայս, այլ վասն բարեսէր և քաղցրաբարոյ մերոյ մեծի Հուլաւուին յիշատակի գրեցաք յօգուտ կամ յօրինակ այլոց, որ գալոց են յետ մեր. ո՞ գիտէ» [2])։ Հուլաղուի արշաւանքի ժամանակ Ասորիքում «եկն պատրիարք կաթողիկոսն Հայոց՝ օրհնեաց զնա և սիրեցաւ ի նմանէ։ Ընդ նմա էր ի յառնուլն զամենայն աշխարհն Շամայ և մեր պսակաւորն Հեթում, աղաչելով ի մահուանէ զքրիստոնեայսն, զեկեղեցականս և զաշխարհականս յամենայն տեղիս լինելով» [3])։ Հեթում պատմիչի վկայութեամբ Ասորիքի նուաճումից յետոյ «Հուլաւուն ետ զմեծ մասն աւարին և զբաղում ամրոցս մօտաւորս թագաւորութեան իւրում ի ձեռս թագաւորին Հայոց, որ ետ ամրացուցանել զնոսին ըստ կամս իւր» [4])։

---

1) Վարդան եր. 196.
2) Idem. 205—209.
3) Idem. 198.
4) Հեթում պատմիչ. եր. 48.

Այդպիսով մոնղոլների հզօր իշխանութեան ծագումը և ընդարձակումը նշանաւոր կերպով նպաստեց Կիլիկիայի Հայ թագաւորութեան վիճակի բարւոքման։ Հայոց թագաւորը ընդունելով մեծ խանի իշխանութիւնը՝ վայելում էր և նորա պաշտպանութիւնը։ Մոնղոլների այդ համակրութիւնը բացադրւում է նորանով որ մի կողմից իրենք մոնղոլները ատում էին մուսուլման ազգերին, միւս կողմից էլ նոքա առ հասարակ անտարբեր լինելով դէպի կրօնական խնդիրները, շատ անգամ իրենց քրիստոնեայ կանանց ազդեցութեան շնորհիւ անտարբերութիւնը փոխում էին համակրութեան և պաշտպան էին հանդիսանում քրիստոնէական եկեղեցուն և եկեղեցականներին՝ առանց կրօնի խտրութեան։

Բացի սորանից նոքա ունէին և քաղաքական նպատակ. նոցա ձեռնտու էր մահմետական թշնամի իշխանութիւններին կից ունենալ Հայոց թագաւորի նման հզօր դաշնակից։ Սակայն մոնղոլների բարեկամութիւնը և դաշնակցութիւնը կարճ միջոցից յետոյ առիթ դարձաւ նորանոր թշուառութիւնների հայկական թագաւորութեան համար, երբոր Ասորիքում հաստատեցին իրենց իշխանութիւնը Եգիպտական մամլուքները, որոնք և վերջին հարուածը տուին Կիլիկիայի Հայ թագաւորութեան։

## Բ.

Սալադինը, որ մեռաւ Դամասկոսում 1193 թուին, մի ընդարձակ մահմետական պետութիւն հիմնեց, որի մէջ մտնում էին Եգիպտոսը, Ասորիքը և Երջանիկ Արաբիան։ Սալադինի որդիները, եղբայրները և եղբօրորդիները բաժանեցին իրենց մէջ նորա հիմնած ընդարձակ պետու-

թիւնը և այդ բաժանումը պատճառ եղաւ անընդհատ և արիւնահեղ ներքին կռիւների, որոնք սկսեցին քայքայել Սալադինի պետութիւնը։ Վերջապէս 1240 թուին Սալէհ Էյուբը՝ զօրքերի մատնութեան շնորհիւ՝ տիրեց Եգիպտոսին և պատճառ եղաւ մամլուքների զօրանալուն, որոնք քիչ ժամանակից յետոյ կործանեցին նոյն իսկ Էյուբեանների իշխանութիւնը։ Մամլուք անուանւում էին գերիներից կազմուած թիկնապահները, որոնք ստանում էին պատերազմական կրթութիւն—աղեղնաձգութիւն ու նիզակախաղութիւն և ուսանում էին մահմետական կրօնի օրէնքները։ Խովարէզմեան թագաւորութեան անկումից յետոյ Էյուբը աւելի ևս զօրացրեց մամլուքների գունդը այդտեղից փախած թուրք վարձկան զինուորներով։

Էյուբի մահուանից քիչ յետոյ մամլուքները սպանեցին նորա որդի Թուրան-Շահին և արիւնահեղ երկպառակութիւններից զկնի սուլթան հրատարակեցին իրենց զօրապետ Էբէկին, որը նոյնպէս շուտով սպանուեց և նորա տեղը անցաւ մամլուք Կուտուզը։ Կուտուզի ժամանակն էր որ Հուլաղուի դեսպանները եկան և պահանջեցին որ կամ ընդունէ խանի հպատակութիւնը և կամ պատրաստուի պատերազմի։ Կուտուզը մերժեց հպատակութիւնը և հրատարակեց սրբազան պատերազմ իսլամի պաշտպանութեան անունով։ Ճակատամարտը տեղի ունեցաւ 1260 թուին Այնա-Ջալուի հովտում։ Կիթբուղայի զօրքերը ջարդուեցին, նորա ամբողջ բանակը ընկաւ յաղթողների ձեռքը և յառաջապահ զօրքերի հրամանատար Բէնբարսը հալածական արեց մոնղոլներին[1]։ Կուտուզը մտաւ Դամասկոս և տիրեց ամբողջ

1) «Այլ զի սակաւք էին Բուղեանքն՝ կատարեցան և գե-

Ասորիքին. բայց Եգիպտոս վերադառնալիս սպանուեց Բենդուքդարից, որին մերժել էր Հալէպի կուսակալութիւնը. սուլթան հրատարակուեց Բենբարսը։

Հուլաղուն՝ երբոր պատրաստւում էր նորից արշաւել մամլուքների վերայ, վախճանուեց 1265 թուին։ Նորան յաջորդեց Աբաղան, որը պսակուած էր Բիւզանդիայի Միքայէլ պալէօլոգ կայսեր ապօրինի աղջկայ հետ։ Աբաղայի մասին ևս, ինչպէս վկայում է Վարդանը, «եւ համբաւ եթէ մկրտեցաւ» [1]).

Մոնղոլներին յաղթելուց յետոյ Բենբարսը իւր զէնքը դարձրեց քրիստոնեայ իշխանների դէմ և ի միջի այլոց պահանջեց Հեթումից վերադարձնել մոնղոլներից ստացած քաղաքները, վճարել տարեկան հարկ և իրաւունք տալ ցորենի արտահանութեան։ Հեթումը չընդունեց այդ պայմանները և այն ժամանակ Բենբարսը Էլ-Մանսուրի առաջնորդութեամբ զօրքեր ուղարկեց Կիլիկիա (1266 թ.), որոնք յաղթեցին Հայոց բանակը, գերի բռնեցին բանակի հրամանատար արքայորդի Լևոնին, ասպատակեցին ամբողջ երկիրը, կրակի և սրի մատնեցին Սիս մայրաքաղաքը և կործանեցին Այեաս և Ադանա քաղաքները։ Քսան օրուայ ընթացքում ամեն ինչ հուրի և սրի ճարակ անելով, մամլուքները բազմաթիւ գերիներով և հարուստ աւարով վերադարձան Եգիպտոս։ Հեթումը դիմեց Աբաղայի օգնութեան, բայց նա զբաղուած լի-

---

րեցան և էին որք ցրուեցան թաքեան և ապրեալ եկին առ թագաւորն Հայոց։ Եւ ի նմանէ յոլովք գտեալ մարդասիրութիւն, հանդերձս և երիվարս և ռոճիկս՝ եկին գոհութեամբ առ տէրն իւրեանց, թաթարք և քրիստոնեայք»։ Վարդ. Բարձ. 200.—Հեթում. 50.

[1]) Վարդ. Բարձ. 213.

նելով ներքին երկպառակութիւններով՝ չկարողացաւ ժամանակին օգնութեան հասնել։ Այդպիսով Հեթումը ստիպուած եղաւ ընդունել յաղթականի ծանր պայմանները և ազատել իւր որդի Լևոնին, որին սուլթանը համաձայնեց փոխանակել իւր մի սիրած բարեկամի հետ, որ գերի էր գտնւում մոնղոլների մօտ։ Բայց որովհետև, ինչպէս Հեթում պատմիչն է ասում, «սուլթանն Եգիպտոսի... մեքենայէր զկործանումն թագաւորութեան Հայոց» [1]), այդ պատճառով էլ շուտ շուտ արշաւում էր Կիլիկիայի վերայ և թէև ոչ միշտ միևնոյն յաջողութեամբ այսու ամենայնիւ այդ արշաւանքները աւերում և թուլացնում էին հայկական թագաւորութեան ուժերը։ 1274 թուի արշաւանքում Լևոնը Բ. յաղթեց Եգիպտացիներին. Լևոնի հօրեղբայր Սմբատը 1276-ին նոյնպէս ջարդեց նոցա, թէև ինքն էլ ընկաւ այդ կռւում։

Այն բոլոր պատերազմներում, որ մամլուքները մըղում էին մոնղոլների հետ, հայոց զօրքերը միշտ այդ վերջինների կողմն էին. և ամեն անգամ երբ մոնղոլները յաղթւում էին, մամլուքները մտնում և ասպատակում էին Հայոց թագաւորութեան սահմանները։ Այդպիսի դէպքերում հայերը սովորաբար բռնում էին լեռների անցքերը և երբ Եգիպտացիները գերիներով և աւարով ծանրաբեռնուած յետ էին դառնում, հայերը յանկարծակի ընկնում էին նոցա վերայ և մեծ վնասներ էին հասցնում։ Լևոն Բ-ի որդի Հեթում Բ-ի և նորա եղբայրների թագաւորութիւնը (1298—1305) աւելի ևս դժբաղդ եղաւ. նոցա ժամանակ բացի արտաքին յարձակումներից տեղի էին ունենում և ներքին սաստիկ երկպառակութիւններ

1) Հեթում 54.

եղբայրների մէջ, որոնք մէկ մէկուց ուզում էին խլել գահը։ Բացի սորանից երկպառակուած էր նաև ժողովուրդը այն անընդհատ բանակցութիւնների պատճառով, որ Թագաւորը վարում էր Հռոմայ աթոռի հետ՝ պապից օգնութիւն ստանալու ակնկալութեամբ։ Մոնղոլների օգնութիւնն էլ հետզհետէ աւելի նուազում էր, որովհետև վերջին ժամանակ նոքա էլ զբաղուած էին իրենց ներքին գործերով։ Վերջապէս այդ օգնութիւնը բոլորովին կտրուեց երբ ԺԴ. դարու վերջում մոնղոլները ընդունեցին մահմետականութիւնը։ Դժբաղդաբար քրիստոնեաները չկարողացան գրաւել նոցա քրիստոնէական եկեղեցու գիրկը. Թուի թէ անյաջողութեան պատճառներից մէկն էլ այն էր՝ որ զանազան դաւանութիւնների քարոզիչները փոխանակ ընդհանուր ուժով գործելու, ընդհակառակը աշխատում էին միշտ մէկը միւսին վնասել։ Այդպիսով ահա կտրուեց հայոց օգնականութեան վերջին յոյսը։ «Մարգեալ գովելի օրէնս և յաջորդ զեղբայրն իւր, ասում է Հեթում պատմիչը, մեռաւ (Ղազան խան)։ Խարբաղանդ (Kharbendé) որդի էր Արղուն տիկնոջ, ջերմեռանդն քրիստոնէի, որ հանապազօր ի մատրան իւրում առաջիկայ լինէր պատարագի. և ի մատրան անդ մկրտեցաւ որդին և բարուք յոյժ կրթեցաւ ի հաւատս. այլ յետ վախճանի բարեպաշտուհի մօրն յարեցաւ ի սարակինոսս և այնպէս ժանտացաւ, զի բազում տառապանս հասոյց արքային հայոց և զամ մի ողջոյն առաւելապէս յաղարտ վարեաց զդաշտավայրն աշխարհին հայոց» [1]։ Այդ փոփոխութեան վնասը ամենից առաջ կրեց Լևոն Դ-ը, որը սպանուեց մոնղոլների Բիլարղու

[1]) Հեթում 67.

զօրապետից։ Իսկ Օշինի և նորա որդի Լևոն Դ-ի թագաւորութեան ժամանակ եգիպտացիները անընդհատ յարձակւում, այրում և կործանում էին քաղաքները և հազարաւոր գերիներով ու հարուստ աւարով վերադառնում էին յետ։ Հայերը ստիպուած էին միաժամանակ հարկ տալ և Եգիպտոսի մամլուքներին և մոնղոլ խաներին։

Լևոն Դ-ի մահուամբ վերջանում է Հեթումեան տոհմը. այդ տոհմի վերջին ներկայացուցիչները այլևս չէին վայելում ժողովրդի համակրութիւնը նախ իրենց լատինասիրութեան և ապա Հռոմի հետ ունեցած յարաբերութիւնների համար։ Սակայն հարկաւոր է նկատել որ մոնղոլների օգնութիւնից զրկուելուց յետոյ, հայ թագաւորներին ուրիշ ելք չէր մնում բայց եթէ պապի միջոցով դիմել արևմտեան իշխանների աջակցութեան։ Բայց այդ յոյսերի և սպասած օգնութեան փոխանակ նոքա ստանում էին միմիայն մխիթարական և քաջալերիչ խօսքեր, երբեմն էլ մի աննշան գումար, մի քանի հատ դէսից դէնից հաւաքած մարդիկ և նորանոր խոստումներ ապագայի մասին և այն էլ միշտ պապի գերիշխանութիւնը ընդունելու պայմանով։ Իսկ այդ յարաբերութիւնները, որոնք շատ անգամ կատարւում էին սուլթանին տուած խոստման հակառակ, տեղիք էին տալիս նորանոր յարձակումների և աւերածութեան։ Հայկական թագաւորութիւնը եգիպտացիների աչքում վտանգների մշտական աղբիւր էր երևում. նոցա համար հայոց թագաւորները այնպիսի թշնամիներ էին, որոնք գրգռում էին նոցա դէմ արևմտեան Եւրոպայի իշխաններին։

## Թ.

Հայ պատմիչները, որոնցից վերջինն է Սամուէլ Անեցու շարունակողը, իրենց տարեգրութիւնը հասցնում են մինչև 1340 թիւը, Լևոն Դ-ի թագաւորութեան քառասներորդ տարին, որից մի տարի և մի քանի ամիս յետոյ նա վախճանուեց։ Նորանից յետոյ թագաւորութիւնը շարունակուել է այլևս 35 տարի և այդ ժամանակամիջոցում թագաւորել են մի քանի անձինք, մեծ մասամբ Լուսինեան տոհմից։ Այդ շրջանի պատմութեան աղբիւրները մինչև այժմ կազմում էին բիւզանդական պատմիչների—Կանտակուզէնի և Նիկիֆոր Գրէգորասի հաղորդած հատուկտոր տեղեկութիւնները, արաբացի պատմագիրները, պապերի նամակները և կոնդակները, Ֆրանսիայի, Սպանիայի և Անգլիայի դիւանատներում գտնուած մի քանի թղթերը և վերջապէս ձեռագիրների յիշատակարանները, որոնց մէջ արտագրիչները՝ ձեռագրի արտագրութեան տարին որոշելու համար՝ յիշատակում են ժամանակակից անցքերի մասին։ Այդ պատճառով Դարդէլի ժամանակագրութիւնը մի նշանաւոր գիւտ է մեր պատմութեան համար, որը լրացնում է մինչև այսօր եղած պակասորդը և ժամանակակից ու ականատես մարդի բերանով ծանօթացնում է մեզ Կիլիկիայի հայկական թագաւորութեան վերջին տարիների հետ։

Հեղինակը իւր պատմութիւնը սկսում է Աբգար թագաւորի քրիստոնէութիւնը ընդունելուց և Բարթողիմէոս առաքեալի քարոզութիւնից։ Այնուհետև անցնում է Տրդատի քրիստոնեայ դառնալու պատմութեան և կրկնում է շինծու առասպելը Տրդատ թագաւորի և Գրիգոր

Լուսաւորչի Հռոմ գնալու և Դաշանց Թուղթը կապելու մասին [1]։ Սորանից յետոյ անց է կենում Գագիկ Բ-ին և պատմում է թէ ինչպէս Հայ եկեղեցականները պաշտպանում էին յոյների դէմ ոչ թէ իրենց եկեղեցու ինքնուրոյնութիւնը, ինչպէս որ էր իսկապէս, այլ իբր թէ պապի գերիշխանութիւնը Հայոց եկեղեցու վերայ։ «Եւ ի բանէ ստոր եղև սկիզբն ատելութեան Հայոց ընդդէմ յունաց» (Գլ. Դ.)—եզրակացնում է Դարդելը։ Գագիկից յետոյ, Դարդելի խօսքով, Մեծ Հայքում թագաւորում է Ռուբէնը. բայց նորա յաջորդ Կոստանդինը զգալով որ անզօր է դէմ դնել Արփ-Ասլանին, տասը զինուորով փախչում է Փոքր Ասիա և խորամանգութեամբ տիրելով մի քանի քաղաքների հաստատում է իւր իշխանութիւնը։ Այդպիսով շարունակում է նա Կիլիկիայի թագաւորութեան պատմութիւնը մինչև Լևոն Գ. շատ տեղ թողնելով, շատ տեղ էլ աղաւաղելով. այդպէս օրինակ, ինչպէս յիշեցինք, նորա խօսքով Ռուբէնը և Կոստանդինը թագաւորել են Մեծ Հայքում, Լևոն Գ-ի որդիներին վերագրում է Հեթումին. շփոթում և խառնում է նոյնպէս և տարիները։

Լևոն Գ-ից սկսւում է Դարդելի ստոյգ պատմութիւնը, որի մէջ նա հաղորդում է իւր ականջալուր և ակա-

---

[1]) Այդ առասպելը այժմ արդէն անհիմն է համարւում թէ եւրոպացի և թէ հայ գիտնականների կողմից։ Քրիստոնէական աշխարհում այն ժամանակ դեռ ևս չէր ծագել պապի գերիշխանութեան խնդիրը, որը ապագայ դարերում միայն ծնունդ ստացաւ։ Դաշանց Թղթի կեղծ և յետակայ ժամանակի գործ լինելը ի միջի այլոց ապացուցանում է նորանով՝ որ այդ Թղթի մէջ գտնւում են ֆրանսիական բառեր։ Brosset-ն այդ Թուղթը համարում է ԺԲ. դարու գործ։

նաեւս եղած դէպքերը։ Գնահատելի են մանաւանդ նորա հաղորդած տեղեկութիւնները Կիլիկիայի Լուսինեան թագաւորների մասին, որոնց վերաբերութեամբ շատ բան դեռ ևս մութ և պակաս էր մեզ համար։

Լևոն Դ-ը ·անորդի լինելով կանչում է Կ. Պօլսից իւր հօրաքեռորդի Ջեհան իշխանին և կարգում է նորան «գունդստապլ Հայոց», այն նպատակով որ իւր մահուանից յետոյ նա լինի թագաւոր։ Ջեհանը հրաժարում է գահից և համոզում է իւր անդրանիկ եղբայր Գուիին (Գուիդոն), որ համաձայնի գալ և ընդունել իշխանութիւնը «յօգուտ քրիստոնէութեան» (Գլ. ԽԼ)։ Գուին 1342-ին Սիս քաղաքում օծւում է թագաւոր և ընդունում Կոստանդին (Գ.) անունը։ Սա քաջութեամբ պաշտպանելով իւր երկիրը արտաքին թշնամիներից, հրաժարւում է հարկատու լինել Եգիպտոսի սուլթանին։ Այդ պատմութիւնը տարբերւում է մեր մինչև այսօր ունեցած տեղեկութիւնից Գուիի և Ջեհանի մասին։ Սոցա կաթոլիկական ջերմեռանդութիւնը և յաճախակի յարաբերութիւնները պապի հետ, որոնք պահանջում էին երդմամբ խոստանալ կատարել կաթոլիկ եկեղեցու ծէսերը և արարողութիւնները, առիթ եղան ժողովրդական խռովութիւնների և թագաւորի ու նորա մարդկանց սպանման։ «Սպանան նոքա (արքայ և ոխեար նորա) —ասում է Դարդելը—ի սակս խաղաղութեան և հանգստեան աշխարհիս համօրէն» (Գլ. Խ.)։ Գուիի փոխարէն թագաւոր ընտրւեց Կոստանդին Դ-ը, որ հայ էր բայց ոչ արքայական ցեղից. նա «էր որդի Պաղտին մարաջախտի և տիկնոջ Մարիւն, դստեր Թոռին Սմբատայ գունդստապլի»[1])։ Կոստանդինը դարձեալ հարկատու ե-

---

[1]) Սիսուան էջ. 243.

ղաւ Եգիպտոսի սուլթանին՝ թողնելով նորան Ադանան, Կոռիկոսը և ուրիշ քաղաքներ ու բերդեր։ Նա թագաւորեց 19 տարի և մեռաւ անզաւակ[1])։ Կոստանդնի փոխարէն ընտրուեց մի ուրիշ Կոստանդին, որը Կիպրացի էր և շատ հարուստ. և հէնց այդ հարստութեան պատճառով էլ ընտրութիւնը ընկաւ նորա վերայ (Գլ. ԽԸ.)։ Այդ Կոստանդնի մասին մինչև այժմ ոչինչ յայտնի չէր. Դարդելը առաջինն է յիշում նորա մասին։

Այդ ժամանակ Կիպրոսի Պետրոս թագաւորը ստացել էր Ուրբանոս Ե. պապի թուղթը յանուն հայ իշխանների և Ջեհանի (Կոստանդին Գ.) որդի Լևոնի, որով պապը այդ վերջինին օրհնում և նշանակում էր հայոց թագաւոր։ Սակայն Պետրոսը և նորա յաջորդը ծածկել էին պապի այդ թուղթը, որովհետև Կոստանդին Գ-ը խոստացել էր հպատակուել Կիպրոսի թագաւորին (Գլ. ԽԹ.)։ Կոստանդինը սպանուեց իւր հպատակներից, որոնք այնուհետև պատգամաւորութեան միջոցով դիմեցին Կիպրոսի թագաւորին և խնդրեցին ուղարկել իւր ազգական Լևոնին, որին համարում էին իրենց օրինաւոր տէր։ Դժուարին և վտանգալից ճանապարհներ անցնելով Լևոնը Կիպրոսից հասաւ Սիս՝ քսանևհինգ եւրոպացի հեծելազօրների ուղեկցութեամբ։ Լևոնի ամբողջ թագաւորութիւնը բաղկացած էր միմիայն Սիս քաղա-

---

[1]) Մեզ մինչև հիմա յայտնի եղած տեղեկութիւններից երևում է որ Կոստանդինը իմաստուն թագաւոր էր, որ կարողացել է ոչ միայն պաշտպանել աշխարհը արտաքին թշնամիներից այլ և խաղաղութեան ու բարեկարգութեան մէջ պահել նորան։ Սակայն Դարդելը այլ կերպ է ներկայացնում նորան և այդ երևի հետևանք է նորա չափազանց համակրութեան դէպի Լուսինեան տոհմը։

քից, որը շատ անգամ կողոպտուել և աւերուել էր եգիպտացիների ձեռքով։ Քաղաքը չորս կողմից շրջապատուած էր Թիւրքմէն ասպատակաւորների հրոսակներով, որոնց ձեռքից ամբողջ ութը տարի շարունակ ժողովուրդը չէր կարողանում մշակել իւր դաշտերը (Գէ. ՁԳ.)։ Լևոնը հրաժարուեց օծուել կաթողիկոսի ձեռքով, յայտնելով որ ինքը կաթոլիկ է և պէտք է որ ամենքն էլ կաթոլիկ լինեն։ Օծման համար նա մինչև անգամ բերել էր իւր հետ կաթոլիկ եպիսկոպոս և կաթոլիկական միւռոն (Գէ. ՁԸ—Դ.)։ Այդ հանգամանքը պատճառ եղաւ ընդհանուր անբաւականութեան և խռովութեան. ժողովուրդը և իշխանները աւելի լաւ էին համարում անցնել կրկին մուսուլմանների իշխանութեան տակ (Դ.Գ.)։ Վերջապէս կաթողիկոսի համաձայնութեամբ 1375 թուին մատնեցին թագաւորին սուլթան Մելիք Աշրաֆ Շաբանի ձեռքը, որը և գերի վարեց նորան Քահիրէ քաղաքը։ Երկար տարիներ գերութեան մէջ մնալուց յետոյ վերջապէս սուլթանը զիջանելով Արագոնի և Կաստիլիոյ թագաւորների միջնորդութեան և այդ վերջինի ուղարկած հարուստ ընծաներին, արձակեց նորան գերութիւնից։ Լևոնը Քահիրէից ճանապարհուեց Եւրոպայ, որտեղ մէկ արքունիքից անցնելով միւսը, Ավինիոնից գնալով Հռոմ և Հռոմից Ավինիոն՝ երկու իրար հակառակ և մէկը միւսին անիծող պապերի մօտ, ամեն տեղ աշխատում էր զուր շարժել դէպի իւր դրութիւնը և նոցա օգնութեամբ յետ ստանալ կորցրած թագաւորութիւնը։ Ամեն տեղ նորան փառաւոր ընդունելութիւններ էին անում, շքեղ հացկերոյթներ և մեծ մեծ խոստումներ էին տալիս, բայց որանից աւելի այլ ևս ոչինչ չէր դուրս գալիս։ Մենք երկար կանգ չենք առնում Լևոն Ե-ի ճա-

նապարհորդութիւնների և Եւրոպայում վարած կեանքի վերայ, որովհետև Դարդելի ներկայ տարեգրութիւնը ման-րամասնօրէն և հետաքրքրական տեղեկութիւններով լի է այդ ամենի մասին։ Լևոնը վախճանուեց 1393 թուականին Փարիզ քաղաքում, թողնելով մի կտակ, որով իւր բոլոր կա-րողութիւնը բաժանում է չորս մասի. մէկ մասը կտակում է աղքատների համար, միւս մասը թողնում է Սելես-տինեանց մայր եկեղեցուն (Notre Dame des Celestins) կամ այն եկեղեցուն, ուր որ նորա մարմինը կթաղուի, այն պայմանով որ միշտ նորա համար հոգեհանգիստ կատա-րեն. երրորդ բաժինը նշանակում է իւր ապօրինի որդու դաստիարակութեան և պահպանութեան համար. իսկ երբ որդին կհասնի քսան տարեկան հասակին, այն ժա-մանակ միայն այդ նշանակած գումարը անցնում է նորա ձեռքը. և վերջապէս չորրորդ բաժինը նա թողնում է իւր սպասաւորներին։ Լևոնի մարմինը նորա ցանկու-թեան համաձայն թաղեցին Սելեստինեանց վանքում։ Նորա գերեզմանի վերայ դրուած էր մարմարեայ մահար-ձան թագաւորի պատկերով և շուրջը գոթական տառե-րով հետևեալ արձանագրութիւնը փորագրած. «Cy gist très noble et excellant prince Lyon de Lysigne quint, roy latin du rayaume d'Arménie, qui rendit l'âme à Dieu à Paris l'an de grace M. CCC. $\frac{XX}{4}$ et XIII; priez pour luy.—Այստեղ հանգ-չում է ազնուաշուք և գերազանց իշխան Լևոն հինգե-րորդ Լուսինեանը, Հայկական թագաւորութեան լատին թագաւորը, որ աւանդեց հոգին առ Աստուած Փարիզում, շնորհաց 1393 թուականին։ Աղօթեցէք նորա համար»։ 1789 թուականի յեղափոխութեան ժամանակ այդ մարհարձանը փոխադրեցին Փոքր-Աւգուստինեանների ֆրանսիական յի-շատակարանների թանգարանը (Musée des monuments fran-

çais des Petits-Augustins). Իսկ թագաւորութեան վերականգնման ժամանակ Սէն-Դընիի արքայական շիրիմների դամբարանը (caveaux des sépultures royales de St.-Denis), ուրտեղ և պահպանւում է մինչև այսօր։

Լևոն Ե-ի մահուանից յետոյ հայոց թագաւորի տիտղոսը անցաւ Կիպրոսի Յակոբ Ա. թագաւորին և ապա նորա ժառանգներին մինչև 1489 թուականը՝ Յակոբ Բ. վերջին թագաւորի կինը—Եկատերինէ Կորնարիոն։ Յակոբ Բ-ի նախընթաց Շարլոտա թագուհին հրաժարուեց գահից յօգուտ իւր եղբօրորդի Կարոլոս իշխանի, որ Սավոյայի դուքսն էր և մականուանւում էր պատերազմիկ (Charles duc de Savoie dit le guerrier). Այս պատճառով էլ Սավոյեան տան իշխանները, որոնք այժմ թագաւորում են Իտալիայում, մինչև հիմայ էլ իթիւս այլ տիտղոսների կրում են նաև հայոց թագաւորի տիտղոսը։

---

Այժմ անցնենք այն խնդրին թէ ո՞վ էր Դարդելը և ի՞նչ նպատակով է գրուած նորա ժամանակագրութիւնը։

Շատ ուխտաւորներ, որոնք ս. վայրերին երկրպագելու համար անցնում էին Բահիրէից, այցելում էին նաև հայոց գերի թագաւորին իրենց յարգանքը մատուցանելու համար (Դրլ. Գ.Օ.)։ 1377 թուին էլ այցելեցին նորան մի խումբ ուխտաւորներ, որոց մէջ գտնւում էին նաև երկու եկեղեցականներ. այդ եկեղեցականներից մէկն էր ներկայ ժամանակագրութեան հեղինակը—ֆրանսիացի Յովհաննէս Դարդելը։ Թագաւորը թախանձանօք խնդրեց նորան մնալ իւր մօտ իբր խոստովանահայր և խորհրդական, որոն-

ցից նա զուրկ էր մինչև այդ օրը։ Դարդելը խոստացաւ ուխտագնացութիւնից յետոյ վերադառնալ Լևոնի մօտ, իւր մեծաւորների թոյլտուութեամբ։ Այդպէս էլ եղաւ. Դարդելը վերադարձաւ և մնաց թագաւորի մօտ իբրև խոստովանահայր, կատարելով միևնոյն ժամանակ այլևայլ յանձնարարութիւններ և քարտուղարի պաշտօն։ Երկու տարի անցած Լևոնը ուղարկեց Դարդելին Արագոնի և Կաստիլիոյ թագաւորների մօտ խնդրել որ նոքա միջնորդեն Եգիպտոսի սուլթանի առաջ իւր ազատութեան համար։ Թագաւորի յանձնարարութիւնը յաջողութեամբ կատար ածելուց յետոյ, պապը 1383 թուին ձեռնադրեց Դարդելին եպիսկոպոս ի վարձադրութիւն այն դժուարութիւնների և աշխատութեան, որ նա գործ էր դրել Լևոնի փրկութեան համար (Գլ. ԾԼԸ. ԾԽԱ.)։

Դարդելի ժամանակագրութիւնը հաւանականաբար գրուած է այն նպատակով՝ որպէսզի շարժի եւրոպական տէրութիւնների կարեկցութիւնը դէպի Լևոնը։ Մենք տեսնում ենք (Գլ. ԾԽԱ.) որ Լևոնը Կաստիլիոյ Սեգովիա քաղաքում թագաւորի և նորա բազմաթիւ պալատական պաշտօնեաների առաջ նկարագրում է իւր արկածները ճիշտ այն կարգով ինչ կարգով որ հաղորդուած է Դարդելի ժամանակագրութեան մէջ (Գլ. ԾԼԸ.)։ Նոյնը արաւ նա և Փարիզում Կարոլոս Զ-ի և նորա ժողովականների առաջ։ Պրոֆ. Կարրիէրը մի քանի բառերի ուղղագրութեան հիման վերայ ենթադրում է որ Դարդելը գրել է նոյն իսկ Լևոնի թելադրութեամբ և նորա խօսքերով։

Զննելով որ Կիլիկիոյ հայ թագաւորութիւնը գըտնւում էր հին Մեծ և Փոքր Հայքի սահմաններից դուրս այսու ամենայնիւ Դարդելը յոյն և արաբացի պատմիչների

նման Կիլիկիան անուանում է Հայաստան, Փոքր Հայք։ Հարկաւոր է նոյնպէս ի նկատի ունենալ որ Երմինեայ և Երմինեա-ընէն բառերով Դարդելը հասկանում է միմիայն լատինացիներին։

Այդ ժամանակագրութիւնը առաջին անգամ գտաւ Իւլիս Ռոբէրը (Ulysse Robert) Դօլէի մատենադարանում և այդ մասին հաղորդեց Լատինական Արևելքի Արխիվի Բ. հատորում (Archives de l'Orient latin t. II), որը հրատարակում էր կոմս Ռիանը (compte Riant)։ Աչքի առաջ ունենալով այդ աշխատութեան կարևորութիւնը մեր պատմութեան համար, մենք դիմեցինք կոմս Ռիանին խնդրելով ուղարկել մեզ ձեռագրի օրինակը։ Նա ուղարկեց սրբագրական թերթերը, որովհետև գիրքը այդ ժամանակ արդէն տպւում էր խաչակրութեան պատմագիրների ժողովածուի երկրորդ հատորի համար, հայ աղբիւրների շարքում (Recueil des Historiens des Croisades, documents armeniens, t. II)։ Այդ սրբագրական թերթերը 1886 թուին ուղարկեցինք Ս. Պօլիս Խորէն արքեպիսկոպոս Նար-Պէյին, որը յանձնառու եղաւ թարգմանել նորան հայերէն։ Ամբողջ տարի հարկաւոր եղաւ գործ դնել ազատելու համար այդ թերթերը տաճկական գրաքննութեան ձեռքից, որը դատապարտել էր նորան այրելու։ Տաճկական գրաքննիչները գտել էին որ Դարդելի ժամանակագրութիւնը մեծ վտանգ է սպառնում օսմանեան մեծազօր պետութեան...

Այդ թարգմանութիւնը ներկայացնում էր մեծամեծ դժուարութիւններ նախ այն պատճառով որ Դարդելի աշխատութիւնը գրուած է հին Ֆրանսիական լեզուով, որը տարբերւում է նորից թէ բառերով և թէ քերականական ձևերով և դարձուածներով, և երկրորդ որ թարգմանչի ձեռքի տակ գտնւում էին միայն սրբագրա-

կան թերթերը՝ լի տպագրական սխալներով։ Մի կողմից ահա այդ պատճառները, միւս կողմից էլ գերապատիւ "Սար-Գէյ սրբազանի վերահաս սկարութիւնը առիթ եղան թարգմանութեան ուշանալուն, որը մեր ձեռքը հասաւ միայն 1888՝ թուականին։ Գերապատիւ թարգմանիչը աչքի առաջ ունենալով յիշեալ դժուարութիւնները, որոնք չէին կարող երաշխաւոր լինել թարգմանութեան ճշդութեան և հաւատարմութեան՝ խնդրում էր մեզ համեմատել և վերստուգել նորա թարգմանածը գաղղիական բնագրի հետ։ Ստանալով պրօֆ. Կարրիէրից ժամանակագրութեան արդէն տպագրուած թերթերը հանդերձ նոյն իսկ Կարրիէրի հմտալից ծանօթութիւններով, և օգուտ քաղելով մեր Ստոկհոլմ գտնուելուց, ուր ներկայ էինք արևելագէտների ժողովին, խնդրեցինք մեր բարեկամ "Նորայր Բիւզանդացուն համեմատել թարգմանութիւնը բնագրի հետ։ Գ. Բիւզանդացին մեծ ուշադրութեամբ և իրեն յատուկ սրամտութեամբ և ընդարձակ հմտութեամբ վերուղղեց նոյն իսկ բնագրի շատ տեղերը և ցոյց տուաւ թարգմանութեան անճշդութիւնները, որոնք մեծ մասամբ հետևանք էին Խորէն սրբազանի ձեռքի տակ գտնուած բնագրի պակասաւորութեան։

Չնայելով սորան մեզ հարկաւոր եղաւ նոյն իսկ մեծ. "Ն. Բիւզանդացու խորհրդով բնագրի մի քանի տեղերը ճիշտ հասկանալու համար դիմել հին Փրանսիական լեզուի մասնագէտների օգնութեան։ Մեք պարտք ենք համարում, յայտնելով մեր յիշեալ երկու գիտնական բարեկամների գործ դրած ջանքը և աշխատութիւնը, հրապարակաւ մատուցանել նոցա և մեր խորին շնորհակալութիւնը։

Թիֆլիզի հայերէն գրքեր հրատարակելու ընկերութիւնը լաւ ըմբռնած լինելով պատմական յիշատակարանների ուսումնասիրութեան կարևորութիւնը ինքնա-

ճանաչութեան համար, յանձն առաւ հոգալ ներկայ աշխատութեան տպագրութեան ծախսերը, որ ահա լոյս է ընծայւում մեր խմբագրութեամբ։ Իսկ մեք մեր կողմից հարկաւոր համարեցինք ներկայ յառաջաբանով ցոյց տալ Կիլիկիայի հայ թագաւորութեան ծագման և կործանման պատճառները, որոնք շնորհիւ Մխիթարեան հայրերի միակողմանի և կաթոլիկական ոգւով ներշնչուած աշխատութիւնների աղճատուած և անհարազատ են հանդիսանում մեր գրականութեան մէջ։

Կ. ԵԶԵԱՆՑ.

1890 Օգոստ. 30
Ս. Պետերբուրգ.



# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ


Մովսէսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց. Տփխիս. 1881.
Յովհաննու Կաթողիկոսի Պատմութիւն. Երուսաղէմ. 1867.
Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական. Պետերբուրգ, 1885.
Թովմայ վարդապետի Արծրունւոյ Պատմութիւն տանն Արծրունեաց. Պետերբուրգ, 1887.
Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն Պատմութիւն. Պետերբուրգ, 1879.
Արիստակէսի վարդապետի Լաստիվերցւոյ Պատմութիւն. Վենետիկ, 1844.
Տեառն Ներսէսի Շնորհալւոյ գիրք, որ կոչի Ընդհանրական, Սանկտպետերբուրգ, 1788.
Գրիգոր Կաթողիկոս Տղայ. Ներսէս Լամբրոնացի. Վենետիկ, 1865.
Մեծին Վարդանայ Բարձրբերդեցւոյ Պատմութիւն տիեզերական. Մոսկվա, 1861.
Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ. Պատմութիւն Հայոց. Մոսկուա. 1858.
Մատթէոսի Ուռհայեցւոյ Պատմութիւն. Երուսաղէմ, 1869.
Տեառն Միխայէլի Ասորւոյ Պատրիարքի Ժամանակագրութիւն. Երուսաղէմ, 1871.
Սմբատայ Սպարապետի Տարեգիրք. Փարիզ, 1859.
Վահրամայ Րաբունւոյ Պատմութիւն Ռուբինեանց. Փարիզ, 1859.
Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն ժամանակագրական. Պետերբուրգ, 1867,

Մաղաքիայ Աբեղայի պատմութիւն վասն ազգին նետողաց. Պետերբուրգ, 1870.
Հեթում Պատմիչ Թաթարաց. Վենետիկ, 1842.
*H. Prutz.* Culturgeschichte der Kreuzzüge. Berlin. 1883.
*H. v. Siebel.* Geschichte des ersten Kreuzzugs. Leipzig. 1881.
*L. v. Ranke.* Weltgeschichte. 8 ter Theil. Leipzig. 1887.
*C. v. Ritter.* Die Erdkunde. Band IX. Theil II.
*H. Petermann.* Beiträge zu der Geschichte der Kreuzzüge aus armenischen Quellen.
*E. Rey.* Les Colonies Franques en Syrie aux XII et XIII siècles. Paris. 1883.
*Recueil des Historiens des Croisades.* Documents arméniens, t. I. Paris. 1869.
*Archives de l'Orient latin.* T. II. Paris 1884.
*Theodor Rohde.* König Leon II von Kleinarmenien, Göttingen, 1869.
*M. Saint-Martin.* Recherches sur la vie et les aventures de Léon, dernier roi des arméniens. (Mémoires de l'Academie royale des Inscriptions et Belles-lettres).
*Ed. Dulaurier.* Recherches sur la Chronologie Arménienne, Paris. 1859.
*V. Langlois.* Cartulaire de la Chancellerie des Roupéniens, Venise. 1863.
*Fr. Hurter.* Geschichte Papst Innozenz des Dritten, Hamburg. 1834. Fr. Perthes. I und II Band.
*Pichler.* Geschichte der kirchlichen Trennung zwischen dem Orient und Occident. II Band. München. 1865.
*G. Weil.* Geschichte der Kalifen. III Band. Mannheim, 1851. Fr. Bassermann.
*G. Weil.* Geschichte der islamitischen Völker, Stuttgart. 1866.
*Lebeau.* Histoire du Bas-Empire, Paris. 1834.
*M. le baron d'Ohsson.* Histoire des Mongols, La Haye et Amsterdam. 1835.
*M. E. G. Rey.* Les Familles d'outre-mer de du Cange, Paris. 1869.
*M. L. de Maslatrie.* Histoire de l'ile de Chypre sous le règne des princes de la maison de Lusignan, Paris. 1861.
*Karl Herquet.* Cyprische Königsgestalten des Hauses Lusignan, Halle a. S. 1881.

### ՅՈՎՀԱՆՆՈՒ ԴԱՐԴԵԼԻ

# ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

ՍԿԻԶԲՆ ժամանակագրութեան և պատմութեան գործոց և ըստ մասնէ արարուածոց Թագաւորացն Մեծի և փոքուն Հայոց, որք տիրեցին և վարեցին զպետութիւնն զայն յերեսներորդ երկրորդ ամէ անտի մարդեղութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, մինչև ցամն հազար երեք հարիւր եօթանասուն և չորս, իջանելով անընդհատ յազգէ յազգ մինչև յուղղակի սերունդ արքայազարմ Թագաւորին Լևոնի Ե. ի, որ զայժմուս ունի զԹագն Հայոց։

Եւ յետ այսորիկ շարայարին վերնագիրք գլխոցն ըստ Թուոյ մինչև ի վախճան. և այսու կարգաւ մարթիցի գիտել ճշդիւ գտակաւ թէ զո՛ր ինչ իրաց խօսիցի գլուխն իւրաքանչիւր։ Այն այս արքայ Լևոն անկեալ ի ձեռս սուլթանին Բաբելոնի եղաւ ի բանտի և ազատեցաւ անտի յամի Տեառն 1382, ի վերջնում աւուր ամսեանն սեպտեմբերի։

---

# ԳԼՈՒԽ Ա.

Թէ ո՛րպէս արքայն Հայոց Աբգար, որ էր հիւանդ և ախտացեալ ուրկութեամբ, բժշկեցաւ սքանչելեօք և յետ դառնալոյ ի հաւատս Յիսուսի Քրիստոսի ընդ ժողովրդեան իւրում, կործանեաց զկուռս, զոր պաշտէր։

*Յամի մարդեղութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի թագաւորեաց արքայն Աբգար ի Մեծ Հայս, ամս երեսուն և ութ. էր նա կռապաշտ և հեթանոս և վարակեալ յախտ ուրկութեան և չգտանէր ուստեք բժշկութիւն։ Եւ եղև լսել նմա զլուր հրաշից, զոր գործէր Յիսուս Քրիստոս յԵրուսաղէմ և թէ բժշկէր զբորոտս և յարուցանէր զմեռեալս։ Եւ շարժեալ արքայի ի ջերմեռանդն հաւատոց, առաքեաց յԵրուսաղէմ առ Յիսուս Քրիստոս զմի ոմն յաւագաց իւրոց, որում անուն էր Յովսէփ և պատկերագործ զոմն զի գրեսցէ զնմանութիւն կերպարանաց նորա։ Այլ Քրիստոս փոխէր յաճախ զտեսիլ երեսացն և չ'եղև հնար նկարչին հանել զպատկեր դիմաց նորա ի պաստառի։ Յայնժամ Տէրն մեր Յիսուս Քրիստոս որ գիտէրն քաջ զեռանդն սրտի արքային, էառ զպաստառակ և մերձեցոյց յերեսս իւր և իսկ և իսկ տպաւորեցաւ անդանօր նմանութիւն երեսաց նորա. և տուեալ զայն ցՅովսէփ և ցպատկերագործն ասաց զի կացցէ արքայ հաստատուն ի հաւատսն և ինքն առաքեսցէ ընդ հուպ զմի ոմն յաշակերտաց իւրոց զի բժշկեսցէ զնա։ Եւ եղև իսկ այսպէս. զի յետ համբառնալոյ Յիսուսի Քրիստոսի, Սուրբն Բարթողոմէոս Առաքեալ եկն առ արքայն Աբգար ի վերին Հայս և դարձոյց զթագաւորն և զժողովուրդ նորա ի հաւատս քրիստոնէութեան և կործանեցին զդրօշեալս իւրեանց։*

# ԳԼՈՒԽ Բ.

Թէ որպէս արքայն Տրդատ փոխեցաւ ի կերպարանս խոզի կամօքն Աստուծոյ, փոխանակ զի եղեալ էր նորա յարգելանս վիրապ ոմն առ որ ձգեալ էր զԼուսաւորիչն Գրիգորի։

Եւ եղև իբրև մեռաւ արքայն Աբգար, թագաւորեաց ի Հայս որդի նորա Սանատրուկ, յամի Տեառն 70։ Եւ այլք զհետ նորա բազումք մինչև ցամն 295 մարդեղութեան Յիսուսի Քրիստոսի, զորոց լռէ պատմութիւն զի չարարին և ոչ մի ինչ յիշատակաց արժանի։

Ի սմին ժամանակի թագաւորեաց արքայն Տրդատ ի Հայաստան, որոյ ուրացեալ զհաւատս Յիսուսի Քրիստոսի, դարձաւ ի կռապաշտութիւն։ Եւ զի այր ոմն սուրբ՝ անուն Գրիգոր Նազարին (Լուսաւորիչ) քարոզէր զՃշմարիտ Հաւատս, ետ հրաման արկանել զնա ի վիրապ վաղնջուց ժամանակաց, լի օձիւք և զեռնօք թունաւորօք և կնքել զդուռն մատանեաւ իւրով զի մի ոք իշխեսցէ տալ նմա կերակուր, և զի մեռցի նա անդ։ Վասն այսր անգթութեան՝ զոր արքայ Տրդատ եցոյց առ այրն Աստուծոյ, փոխեցաւ նա երկնային իմն զօրութեամբ ի կերպարանս խոզի և արածէր յանտառս ընդ այլս. այլ ոչ կորոյս ոչ զզգացումն և ոչ զխօսողութիւն։ Յայնժամ ոմանք ի բարեպաշտօն մարդկանէ և ի ժողովրդենէ անտի՝ հարեալ ի գութ ընդ թագաւորն իւրեանց, եկին ի վիրապ և գտին զայրն Աստուծոյ ի կենդանութեան, որոյ կացեալ էր անդ ամս երկոտասան և կէս, կերակրեալ ի հրեշտակաց Աստուծոյ։ Եւ աղաչէին զնա աղօթել առ Աստուած զի դարձցի արքայն իւրեանց ի կերպարանս մարդոյ և ինքեանք եկեսցեն ի Հաւատս

*

և կործանեսցեն զգլոշեալս իւրեանց։ Եւ խոստացաւ նոցա այրն սուրբ և աղօթեաց առ Աստուած, որ լուաւ ձայնի աղաչանաց նորա։ Այլ ցորչափ ժամանակս եկեաց արքայ՝ մնաց ի նմա ունկն մի խոզի ի վկայութիւն սքանչելեացն։

---

## ԳԼՈՒԽ Գ.

Թէ որպէս Սուրբն Սեղբեստրոս, որ էր Հայրապետ Հռոմայ յայնմ ժամանակի՝ և կայսրն Կոստանդիանոս առաքեցին առ արքայն Տրդատ և առ Սուրբն Գրիգոր զի գնասցեն առ նոսա ի Հռոմ։

Համբաւ սքանչելեացս այսոցիկ՝ որ գործեցան՝ եհաս առ Սուրբն Սեղբեստրոս, որ էր ի ժամանակին յայնմիկ Հայրապետ Հռոմայ և առ կայսրն Կոստանդիանոս. և առաքեցին հանդիսապէս հրեշտակս առաջի արքային Տրդատայ և Սրբոյն Գրիգորի հրաւիրելով զնոսա գալ ի Հռոմ դնել դաշն միաբանութեան և հաւատալ և ունել զբանս կաթողիկէ հաւատոյ, ըստ եկեղեցւոյն Հռոմայ։

Յորժամ արքայ և Սուրբն Գրիգոր ընկալան զպատգամն, մեկնեցան ի վերին Հայոց և ընդ նոսա հանդիսաւոր բազմութիւն արանց իբր քսան և չորից հազարաց, առեալ ընդ իւրեանս պարգևս և պատարագս առատաձիրս ընծայել Հայրապետին և կայսեր, որք և ընկալան զնոսա պատուով մեծաւ։ Եւ առաջի ամենեցուն պատմեցան սքանչելիքն որ եղեն։ Եւ եդին նոքա զինքեանս ընդ իշխանութեամբ եկեղեցւոյն Հռոմայ, իբրև որդիք ճշմարիտք և հնազանդք։ Եւ ի հաստատութիւն

այսորիկ գրեցան թուղթք դաշանց երկուք պատուական արեամբ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ի բաժակէ պատարագին, զոր մատոյց Ս. Սեղբեստրոս Հայրապետ և յորոց կալաւ նա զմին առ իւր և տուաւ միւսն առ արքայն և առ Սուրբն Գրիգոր, ի յիշատակ յաւիտենականն։

Եւ յետ այնորիկ խնդրեաց յարքայէ ինքնակալն Կոստանդիանոս տալ նմա երիս հարիւրս արանց յայնցանէ, որք առ նմա կային, արք գեղանձնեայք. և շնորհեաց նմա արքայ, ընդ որ հաճեցեալ ինքնակալին մեծապէս, առաքեաց զնոսա ի Սուրբն Գերմանիա ի բնակութիւն։ Եւ յայսմանէ կարծիք են առ բազումս թէ գերմանացիք սերեալք իցեն ի Հայոց։ Եւ յետ այնորիկ արքայն Տրդատ և Սուրբն Գրիգոր դարձ արարին յաշխարհ իւրեանց ի վերին Հայս։ Եւ թագաւորեաց արքայն Տրդատ ամս յիսուն և վեց։

---

## ԳԼՈՒԽ Դ.

Թէ որպէս կայսրն Հոռոմոց Վաղանտինոս եղև ատեցեալ զարքայն Հայոց Պապիկ և զծնողս նորա հնազանդել եկեղեցւոյն Յունաց և եարկ զնա ի բանդ և զմահն ի փորձառութեանց նորա. և թէ որպէս սկսան ատելութեան ընդդէմ Յունաց։

Յետ անցանելոյ յաշխարհէ արքային Տրդատայ, քանզի չեթող նա զաւակ հասակեայ, պատշաճ թագաւորութեան, բազումք յիշխանաց անտի և յաւագաց կալան զգլուխս նոցա ընդ ձեռամբ և ինքեանք տիրեցին և իշխեցին Հայաստան աշխարհի. և վարեցին զայն այնպէս զի գործք նոցա չեն արժանիք յիշատակաց։

Եւ եղև զի յամի Տեառն 1034, պսակեցաւ ի թա-
գաւոր Հայոց արքայն Գագիկ (Բ.), որում առաքեաց
Հրեշտակս կայսրն Կոստանդնուպոլսոյ, խնդրելով ի նմանէ
զի առաքեսցէ զերկուս ի վարդապետաց անտի իւրոց ի
քննութիւն հաւատոց քրիստոնէութեան։ Եւ առաքեաց
զնոսա արքայ. և առաջի եղեն ինքնակալին, որ իբրև
լուաւ ի նոցանէ թէ արքայն Հայոց և ժողովուրդ նորա
էին ընդ հնազանդութեամբ եկեղեցւոյն Հռոմայ, ետ հրա-
ման արկանել զնոսա ի բանտ և բռնադատեաց հնազան-
դել եկեղեցւոյն Յունաց և հրաժարել ի Հռոմէականէն։
Եւ արարին նոքա զայն ակամայ կամօք առ ահի մա-
հու ի բանտի։ Եւ արար ինքնակալն Հռոմոց հրովար-
տակս և առաքեաց առ արքայն Գագիկ թէ զեա՛րդ վար-
դապետք նորա երկոքին ընդ համօրէն ազգին Հայոց խոս-
տացան հնազանդել եկեղեցւոյն Յունաց, փոխանակ եկե-
ղեցւոյն Հռովմայ։

Իբրև լուաւ արքայ Գագիկ զբանս զայսոսիկ, ել
մեկնեցաւ վաղվաղակի ի վերին Հայոց և դէմ եդեալ
գնաց ի Կոստանդնուպօլիս, և առաջի եղեալ ինքնա-
կալին՝ բողոք կալաւ ասելով թէ՝ ինքն և ազգն իւր
էին հնազանդեալք մօրն մերոյ սրբոյ եկեղեցւոյն Հռո-
մայ ըստ խոստման իւրեանց և խնդրեաց ի կայսերէ զի
տացէ ի ձեռս իւր զվարդապետսն զայնոսիկ։ Եւ բարկա-
ցեալ ընդ այն ինքնակալին՝ ետ հրաման ձերբակալ առ-
նել զարքայն և զվարդապետս, որ ընդ նմայն եկեալ էին
և արկանել ի բանտ դառնութեան զամ մի և կէս։ Յայն-
ժամ արքայ Գագիկ և վարդապետք նորա անկեալ յեր-
կիւղ զի մի տացէ զնոսա ինքնակալն ի մահ անարգու-
թեան, յօժարեցան առնել զկամս նորա. այլ բերանով և
եթ և ոչ սրտիւ. և մազապուր ճողոպրեալ ի ձեռաց

կայսեր, դարձ արքայն յաշխարհն իւրեանց։ Եւ ի բանէ աստի սկիզբն եղեւ ատելութեան Հայոց ընդդէմ Յունաց։

---

## ԳԼՈՒԽ Ե.

Թէ ո՛րպէս արքայն Գագիկ ի դառնալն իւրում յաշխարհն Հայոց էր կորուսանել զմետրապոլիտն ոմն յոյն արկեալ ի քուրձ և զշուն նորա ընդ նմա, փոխանակ զի կոչէր զանուն շան իւրոյ Արմէն, առաջի արքային և ուղեկցաց նորա։

Եւ եղեւ ի դառնալ անդ արքային Գագկայ յաշխարհ թագաւորութեան իւրոյ, օթեւանս կալաւ ընդ արս իւր ի քաղաքի միում որ կոչէր Կեսարիա, և էր յայնժամ ընդ իշխանութեամբ կայսերին Հոռոմոց։ Իբրեւ ագաւ արքայ, առաջի եղեւ նմա մետրապոլիտ ոմն Յոյն յազգէ բերելով ի միասին և զշուն իւր, որում եդեալ էր անուն Արմէն, յանարգանս Հայոց. և առաջի արքայի և ուղեկցաց նորա ձայնատու լինէր շան իւրոյ զի եկեսցէ մօտ, կոչելով զնա Արմէն, իբրեւ ի հեգնուկս։ Եւ զայրացաւ մեծաւ ցասմամբ արքայն Հայոց Գագիկ. և կարի իսկ յիրաւունս զի ոչ ինչ չարիս արարեալ էր նորա և ոչ արանց իւրոց ազգին Յունաց։ Իսկ եպիսկոպոսն՝ որ Հոռոմէր ազգաւ, յանդիման ծաղր առնէր զնա և զարս նորա։ Եւ հրաման ետ արքայ ունել զեպիսկոպոսն Յոյն և զշուն նորա և եդեալ ի քուրձ մի կապել պնդագոյնս։ Եւ ապա սկսան հաստաբեստ բրօք հարկանել զշունն, որ ի սաստկութենէ հարուածոցն կատաղեալ խածանէր զտէր իւր յամենուստ. և այնչափ թողեցին՝ զի տէր շանն և շունն միանգամայն սատակեցան չարաչար տան-

ջանօք ի քրձի անդ։ Եւ յետ այնորիկ կողոպտեցին մարդիկ Թագաւորին զինչս մթերեալս ի տան եպիսկոպոսին՝ որ էր այր մեծատուն յոյժ և դարձան արքայ և որք ընդ նմայն էին յաշխարհն իւրեանց և հասին ի քաղաքամայրն վերին Հայոց, որ կոչէր Անի։ Եւ այսպէս արմատացաւ մահացու ատելութիւն ընդ մէջ Հայոց և Յունաց, որ կայ և մնայ ցայսօր ժամանակի։

---

## ԳԼՈՒԽ Զ.

### Թէ ո՛րպէս արքայն Գագիկ կախեաց զզաւրավարն Բերդէ, եկեղեց մահու ձերբակալողին Յունաց։

Յորժամ եհաս արքայ Գագիկ ի վերին Հայս, որպէս ասացաք, կամ եղև նմա ամուսնացուցանել զորդի իւր ընդ դստեր տեառն Տարսոնի *)։ Եւ դէմ եդեալ յաշխարհէ անտի իւրմէ, չոգաւ ի ստորին Հայս, ի քաղաքն Տարսոն, խնդրեաց յիշխանէ անտի քաղաքին զի հաճեսցի տալ զդուստրն ի կնութիւն որդւոյ իւրոյ. այլ ոչ կամեցաւ ընդ այն ամենևին տէրն Տարսոնի։ Եւ այսպէս անընկալ լեալ յիշխանէն դարձ արար արքայ յաշխարհ իւր։ Այլ յանցանել նորա առ բերդաւ միով որ կոչէր Մանդալէ, և էր ընդ իշխանութեամբ կայսերն Հռոռոմոց, բնակիչք ամրոցին խարկանօք ընդ առաջ ելին արքային և աղաչէին զնա զի հաճեսցի գալ հանգչել յամուր անդր ընդ ոմանս յարանց իւրոց։ Եւ արքայ որ ոչինչ ակնունէր նենգութեան առ ի նոցանէ՝ յանձն էառ.

---

*) Այն է Աբլխարիբայ, ի տանէ Արծրունեաց։ Ծան. խմբ.

մտանել ի բերդն և իսկ և իսկ արկին ի նա ձեռս և ճոպան ի փողս եդեալ կախեցին չպարսպէն, ի վրէժ մահու մետրապոլտին Յունաց, սատակելոյ ընդ շանն ի քրձին:

---

## ԳԼՈՒԽ Ը.

### Թէ զիա՞րդ կորուսին Հայք զԹագաւորութիւն իւրեանց:

Յորժամ արքն, ովք էին ընդ Թագաւորին Գագկայ, տեսին զնենգութիւն Յունաց և զմահ անարգութեան արքային, դարձ արարին յաշխարհ իւրեանց ցասմամբ մեծաւ ընդ անցս որ անցին ընդ արքայ. և զայրոյթ սրտից նոցա առաւել ևս բորբոքեցաւ մինչ հասեալ յաշխարհն Հայրենի, գտին զլրաւեալ ի կենաց զորդի արքային: Յայնժամ կալաւ զԹագաւորութիւնն իշխան ոմն կոչեցեալ պարոն Ռուբէն, որ էր յազգէ անտի արքային Գագկայ. և Թագաւորեաց նա զամս քսան: Եւ յետ նորա պարոն Կոստանդին որդի նորա: Պարոն Ռուբէն և որդի նորա պարոն Կոստանդին ունէին իշխանութիւն մի փոքրիկ և վասն այնորիկ յաւեր դարձաւ Թագաւորութիւնն վերին Հայոց և անչքացեալ վատթարեցաւ մեծապէս: Եւ իբրև լուաւ զայս մեծ խանն Թաթարաց, տէրն Թավրիժու (Ալփ-Արսլան), որ ատելութեամբ մեծաւ էր ընդ քրիստոնեայս և ցանկայր ընդարձակել զիւրն պետութիւն, եկ յաշխարհէ անտի իւրմէ բազմութեամբ զօրաց և Թափեցաւ ի վերին Հայաստան և անկեալ յանզգաստից ի վերայ, ապականեաց զերկիրն ամենայն: Եւ այսպէս կորուսին Հայք զԹագաւորութիւն իւրեանց, յամի Տեառն 1098:

---

# ԳԼՈՒԽ Ը.

Թէ ո՛րպէս պարոն Կոստանդին խոյս ետ ընդ տանն զօրականաց ի ստորին Հայս՝ որ էր ընդ իշխանութեամբ կայսերն Հռոմոց։

Յորժամ կործաւ վերին Հայաստան, որպէս ի վեր անդր ասացաւ, պարոն Կոստանդին որ ունէր զիշխանութիւն Թագաւորութեան Հայոց, ետես զի ոչ կարէր զդէմ ունել զօրութեան մեծի խանին։ Խոյս ետ հանդերձ տասն զինուորօք և էանց գիշերայն ի ստորին Հայս, որ էր յայնժամ ընդ իշխանութեամբ կայսերն Հռոմոց, այլ բազումք ի ժողովրդենէն ի կողմն Հայոց յարեալ էին։ Եւ եհաս հանդէպ քաղաքի միում, որոյ բնակիչք՝ որք Հայ էին ազգաւ, բարձեալ տանէին մացառս առ ի փակել և կարկատել զծերպս պարսպին խարխալելոյ։ Յայնժամ պարոն Կոստանդին և որք ընդ նմայն էին, մերկացեալ ի զինուց իւրեանց Թաքուցին զայնոսիկ ի մէջ մացառացն և այր իւրաքանչիւր կապեալ զիւր խուրձն՝ բարձեալ տանէին ի վերայ պարսպացն, պէս զունակ ռամիկապաս մարդկանն։

Եւ էր օրն տօն Վերափոխման Աստուածածնօր Կուսին, յորում յոյնք գտանէին յեկեղեցւոջ. և պարոն Կոստանդին և զինակիցք նորա բարձեալ տարան զմացառսն հանդերձ զինուք իւրեանց ի վերայ պարսպաց քաղաքին։ Եւ տեսեալ թէ դիպող էր ժամն՝ վառեցան յանկարծ ի զէն և զբռամբ արկեալ զամուրն, դէմ եդեալ խուժեցին յեկեղեցի անդր և ձերբակալ արարին զյոյնս որ անդն կային։ Եւ այսու օրինակաւ պարոն Կոստանդին, իբրև

այր քաջ և հզօր, կալաւ զտէրութիւնն, և յինքն ըմբռնեաց զմեծ մասն աշխարհին։ Եւ յետ ոչ բազմաց փոխեցաւ յաշխարհէ և եթող որդի՝ որում անուն էր պարոն Թորոս։ Սա եղև այր հզօր և տիրեաց զինու զօրութեամբ մեծի մասին աշխարհին, առեալ ի ձեռաց Յունաց։ Նա առ զամուրն Մանգալեայ, յորում մեռաւ ի կախաղանի արքայն Գագիկ. և զայնս գտեալս յամուրս անդր՝ ետ կախել զորմոց պարսպին. և ի վրէժ պատուհասի մահուան արքային ետ հրաման հիմն ի վեր տապալել զբերդն։ Եւ եգիտ անդ գանձս բազումս և ընդ ձեռամբ նուաճեաց աշխարհս և գաւառս և եհաս մինչև ի մայրաքաղաք ստորին Հայոց, որ կոչէր Սիս և տիրեաց նմա։ Եւ յետ այնորիկ ընդ բուռն էարկ և զքաղաքսն որոց անուանք են՝ Բայեաս, Տարսոն Գանդենէս (Ադանա՞) և ամուրն Կուռկ (Կոռիկոս)։ Եւ կալաւ բազում այլ ևս քաղաքս և բերդորայս և եղև տէր համօրէն աշխարհի ստորին Հայաստանի։

---

## ԳԼՈՒԽ Թ.

Թէ ո՛րպէս պարոն Թորոս աւերեաց զկղզին Կիպրոսի, որ էր յանձնեալ ընդ իշխանութեամբ կայսերն Հոռոմոց։

Պարոն Թորոս, յետ մեծի աշխարհակալութեան ստորին Հայոց, կռեաց դաշն ընդ իշխանին Անտիոքայ, որ կոչէր Ռամօլդ (Ռընօ). և ժողով արարեալ ընդ նմա նաւուց բազմաց և արանց պատերազմողաց, անցեալ գնացին ի կղզին Կիպրոսի, որ էր ընդ ձեռամբ Մանուէլի կայսերն Հոռոմոց և քանդեցին և ի հիմանց տապալեցին։ Եւ եղև աւեր և կործանումն կղզւոյն յամին

շնորհաց 1157։ Եւ պարոն Թորոս եկաց իշխան զամս ինն և տասն։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

Թէ ո՞րպէս նուաճին Հոռոմոց տէրեաց աշխարհին տորքն Հայոց։

Յետ մահուան քաջի պարոնին Թորոսի կալաւ զիշխանութիւնն եղբայր նորա, որ կոչէր պարոն Լեւոն ընդ ամս հինգ։ Ի ժամանակին յայնմիկ թագաւորէր ի Կոստանդնուպոլիս կայսր ոմն, կոչեցեալ Գէրփէրուժէն (Յովհաննէս Կոմնենոս), որ խորհուրդ կալաւ թէ զիա՛րդ և որով օրինակաւ կարիցէ զբռամբ առնել անդրէն զստորին Հայաստան, զոր կորուսեալ էր նախնեաց նորա։ Եւ միաբանեալ ընդ մեծի ումեմն Թուրք զօրավարի որ կոչէր Հայինակ Մէլէք (Նուրէն-Էդ-դին Մաքսուտ), մտին երկոքեան ի ստորին Հայաստան զօրու ծանու յոյժ և տիրեցին աշխարհին ի սուղ ժամանակի և բաժանեալ զայն յերկուս՝ կալաւ իւրաքանչիւր ոք զիւր մասն։ Եւ ձերբակալ արարին զպարոնն Լեւոն և զորդիս նորա զերկոսին, որ անուանեալ կոչէին պարոն Թորոս և Մէլէք (Մլեհ)․ տարան զերեսին զնոսա ի Կոստանդնուպոլիս և արկին ի բանտ, ուր մնացին նոքա զամս երիս։ Եւ յետ այնորիկ մեռաւ պարոն Լեւոն, և կայսեր արձակեալ ի կապանաց զորդիս նորա, եթող զնոսա ազատս ի քաղաքին Կոստանդնուպոլսի։ Եւ գտեալ նոցա ժամ դիպող փախստեայ գնացին ի Հայս և զօրաժողով արարեալ՝ կալան զինու զօրութեամբ զամուրն Վահկայ, զոր էր երբեմն նախնեաց նոցա արկեալ ընդ իշխանու-

թեամբ: Պարոն Լեւոն (Թորոս՞), որ էրն անդրանիկ, կալաւ զիշխանութիւնն ընդ ամս քսան և վեց. և յետ նորա տիրեցին իշխանք երեքին, որոց գործք չեն ինչ արժանիք յիշատակաց:

---

## ԳԼՈՒԽ ԺԸ.

### Թէ ո՛րպէս պարոն Լեւոն՝ որդի պարոն Ռուբէնի (Ստեփանէի) պսակեցաւ Թագաւոր Հայոց:

Յամին շնորհաց 1220 (1187) կալաւ զտէրութիւնն Հայոց պարոն Լեւոն, որդի պարոն Ռուբենի (Ստեփանէի): Եւ դաշնաւորեցան ընդ միմեանս իշխանն Անտիոքայ և պարոն Լեւոն, պայման արարեալ զի եթէ թշնամիք Հաւատոյ յարձակեսցին ի վերայ միոյն, միւսն ձեռնտու լիցի նմա յամենայն զօրութենէ իւրմէ: Եւ որպէս զի լիցի դաշանցն առաւել ևս պնդութեամբ պահպանութիւն ի մէջ կողմանցն երկոցուն՝ հրեշտակս արձակեաց պարոն Լեւոն առ իշխանն Անտիոքայ, խնդրելով ի նմանէ զի առաքեսցէ առ նա զսահմանադրութիւնս, հաստատութիւնս և զկարգս կանոնաց, որովք վարէին յերկիրն Անտիոքայ, զի կամ էր նմա վարել նոքումբք և յաշխարհին Հայաստանեայց. և արար նա զայն յօժար կամօք: Եւ պարոնն Լեւոն վարեաց զերկիրն իմաստութեամբ և աճեցոյց զիշխանութիւն իւր և օգնեաց և ձեռն ետ բազում անգամ իշխանին Անտիոքայ, զոր նեղէին յաճախ թշնամիքն Հաւատոյ:

Եւ տեսեալ իշխանին զսէրն մեծ և զբարեկամութիւն զոր ցուցանէր նմա պարոն Լեւոն, հաւանութեամբ

խորհրդականաց իւրոց, հրեշտակս արձակեաց առ պապն և առ ինքնակալն Հռոմայ, խնդրելով ի նոցանէ զի պարոն Լեւոն, էբրև ճշմարիտ որդի և հնազանդ Սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ, լիցի պսակեալ ի Թագաւոր Հայաստանի, ըստ հրամանացն Հռոմայ. զոր և ընկալան նոքա յօժարութեամբ։

Եւ պապն առաքեաց զմի ոմն եպիսկոպոս պսակել զնա ի Թագաւոր։ Եւ ինքնակալն Հռոմայ առաքեաց նմա Թագ ոսկեձոյլ մեծագին յոյժ, ընդելուզեալ ականբք պատուականօք, մարգարտօք, յակնթօք, շափիւղեաւ, զմրխտիւ և այլովք գոհարօք։ Եւ հրեշտակացն հասեալ, պսակեցաւ պարոն Լեւոն ի մայրաքաղաքն ստորին Հայոց, ի կոչեցեալն Սիս, յամին յորում ասացաք (1198)։ Եւ յետ կապելոյ նորա զԹագն արար ուխտ և խնամութիւն (1210) ընդ արքային Կիպրոսի (Ամօրի), որ էր ի տանէն Գաղղիոյ և յազգէ Լուսինեան և էառ ի կնութիւն զդուստր նորա որ կոչէր Զիբիլ (Զապէլ), և էր նա կին պերճաբարոյ։ Եւ եղև Լեւոն առաջին Թագաւոր որ պսակեցաւ ի ստորին Հայաստան։

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Թէ ո՛րպէս կայսրն Հռոմայ և արքայն Լեւոն Առաջին եդին դաշն ընդ միմեանս։

Յետ սակաւ աւուրց պսակելոյ արքային Լեւոնի Առաջնոյ, կայսրն Կոստանդնուպոլսոյ (Ալէքս-Անգեղոս) իմացեալ և իրազեկ եղեալ զի արքայն Հայոց աճելով աճէր և դաշնակցութիւնս բազումս արարեալ, միացեալ

էր ընդ պապին, ընդ կայսերն Հռոմայ, ընդ արքային Կիպրոսի և ընդ իշխանին Անտիոքայ, անկաւ ի վարանս տարակուսի, երկեաւ թէ գուցէ տացէ ընդ նմա պատերազմ, վասն որոյ յղեաց առ նա հրեշտակս պատուաւորս, որք մատուցին նմա տուրս և պարգևս մեծամեծս և թագ արքայական ճոխապաճոյճ, զարդարեալ մարգարտօք և ականք պատուականօք, խնդրելով ի նմանէ զի հաճեսցի դնել ուխտ ընդ նմա, մի՛ ևս վնասել երկրաց, և լինել յայնմհետէ իբրև եղբայր և բարեկամ։ Իբրև լուաւ արքայ Լևոն Առաջին զբանս հրեշտակացն եկելոց, յանձն էառ զպատգամս նոցա և ի սահմանեալ աւուր՝ երդմնակուռ եղեն կողմանքն երկոքին։ Եւ այսու օրինակաւ հաստատեցաւ խաղաղութիւն և հաշտութիւն ի մէջ Հայոց և Հռոմոց, որք յառաջնմէ մահու չափ ատէին զմիմեանս, որպէս ի վեր անդր ասացաւ։

---

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Թէ ո՛րպէս Փիլիպ, անդրանիկն որդի իշխանին Անտիոքայ պսակեցաւ ի թագաւոր Հայաստանի, յետ մահուան արքային Լևոնի։

Արքայն Լևոն Առաջին վարեալ զիշխանութիւն իւր քաջութեամբ և խաղաղութեամբ ընդ ամս երեսուն և վեց, փոխեցաւ յաշխարհէ (1219) և եթող դուստր Զապէլ անուն, որում անկանէր թագաւորութիւնն ըստ օրինացն Անտիոքայ, որովք վարէր պետութիւնն ստորին Հայոց։ Եւ այսորիկ աղագաւ պարոնայք և աւագորեարն Հայաստանի հրեշտակս արձակեցին առ իշխանն Անտիոքայ, խնդրելով ի նմանէ զի հաճեսցի առաքել ի Հայաստան զՓիլիպ, զորդին իւր զանդրանիկն, զի

առեալ ի կնութիւն զտիկինն Զապէլ, լեցի թագաւոր Հայաստանի։ Եւ յանձն էառ իշխանն յօժարութեամբ, և թագաւորեցին Փիլիպ և տիկինն Զապէլ ի միասին (1222)։ Եւ յետ թագաւորելոյ նորա զամս հինգ, եհաս վախճան կենաց նորա, առանց թողլոյ որդիս ի պայազատութիւն։

Եւ իշխան ոմն մեծ, որ անուանեալ կոչէր Հեթում, յարքունի զարմէ ամուսնացաւ ընդ Զապէլ տիկնոջ և պսակեցաւ ի թագաւոր յամին շնորհաց 1225։ Սոյն այս արքայ Հեթում հրաժարեալ ապա յաթոռոյ, եղև կրօնաւոր, և դասեցաւ ընդ սուրբս և կոչեցաւ Սուրբ Մակար։ Եւ ի Զապէլ տիկնոջէ եղեն նմա ինն որդի՝ ուստերք եօթն, և դստերք երկուք. և առաջինն յորդւոց նորա կոչէր Լևոն, երկրորդն՝ Ներսէս, որ եղև եպիսկոպոս Հայաստանի, երրորդն՝ Սմբատ. չորրորդն՝ Կոստանդին, հինգերորդն՝ Թորոս. վեցերորդն՝ Ալինախ. եօթներորդն, Օշին։ Եւ ի դստերացն նորա առաջինն կոչէր Ռիթա, և երկրորդն Իզապէլ։

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Թէ որպէս արքայն Հեթում դաշնակցեցաւ ընդ մեծի խանին, Տեառնն Թաւրէժոյ։

Յայնմ ժամանակի սուլթանն Բաբելոնի, որ կոչէր Մէլէք Նազար, մտախոհ լինէր ի սրտի իւրում ապատակել յաշխարհն, որում տիրէր արքայն Հեթում, զի ի բազում նուագս հարեալ խաթարեալ էր արքային զսուլթանն և զերկիր նորա, ի պաշտպանութիւն և ի բարգաւաճումն քրիստոնէական հաւատոց։ Եւ առ ի խա-

փախել զչար խորհուրդ սուլթանին, եւ մեկնեցաւ արքայն Հեթում յերկրէ անտի իւրմէ, յամին շնորհաց 1253, եւ չոգաւ առ մեծ խանն, տէրն Թավրիժոյ, գնել դաշն ընդ նմա զի ձեռն տացէ ընդդէմ սուլթանին. եւ տարաւ առ նա պարգեւս մեծամեծս եւ ընծայս ճոխաձիրս։ Եւ խանն մեծ ընկալաւ զնա ախորժ հաճութեամբ եւ զամենայն հայցուածս եւ զաղաչանս զոր առաջի արար նմա արքայն Հեթում։ Եւ առաջին հայցուած, զոր մատոյց առ խանն մեծ, որ կոչէր Մանգոյ խան, ինքնակալ Թաթարաց, այն իսկ էր՝ զի հաճեսցի մկրտիլ ընդ համօրէն ժողովրդեամբն։ Երկրորդ, զի լիցի խաղաղութիւն մշտնջենաւոր ընդ քրիստոնեայս եւ ընդ Թաթարս։ Երրորդ, զի ընդ ամենայն տեղիս՝ որոց տիրեալ էր Թաթարաց եւ կամ որոց տիրեսցեն յապա ժամանակի, համօրէն եկեղեցիք քրիստոնէից եւ քահանայք նոցա եւ դպիրք եւ կրօնաւորք եւ այլք․ լիցին ազատք ի ծառայութենէ եւ ապահարկք եւ ոչ մի ինչ հատուսցեն նմա կամ այլում ումեք, որ զինչ եւ իցէ պատճառանօք։ Չորրորդ, զի ձեռն տացէ քրիստոնէից ազատել զգերեզմանն սուրբ եւ զսուրբ երկիրն ի ձեռաց Սարակինոսաց եւ շնորհեալ լիցին այնոքիկ քրիստոնէից։ Հինգերորդ, զի հրաման տացէ Թաթարաց, որոց ընդ բռամբ արարեալ էր զիշխանութիւն Թուրքաց, երթալ կործանել զքաղաքն Պաղտատ եւ բառնալ ի միջոյ զխալիֆայն, որ էր առաջնորդ եւ պետ դենի Մուհամմետի անիծելոյն։ Վեցերորդ, տալ նմա առանձինն արտօնութիւն խնդրելոյ օգնութիւն ի Թաթարաց անտի, որ մերձաւորագոյնք իցեն սահմանաց թագաւորութեան իւրոյ եւ զի լիցին նոքա պատրաստական ձեռն տալ նմա անյապաղ յոր ինչ դէպս խնդրեսցէ արքայն զնոցայն օգնականութիւն։ Եօթներորդ, զի ամե-

նայն տեղիք, ուր էին երբեմն ընդ իշխանութեամբ Հայոց
և զորս յափշտակեալ էր Սարակինոսաց և ի ձեռաց նո-
ցա առեալ էր յետոյ Թաթարաց, վերադարձցին ի թա-
գաւորութիւնն Հայոց։ Եւ ընդ այսմ՝ զամենայն տե-
ղիս, զորս արքայն Հայոց կարասցէ առնուլ ի ձեռաց
Սարակինոսաց, կալցի խաղաղութեամբ և մի ոք ի Թա-
թարաց և կամ յայլոց իշխեսցէ ընդդէմ կալ։

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Թէ ո՛րպէս սուլտանն Բաբելոնի գնաց ի Հայաստան զօրու-
թեամբ, յաղթահարեաց զՀայս, կալաւ զպարոն Լևոն, զորդի
արքային Հեթմոյ և գերի վարեաց զնա ի Բաբելոն։

Եւ եղև իբրև լուաւ սուլթանն Բաբելոնի զդաշն
միաբանութեան, զոր արարեալ էր արքայ Հեթում ընդ
խանին մեծի, գումարեաց արս պատերազմողս քառասուն
և հինգ հազար և յեղակարծում պահու եմուտ ի սահ-
մանս թագաւորութեան Հայոց և յապականութիւն դար-
ձոյց զերկիրն ամենայն։ Եւ եհաս բօթ գուժին առ պա-
րոն Լևոն, որդի անդրանիկ արքայի Հեթմոյ, որ վարէր
յայնժամ զիշխանութիւն։ Եւ նորա զօրաժողով արա-
րեալ գումարեաց վաղվաղակի արս հնգետասան հազար,
ընդ հետևակ և ընդ այրուձի և առեալ ընդ իւր զմի
ոմն յեղբարց իւրոց, որ կոչէր պարոն Թորոս, ել հան-
դէպ սուլթանին և բանակի նորա, ի պաշտպանութիւն
աշխարհին։ Եւ դիպեցան միմեանց բանակքն երկոքին
մերձ յամուրն կոչեցեալ Մարրի, զոր կալեալ ունէր պա-
րոն Լևոն. և բաղխեցան ընդ միմեանս զաւուրս երկուս.

և յերրորդումն՝ ի պարտութիւն մատնեցան Հայք, զի ոչ բաւեցին զդէմ ունել ահագին բազմութեան Սարակինոսացն յարձակելոց ի վերայ նոցա։ Անդ անկաւ ի ճակատամարտի պարոն Թորոս, երկրորդ որդի արքայի Հեթմոյ. իսկ անդրանիկն յորդիս նորա պարոն Լևոն, ձերբակալ եղեալ ածաւ ի Բաբելոն և եդաւ ի բանտի յաշտարակի անդ բերդին, որ մինչև ցայսօր անուանեալ կոչի Աշտարակ պարոն Լևոնի։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Թէ ո՛րպէս արքայն Հեթում գնաց առ խանն մեծ, և խնդրեաց ի նմանէ օգնութիւն ի վերայ զօրաց սուլտանին։

Զկնի պարտութեանս այսորիկ գրեցին Հայք առ արքայ Հեթում և զեկուցին նմա՝ զիարդ որդի նորա անդրանիկ վարեալ էր ի գերութիւն՝ ի Բաբելոն և անկեալ երկրորդն ի ճակատամարտի։ Եւ արքայ Հեթում եմուտ ի սուգ և խոցեցաւ ի սրտի. և անկեալ ի ճանապարհ չոգաւ առ խանն մեծ (Հուլաղու), և այնչափ ինչ արար զի առեալ էած զնա ընդ իւր արամբք երկերիւր հազարօք ընդդէմ սուլթանին։ Եւ մտին յերկիր նորա և կալան զինու զօրութեամբ զքաղաքն Հալէպ. և յաւեր դարձուցեալ զաշխարհն ամենայն, չոգան ի քաղաքն Դամասկոս կործանել զնա։ Այլ բնակիչք քաղաքին երկուցեալ ի բազմութենէ ամբոխին գումարելոյ, առաքեցին նուէրս և ընծայս առատապարգևս առ խանն մեծ, աղաչելով զնա զի մի կործանեսցէ զքաղաքն նոցա և զի՝ շատ համարեսցի զչարիս, զոր արքայն Հայոց արարեալ էր յեր-

*

կիր սուլթանին և զի՝ բաւական էր վրէժն զօր առնուլ էր նորա ի սուլթանէն ի փոխարէն անցից չարեաց զոր հասուցեալ էր նմա։ Զիջաւ խանն մեծ ընդ պաղատանս նոցա, ոչ միայն զի հեթանոսք էին և երկոքին, այլ զի և առաջի կային նորա ընծայք մեծապարգևք։ Եւ ասաց ցթագաւորն Հեթում. «Տէր արքայ, աւերեա՛ փոխանակ Դամասկոսի զայլ քաղաքս և աշխարհս։ Եւ արքայ ել մեկնեցաւ անտի և չոգաւ հանդէպ քաղաքի միում, որ կոչէր Սալահիէ, որ է դէմ յանդիման Դամասկոսի, յայնկոյս գետոյն, և էառ զնա. և յաւարի առեալ կործանեաց զնա և հատոյց աղէտս բազումս և մեծամեծս սուլթանին Բաբելոնի։

---

## ԳԼՈՒԽ ԺԸ.

Թէ որպէս Սուլթանն Բաբելոնի գումարեաց զօր բազում և ճակատ եդ ընդ Խանին Մեծի և ընդ արքային Հայոց և մատնեցաւ ի պարտութիւն։

Եւ եղև իբրև լուաւ սուլթանն Բաբելոնի Մելիք Նասար զվնասս մեծամեծս և բազումս, զոր խանն մեծ և արքայն Հայոց արարեալ էին յերկիր իշխանութեան իւրոյ, ժողովեաց զօր անթիւ բազմութեամբ, խաղաց գնաց ի վերայ նոցա և պատահեաց նոցա մերձ ի քաղաքն Դամասկոս։ Եւ ի դիմի հարան բանակքն երկոքին սաստկութեամբ մեծաւ. այլ պարտեցաւ ի վերջոյ սուլթանն և դարձաւ ի փախուստ. և զհետ եղեն նորա (խանն Թաթարաց և արքայն Հայոց) մինչև ի քաղաքն Գասերայ (Գազզա), ուր մտեալ ամրացաւ սուլթանն։ Իսկ խանն մեծ և արքայն Հայոց կամէին գնալ

մինչև ի Գահիրէ և կործանել զայն և առնուլ յաւար։ Այլ ի կասկածի ընդ այն եղեալ սուլթանին, առաքեաց ընծայս բազումս և պատճառս առ խանն մեծ, աղաչելով զնա դառնալ ընդ կրունկն և զերաւ առնել մարտին, զի չէր նա քրիստոնեայ, այլ սարակինոս իբրև զինքն։ Եւ եղև իբրև ընկալաւ խանն մեծ զընծայսն զայնոսիկ, էառ զբանակն և դարձաւ յերկիր իւր, կուրացեալ ի պարգևաց և յընծայից անտի առաքելոց, որպէս սովորեալ է դիպել յաճախ և այլոց բազմաց։ Եւ արքայ Հեթում դարձ արար յաշխարհ իւր ի Հայաստան։

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Թէ որպէս պարոն Լևոն որդի արքային Հեթմոյ զերծաւ ի գերութենէ սուլտանին։

Յորժամ սուլթանն Բաբելոնի հարաւ պարտեցաւ դէմ յանդիման Դամասկոսի, որպէս ասացաք, ածին կացուցին առաջի մեծի խանին ընդ այլոց ձերբակալաց և ստրուկ մի սուլթանին սիրեցեալ ի նմանէ, զի էր պատանի գեղեցիկ և անուանեալ կոչէր Սունգուր Աշկար. և տրտմեցաւ կարի յոյժ սուլթանն, զի ոգւով չափ սիրէր զնա։ Ոյր վասն հրեշտակս արձակեաց առ արքայն Հայոց Հեթում զի եթէ կամ էր նմա փրկել զորդին իւր զանդրանիկ, զպարոն Լևոն, որ էր առ նմա ի գերութեան, խնդրեսցէ ի խանէն մեծէ արձակել զստրուկ իւր. և ինքն՝ խոստանայր և երդնոյր յօրէնս իւր զի ի գալ հասանել ծառային, ի բաց դարձուսցէ առ Թագաւորն զորդի նորա։ Եւ խնդաց արքայ Հեթում և գրեաց. առ խանն մեծ և առաքեաց առ նա զորդին իւր զԱլինախ մեծա-

մեծ պարգևօք, զոր ընկալաւ պատուով խանն մեծ և ազատեալ զգերին ետ ի ձեռս հրեշտակաց սուլթանին, ուր երդուան յօրէնս և յանուն տեառն իւրեանց դարձուցանել առ արքայ Հեթում զորդի նորա զպարոն Լևոն։ Եւ դարձ արարին առ սուլթան տէրն իւրեանց, որ հըրճուեալ բերկրեցաւ մեծապէս յընդունել անդ զգերին. և ի լրումն խոստմանն՝ կոչեաց զուղտապան ոմն Արաբացի և սակ էարկ ընդ նմա տանել զպարոն Լևոն առ արքայն Հայոց՝ հայր նորա. և գիշերաւ գաղտագողի, որքան հնար էր, յերկիւղէ իշխանաց իւրոց, ետ զնա ի ձեռս նորա իջուցեալ պարանաւ յաշտարակէն զպարոն Լևոն ի նմին գիշերի։ Եւ ուղտապանն հեծեալ ի տաճիկ ուղտ, որ գնայ անհնարին երագութեամբ, յաւուրս ութ հասոյց զնա առ արքայն Հեթում, հայրն նորա։ Եւ խնդաց թագաւորն և բերկրեցաւ յանձն իւր և արար տօն ցընծութեան և ետ ուղտապանին պարգևս մեծամեծս։

Եւ ի միում յաւուրց եհարց սուլթանն թէ ո՞ւր իցէ որդի թագաւորին Հայոց, անգէտ ձևացեալ ազատութեան նորա, և հարցանէր թէ զինչ պատճառք էին զի ոչ տեսանէր զնա առաջի երեսաց իւրոց, որպէս տուեալ էր հրաման ածել զնա զառաջեաւ իւրով յաւուրս անգ-այցորելեաց, յերկուշաբաթի և ի հինգշաբաթի աւուրս ասեմ, յորս աւագորեարն՝ յանդիման լինի սուլթանին. և վասն այնորիկ զերկուսին զաւուրսն զայնոսիկ կոչեն յաշխարհին աւուրս Կոդումեց*)։ Եւ կեղծեաց սուլթանն բարկութիւն մեծ և առաքեաց հարցանել ի բանտի. և գտաւ պարանն, որով ճողոպրեալ էր պարոն Լևոն. ընդ

*) Կոդում, բառ արաբացի, որ նշանակէ զայցորումն իշխանի յընդունելութեան։ Իսկ կոդումի նշանակէ զընծայն, զոր մատուցանեն իշխանին այցորդք. Ծան. խմբ.

որ և ս քան զևս ցասուցեալ նորա ի վերին երեսս հրամայեաց աձապարել պնդել զհետ սուրհանդակօք և աղաւնեօք, որպէս զի յորում վայրի և գտանիցեն զնա, ձերբակալ արարեալ ածցեն դարձուսցեն առ նա։ Այլ ի դէպ և եւ ել ամենայն զի Լեւոն հասեալ էր կանխաւ յաշխարհն իւր, ըստ կամաց սուլթանին, որ կալաւ հաւատարմութեամբ զբանն խոստացեալ։

---

## ԳԼՈՒԽ ԺԹ.

**Թէ ո՛րպէս պարոն Լեւոն պսակեցաւ ի թագաւոր Հայոց զկնի մահուան արքային Հեթմոյ՝ հօրն իւրոյ և թագաւորեալ զամս ութ և տասն վախճանեցաւ ի կենաց, առանց որդւոյ զաւակի. և թագաւորեաց պարոն Լեւոն Գ. որդի պարոն Թորոսի, որդւոյ արքային Հեթմոյ, սպանելոյ ի ճակատամարտին ընդդէմ սուլթանին։ Եւ թէ զիա՛րդ արքայն Լեւոն Գ. սպանաւ ընդ հօրեղբօր իւրում նենգութեամբ։**

*Յորժամ արձակեալ ի բանտէ անտի սուլթանին պարոն Լեւոն, անդրանիկն յորդիս արքային Հեթմոյ՝ դարձ արար ի Հայաստան, յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ՝ մեռաւ Հեթում, հայր նորա, թագաւորեալ զամս քառասուն և հինգ։ Եւ թագ կապեաց պարոն Լեւոն յետ նորա, և կոչեցաւ արքայ Լեւոն Բ., որ կալաւ զաթոռն խաղաղութեամբ զամս ութ և տասն և մեռաւ անպայազատ։*

*Եւ պսակեցաւ ի թագաւոր պարոն Լեւոն Գ. որդի պարոն Թորոսի, սպանելոյն ի պատերազմին ընդ սուլթանին, որպէս ի վեր անդր ասացաւ, և որ էր որդի*

արքայի Հեթմոյ. և կոչեցաւ նա Լեւոն Երրորդ. և սա ինքն էր որ վարեաց զիշխանութիւն Հօրեղբօրորդւոյ իւրոյ կոչեցելոյ Հեթում Միականի։

Ընդ ժամանակսն ընդ այնոսիկ լուեալ խանին մեծի զի զօրաժողով լինէր սուլթանն գալ յարձակել ի վերայ արքային Լեւոնի, առ ի լուծանել զվրէժս վնասուց, զոր հաւ նորա Հեթում արքայ արարեալ էր յերկիր տէրութեան նորա, առաքեաց ի սահմանս Հայոց զմի ոմն յաւագաց իւրոց որ կոչէր Խըլարղու և արս պատերազմիկս քառասուն հազարս ընդ նմա. և եկն նա և բանակեցաւ ի դաշտի անդ բերդին Անաւարզայ, որ էր ընդ իշխանութեամբ թագաւորին Հայոց. և եկաց անդ մինչև ի գալուստ Լեւոնի արքայի, որ արար նմա ընդունելութիւն մեծ և ցոյց զնա պարգևօք առատութեան։ Եւ եղեն անդ ընդ միմեանս զաւուրս երիս ի զբօսանս ուրախութեանց. և դարձաւ ապա արքայ Լեւոն յամուր անդր ընդ հօրեղբօրորդւոյն իւրում Միականւոյն Հեթմոյ։ Իսկ նենգաւոր զօրավարն Խըլարղու մտախոհ եղև ի սրտի իւրում թէ որով օրինակաւ լիցի նմա առնուլ զամուրն Անաւարզայ և ունել ընդ իւրև։ Եւ ետ առնել արկեղս փայտեայս հարիւր և դնէր յիւրաքանչիւրումն այր մի վառեալ զինու և այնպէս իմն կարծեցոյց արքային Լեւոնի թէ կայցեն յայնոսիկ ականք պատուականք. և խնդրեաց ի նմանէ պահել զարկեղսն յամուրն անդ Անաւարզայ։ Եւ պատուիրեալ էր Խըլարղուի զօրականացն զի ի լսել անդ զձայն թմբկի՝ խորտակեսցեն զարկեղս և սուր ի վերայ եդեալ՝ կոտորեսցեն զորս և գտանիցեն ի բերդին։ Իսկ արքային ոչ զգացեալ զչարահնար նենգութիւն Խըլարղուի, թոյլ ետ մուծանել յամրոցն զարկեղսն, յորս թագուցեալ էին զօրականքն հա-

րիւր։ Եւ ետ Ռիչարդու հարկանել զԹմբուկն և այրքն խորտակեցին զարկեղսն և հարին սուսերաւ զարքայ Լևոն և զհօրեղբօրդի նորա զՄխականին Թեթում։ Եւ եղև աղաղակ և շփոթ մեծ ի դղեկին. և այրք Թագաւորին փակեցին զդուռն դղեկին, փութացան ի զէն և յարձակեցան ի վերայ զօրականացն Հարիւրոց և կալեալ զնոսա արկին ընդ պարիսպն. գահավէժ. և զդոհ տուեալ ի բերդէն՝ յարձակեցան ի վերայ Ռիչարդուի և արանց նորա. և այնպէս խորտակեցին զնոսա մինչև դառնալ նմա ի փախուստ հանդերձ սակաւուք. իսկ այլքն կորեան սատակամահ կամ վարեցան ի գերութիւն։

---

## ԳԼՈՒԽ Ի.

Թէ ո՛րպէս Ալինախ, հօրեղբայր արքային Լևոնի, գնաց առ խանն մեծ բողոք առնել զդաւաճանութենէն Ռիչարդուէ և ո՛րպէս խանն մեծ ետ սպանել զՌիչարդու առաջի նորա, ի խնդրոյ Ալինախի։

*Յորժամ Լևոն Գ. սպանաւ նենգութեամբ ի Ռիչարդուէ, Ալինախ հօրեղբայրն արքային գնաց առ խանն մեծ պարգևօք պատուականօք և պատարագօք և բողոք կալաւ զՌիչարդուէ, զոր կարծէին եկեալ վասն բարւոյ իրիք և նորա դաւաճանեալ էր զարքայն՝ զորդի եղբօր իւրոյ և զաշխարհն համօրէն։ Յորժամ լուաւ խանն մեծ զբողոք նորա, ետ կոչել առաջի երեսաց իւրոց զՌիչարդու և հաստատեցաւ նենգութիւնն, զոր արարեալ էր նորա. ասէ խանն մեծ ցԱլինախ. «Տեսանես, տէր, զթշնամին՝ որ նենգութեամբ դաւաճանեաց արքայիդ և*

աշխարհին, այնպէս որպէս ասացեր. և որ չէր եղեալ հաճութեամբ մերով։ Կամիմք զի մահու մեռցի նա, զի այդպէս կամին արդարութիւն և իրաւունք. և կամիմք զի առցես դու ինքնին զվրէժ ի նմանէ առաջի մեր և քոյով իսկ ձեռամբ սպանցես զնա։ Յայնժամ իշխանն Ալինախ խնդրեաց պաղատանօք ի մեծէ խանէն զի զՄիլարղուն զայն տացէ սպանանել ի ձեռն այլոյ ուրուք։ Եւ զայրացաւ ընդ այն խանն մեծ զի ոչ կամէր դառնալ ի բանից և պնդագոյնս հրամայեաց նմա սատակել զայրն վաղվաղակի։ Եւ արար նա այնպէս. և լուծեալ վրէժ դարձ արար ի Հայաստան և եկաց աւուրս սակաւս և չև կապեալ զթագն արքայական՝ մեռաւ անզաւակ։ Եւ յետ մահու նորա պսակեցաւ ի թագաւոր Հայոց Օշին, հօրեղբօրորդին յորդիս արքային Հեթմոյ և եղբայր պարոն Ալինախի։ Եւ արքայ Օշին էառ ի կնութիւն զտիկինն Զապէլ յորմէ եղև նմա որդի որ թագաւորեաց զկնի նորա, և կոչեցաւ արքայ Լևոն Դ. և փոխեցաւ տիկինն յաշխարհէ։

---

## ԳԼՈՒԽ ԻԸ.

Թէ ո՛րպէս երկոքեան դստերք արքային Հեթմոյ եղեն առն, յետ առնլոյ Օշին արքայի ի կին զդստեր իշխանին Տարենտոնի, եղբօր Հռոբերտեայ արքային Սիկիլիոյ։

Արդ գիտելի է զի տիկնայքն երկոքին, դստերք արքային Հեթմոյ և քոյրք Օշին արքայի՝ ամուսնացան. առաջինն՝ որ կոչէր Ռիթա, տուաւ ի կնութիւն կայսեր Կոստանդնուպոլսոյ (Միքայելի, ի 1296). և երկ-

բորդն՝ որ կոչէր տիկին Իզապէլ, ամուսնացաւ ի Կիպրոս ընդ իշխանին Ամօրի Լուսինեան (1295), որ էր տէր Տիւրոսի և եղբայր Հենրիկոսի արքային Կիպրոսի*)։ Եւ եղեն տիկնոջն Իզապելի ի տեառնէ իւրմէ և յամուսնոյն ուստերք արու՝ հինգ։ Առաջինն կոչեցաւ Հիւգ, երկրորդն՝ Հանրի, երրորդն՝ Գուի, (Գուիտոն), որ եղև ապա թագաւոր Հայոց. չորրորդն՝ Ջոհան, որ եղև իշխան և գունդստապլ թագաւորութեան և հայր արքային Լևոնի Ե. ի, որոյ վասն ի գիր արկան սոյն այս ժամանակագիրք և պատմութիւնք։ Եւ ուստին հինգերորդ՝ Բոէմոնդ։

Ի սմին ժամանակի հրեշտակութիւն առաքեալ Օշին թագաւորի առ արքայն Միքիլեոյ Հռոբերդ ի Նէապոլիս, խնդրեաց ինմանէ ի կնութիւն զօրիորդն Յովհաննա, զդուստր եղբօր նորա իշխանին Տարենտոնի, զոր և ետ նմա յօժարակամ սրտիւ։ Եւ ի գալ նորա ի Հայաստան՝ արքայ Օշին ետ զնա պսակել դշխոյ. և եղև նմա զաւակ սակաւակեաց։ Եւ յետ ոչ բազմաց ինչ աւուրց եհաս վախճան Օշին արքայի, յետ թագաւորելոյ ամս երեքտասան. և մնաց բամբիշն այրիացեալ։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Թէ ո՛րպէս եկաց թագաւորութիւնն ընդ խնամակալութեամբ երից աւագ պարոնայց, քանզի որդւոյ Օշին թագաւորի մանուկ ամաց ութից։

Եւ եղև իբրև մեռաւ արքայն Օշին, որդի նորա Լևոն, որ էր որդի ամաց ութից, եկաց ընդ խնամակա-

*) Այսու ամուսնութեամբ Լուսինեան տոհմն Կիպրոսի խնամացաւ ընդ տոհմին Հեթումեանց Հայոց։ Ծան. խմբ.

լութեամբ աւագ իշխանաց չորեցունց, որ վարեցին զաշխարհն, զի ինքն Լևոն չև էր հասեալ յարբունս։ Պարոնն առաջին կոչէր Օշին, տէր Կոռիկոսի, որոյ ածեալ էր զտիկին Յովհաննա ի քաղաքէն Նէապոլսոյ ի Հայաստան, առ ի լինել Թագուհի։ Երկրորդն՝ կոչէր պարոն Կոստանդին. երրորդն՝ պարոն Ռօգին, եղբայր սորին Կոստանդնի, և էր նա մարաջախտ (մարէշալ) Հայաստանի. չորրորդն՝ անուանեալ պարոն Հեթում, սեննկապան (շամբելլան) արքունի։ Եւ վարեցին սոքա զիշխանութիւնն մինչև ի հասանել մանկանն ի տիս արութեան։

Պարտ է գիտել զի ի ժամանակին, յորում պարոն Օշին առեալ բերէր զտիկինն Յովհաննա ի քաղաքէն Նէապոլսոյ ի Հայաստան, հարաւ ի սէր նորա և վասն այնորիկ զկնի մահուան Օշին Թագաւորի եառ զնա ի կնութիւն, յորմէ եղև նմա դուստր կոչեցեալ Մարիամ, որ եղև յետոյ կին առաջնոյ բռնակալ արքային Կոստանդին կոչեցելոյ, որ էր որդի պարոն Ռօգինի, մեծի մարաջախտի Թագաւորութեանն և միոյ ի չորից անտի խնամակալացն, որպէս ասացաւ։

---

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Թէ ո՛րպէս պարոն Օշին ետ խեղդամահ առնել զտիկինն Զապէլ դուստր Օշին Թագաւորի և արգել ի բանդի զերկոսին որդիս նորա, յորոց մեռան անդ երկոքին. և հանեալ ի բանդէ զերկուս էարկ ի նաւ, որք և հասին ի Կիպրոս. և յետ այնորիկ ետ զդուստր իւր Ալիծիա ի կնութիւն արքային Լևոնի Չորրորդի, որ ոչ էր հասեալ յարբունս և էր ընդ խնամօք նորա։

Յորժամ պարոն Օշին եառ ի կնութիւն զըամբիշն, զառածաւ յանգթութիւն և զօրս եղեալ էին ընդդէմ

նորա՝ ետ սրախողխող առնել և զայլս հալածել յաշխարհէն։ Իսկ ի մէջ այլոց՝ ետ նա խեղդամահ կորուսանել զտիկինն Զապէլ, զքոյր Օշին թագաւորի. և զորդիս նորա զչորեսին ետ արկանել ի բանտ, յորոց մեռան անդ երկոքին, այսինքն իշխանն Հիւգ, որում ետ արբուցանել դեղ մահու, և իշխանն Հանրի, որ խնդրէր՝ պասքեալ ի ծարաւոյ, զի տացեն նմա՝ ի սէր Աստուծոյ, սակաւ մի ջուր յարբումն. և ետ տալ նմա մէզ։ Իսկ զայլսն զերկոսին, այսինքն զսեպուհն Յոհան և զսեպուհն Բոէմոնդ, հանեալ ի բանտէ՝ ըստ պաղատանաց ոմանց յիշխանաց անտի, ետ արկանել ի նաւ զի գնասցեն յոր դէմ և կոյս բաղդն վարեսցէ զնոսա։ Իսկ հասին նոքա ի կղզին Հռոդոսի և Ասպնջական ասպետքն ընկալան զնոսա մեծարանօք. և կացին անդ զամս երիս։ Յետ այնորիկ պարոն Օշին ետ զդուստր իւր Ալիսիա ի կնութիւն արքային Լեւոնի Դ. ի, որ չև ևս էր ձերբազատ և կայր ընդ խնամակալութեամբ նորա։

---

## ԳԼՈՒԽ ԻԴ.

Թէ ո՛րպէս արքայն Լեւոն ետ սպանանել զկինն իւր Ալիսիա ի հասանել անդ յարբունս և ետ ի կնութիւն զԿոստանդիա, դուստր Փրեդերիկոսի արքային Սիկիլիոյ, որ էր եղեալ կին Հանրի արքային Կիպրոսի։

Ի հասանել արքային Լեւոնի յարբունս տիոց՝ ետ սպանանել զկին իւր Ալիսիա, զդուստր Օշին պարոնի, վասն խառնակ վարուց նորա, որպէս ասէր բան, և ապա արձակեալ հրեշտակս առ Փրեդերիկ արքայն Սիկիլիոյ, խընդ-

լինաց ի կնութիւն զդուստր նորա զտիկինն Կոստանդիա, զայրին Հանրեի արքային Կիպրոսի, որ ի մահու անդ իւրում թողեալ էր նմա ի տուայր կալուածս հողոյ, որ բերէին ամի ամի հօթանասուն հազար արծաթոյ դահեկանս Կիպրոսի։ Եւ վասն տուայրին այնորիկ խնդրեաց զնա Լևոն ի կնութիւն. և արքայն Սիկիլեայ ետ նմա ախորժ հաճութեամբ։ Եւ ի հասանել անդ նորա ի Հայաստան, Լևոն և բամբիշն պսակեցան ի միում աւուր, ի Տարսոն քաղաքի և կոչեցաւ նա Լևոն Զօրաւոր։

---

## ԳԼՈՒԽ ԻԵ.

Թէ ո՛րպէս արքայն Լևոն էր սպանանել զպարոն Օշին վասն չարութեանցն գործեցելոց և էր դարձուցանել ի Հայաստան զհօրաքեռորդին իւր զիշխանն Ժան (Ջէհան) Լուսինեան և զեղբայր նորա [illegible] Բոհեմոնդ. և հրաման էր զի յետ մահուան իւրոյ՝ քանզի Լևոն նա անզաւակ, զթագաւորութիւնն Հայոց ժառանգեսցէ երէցն յաւոր որդիք հօրաքեռ իւրոյ. Զապէլ [illegible], զոր պարոնին Օշնի կորուսեալ էր խեղդամահ։

Եւ եղև ի թագաւորել անդ Լևոնի Զօրաւորի, յետ աւուրց ոչ բազմաց ոմանք յիշխանաց անտի նորա և ի բարեկամաց պատմեցին զչարութիւն և զնենգութիւն և զորս արարեալ էր պարոնին Օշնի և թէ ո՛րպէս առեալ էր ի կնութիւն զդշխոյն Յովհաննա զմօրու արքայի, հարեալ ի սէր անդստին ի ժամանակէ անտի յորում ած զնա ի Նէապոլսոյ ի Հայաստան. թէ այսու իսկ աղագաւ՝ սպանեալ էր զհայրն արքայի, արբուցեալ նմա դեղ մահու, որպէս ասէր բան, և ապա տուեալ էր նմին իսկ արքայի զդուստր իւր Ալիսիա ի կնութիւն։ Իսկ արքայ

Լևոն վասն բանիցս այսոցիկ. և վասն այլոց բազմաց, ետ հրաման ձերբակալ առնել զՕշին և զեղբայր նորա զպարոն Կոստանդին, իբրև կամակից գործոց նորա չարեաց և կորուսանել զնոսա մահուամբ։

Եւ յետ այնորիկ վերադարձոյց ի Հայաստան զհօրաքեռորդին իւր զիշխանն Գեհան Լուսինեան, զոր արար գունդստապլ Հայոց, և ետ նմա ի կնութիւն զՍուլթան տիկին, զդուստր արքային Կպրաց. և զսեպուհն Ռոէմոնդ զեղբայր նորա, զոր արար կոմս Կոռիկոսի և ետ նմա ի կնութիւն զդուստր Ռօդուենի, մեծի մարաջախտի Թագաւորութեանն։ Յետ սակաւ մի ժամանակի փոխեցաւ յաստեացս արքայն Լևոն Դ. թագաւորեալ ամս քսան և մի։ Եւ զի մեռաւ անորդի, հրաման ետ ի կենդանութեան անդ իւրում զի թագաւորութիւնն Հայոց զկնի մահուան իւրոյ անցցէ յերէցն յորդիս Զապէլ տիկնոջ քեռ հօր իւրոյ Օշին արքայի. և տիկնոջն՝ յետ մեռանելոյ առն իւրոյ Ամօրի սեպհւոյն Լուսինեան, իշխանին Տիւրոսի, դարձ արարեալ էր որդւովքն հանդերձ ի Կիպրոսէ ի Հայաստան, առ եղբայր իւր արքայ Օշին, որ էր դեռ ևս յայնժամ կենդանի։

---

## ԳԼՈՒԽ Ի.Զ.

Թէ ո՛րպէս սեպուհն Գէհան Լուսինեան առաքեաց առ եղբայրն իւր երէց (Գուիդ Լուսինեան) ընդ արքայն Լևոն Դ. Ջերաւ կարգեալ զնա ժառանգ Թագաւորութեանն։

Յետ վճարելոյ ի կենաց Լևոնի Դ.ի աւաղք և անաւագք աշխարհին հաւանեցան միաձայն զի սեպուհն Գե-

հան Լուսինեան, իշխան և գունդստապլ թագաւորութեանն Հայոց և հայր Լևոնի Ե. ի, որ կեայ ցայսօր ժամանակի, վարեաց զթագաւորութիւնն Հայոց։ Յայնժամ առաքեաց նա հրեշտակութիւն առ եղբայր իւր երէց, իշխանն Գուի Լուսինեան ի Կոստանդնուպոլիս, թէ որպէս արքայն Լևոն Դ. իւրեանցն մօրեղբօրորդի, մեռեալ անզաւակ, արարեալ էր զնա ժառանգ իւր, իբրև մերձաւորագոյն ազգական արու. և թէ ինքն՝ իշխանն Ջահան, վարէր զարքայութիւնն ի սէր եղբօրն, մինչև եկեալ հասցէ նա ի Հայաստան։ Այլ սակայն իշխանն Գուի մերժեաց զառաջինն զամենայն իրաւունս թագաւորութեանն, յանձն արարեալ զայնս ի ձեռս Ջահանի Լուսինեան, եղբօր իւրոյ, փոխանակ զի էր ինքն Գուի հաստատեալ ի Կոստանդնուպոլիս աւագաբար և պայծառապէս, միանգամայն՝ զի և զբարին կամէր եղբօր իւրում։ Այլ գունդստապլն Ջահան չկամեցաւ բնաւ առնուլ յանձն զթագաւորութիւնն և առաքեաց բազում անգամ առ եղբայր իւր Գուի Լուսինեան զի հաճեսցի գալ և առնուլ զժառանգութիւն իւր, յօգուտ քրիստոնէութեան. ապա թէ ոչ, ասէր, թողեց զվարչութիւն թագաւորութեանն և եկից առ քեզ։

---

## ԳԼՈՒԽ ԻԵ.

Թէ ո՛րպէս իշխանն Գուի Լուսինեան եկն ի Հայաստան բազմաշեան գնդաւ և ընկալեալ եղև պատուով մեծաւ և պսակեցաւ ի Թագաւոր Հայոց։

Իբրև լուաւ Գուի Լուսինեան զկամս եղբօր իւրոյ Ջահան իշխանին Լուսինեան, անսաց նմա և եկն ի

Հայաստան բազմութեամբ զօրականաց յօգնութիւն և ի կազդուրումն աշխարհին, որ վնասեալն էր և խաթարեալ մեծապէս ի հակառակորդաց անտի հաւատոյ, ի Թուրքաց ասեմ և ի Սարակինոսաց։ Եւ եղև նա ընկալեալ մեծապատիւ փառօք յաշխարհի թագաւորութեան իւրոյ և պսակեցաւ ի Սիս քաղաքի շքեղաշուք հանդիսիւ, յամի շնորհաց 1342, յամսեանն Հոկտեմբերի։ Եւ քանզի սուլթանին Բաբելոնի և Թուրքաց, մերձաբնակաց թագաւորութեանն Հայոց, լեալ էր սովորութիւն զի ի լինել նորոյ թագաւորի ի Հայաստան՝ առաքեալ լինէին նոցա պարգևք և ընծայք, իբրև տուրս հարկաց, պատգամաւորս արձակեցին առ արքայն Գուի, պահանջելով զի ըստ օրինակի նախորդացն իւրոց առաքեսցէ առ նոսա զտուրս ընծայիցն։ Եւ նոցա պատասխանի արքայ Գուի և ասէ. «Կենդանի է Տէր, զի ցորչափ կայ մեր շունչ ի մարմնի՝ ոչ տացուք պարգևս, ոչ ընծայս և ոչ այլ ինչ ի հարկաց, ոչ սուլթանին և ոչ այլում ումեք յանհաւատից, մինչև թողեալ իցէ նոցա զաշխարհ մեր և զթագաւորութիւն ի վիճակ պայմանի, յորում գտանէր նա ի սկզբան անդ, յորժամ նախորդք մեր հատուցանէին նոցա զհարկսն»։ Այսպիսեաւ բուռն զօրութեամբ վարեաց արքայ Գուի զիւրն թագաւորութիւն, առանց հատուցանելոյ ումեք սակս հարկաց, ոչ ծովու և ոչ ցամաքի և առանց կորուսանելոյ թիզ մի հողոյ. և հզօր բազկաւ և խիզախ քաջութեամբ մարտնչէր ընդ թշնամիս իւր և յաղթող հանդիսանայր հանապազ ի վերայ նոցա։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Թէ ո՛րպէս արքայն Գուի խնդրեաց ի Հիւգ արքայէն Կիպ-րոսի զի թողցէ նմա վայելել և պահել զաւառն, զոր սեպուհն Ամօրի Լուսինեան՝ տէրն Տիւրոսի և եղբայր Հանրի արքային ունէր առ կենդանեաւ էր և ժառանգ նորա, որպէս գրեալ է ասորև։

Այդ պատմութիւնն ասէ թէ արքայն Գուի Լու-սինեան, երբև ժառանգ Ամօրի սեպհոյ Լուսինեան՝ տեառնն Տիւրոսի, խնդրեաց ի Հիւգ արքայէն Կիպրոսի զա-ւառն, զոր սեպուհն Ամօրի ունէր ի կենդանութեան իւ-րում։

Գիտելի է զի Հանրի, արքայն Կիպրոսի, մինչդեռ կենդանին էր՝ կամէր թողուլ զիւրն տէրութիւն ի սե-պուհն Ամօրի, եղբայր իւր երկրորդ. զի անցեալ էր ինքն զաւուրբք և նմին ինքեան անկանէր թագաւորութիւնն յետ մահուան իւրոյ։ Գրեաց առ նա թուղթս արքայն Կիպրոսի զի յարուցեալ եկեսցէ ի կալուածոց անտի իւրոց, ուրանօր կեայր նա յայնժամ։ Այլ ի գալ հասանել անդ նորա ի քաղաքն Նիկոսիա, առ արքայ, եգիտ զնա ստրջա-ցեալ, ոչ ևս յօժարելով թողուլ ի նա զիշխանութիւն թա-գաւորութեանն և վասն այնորիկ աւագորեարն Կիպրոսի միաձայն հաւանութեամբ արկին զնա յաթոռոյ, առ ծե-րութեան նորա, և առաքեցին ի Հայաստան. և կալաւ զթա-գաւորութիւնն Ամօրի ամս երիս։ Իսկ յետ այնորիկ՝ ա-զատանին Կիպրոսի ետուն ի մահ նենգութեամբ զարքայն Ամօրի. և Զապէլ*) կին նորա դարձ արար յայնժամ ի

*) Այս Զապէլ դուստր էր Լևոնի Գ. (Դ.) թագա-ւորի։ Ծանօթ. Խմբ.

Հայաստան, հնդիքումբք որդւովքն, առ եղբայրն իւր, որ թագաւորէր ի վերայ Հայոց։ Յետ սակաւ ժամանակի տանուտեարքն Կիպրոսի անդրէն կոչեցին զՀանրի արքայ յերկիր թագաւորութեան իւրոյ և կալան զնա ի տէր և ի թագաւոր։ Նա յորժամ արքայ Հանրի չու արարեալ յաշխարհէն Հայոց դարձաւ ի Կիպրոս կղզի, տարաւ ընդ իւր զսեպուհն Հիւգ Լուսինեան, զանդրանիկն յորդիս եղբօր իւրոյ Ամօրիի Լուսինեան և դարձոյց ի նա և ի ժառանգ նորա զաւատս և զստացուածս Ամօրիի յայտ արարեալ թէ խաղդաւանօք տուեալ էր զնա ի մահ աւագանւոյն Կիպրոսի. և խոստացաւ նմա հաւատարմաբար զի զկնի եղանելոյ իւրոյ յաստեացս՝ նա լինիցի արքայ Կիպրոսի, իբրև մերձաւորագոյն արենակից իւր, որում անկանէր աթոռն թագաւորական քանզի չէին իւր պայազատք։

---

## ԳԼՈՒԽ ԻԹ.

Թէ ո՛րպէս արքայն Հանրի ետ ածել և կախել ի կախաղան զայնոսիկ, որոց գահընկէց արարեալ էր զնա. և թէ ո՛րպէս սեպուհն Հիւգ դարձաւ ի Հայաստան. և թէ զի՛արդ յետ մահուան Հանրի արքայի՝ Կիպրացիք թագաւորեցուցին զՀիւգ Լուսինեան, զորդին Ամօրիի, երրորդ եղբօր Հանրի արքային Կիպրոսի։

Յորժամ արքայն Հանրի դարձ արարեալ յաշխարհէն Հայոց, եկն եհաս ի Կիպրոս և ընդ նմա Հիւգ Լուսինեան եղբօրորդի իւր, ետ ձերբակալել զսեպուհն Ամօրի, զգունդստապլն Կիպրոսի, որ էր եղբայր իւր երբորդ. և ընդ նմա տանուտեարս և պարոնայս բազումս

*

և զայլս ամենեսին յորոց ձեռն լեալ էր նորա գահընկէց, և իւր արկանել զնոսա ի կալանս բանտից, իբրև զդաւաճանողս իւր. վճարեցին նոքա անդանօր զաւուրս իւրեանց պատուով։

Իսկ տիկինն Զապէլ, մայրն Գուիդի Լուսինեան, գրեաց նմա թուղթս, որպէս և եղբայրքն նորա, աղաչելով զի եկեսցէ տեսանել զնոսա ի Հայս։ Եւ եղև յորժամ ընկալաւ նա զնամականին, հրաժեշտ կալաւ ի Հանրի արքայէ, որ շնորհեաց նմա հրաման, տալով ժամանակ միոյ բացակայ զամ մի և եթ և ունել իշխանութիւն վայելելոյ զաւատն ընդ ամս ողջոյն. և եթէ ի լրման տարւոյն ոչ դարձցի յետս ի Կիպրոս, զաւատն զայն ունիցի ինքն։ Յանձին կալաւ զայս սեպուհն Գուիդ և պատուիրեաց գործակալաց իւրոց զի փոխանակ իւր ընկալցին զհաս աւատին և հասուսցեն առ նա ի Հայաստան։ Եւ արարին այնպէս։ Եւ քանզի իշխանն Գուիդ ի լրման ամին այնորիկ՝ նշանակելոյ ի Հանրի արքայէ, ոչ կարաց դառնալ յետս՝ արքայ Հանրի էառ կալաւ զաւատն և սեփականեաց զարդիւնս նորին, մինչև իշխանն Գուիդ և կամ մի ոմն ի ժառանգաց անտի նորա դարձ յերկիրն արասցէ։ Եւ արքայն Հանրի մեռաւ յետ աւուրց ոչ բազմաց. և Կիպրացւոց ոչ գտեալ յաշխարհին և ոչ զոք յորդւոց անտի Էմօրիի իշխանին Տիւրոսի, թագաւորեցուցին ի Կիպրոս զիշխանն Գուիդ Լուսինեան, զորդի Էմօրի գունդստապլի, երկրորդ եղբօր Հանրի արքայի, որ (Էմօրի), որպէս ի վեր անդր ասացաք, վճարեաց զկեանս իւր ի բանտի։

# ԳԼՈՒԽ Լ.

**Թէ ո՛րպէս Բոհեմոնդ Լուսինեան չոգաւ առ պապն, խորհրդով եղբօր իւրոյ Գեհան իշխանի Լուսինեան, առ ի բողոք բառնալ զՀիւգայ արքայէն Կիպրոսի, որ ոչ կամէր յանձնել նմա և եղբօր նորա զաւատ Ամօրիի Տէառնն Տիւրոսի, որ էր հայր նոցա։**

*Լուայք յառաջագոյն (գլ. իգ), թէ որպէս պարոն Օշին, մին ի չորեցունց անտի խնամակալացն Հայաստանի, ետ խեղդամահ առնել զտիկինն Զապէլ, զքոյրն Օշին թագաւորի՝ զկին Ամօրի սեպհոյ և սպան զերկուսին որդիս նորա զՀիւգ և զՀանրի, զմիւս զայլ զերկուսին որդիս նորա, զիշխանսն Գեհան և Բոհեմոնդ՝ էարկ ի նաւ, որք հասին ի Հռոդոս կամօքն Աստուծոյ։ Խորհուրդ կալան մանկունքն երկոքին զի մին ի նոցանէ՝ իշխանն Բոհեմոնդ, ելեալ գնասցէ առ պապն, բողոք բառնալ զՀիւգայ թագաւորէն Կիպրոսի, որդւոյ Ամօրիի Լուսինեան գունդստապլի, որ մեռաւն ի բանտի, զի զրաւեալ էր զաւատ հօրն իւրեանց Ամօրի իշխանի Լուսինեան, զոր արքայ Հանրի՝ իբրև կոչեցաւն ի Հայաստանէ յերկիր թագաւորութեան իւրոյ, շնորհեալ էր իշխանին Հիւգայ անդրանիկ որդւոյ երկրորդ եղբօր իւրոյ, որ կոչէր Ամօրի, նմա և ժառանգաց նորա. և փոխանակ զի իշխանն Հիւգ ելեալ գնաց ի Հայս և ոչ դարձաւ յաւուր զոր արքային Կիպրոսի Հանրիի նշանակեալ էր նմա, կալաւ զաւատն զայն ընդ ձեռամբ, որպէս ասացաւ ի վեր անդր։ Բոհեմոնդ իշխան այնքան թախանձեաց զպապն՝ մինչև յօժարեցոյց զնա գրել առ թագաւորն Կիպրոսի զի*

թողցէ զաւատն Բոէմոնդի և եղբօր նորա։ Եւ արքայն Հիւգ հրաման ետ զի առցեն նոքա, ամ ըստ ամէ, ի հասից անտի աւատին՝ երկոտասան հազար արծաթի դահեկանս Սիպրոսի։

---

## ԳԼՈՒԽ ԼԸ.

Թէ որպէս Բոէմոնդ խնդրեաց ի պապէն և ի կարդինալաց զի հասցեն յօգնութիւն քրիստոնեայ ժողովրդոց Հայաստանի և թէ որպէս պապն ընկալաւ զխնդիրս նորա։

Յորժամ իշխանն Բոէմոնդ Լուսինեան առաջի արար պապին զխնդիր իւր զաւատէն, մատոյց նմա և կարդինալացն պաղատանս զի ձեռն օգնականութեան կարկառեսցեն առ քրիստոնեայ ժողովուրդն Հայաստանի, որ տառապէին ի ձեռաց թշնամեաց հաւատոյ Յիսուսի Քրիստոսի։ Ի գութ շարժեալ պապին և կարդինալաց ընդ աղէտս քրիստոնէից և ընդ բանաւոր խնդիր Բոէմոնդի, որ էր այր իմաստուն և ճարտար ի բանս, ընկալան զխնդիրն և ետուն նմա նպաստ արծաթոյ յօգնութիւն, զոր առեալ իշխանին Բոէմոնդի, գոհացաւ մեծապէս, խնդրելով յԱստուծոյ զի զփոխարէնսն հատուսցէ նոցա. և ինքն դարձ արար ի Հայաստան և ետ յարքունի գանձն Հայոց։ Եւ արծաթն այն ծախեցաւ ի պէտս զինուց զօրականին և պէսպէս անօթոց պատերազմի և մեքենայից յամրութիւն բերդից թագաւորութեանն, առ ի կարող լինելոյ զդէմ ունել անհաւատից։

---

## ԳԼՈՒԽ ԼԲ.

Թէ որպէս Գուի Լուսինեան, արքայ Հայոց, առաքեաց հրեշտակս առ Հիւգ, արքայ Կիպրոսի, խնդրելով զի տացէ նմա զաւառն, զորմէ վերագոյնս յիշատակեցաք։

Արդ պատմութիւնն դառնալով առ բարեմոյն արքայն Հայոց Գուի Լուսինեան ասէ՝ թէ իբրև եկաց նա տէր երկրին, առաքեաց պատգամաւորս առ Հօրեղբօրորդի իւր խնդրելով ի նմանէ զաւատն, զոր ունէր Հայր իւր Ամօրի Լուսինեան իշխանն Տիւրոսի, զոր արքային Հանրիի, հօրեղբօր իւրոյ թողեալ էր եղբօր իւրում Հիւգ իշխանի Լուսինեան և ժառանգաց նորա, որպէս ասացեալ է մեր ի վեր անդր. և զի մեռեալ էր եղբայրն իւր իշխանն Հիւգ, աւատն այն ըստ օրինաց ժառանգութեան նմին ինքեան անկանէր։ Իսկ արքայն Կիպրոսի ի լսել անդ զխնդիր թագաւորին Հայոց, յանձն էառ յօժար կամօք, քանզի գիտէր քաջ զի արդար և իրաւ էր, զոր խնդրէր նա. և յայտ արար նմա, թէ պատրաստ էր յանձնել զաւատն նմա կամ միում ումեք յեղբարց նորա, եթէ գայցէ ինքն կամ առաքեսցէ զմի ոմն ի նոցանէ ի Կիպրոս բնակել և վարել զաւատն, ըստ սովորութեան երկրին։ Այլ թագաւորն Հայոց իբրև լուաւ զպատասխանի արքային Կիպրոսի՝ ոչ հաճեցաւ ընդ այն և արձակեալ վերստին զպատգամաւորսն՝ գրեաց առ նա թէ ոչ միայն ունել կամէր զաւատն զայն՝ որ արդէն իւր իսկ էր սեփականութիւն ըստ իրաւանց, այլ և պահանջէր ևս զամենայն հասս աւատին, զորս առեալ էր նորա յօրէ յորմէ պսակեցաւ ի թագաւոր Կիպրոսի։ Իսկ եթէ Հա-

դապետաց անտի Հայոց զի ցուցցէ նոցա թէ յորում բանի մոլորէին. և խոստանայր նոցա՝ զի եթէ կամեսցին հաւատալ և հնազանդել ճշմարիտ հաւատոցն Ս. Եկեղեցւոյ, արասցէ նոցա շնորհս բազմադիմիս և յորդոր լիցի զի իշխանքն արևմտից, արքայն ասեմ Գաղղիոյ և իշխանք որ յայնկոյս լերանց, ձեռն օգնութեան տացեն նոցա ընդդէմ թշնամեացն անհաւատից։ Ընկալաւ արքայ Գուէ կամօք հաճութեան զհրեշտակն և զկոնդակս պապին պատկառանօք. և կոչեցեալ զԿաթողիկոսն և զեպիսկոպոսունս Հայոց, ետ ընթեռնուլ առաջի նոցա զնամականին եկեալ ի պապէն և յորդոր կարգաց նոցա արքայն Գուի իբրև ճշմարիտ կաթողիկեայ զի գայցեն ի հնազանդութիւն. և եցոյց նոցա զբարիսն զմեծամեծս՝ որք ունէին յառաջ գալ անտի։ Հնազանդեցան նոքա սիրով, զմտաւ ածեալ զի թագաւորն իւրեանց էր յարևմտեան սերնդէ և ճշմարիտ կաթողիկեայ և հպատակ եկեղեցւոյն Հռոմայ և թէ բարի էին ազդարարութիւնք նորա, հայելով և ի շնորհս, զորս խոստանայր նոցա պապն և զօժանդակութիւն թագաւորաց և իշխանաց քրիստոնէից և զանդուստ յառաջ եկեալ բարիս։

---

## ԳԼՈՒԽ ԼԳ.

Թէ որպէս արքայն Գուէ առաքեաց առաջնորդս երկուս առ պապն և եպիսկոպոս մի աշխարհէն և ընդ նոսա զնուիրակն պապին որ կոչէր Գանիէլ և էր աբբայ Հայ։

Յայնժամ հրաման ետ արքայ և Կաթողիկոսն և եպիսկոպոսունքն և իշխանք աշխարհին զի մի ոմն եպիս-

կրպոս կրօնաւոր, հմուտ դպրոց և ճարտար ի դպրութեան անդ նոցա (Հայոց), որոյ անուն կոչէր Եղբայր Յովհաննէս Պլազեցի, և ապստոք երկու առաքեցին առ պապն ընդ Դանիէլի քահանայի, նուիրակի պապին *)։ Յորժամ եկեալ առաջի եղեն սորա պապին, ընկալաւ զնոսա քաղցրութեամբ, և կարգեաց եպիսկոպոսունս երկուս հրահանգել զնոսա ի կաթողիկեայ հաւատս և ցուցանել թէ յիմ իմիք էր մոլորութիւն նոցա։ Իսկ ապստոացն այնոցիկ երկոցունց մեկնեալ ի պապէն, չոքան առ արքայն Գաղղիոյ և առ այլս յիշխանացն Արեւմտից՝ խնդրել ի նոցանէ ձեռն օգնականութեան։ Եւ իշխանքն այնոքիկ պատասխանի ետուն նոցա յօժար սիրով թէ փոխանակ շնորհացն, զոր առնէր նոցա պապն, ինքեանք՝ իբրև հաւատարիմ հնազանդք ս. եկեղեցւոյն Հռոմայ, ախորժ հաճութեամբ տայեն նոցա օգնութիւն։ Յայնժամ ապստոքն երկոքին դարձ արարին առ պապն, ակնկալեալ ամալով շնորհաց նորա և գթութեան։

---

*) Թուի թէ պատգամաւորացս այսոցիկ տարեալ էր ընդ իւր և թուղթ մի դաւանութեան Հայոց, գրեալ ի Դանիէլէ քահանայէ, որ որպէս ծանուցանէ մեզ Կառրիէռ, ուսուցչապետն ի վարժարանի արեւելեան կենդանի լեզուաց ի Փարիզ՝ գտանի զարդիս յԱզգային Մատենադարանին Փարիզի ի ձեռագրին 3368 լատինական մասինն, ընդ այսու վերնագրով. «Responsio fratris Danielis de Thaurisio, de ordine fratrum minorum, legati Leonis regis Armenorum, ad errores impositos Armenis», և տեղեկութիւնս հետաքննականս ունի զվիճակէ եկեղեցւոյն Հայոց ի Կիլիկիա յայնմ ժամանակի։ Ծան. խմբ.

# ԳԼՈՒԽ ԼԶ.

Թէ որպէս լուաւ պապն թէ սպանեալ էր Հայոց զթագաւորն իւրեանց Գուի և զիշխանն Ռոէմոնդ զեղբայրն նորա, և թէ որպէս յղեաց զպատգամաւորն առաջի իւր առ ի գիտել զպատճառս սպանութեանն։

Եւ ի ժամանակին յայնմիկ եհաս լուր առ պապն թէ Հայք սպանեալ էին զարքայ իւրեանց Գուի և զիշխանն Ռոէմոնդ զեղբայր նորա և զամենայն փռանգս, զորս ածեալ էր նորա ընդ իւր ի Հայաստան։ Եւ եղև իբրև լուաւ պապն զայս բօթ դառնութեան՝ խռովեցաւ յանձն իւր և կոչեալ զոմանս ի Հայոց անտի ասէ ցնոսա. «Արժա՞ն ինչ էր Հայոց սպանանել զուր տարապարտուց զորդին մեր Գուի, զարդարև կաթողիկեայն, որ էր բարեպաշտ թագաւոր նոցա և բնիկ տէրն»։ Պատասխանի ետուն և ասեն. «Հայր Սրբազան, ոչ ինչ գիտեմք մեք զայդմանէ և եթէ այսպիսի ինչ՝ իցէ դիպեալ, չգիտեմք զի՞նչ ասել։ Բայց սակայն, Հայր Սրբազան, եթէ արդարև այդ անցք անցեալ իցեն՝ վասն նոցա և վասն մեր պաղատիմք զթութի՛ւն. մի՛ բարկացցիս, ի սէր Աստուծոյ. զի եթէ հաճոյ իցէ Տեառն՝ նոքա և մեք յայսմհետէ լիցուք ճշմարիտ հնազանդեալք»։ Յայնժամ պապն, որ գթած է և ողորմած հանապազ առ այնոսիկ, որ խնդրեն ի նմանէ զթողութիւն, ողորմեցաւ նոցա զի յանկուցէ զնոսա ի ճշմարիտ հաւատս։ Այլ զի սպանեալ էր նոցա զբարեմոյն արքայն իւրեանց Գուի՝ ոչ կամեցաւ առնել մեծ ինչ շնորհս և նպաստաւորութիւն, զոր արարեալ էր անշուշտ՝ եթէ չէր նոցա զրկեալ ի կենաց զթագաւորն, և կարճեաց եւս զօժանդակութիւն թա-

գաւորաց և զիշխանացն քրիստոնէից յայնկոյս լերանց: Եւ զայս օրինակ արար պատասխանի. «Խորհուրդ արարեալ ընդ եղբարս մեր և ընդ ժողովոյն մերում սահմանեցաք առաքել ընդ ձեզ ի Հայաստան նուիրակս երկուս ի մեր կողմանէ, որք քննեսցեն զհաւատս ձեր և քարոզեսցեն զկաթողիկեայ հաւատս: Եւ ըստ հպատակութեանդ ի հաւատալ ուղղապէս և ընդունել զհաւատս սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ, մեք և բարեպաշտ թագաւորքն և իշխանք քրիստոնէութեան առասցուք ձեզ շնորհ բազում և ձեռնտու լիցուք ձեզ ըստ մերում կարեաց: Եւ այսպէս մեկնեալ դարձ արարին նոքա ի Հայաստան:

---

## ԳԼՈՒԽ ԼԶ.

Թէ որպէս երկոքին նուիրակքն հասին ի Հայաստան ընդ պատգամաւորսն Հայոց, որ գնացեալ էին առ պապն, որպէս և ասացաւ:

Յորժամ պատգամաւորքն Հայոց և երկոքին նուիրակքն պապին եկեալ հասին ի Հայաստան, գտին զի Հայք օծեալ էին իւրեանց թագաւոր զանուանեալն Կոստանդին, որ էր բռնաւոր և ոչ սերեալ յարքայական ազգէ անտի՝ զորմէ խօսի պատմութիւնն, որ և ասէ թէ ի լսել անդ նորա (Կոստանդնի) զդարձ պատգամաւորացն առաքելոց առ պապն և զգալուստ երկուց նուիրակաց պապին ընդ նոսա, ետ հանել ի գերեզմանէ զքարեմոյն արքայն Գուի և զՌէմոնդ զեղբայր նորա ի փոքրիկ մատրանէ անտի Ատանայ քաղաքի, ուր թաղեալ էին անշքութեամբ և ամփոփեաց զնոսա ի մայր եկեղեցւոյն Տարսոն քաղաքի, որ կոչի Սեան Աստուածածին: Եւ ար-

քայ Կոստանդին և Կաթողիկոսն և եպիսկոպոսունք և իշխանք աշխարհին ընկալան մեծաշուք պատուով զնուիրակսն, որք և պատմեցին նոցա զբանս պապին։ Պատասխանի ետուն նոքա և ասացին թէ հնազանդեսցուք սիրով պապին։ Եւ այսպէս նուիրակքն այնոքիկ մնացին յաշխարհին Հայոց ամիսս ութ, առ ի տեղեկանալ հաւատոց նոցա և հրահանգել զնոսա ի ճշմարիտ վարդապետութեան կրօնից։

---

## ԳԼՈՒԽ ԼԸ.

Թէ որպէս նուիրակքն երկոքին երդմնեցուցին զԹագաւորն, զԿաթողիկոսն, զեպիսկոպոսունս և զիշխանս Հայոց անփոփոխ ունել զդաւանութիւն Հռոմայ. և թէ որպէս առաքեցին առ պապն խնդրել նպաստ ուժանոյ։

Եւ կացեալ նուիրակացն ամիսս ութ յաշխարհին Հայոց, հրահանգեցին սուրբ քարոզութեամբք զԹագաւորն, զԿաթողիկոսն, զեպիսկոպոսունս, զիշխանս և զժողովուրդ աշխարհին ի հաւատս ճշմարիտս և նախ քան զմեկնել իւրեանց ետուն ժողովել զաւագանին և երդմնեցուցին մի ըստ միոջէ, ըստ իւրաքանչիւր աստիճանի զի մի՛ ևս դաւանեսցեն ինչ այլապէս քան զոր դաւանէն սուրբ եկեղեցին Հռոմայ, և զի լիցին յայնմ հետէ և առ յապա հարազատ քրիստոնեայք, հնազանդեալք ճշմարտապէս պապին և սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ։ Եւ ետուն նուիրակքն իշխանացն առնել գիր ուխտին և երդմանցն և կնքել մատանեաւ իւրեանց և ստորագրել իւրեանց իսկ ձեռամբ։ Եւ իբրև կատարեցին՝ ասեն նուիրակքն ցարքայ՝ ցԿաթողիկոսն և ցիշխանս լուիլու ա-

զատուերոյն. «Ահա հանաք մեք ի գլուխ զմերն նուիրակութիւն և կատարեցաք զհրաման Ս. Հօրն մերոյ և տեսանեմք զձերդ բարի յօժարութիւն. և վասն այսորիկ ըստ հրամանի Ս. Հօրն՝ որ առ մեզ առեալ, հարցանեմք զձեզ, զո՞ր շնորհս կամիք զի արասցէ նա ձեզ և զո՞ր նպաստ օժանդակութեան խնդրիցէք ի Թագաւորաց անտի և յիշխանացն քրիստոնէից: Խորհեցարուք և ասացէ՛ք մեզ և յուսամք եթէ լիցի ըստ ցանկութեան սրտից ձերոց»:

Խորհուրդ կալան իշխանքն և արարին պատասխանի. «Տեա՛րք նուիրակք, շնորհ ունիմք Ս. Հօրն վասն բարեյօժար կամաց նորա որ զմէնջ, որպէս և վասն ընծայութեանն, զոր առնէք մեզ յանուն նորա. շնորհ ունիմք ձեզ և վասն այնր: Գիտուն լիցի ձեզ՝ զի սահմանեցաք առաքել ընդ ձեզ հրեշտակս առ Ս. Հայրն մեր, խնդրել ի նմանէ զի հաճեսցի տալ մեզ օգնութիւն և նպաստ արծաթոյ ի զօրավիգն արանցն պատերազմի, որք են առ մեզ բաւականք ի պաշտպանութիւն աշխարհի մերում ընդդէմ անհաւատից»:

---

# ԳԼՈՒԽ ԼԲ.

Թէ որպէս Նուիրակք ըստ արարեալ յաշխարհէն Հայոց գնացին առ պապն, հանդերձ աղերսագրաւ ոմամբ զոր արքայն և իշխանք առաքեցին ընդ նոսա. և Թէ որպէս առաքեաց զնոսա պապն ի Սիկլոս առ հայկական եպս:

Ու եղև իբրև լուան նուիրակքն զխնդրուածս Թագաւորին և զիշխանացն Հայոց, ետուն ողջոյն հրաժեշտի

և դարձ արարին առ պապն և մի ոմն ասպետ ընդ նոսա, անուն Կոստանդին Կարսիլլի, զոր ընդ նոսա յուղարկեաց ազատորեարին: Իբրև յանդիման եղեն պապին, ցուցին նմա նուիրակքն զթղթեանն զամենայն, զոր Թագաւորին և իշխանաց աշխարհին Հայոց տուեալ էր, խոստանալով լինել յայնմհետէ և առ յապայ ճշմարիտ որդիս սրբոյ եկեղեցւոյն և հնազանդս նմա. և ասպետն այն յանձն արար պապին զպղքայն և զաւազանին և աղաչանս էարկ՝ յանուն նոցա՝ զի հաճեսցի օգնել նոցա արծաթով: Նա և ի հաստատել անդ նուիրակացն զբանս նորա, որպէս խոստացեալ էր նոցա կանխաւ, տեսեալ պապին զախորժ յօժարութիւն նոցա և զխոստումն հնազանդելոյ եկեղեցւոյն Հռոմայ, իբրև բարի և հաւատարիմ քրիստոնեայք, և ցնծացաւ յոգի իւր, զի Հայոց՝ յաւուրս նորա՝ ընկալեալ էր զճշմարիտ հաւատս կաթողիկութեան. վասն որոյ ընկալաւ զխնդիր նոցա յօժարակամ և հրաման ետ զի մի ոմն եպիսկոպոս յազգէն Հայոց Տէր Ներսէս անուն, գիտակ երկոցունց լեզուաց, որ էր կրօնաւոր Յակոբեան յՄիւխտէ անտի Քարոզիչ Եղբարց, և պատգամաւորն Հայոց սեպուհն Կոստանդին Կարսիլլի գնասցեն ի Կիպրոս և ինքն տացէ ի ձեռս նոցա թուղթ առ հարկահանն, որ յիւրմէ կողմանէ կայր ի կղզւոջն, զի զամենայն հասս և զմուտս պատկանեալս Եկեղեցւոյ, զորս յետ այնորիկ հաւաքեսցէ նա՝ յղեսցէ յաշխարհն Հայոց և հասուսցէ ի ձեռս Թագաւորին, որպէս զի նպաստիւն այնուիկ լիցի նա բաւական ի պահել զզօրն առ ի զդէմ ունել թշնամեացն հաւատոյ: Շնորհ կալաւ ընդ այն ասպետն խոնարհաբար և ընկալեալ նորա և Յակոբեան Եպիսկոպոսին զօրհնութիւն պապին, անկան յուղի և գնացին ի Կիպրոս և մա-

ծնեսցի առնել զայս, խոստանայր գոհ առնել զնա, հատուցանելով ըստ երկրին սովորութեան զբաժնն։ Իբրև իրազեկ եղև մտաց Թագաւորին Հայոց արքայն Կիպրոսի, առաքեաց առ նա ասել զի մտադիւր դարձուսցէ ի նա զաւառն, եթէ նա կամ մի յեղբարց նորա եկեսցէ ունել տուն բնակութեան ի Կիպրոս, այլ ոչ կամէր և ոչ ինչ հատուցանել ի հասիցն, որք չև էին հատուցեալ։ Եւ եղև զայսմանէ վէճ հակառակութեան բազում ընդ մէջ Թագաւորացն երկոցունց. և յերկարեալ տևեաց կագն մինչև ցօրն, յորում արքայն Հայոց Գուի սուսերահար սպանաւ ի Հայոց որպէս տեսցի ի ստորև։

---

## ԳԼՈՒԽ ԼԳ.

Թէ որպէս առաքեաց պապն Կղեմէս առ արքայ Գուի, առ եպիսկոպոսունս և առ իշխանս Հայոց, վասն ինչ ինչ խնդրոց կասկածելեաց հաւատոց, յորս գտանէին Հայք։

Ի ժամանակին, յորում Թագաւորէր Հայոց արքայն Գուի Լուսինեան, որ էր այր արդար և կաթողիկեայ և հնազանդ մօր մերում սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ, լուր եղև պապին թէ Հայք ոչ էին ճշմարտիւ հնազանդք և մոլորէին ի խնդիրս ինչ հաւատոյ. գրեաց ի Հայաստան ի ձեռն հայազգի քահանայի ուրումն, որոյ անուն էր Դանիէլ՝ հմուտ լեզուացն երկոցունց, առ Թագաւորն, առ եպիսկոպոսունս և առ իշխանս Հայոց թէ որպէս իրազէկ եղեալ էր զի ոմանք ի ժողովրդենէ գթէին ի մասունս ինչ քրիստոնէական հաւատոց. և վասն այսորիկ հրամայէր զի առաքեսցեն զոմանս ի վար-

դապետաց անտի Հայոց զի ցուցցէ նոցա թէ յորում բանի մոլորէին. և խոստանայր նոցա՝ զի եթէ կամեսցին հաւատալ և հնազանդել ճշմարիտ հաւատոցն Ս. եկեղեցւոյ, արասցէ նոցա շնորհս բազմադիմիս և յորդոր լիցի զի իշխանքն արևմտից, արքայն ասեմ Գաղղիոյ և իշխանք որ յայնկոյս լերանց, ձեռն օգնութեան տացեն նոցա ընդդէմ թշնամեացն անհաւատից: Ընկալաւ արքայ Գուի կամօք հաճութեան զհրեշտակն և զկոնդակս պապին պատկառանօք. և կոչեցեալ զԿաթողիկոսն և զեպիսկոպոսունս Հայոց, ետ ընթեռնուլ առաջի նոցա զնամականին եկեալ ի պապէն և յորդոր կարդաց նոցա արքայն Գուի իբրև ճշմարիտ կաթողիկեայ զի գայցեն ի հնազանդութիւն. և եցոյց նոցա զբարիսն զմեծամեծս՝ որք ունէին յառաջ գալ անտի: Հնազանդեցան նոքա սիրով, զմտաւ ածեալ զի թագաւորն իւրեանց էր յարևմտեան սերնդէ և ճշմարիտ կաթողիկեայ և հպատակ եկեղեցւոյն Հռոմայ. և թէ բարի էին ազդարարութիւնք նորա, հայելով և ի շնորհս, զորս խոստանայր նոցա պապն և զօժանդակութիւն թագաւորաց և իշխանաց քրիստոնէից և զանդուստ յառաջ եկեալ բարիս:

---

## ԳԼՈՒԽ ԼԴ.

Թէ որպէս արքայն Գուի առաքեաց աբեղայս եղբարս առ պապն և եպիսկոպոսս մի աշխարհին և ընդ նոսա զնուիրակն պապին որ կոչէր Դանիէլ և էր ազգաւ Հայ:

Յայնժամ հրաման ետ արքայ և Կաթողիկոսն և եպիսկոպոսունքն և իշխանք աշխարհին զի մի ոմն եպիս-

կոպոս կրօնաւոր, հմուտ գրոց և ճարտար ի դպրութեան անդ նոցա (Հայոց), որոյ անուն կոչէր Եղբայր Յովհաննէս Գրագեցի, և ասպետք երկու առաքեցին առ պապն ընդ Դանիէլի քահանայի, նուիրակի պապին *)։ Յորժամ եկեալ առաջի եղին սոքա պապին, ընկալաւ զնոսա քաղցրութեամբ, և կարգեաց եպիսկոպոսունս երկուս հրահանգել զնոսա ի կաթողիկեայ հաւատս և ցուցանել թէ յիմ իմիք էր մոլորութիւն նոցա։ Իսկ ասպետացն այնոցիկ երկոցունց մեկնեալ ի պապէն, չոքան առ արքայն Գաղղիոյ և առ այլս իշխանացն Արեւմտից՝ խնդրել ի նոցանէ ձեռն օգնականութեան։ Եւ իշխանքն այնոքիկ պատասխանի ետուն նոցա յօժար սրտիւ թէ փոխանակ շնորհացն, զոր առնէր նոցա պապն, ինքեանք՝ իբրև հաւատարիմ հնազանդք ս. եկեղեցւոյն Հռոմայ, ախորժ հաճութեամբ տացեն նոցա օգնութիւն։ Յայնժամ ասպետքն երկոքին դարձ արարին առ պապն, ակնկալեալ մնալով շնորհաց նորա և գթութեան։

---

*) Թուի թէ պատգամաւորացս այսոցիկ տարեալ էր ընդ իւր և թուղթ մի դաւանութեան Հայոց, գրեալ ի Դանիէլէ քահանայէ, որ որպէս ծանուցանէ մեզ Կառռիէռ, ուսուցչապետն ի վարժարանի արևելեան կենդանի լեզուաց ի Փարիզ՝ գտանի զարդիս յԱզգային Մատենադարանին Փարիզի ի ձեռագրին 3368 լատինական մասինն, ընդ այսու վերնագրով. «Responsio fratris Danielis de Thaurisio, de ordine fratrum minorum, legati Leonis regis Armenorum, ad errores impositos Armenis», և տեղեկութիւնս հետաքննականս ունի զվիճակէ եկեղեցւոյն Հայոց ի Կիլիկիա յայնմ ժամանակի։ Ծան. խմբ.

# ԳԼՈՒԽ ԼԶ.

Թէ որպէս լուաւ պապն թէ սպանեալ էր Հայոց զթագա-ւորն իւրեանց Գուրէ և զիշխանն Ռուբէնոս զեղբայրն նորա, և թէ որպէս կոչեաց զպատգամաւորսն առաջի իւր առ ի գիտել զպատճառս սպանութեանն։

Եւ ի ժամանակին յայնմիկ իհաս լուր առ պապն թէ Հայք սրախողխող արարեալ էին զարքայ իւրեանց Գուրի և զիշխանն Ռուբէնոս զեղբայր նորա և զամենայն փռանգս, զորս ածեալ էր նորա ընդ իւր ի Հայաստան։ Եւ եղև իբրև լուաւ պապն զայս բօթ դառնութեան՝ խռովեցաւ յանձն իւր և կոչեալ զոմանս ի Հայոց անտի ասէ ցնո-սա. «Արժա՞ն ինչ էր Հայոց սպանանել զուր տարապար-տուց զորդին մեր Գուրի, զարդարև կաթողիկեայն, որ էր բարեպաշտ թագաւոր նոցա և բնիկ տէրն»։ Պատասխանի ետուն և ասեն. «Հայր Սրբազան, ոչ ինչ գիտեմք մեք զայդմանէ և եթէ այսպիսի ինչ՝ իցէ դիպեալ, չգիտեմք զի՞նչ ասել։ Բայց սակայն, Հայր Սրբազան, եթէ ար-դարև այդ անցք անցեալ իցեն՝ վասն նոցա և վասն մեր պաղատիմք զթութի՜ւն. մի՛ բարկանացիս, ի սէր Աստուծոյ. զի եթէ հաճոյ իցէ Տեառն՝ նոքա և մեք յայսմհե-տէ լիցուք ճշմարտիւ հնազանդեալք»։ Յանժամ պապն, որ գթած է և ողորմած հանապազ առ այնոսիկ, որ խոնար-հեն ի նմանէ զթողութիւն, ողորմեցաւ նոցա զի յան-կուսցէ զնոսա ի ճշմարիտ հաւատս։ Այլ զի սպանեալ էր նոցա զբարեմոյն արքայն իւրեանց Գուրի՝ ոչ կամե-ցաւ առնել մեծ ինչ շնորհս և նպաստաւորութիւն, զոր արարեալ էր անշուշտ՝ եթէ չէր նոցա զրաւեալ իկենաց զթագաւորն, և կարճեաց ևս զօժանդակութիւն թա-

գաւառաց և զիշխանացն քրիստոնէից յայնկոյս լերանց։ Եւ զայս օրինակ արար պատասխանի. «Խորհուրդ արարեալ ընդ եղբարս մեր և ընդ ժողովոյն մերում սահմանեցաք առաքել ընդ ձեզ ի Հայաստան նուիրակս երկուս ի մեր կողմանէ, որք քննեսցեն զհաւատս ձեր և քարոզեսցեն զկաթողիկեայ հաւատս։ Եւ ըստ հպատակութեանդ ի հաւատալ ուղղապէս և ընդունել զհաւատս սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ, մեք և բարեխրատ թագաւորքն և իշխանք քրիստոնէութեան արասցուք ձեզ շնորհ բազում և ձեռնտու լիցուք ձեզ ըստ մերում կարի»։ Եւ այսպէս մեկնեալ դարձ արարին նոքա ի Հայաստան։

---

## ԳԼՈՒԽ ԼԶ.

Թէ որպէս երկոքին նուիրակքն հասին ի Հայաստան ընդ պատգամաւորսն Հայոց, որ գնացեալ էին առ պապն, որպէս և ասացաւ։

Յորժամ պատգամաւորքն Հայոց և երկոքին նուիրակքն պապին եկեալ հասին ի Հայաստան, գտին, զի Հայք հեղեալ էին իւրեանց թագաւոր զանուանեալն Կոստանդին, որ էր բռնաւոր և ոչ սերեալ յարքայական ազգէ անտի՝ զորմէ խօսի պատմութիւնն, որ և ասէ թէ ի լսել անդ նորա (Կոստանդնի) զդարձ պատգամաւորացն առաքելոց առ պապն և զգալուստ երկուց նուիրակաց պապին ընդ նոսա, ետ հանել ի գերեզմանէ զքարեմոյն արքայն Գուիի և զՊոէմոնդ զեղբայր նորա ի փոքրիկ մատրանէ անտի Ադանայ քաղաքի, ուր թաղեալ էին անշքութեամբ և ամփոփեաց զնոսա ի մայր եկեղեցւոյն Տարսոն քաղաքի, որ կոչի Սեան Աստուածածին։ Եւ ար-

քայ Սոստանդին և Կաթողիկոսն և եպիսկոպոսունք և իշխանք աշխարհին ընկալան մեծաշուք պատուով զնուիրակսն, որք և պատմեցին նոցա զբանս պապին։ Պատասխանի ետուն նոքա և ասացին թէ հնազանդեսցեն սիրով պապին։ Եւ այսպէս նուիրակքն այնքիկ մնացին յաշխարհին Հայոց ամիս ութ, առ ի տեղեկանալ հաւատոց նոցա և հրահանգել զնոսա ի ճշմարիտ վարդապետութեան կրօնից։

---

## ԳԼՈՒԽ ԼԴ.

Թէ որպէս նուիրակքն երկոքեան երդմնեցուցին զԹագաւորն, զԿաթողիկոսն, զեպիսկոպոսունս և զիշխանս Հայոց անփոփոխ ունել զդաւանութիւն հաւատոյ. և թէ որպէս առաքեցին առ պապն խնդրել նշխար արծանոյ։

Եւ կացեալ նուիրակացն ամիս ութ յաշխարհին Հայոց, հրահանգեցին սուրբ քարոզութեամբք զԹագաւորն, զԿաթողիկոսն, զեպիսկոպոսունս, զիշխանս և զժողովուրդ աշխարհին ի հաւատս ճշմարիտս և նախ քան զմեկնիլ իւրեանց ետուն ժողովել զաւագանին և երդմնեցուցին մի ըստ միոջէ, ըստ իւրաքանչիւր աստիճանի զի մի՛ ևս դաւանեսցեն ինչ այլապէս քան զոր դաւանէն սուրբ եկեղեցին Հռոմայ, և զի լիցին յայնմ հետէ և առ յապա հարազատ քրիստոնեայք, հնազանդեալք ճշմարտապէս պապին և սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ։ Եւ ետուն նուիրակքն իշխանացն առնել գիր ուխտին և երդմանցն և կնքել մատանեաւ իւրեանց ևստորագրել իւրեանց իսկ ձեռամբ։ Եւ իբրև կատարեցին՝ ասեն նուիրակքն ցարքայ՝ ցԿաթողիկոսն և ցիշխանս լուիլու ա-

զատորերոյն. «Ահա հասաք մեք ի գլուխ զմերն նուիրակութիւն. և կատարեցաք զհրաման Ս. Հօրն մերոյ և տեսանեմք զձերդ բարի յօժարութիւն. և վասն այսորիկ ըստ հրամանի Ս. Հօրն՝ որ առ մեզ առեալ, հարցանեմք զձեզ, զո՞ր շնորհս կամիք զի արասցէ նա ձեզ և զո՞ր նպաստ օժանդակութեան խնդրիցէք ի Թագաւորաց անտի և յիշխանացն քրիստոնէից։ Խորհեցարուք և ասացէ՛ք մեզ և յուսամք եթէ լիցի ըստ ցանկութեան սրտից ձերոց»։

Խորհուրդ կալան իշխանքն և արարին պատասխանի. «Տեա՛րք նուիրակք, շնորհ ունիմք Ս. Հօրն վասն բարեյօժար կամաց նորա որ զմէնջ, որպէս և վասն ընծայութեանն, զոր առնէք մեզ յանուն նորա. շնորհ ունիմք ձեզ և վասն այնր։ Գիտուն լիցի ձեզ՝ զի սահմանեցաք առաքել ընդ ձեզ հրեշտակս առ Ս. Հայրն մեր, խնդրել ի նմանէ զի հաճեսցի տալ մեզ օգնութիւն և նպաստ արծաթոյ ի զօրավիգն արանցն պատերազմի, որք են առ մեզ բաւականք ի պաշտպանութիւն աշխարհի մերում ընդդէմ անհաւատից»։

---

## ԳԼՈՒԽ ԼԸ.

Թէ որպէս նուիրակք որ առաքեալ յաշխարհէն Հայոց գնացին առ պապն, հանդերձ աղերսիւ ոմամբ զոր արքայն և իշխանք առաքեցին ընդ նոսա. և Թէ որպէս առաքեաց զնոսա պապն ի Սիկիլիա առ հարազատն իւր։

Եւ եղև իբրև լուան նուիրակքն զխնդրուածս Թագաւորին և զիշխանացն Հայոց, եառուն ողջոյն հրաժեշտի

և դարձ արարին առ պապն և մի ոմն ասպետ ընդ նոսա, անուն Կոստանդին Մարսիլլի, զոր ընդ նոսա յուղարկեաց ազատորեարն։ Իբրև յանդիման եղեն պապին, ցուցին նմա նուիրակքն զԹղԹեանն զամենայն, զոր Թագաւորին և իշխանաց աշխարհին Հայոց տուեալ էր, խոստանալով լինել յայնմհետէ և առ յապայ ճշմարիտ որդիս սրբոյ եկեղեցւոյն և Հնազանդս նմա. և ասպետն այն յանձն արար պապին զարքայն և զաւագանին և աղաչանս էարկ՝ յանուն նոցա՝ զի հաճեսցի օգնել նոցա արծաԹով։ Եւ ի հաստատել անդ նուիրակացն զբանս նորա, որպէս խոստացեալ էր նոցա կանխաւ, տեսեալ պապին զախորժ յօժարուԹիւն նոցա և զխոստումն Հնազանդելոյ եկեղեցւոյն Հռոմայ, իբրև բարի և հաւատարիմ քրիստոնեայք, և ցնծացաւ յոգի իւր, զի Հայոց՝ յաւուրս նորա՝ ընկալեալ էր զճշմարիտ հաւատս կաԹողիկուԹեան. վասն որոյ ընկալաւ զխնդիր նոցա յօժարակամ և հրաման ետ զի մի ոմն եպիսկոպոս յազգէն Հայոց Տէր Ներսէս անուն, գիտակ երկոցունց լեզուաց, որ էր կրօնաւոր Յակոբեան յՄւխտէ անտի Բարողէչ Եղբարց, և պատգամաւորն Հայոց սեպուհն Կոստանդին Մարսիլլի գնացեն ի Կիպրոս և ինքն տացէ ի ձեռս նոցա Թուղթ առ Հարկահանն, որ յիւրմէ կողմանէ կայր ի կղզւոջն, զի զամենայն հասս և զմուտս պատկանեալս Եկեղեցւոյ, զորս յետ այնորիկ հաւաքեսցէ նա՝ յղեսցէ յաշխարհն Հայոց և հասուսցէ ի ձեռս Թագաւորին, որպէս զի նպաստիւն այնուիկ լիցի նա բաւական ի պահել զզօրն առ ի զդէմ ունել Թշնամեացն հաւատոյ։ Շնորհ կալաւ ընդ այն ասպետն խոնարհաբար և ընկալեալ նորա և Յակոբեան Եպիսկոպոսին զօրհնուԹիւն պապին, անկան յուղի և գնացին ի Կիպրոս և մա-

տուցին զկոնդակ պապին առ Հարկահանն, որ ընկալաւ զնոսա պատուով մեծաւ։ Եւ եղև հակառակութիւն ի մէջ եպիսկոպոսին և ասպետին ի պատճառս նախանձու որ կենդանին է միշտ. քանզի մին՝ կամէր լինել գլխաւոր, և միւսն՝ ոչ կամէր հանդուրժել այնմ. և գժտեցան նոքա ընդ միմեանս ցայնվայր՝ մինչև թողուլ ասպետին զեպիսկոպոսն և ելեալ գնալ յաշխարհն Հայոց։ Իսկ եպիսկոպոսին տեսեալ՝ զի մնաց ինքն մէն միայնակ, չեղև ինչ նմա փոյթ աշխատ լինել վասն իւրացն, զի մեկնեալ գնացեալ էր ասպետն՝ որում անկանէր առաւելապէս գործն։ Եւ այսու օրինակաւ բարձիթողի եղև այն և չեհաս անտի և ոչ մի օգուտ Հայոց. այլ ոչ եթէ պապին ինչ էր մեղն, այլ վատթարութեան և անհոգութեան եպիսկոպոսին և ասպետին, որք այնուհետև ոչ առ պապն և ոչ ի Կիպրոս առ Հարկահանն առաքեցին զոք զի առցէ զարծաթն, զոր պատուիրեալ էր պապին տալ ի ձեռս Հայոց։

## ԳԼՈՒԽ ԼԹ.

Թէ որպէս սպանին Հայք զբարեբարոյ Թագաւորն Եւրէանց զԳուի Լուսինեան և զեղբայր նորա զԻշխանն Բոէմոնդ, զուր տարապարտուց. և ընդ պատճառնին զնենգութեանց արքային Սուլտանին։

Ի ժամանակին, յորում արքայն Հայոց Գուի Լուսինեան թագաւորեաց ի Հայաստան, վարեաց զիշխանութիւն իւր հզօր զօրութեամբ և բարձր բազկաւ. սիրէր և պաշտէր զԱստուած ի բոլոր սրտէ, և պաշտպան

կայր օգտին հասարակաց՝ յամենայն կարողութենէ իւրմէ՝ և զազատութիւն երկրին պահէր մեծաջան հսկողութեամբ, ոչ հատուցանելով անհաւատից տուրս հարկաց. և անձին իւրում ոչ տուեալ հանգիստ՝ զդէմ ունէր թշնամեաց իւրոց, և վանէր զնոսա յաճախ զինու զօրութեամբ։ Եւ տեսեալ Հայոց զի աշխատ առնէր զնոսա և ստէպ ստէպ վարէր ի պատերազմ, ժողովեցան բազմութեամբ մեծաւ և վառեալ ի զէն՝ գրոհ ետուն ի տեղին, ուր էր զգօնաբարոյ արքայն Գուի, բնիկ տէրն իւրեանց, և եղբայր նորա իշխանն Բոհէմոնդ Լուսինեան, կոմսն Կոռիկոսի. և մինչ կային նոքա առանց իրիք զգուշութեան՝ սուր ի վերայ եդեալ խողխողեցին զնոսա դաւաճան մատնութեամբ՝ զուր տարապարտուց. և հարին ընդ նոսա ի սուր սուսերի բազմութիւն մեծ արանց պատերազմի, զորս բերեալ էր արքային ի կողմանցն Եւրոպից ի պահպանութիւն աշխարհին Հայոց։ Եւ սպանին Հայք և զոմն քահանայ դրանէրէց արքային, մինչ մատուցանէր զպատարագն։ Եւ այս անցք անցին ի միում աւուր, ի քաղաքին Ադանայ, յամի Տեառն 1344, յեօթնևտասներորդում աւուր ամսեանն Նոյեմբերի։ Թողցէ նոցա Աստուած զյանցանս նոցա։ Ապաքէն աւաղելի իմն իցէ և կորուստ վասն քրիստոնէութեան մահ այսպիսւոյ ազնուատոհմ իշխանի, զի էր նա այր քաջ և խիզախ և իրահամարձակ յոյժ։

## ԳԼՈՒԽ Ի.

Յաղագս մահուն Գուհեան իշխանի Լուսինեան, գունդստապլին Հայոց և որդւոյ նորա Բոհեմոնդ սեղհոյ. և թէ որպէս մի ոմն ի Հայոց՝ որ կամակից լեալ էր ազգանութեան արքային Գուէ և Վերոյգրելոյն՝ ստոպաչեցան հրաւէք:

Ի նմին ամի, այսինքն ի 1344 Թուականին, յհօթն և տասներորդում աւուր ամսեանն Օգոստոսի, զրաւեցաւ ի կենաց ի Սիս քաղաքի ազնուատոհմ պարոն Գուհան Լուսինեան, իշխան և գունդստապլ Հայոց, որ էր եղբայր հարազատ Գուի Թագաւորի և Բոհեմոնդի Լուսինեան, կոմսին Կոռիկոսի. սոյն այս Գուհան իշխան էր հայր Բոհեմոնդի, որ մեռաւն ի Վենետիկ մինչ գնայր առ պապն զի պսակեսցի ի Թագաւոր Հայոց՝ յամի Տեառն 1343, և Թաղեցաւ անդ, և հայր Լեւոնի Լուսինեան, որ է զայժմուս արքայ Հայոց և կոչի Լեւոն Ե.: Եւ իշխանն Գուհան և Բոհեմոնդ որդի նորա մեռան յետ ընդունելոյ զխորհուրդս սրբոյ եկեղեցւոյ, իբրև ճշմարիտ քրիստոնեայս: Ողորմեսցի Տէր Աստուած հոգւոց նոցա:

---

## ԳԻՐՔ Բ.

Նպաքէն ճշմարիտ իմն է զի Տէրն մեր Յիսուս Քրիստոս պատժէ երբեմն զչարս անյայտաբար և է երբեմն զի ակներև յայտնապէս: Եւ պատմութիւնն աւանդէ թէ յառաւօտու աւուրն այնորիկ, յորում Հայք սրախողխող սպանին զքարիխորհուրդ արքայն իւրեանց զԳուի և զորեար նորա, որպէս պատմեցաք, իշխանք աշխարհին

ժողովեցան ի ծածուկ ի դահլիճն արքայական, որ էր բարձրաբերձ և ամրակուռ շինուածով, զի խորհուրդ կալցին թէ զի՞նչ արասցեն զԹագաւորն իւրեանց, զոր իմաց վարեցին։ Ընդանօր ոմանք ի բարեխրատ իշխանաց անտի՝ ասէին այր ցընկեր իւր թէ չար յոյժ եղև և մեծ մեղք սպանանել այսպէս յանկարծօրէն զարքայն իւրեանց և զնորուն որեար, և թէ յանիրաւի անցուցին ընդ նոսա զայս անցս և զուր տարապարտուց։ Յայնժամ մի ոմն ի նոցանէ, որ կոչէր պարոն Օշին Պաքարոն (Բակուրան), ի լսել անդ զբանս զայսոսիկ, յոտն եկաց յատենի անդ, բարբառեցաւ և ասէ. «Տեա՛րք, ինձ այնպէս իմն թուի թէ ոմանք ի ժողովականաց աստի ասեն թէ մեծ մեղք եղեն և ապիրատութիւն սպանանել զԹագաւորն և զորս ընդ նմայն էին։ Այլ ես ասեմ ձեզ՝ թէ ներեսցէ նոցա Տէր, արդարապէս և իրաւամբ սպանան նոքա ի սակս խաղաղութեան և հանգստեան աշխարհիս համօրէն։ Թո՛ղ գիտասցէ ամենայն ոք զի յի՛մ վերայ և յիմս պարանոց առնում ես զմեղս։ Եւ մինչդեռ բանքն ի բերան նորա էին՝ և ահա պատառեցաւ յանկարծ դահլիճն ընդ ոտիւք և ի գահավիժել անդ նորա ի վերուստ ի վայր՝ կառեաւ պարանոց նորա զերկաթի կեռոյն, որ հաստատեալ կայր յորմն և մնաց կախեալ և կորեաւ սատակամահ։ Եւ եղեն այս արդար աքանչելիք յԱստուծոյ զի ոչ այլ ոք յիշխանաց անտի, ժողովելոց ի դահլիճն, վնասեցաւ իւիք և չև ևս էր մտեալ արքային և արանց նորա ի հող գերեզմանի մինչ թաղեցին զպարոն Օշին, որ վրէժխնդրութեամբ Աստուծոյ զայս օրինակ կախեցաւ զճանկէ։

---

*

## ԳԼՈՒԽ ԽԸ.

Յաղագս ընտրութեան Կոստանդեայ թագաւորի. և վասն պատճառութեանն խօսել զնմանէ և զգործոց նորա։

Եւ յետ այսորիկ իշխանքն Հայոց ժողովեցան վերստին ի խորհուրդ և ընտրեցին և եդին ի թագաւոր զորդի պարոն Բօղուէնի մեծի մարաջախտին Հայոց, որ կոչեցաւ արքայ Կոստանդին (Գ.). և ոչ էր նա ի զարմէ թագաւորացն Հայոց և չէր իսկ նորա ուրեք խնամութիւն ընդ տանն արքունի։ Եւ թագաւորեաց նա ամս ինն-տասն. և ի դէպ ևս էր կոչել զնա բռնակալ քան թագաւոր. զի կռեալ դաշինս ընդ սուլթանին Բաբելոնի հատոյց նմա տուրս հարկաց ամ ըստ ամէ և էարկ զանձն իւր և զպետութիւնն ընդ լծով անհաւատից և ելից եթող յօժարակամ ի ձեռս սուլթանին Բաբելոնի զքաղաքսն Տարսոնի և զԱդանայ և զամուրսն Կոռիկոսի. իսկ բերդակալքն եդին զանձինս և զակառն ընդ հովանեաւ աջոյ արքային Կիպրոսի։ Եւ այսպէս ահա առ թուլութեան անձին կորոյս նա բազում և այլ քաղաքս և բերդորայս և ետ ի ձեռս անհաւատից, որք ոչ զօրեցին գամագիտ լինել այնոցիկ ցորչափ եկեաց արքայն քաջ Գուի Լուսինեան։

Եւ գիտելի է զի սեպուհն Ջահան Լուսինեան՝ իշխան և գունդստապլ Հայոց, զորմէ ի վեր անդր եղեն բանք, ի վախճանել անդ իւրում եթող երկուս որդիս, զորս ծնաւ նմա կին նորա իշխանուհին Սուլթան, յորոց անդրանիկն Բոէմոնդ՝ էր ամաց հնգից, և եղբայր նորա կրտսեր՝ Լևոն—ամաց երկուց։

# ԳԼՈՒԽ ԽԲ.

Թէ ո՛րպէս արքայն Կոստանդին ետ արկանել ի բանտ զտիկինն Սուլթան և զերկուս որդիս նորա. և թէ ո՛րպէս խորհեցաւ արբուցանել նոցա դեղ մահու:

Եւ եղև յորժամ պսակեցաւ Կոստանդին ի թագաւոր Հայոց, յափշտակեաց զստացուածս և զժառանգութիւն Սուլթան տիկնոջ, կողակցի Ջեհան իշխանի Լուսինեան և ետ արկանել զնա ի բանտ և զերկոսին որդիս նորա ընդ նմա ի կղզւոջն Կոռիկոսի, ուրանօր կացեալ մնացին նոքա ամիսս ինն յայնքանում մեծի և անհնարին չքաւորութեան՝ մինչև կեալ նոցա տրօք բարեգութ անձանց: Եւ զի ոչ էր արքայն Կոստանդին ի թագաւորական զարմէ անտի Հայոց շառաւիղ և ոչ մերձաւոր արենակից, տաղտուկ էր նմա տեսանել զտիկինն և զորդիս նորա ի կենդանութեան. խորհեցաւ կորուսանել զնոսա ի ծածուկ, զանխուլ ի ժողովրդենէն. և ցանկայր մանաւանդ զմահ մանկանցն երկոցունց, որպէս զի անձեռ լիցի զարմն թագաւորական, և սպառեսցի քաջաբուղխ արիւնն Հայաստանեայց և որդիք իւր ժառանգեսցեն զաթոռն արքունի յետ նորա: Ետ լնուլ աման մի մեղու, խառնեալ ի նմա թոյն, և առաքեաց առ բերդապետն Կոռիկոսի՝ որ պահէր զտիկինն և զորդիս նորա, տալով նմա հրաման զի առաջի արասցէ նոցա զանօթն մեղու, ոչ եթէ յանուն արքայի, այլ իբրև յիւրմէ կողմանէ. և կատարեաց նա զհրամանն և տիկինն գոհացաւ զնմանէ: Եւ իբրև ել բերդապահն արտաքս, եբաց տիկինն զանօթն և իսկ և իսկ կալաւ զնա խէթ կասկածանաց. վասն որոյ կափուցեալ զայն առանց իսկ հպելոյ ի նա և անգիտացեալ թէ կայր

ի նմին գիղ մահու. կամելով Տեառն իջոյց զայն չուանաւ առ կին մի աղքատ՝ որ կայր ի ներքոյ. զի սովոր էր մանաւորիկ զաղքատս յորոց տայրին նմա ի կերակուր. և ի ջամբիլ կնոջն մանկան իւրում ի մեղուէ անտի մեռաւ նա անդէն և անդ։ Եւ ահ կալաւ զտիկինն և խռովեցաւ նա յոգի իւր և գոհացեալ զխնամոցն Աստուծոյ, փառս ետ զի ոչ եթող նմա և որդւոց նորա ճաշակել զմահ. քանզի մի և նոյն անցք անշուշտ անցանելոց էին և ընդ նոսա։ Այսպէս ահա փրկեաց զնոսա Տէր ի ձեռաց մահու։

---

## ԳԼՈՒԽ ԽԳ.

Թէ որպէս արքայն Կոստանդին հրամայեաց երկուց ազատաց ջրահեղձոյց առնել զտիկինն և զմանկունս նորա և Թէ որպէս ճողոպրեցան ի Տեառնէ շնորհիւն Աստուծոյ։

Իբրև եհաս առ արքայն Կոստանդին լուր բանիցս այսոցիկ, ցաւեաց նմա մեծապէս զի ոչ ըստ կամացն եղ ի գլուխ գործն։ Եւ հրաման ասպետաց երկուց ազատաց ջրահեղձոյց առնել զտիկինն զայն և զորդիս նորա զերկոսին գաղտնաբար։ Իսկ տիկինն, որ անգիտակ էր հրամանի տուելոյ ի ծածուկ, սկսաւ խորհել ի միտս իւր թէ որովհետև կամեցեալ էր արքայի թունաւորել զնա և զորդիս նորա, մարթէր հասանել նմա մեծագոյն այլ վտանգի։ Եւ մինչդեռ նա զայս ածէր զմտաւ, յաջողելով Տեառն եհաս նաւակ ի Կիպրոսէ որսալ առ կղզեաւն, յորում կային իդիպահոջ տիկինն և մանկունք նորա։ Սակ էարկ տիկինն ընդ ձկնորսացն տանել զնա և զորդիսն ի

Կիպրոս երկերիւր արծաթոյ դահեկանաց Կիպրոսի *)։ Եւ իբրև եղև գիշեր, մտին նոքա ի նաւակ անդր և մեկնեցան՝ զերծեալք ի մահուանէ ողորմութեամբն Աստուծոյ։ Զի ի վաղիւ անդր վաղ քաջ ընդ առաւօտն՝ եկին ապստամբքն երկոքին ի բանտն, յորում կարծէին գտանել զտիկինն և զորդիս նորա երկուս, զի ջրասոյզ արասցեն զնոսա և զհրամանն արքայի հանցեն ի գլուխ։ Այլ որ ոչն գտանէ՝ չկարէ և ունել։ Յապուշ կրթեցան նոքա և ազդ արարին արքայի, որ և զայրացաւ ընդ այն մեծաւ բարկութեամբ։

---

## ԳԼՈՒԽ ԽԴ.

### Թէ որպէս տիկինն և որդիք նորա հասին ի Կիպրոս

Արդ, որպէս լուայք, տիկինն և մանկունք նորա մեկնեալ ի Կոռիկոսէ հասին ի Կիպրոս, ի խորշ անդր Կարպասի, որ անուանեալ կոչի Ս. Անդրէաս։ Եւ իբրև ժամանեցին նոքա անդր, փոյթ ընդ փոյթ զեկոյց հրամանատարին զգալստենէ նոցա արքային Կիպրոսի Ժագայ (Գ), որում չեղև մեծ ինչ փոյթ զնոցանէ։ Եւ այս իսկ էր այնմ պատճառ, զի մանկունքն երկոքին էին ժառանգորդք Ամօրի իշխանին Լուսինեան՝ տեառն Տիւրոսի և եղբօր Հանրի արքային Կիպրոսի, զորմէ խօսեցաւ պատմութիւնն ի վեր անդր և նոցա իսկ պատկանէր աւատն Ամօրիի, զորմէ բարեմոյն արքայն Հայոց (Գուի Լուսի-

---

*) Դահեկանն Կիպրոսի, կոչեցեալ բէզան սպիտակ, էր դահեկան արծաթի ի կշիռ 3 գրամաց և 870 հազարորդից, յորում մասն $3^3/_4$ յոսկւոյ էր և $4^1/_4$ մասն ի պղնձոյ և 14 մասն յարծաթոյ զտոյ։ Նոտ. խմբ.

նեան)՝ որ հօրեղբայր էր մանկանցն, վրիժեցաւ ցորչափ եկացն կենդանի։ Բայց և այնպէս Թագաւորն Հիւգ պատուէր ետ հրամանատարին զի բնակեսցեն նոքա ի Կարպաս, ուր ելեալ էին ի ցամաք։ Եւ կատարեցաւ հրամանն արքունի և բնակեցան նոքա յամուրն Գրիդայ ամս երիս. և հրամայեաց արքայ տալ նոցա Թոշակ հազարս երիս արծաթոյ Կիպրոսի։

Իսկ արքայն Հայոց Կոստանդին իբրև լուաւ զի տիկինն և որդիք նորա բնակեալ կային ի ծովահայեաց վայրին, ետ լրտեսել բազում անգամ զտիկինն, զի յափըշտակեալ զնա և զորդիս նորա դարձուսցեն ի Հայս և վարեսցեն նոքա ի մահ։ Այլ իրազեկ եղեալ զայնմանէ տիկնոջն՝ եթող զտեղին և գնաց բնակել յականն Սրբոյն Սիմէոնի։ Եւ այսպէս ի դերև ել ձեռնարկ Կոստանդին արքայի։

---

## ԳԼՈՒԽ ԽԵ.

Սքանչելիքն, որ գործեցան յաղագս Ս. Սիմէոնի, որ կոչին տիկինն և որդիք նորա. և թէ որով օրինակաւ եկն անդր արքայն Կիպրոսի Հիւգ և եհաս ընդ նոր տիկինն և զմանկունս նորա։

Դէպք։

Եւ էր ի ժամանակին յայնմիկ (1348) սրածութիւն մեծ ի Կիպրոս։ Եւ եղև զի յականն Սրբոյն Սիմէոնի՝ ուր բնակեալ կայր տիկինն Սուլթան և որդիք նորա, երևեցաւ Կոյսն Մարիամ առն ումեմն սրբոյ և բղխեաց ընդ ոտիւք նորա աղբիւր ականակիտ իբրև զկաթն. և որ ըմպէրն հաւատով ի ջրոյ անտի՝ զերծանէր ի մահուանէ։ Լուաւ արքայն Կիպրոսի զբանս հրաշիցն և

եկն ի վայր անդր և եգիտ զտիկինն և զորդիս նորա, որք ելին ընդ առաջ արքային։ Եւ ի կատարել ուխտիցն, իբրև ետես զնոսա արքայ, շարժեցաւ ի գութ խանդաղատանաց, ոչ միայն զի ազգականք իւր և մերձաւորք էին մանկունքն *), այլ և առ պատկառանաց ժողովրդեանն։ Եւ էառ ընդ իւր զտիկինն և զորդիս նորա և ած յապարանս իւր և կալաւ զնոսա ի պատուի՝ զամենայն աւուրս կենաց իւրոց։ Եւ յետ մահու նորա ընկալաւ զնոսա որդի նորա Թագաւորն Պետրոս (Ա.), ըստ օրինակի հօր իւրոյ Հիւգ արքայի, իբրև զարենակից մերձաւոր ազգականս իւր։

---

## ԳԼՈՒԽ ԽԶ.

Թէ որպէս արքայն Կիպրոսի Պետրոս գնաց առ պապն Ուրբանոս Ե. խնդրել զի առաքեսցէ զօրս քրիստոնէից յայս կոյս ծովու զի տայցէ թագաւորեցուցանել զիշխանն Բոեմոնդ, զանդրանիկ որդի տիկնոջն, ի վերայ Հայոց. և Թէ զինչ գործէ ծերա-արքայն Կոստանդին։

Ի ժամանակսն յայնոսիկ արքայն Կիպրոսի Պետրոս (Ա.) դէմ եդեալ գնաց առ պապն Ուրբանոս Ե. խնդրել զի առաքեսցէն զօրք քրիստոնէից յայս կոյս ծովու։ Եւ զի իշխանք (աշխարհին Հայոց) գրեալ էին առ նա զի արձակեսցէ առ նոսա զիշխանն Բոեմոնդ Լուսինեան, զանդրանիկ որդի Սուլթան տիկնոջ, և առ նա ինքն Բոեմոնդ գիր աղաչանաց իբրև առ բնիկ իւրեանց իշխան, զի եկեալ իշխեսցէ նոցա, փոխանակ զի նմա ան-

---

*) Քանզի մանկունքն էին Թոռունք հօրեղբօր նորա՝ Ամօրիի Լուսինեան։ Ծան. Խմբ.

կանէր զահն արքունի իրաւամբք ժառանգութեան, առեալ տարաւ ընդ իւր զիշխանն Ռոէմոնդ առ ի տալ զնա պսակել ի ձեռաց պապին. այլ եհաս նմա վախճան մահու ի Վենետիկ քաղաքի յամին շնորհաց 1363, որպէս ասացաւ ի վեր անդր։

Յայնժամ կամեցաւ արքայն Պետրոս տալ կոչել զԼեւոն, զեղբայրն Ռոէմոնդի, զի առեալ տարցէ ընդ իւր և տացէ պսակել ի ձեռն պապին, զի նմա իսկ անկանէր թագաւորութիւնն զկնի մահուան եղբօր իւրոյ։ Այլ հարկ եղև նմա գնալ առ պապն շտապ տագնապաւ, վասն այնորիկ յետս եկաց ի խորհրդոյն։ Եւ յորժամ ի գլուխ եհան արքայն Կիպրոսի զբանն, որոյ վասն գնացեալ էր առ պապն, ընկալաւ ի ձեռաց նորա թուղթս ուղղեալս առ արքայազարմն Լեւոն և առ իշխանս Հայոց, պատուէր տալով զի ընկալցին զիշխանն Լեւոն իբրև զբնիկ և օրինաւոր տէր։ Եւ խոստանայր պապն ի թղթի անդ որ առ Լեւոն զի ի գնալ հասանել նորա յերկիր թագաւորութեան իւրոյ, առաքեսցէ նպաստս օգնութեան յիւրմէ կողմանէ և զուն գործեսցէ զի և թագաւորք և իշխանք քրիստոնէից հասուսցեն նմա օգնականութիւն առ ի կարող լինելոյ զդէմ ունել թշնամեացն հաւատոյ։

Եւ հրաժարեալ արքայէն Պետրոսի ի պապէն՝ դարձ արար յաշխարհն իւր. և եգիտ վախճանեալ զթագաւորն Հայոց զԿոստանդին. վասն որոյ ոչ արձակեաց զնամականին առ իշխանն Լեւոն և ոչ իսկ առ Հայս, այլ կալաւ պահեաց զնոսա ցորչափ եկացն կենդանի։

Եւ Աստուծոյ ոչ եղեն կամք զի որդիք Կոստանդին արքայի թագաւորեսցեն զկնի նորա, զի չէր նա յարքունի զարմէ անտի Հայոց. զի թէպէտ և էին նորա որդիք բազումք, այլ մեռան նոքա ի մէջ աւուրց քանից. և ար-

քայ Կոստանդին (Գ.) թագաւորեաց ամս իննևտասն (1344—1363)։

---

## ԳԼՈՒԽ ԽԱ.

Թէ որպէս թագաւորեցուցին Հայք զորդին պարոն Հեթմոյ և կոչեցին զնա Կոստանդին. և թէ որպէս Կիպրացիք սպանին զարքայն Լուսինեանց զթագաւորն Պետրոս։

Զկնի մահուան Կոստանդին բռնակալ արքայի եղին Հայք զայլ ոմն թագաւոր, զորդին պարոն Հեթմոյ, որ կոչեցաւ Կոստանդին թագաւոր (Ե.) *)։ Այլ ոչ եթէ ընտրեցին զնա առ ազնուականութեանն՝ այլ առ փառթամութեան, զի էր ծագումն նորա ի ծորտից անտի Կիպրոսի։ Եւ քանզի տագնապէր ՚թագաւորութիւն Հայոց յերեսաց անհաւատից, առաքեաց առ արքայն Կիպրոսի՝ ուստի էր ծագումն նորա զի հաճեսցի ընդունել զնա և զթագաւորութիւն նորա և զինչս նորա զամենայն, արձակ համարձակ, և արասցէ զթագաւորութենէն Հայոց՝ որպէս և հաճոյ երևեսցի նմա։ Եւ եղև իբրև լուաւ թագաւորն Պետրոս զխնդիր արքային Հայոց Կոստանդնի՝ ցանկացաւ տիրել աշխարհին այնմիկ։ Վասնորոյ պահեալ ի ծածուկ զնամականի պապին, ոչ եցոյց և ոչ աւանդեաց զայնս առ իշխանն Լևոն։

Այլ որպէս առակն ասէ. «Մարդ յառաջադրէ, այլ Աստուած գործադրէ», կամեցաւ Տէր զի ի դերև ելցէ

---

*) Զյաջորդէն Կոստանդնի Գ-ի, այսինքն է զԿոստանդնէ Ե. որդւոյ Հեթմոյ պարոնին, չէր ինչ յայտնի մինչև ցայսօր։ Ի ժամանակագրիս և եթ յայսմիկ Դարդելի գտանեմք զառաջինն տեղեկութիւն զնմանէ։ Ծան. Խմբ.

նա (Կոստանդին) յանկալութենէ անտի իւրմէ. և ոչ կամեցաւ զի անցուսցէ նա ի Կիպրոս զգանձս արքունի, զորս կուտեալ էր նորա կեղեքելով զերկիրն և յափշտակելով զինչս ժողովրդեան, զի այլազգիք կալան զնաւահանգիստս։

Եւ արքայն Կիպրոսի Պետրոս (Ա.) սպանաւ ի ձեռաց աւագորերոյն իւրոյ (1369)։ Եւ այսպէս Թագաւորն Կոստանդին եկաց մնաց ակամայ կամօք ի Հայաստան։ Իսկ արքայն Կիպրոսի Պետրոս (Ա.) եթող որդի ամաց ինունց, որ կոչէր Պետրոս, և արկաւ նա ընդ խնամակալութեամբ հօրեղբօր իւրոյ Յոհաննու Լուսինեան, որ էր իշխան Անտիոքայ և գունդստապլ Կիպրոսի. և կառավարեաց նա մինչև հասանել մանկանն յարբունս։ Սոյն այս իշխան եգիտ զնամականի պապին, այլ ոչ եցոյց զայնս իշխանին Լևոնի, քանզի արքայն Կոստանդին և առ նա ինքն առաջի արար զոր՝ ինչ խոստացեալն էր եղբօր նորա (Պետրոսի Առաջնոյ), առաքելով պարգևս մեծամեծս և ընծայս։ Եւ նա՝ առ ապահովութեան պահեաց զթղթեանն և ոչ եհան ի վեր։

---

## ԳԼՈՒԽ ԽԲ.

Թէ որպէս Պետրոս՝ արքայն Կիպրոսի չոգաւ երկիցս առ պապն և Թէ որպէս կնքեցան դաշինք ամուսնութեան Լևոնի իշխանի։

Արդ գիտելի է զի արքայն Կիպրոսի Պետրոս (Ա.) մինչդեռ կենդանին էր՝ չոգաւ երկրորդ անգամ (1367) առ պապն, վասն առաքելոյ զօրաց քրիստոնէից յայս կոյս ծովու, այլ ոչ յաջողեաց նմա։ Յերկրորդում անդ նուագի

վերադառնալոյ նորա ի Կիպրոս, եհաս ի Մուղոն և եգիտ անդ արենակից իւր զոմն կին, որ կոչէր տիկին Իզապէլ Լուսինեան*), դուստր քաջակորով Թագաւորին Հայոց Գուի, որ եկեալ էր ընդ առաջ նորա ի մեծարանս և առ ի նուիրել ընծայս գեղեցիկս Թագաւորին և պարոնայց նորա։ Եւ մատոյց տիկինն աղաչանս հայցուածոց երկուս. Առաջին, զի որովհետև ինքն միայն յազգականաց անտի նորա կայր մնացեալ յերկրին Յունաց, հաճեսցի արքայ առաքել առ նա ի Կիպրոսէ զարենակից նորա զիշխանն Գուի (Լեւոն՞) Լուսինեան՝ զորդի հօրեղբօր իւրոյ, Ջեհան իշխանի Լուսինեան, որ էր եղբայր բարեմոյն արքային Հայոց Գուի, ուպէս զի եթէ հասցէ նմա (տիկնոջն) վախճան, քանզի էին նորա ինչք բազումք, լիցի նմա ունել զոք առ իւր, որում թողուցու զայնս. և խոստանայր զի ամուսնացուսցէ զնա ծոխաբար յաշխարհին։ Երկրորդ, խնդրէր յարքայէ տիկինն զի հաճեսցի շնորհել նմա աւատ մի փոքրիկ ի Կիպրոս, ուպէս զի ի մեռանել անդ տեառն (ամուսնոյ) իւրոյ՝ լիցի նմա ունել կայան իմն բնակութեան յաշխարհին։ Եւ խնդրէր նա զայս շնորհ ի յարացոյց սիրոյ և ի նշան ազգակցութեան։ Լուաւ արքայ Պետրոս աղաչանաց նորա և շնորհեաց ախորժ հաճութեամբ զոր ինչ խնդրէր տիկինն և ետ նմա զմի մասն աւատէ հաւու նորա Ամօրէի Լուսինեան, որոյ վասն քաջաբարոյ արքայն Գուի ծգնեցաւ այնչափ ի կենդանութեան անդ իւրում։ Եւ կարգեցաւ տիկինն ի վերայ ակառին Արադիբեայ (Aradippo),

*) Ժամանակագիրքն Կիպրոսի Մարգարիտ կոչեն զայս դշխոյ Լուսինեան։ Սակայն հանգոյն Գարդելի Իզապէլ կոչի կինն և ի Թուղթս Կղեմէսի Զ. պապին առ Հիւգ արքայն Կիպրոսի։ Ծան. Խմբ.

զի ընկալցի ամ յամէ յեկամտից անտի՝ երկոտասան հազար դահեկանս արծաթիս Կիպրոսի. և սեպհականեցոյց նմա զայն Թագաւորն Պետրոս, ըստ օրինի արքունեացն Կիպրոսի։ Իսկ վասն առաջնոյ խնդրոյ տիկնոջն, ամուսնացուցանելոյ ասեմ զԼևոն իշխան, արքայն Կիպրոսի և տիկինն Իզապէլ արարին դաշն խնամութեան ընդ Կիրմաւրոս իշխանին Արկադիոյ, այն է Մորէա, զի տացէ դուստր նորա, կոչեցեալն Կատարինէ, իշխանին Լևոնի, որ էրն ի Կիպրոս։ Եւ սահմանեաց իշխանն Արկադիոյ վասն հարսանեաց դստերն ի պռոյգ՝ դուկաթս ոսկւոյ քառասուն հազար, պայմանաւ՝ զի արքայն Պետրոս առաքեսցէ զիշխանն Լևոն ի Մորէա ի միջոցի վեցից ամսոց, ամուսնանալ ընդ տիկնոջն Կատարինեայ, այլ յանցանել ժամանակին սահմանելոյ՝ եթէ ոչ գայցէ իշխանն Լևոն, լուծցին դաշինքն։ Եւ ի գալ հասանել արքային Պետրոսի ի Կիպրոս, առաքեաց նա գիր առ իշխանն Լևոն, ծանուցանելով նմա զբանս պայմանաց դաշին, զոր ինքն և դուստր հօրեղբօր նորա արարեալ էին վասն նորա։ Շնորհ կալաւ ընդ այն իշխանն Լևոն և հաճեցաւ ընդ բանս պայմանացն։ Յայնժամ ասաց նմա արքայ զի հանդերձեալ կազմեսցի գնալ ի Մորէա մինչև անցեալ իցէ սահման ժամանակին։

---

## ԳԼՈՒԽ ԽԹ.

Թէ որպէս իշխանն և գունդստապլն Անտիոքայ՝ որ կառավարէին զթագաւորութիւն Կիպրոսի, ոչ կամեցան թողուլ (Լևոնի) գնալ ի Մորէա և լնուլ պայմանս ամուսնութեանն։

Եւ եղև յորժամ իշխանն Լևոն հանդերձեալ պատրաստէր գնալ ի Մորէա ամուսնանալ և լնուլ զյիշեալ

պայմանաւն, Պետրոս (Ա.) արքայն Կիպրոսի սուսերամահ եղև յիւրոցն ազատաց։ Եւ կալաւ զղեակ թագաւորութեանն Յոհաննէս Լուսինեան, իշխան և գունդստապլ, որպէս ասացաք։ Յայնժամ Լեւոն խնդրեաց յիշխանէ անտի զի տացէ նմա թոյլ երթալ ի Մորէա առ ի կատարել զպայմանս, զորս 'արքային Պետրոսի եդեալ էր վասն նորա։ Մերժեաց իշխանն խնամակալ զխնդիր Լեւոնի, զի կասկածէր թէ մի՛ սրդեօք մեկնեալ ի Կիպրոսէ դէմ եդեալ գնասցէ նա առ պապն և առ արքայն Գաղղիոյ՝ իւրն ազգակից, բողոք ունել զաւատէ հաւուն իւրոյ իշխանին Տիւրոսի, որ անկանէր նմա իրաւամբ ի նախնեաց անտի իւրոց. վասն այսորիկ կալեալ ունէր զԼեւոն ի Կիպրոս բռնութեամբ և հակառակ իրաւանց։

---

## ԳԼՈՒԽ Ծ.

Յաղագս ամուսնութեան իշխանին Լեւոնի և թէ որպէս որդի արքային Պետրոսի կամէր թագ և տալ զԼեւոն սենեշալ Երուսաղէմի։

Եւ եղև իբրև ետես իշխանն Լեւոն զի էանց ժամանակն սահմանեալ ամուսնութեանն իւրոյ որ ի Մորէա, զի չէր նմա այլ ևս հնար գնալ ամուսնանալ ընդ տիկնոջն այնմիկ, էառ իւր ի կնութիւն զայլ ոմն տիկին ի Կիպրոսէ, որ անուանեալ կոչէր տիկին Մարգարիտ Սուասոն, դուստր Տեառն Յոհաննու Սուասոն, որ էր պարոն Կիպրոսի, յամի Տեառն 1369, յամսեանն Մայիսի։ Եւ իբրև ամուսնացաւ, խնդրեաց յիշխանէն Անտիոքայ շնորհել նմա ունկնդրութիւն յառենի անդ խնդրագրոց և առնել նմա իրաւունս վասն աւատի Անօրի իշ-

խանին Լուսինեան, որ պատկանէրն նմա իրաւամբ ժառանգութեան։ Իսկ իշխանն խնամակալ, որ ընդունէր զհասոյթս աւատին, պատասխանեաց նմա կալ մնալ մինչև հասցէ արքայ յարբունս, որում առաջի արասցէ յայնժամ զիրաւունս իւր։ Եւ եկաց մնաց Լևոն մինչև թագ կապեաց արքայն (Պետրոս Բ.), որ և կարգեաց զնա սենեշալ Երուսաղէմի։ Եւ յայնժամ առաջի արար նմա խնդիր զի դարձուսցի նմա աւատն. և արքայ պատասխանի ետ նմա թէ շնորհեսցէ զայն հաճութեամբ։ Այլ իշխանն Անտիոքայ՝ որ յուսացուցեալ էր բանիւք զԼևոն, ասաց յետս կալ յիրէդ յայդմանէ զի դեռ այն ինչ թագաւորեալ էր արքայի։ Եւ իշխանն Լևոն գրժտմնեցաւ ընդ այն և ոչ կարաց առնուլ զաւատն։

---

## ԳԼՈՒԽ ԾԱ.

Թէ զիարդ տիկինն Զապէլ ազգականուհի արքային Պետրոսի եկն ի Կիպրոս և եհաս ի Փամագոստա յաւուր Թագաւորութեան պսակին արքային Պետրոսի (Բ.)։

Զկնի մահուան արքային Պետրոսի (Ա), որ ըստ ասացելոցս ի վեր անդր, տուեալ էր զմի մասն աւատի ազգականուհւոյ իւրոյ՝ Զապէլ տիկնոջ, իշխանն՝ որ ունէր զկառավարութիւն երկրին, յետս էառ զամենայն աւատս, զոր արքայն Պետրոս՝ եղբայր իւր՝ տուեալ էր օտարականաց և ինքն կալաւ զհասս նոցա։ Եւ իբրև գիտաց տիկինն Զապէլ զգրաւումն աւատին այնորիկ յիշխանէն, եկն ի Կիպրոս ունելով ընդ իւր ուղեկիցս պատուոյ արս քսան և չորս. և եբեր ընծայս մեծամեծս և պարգևս ճոխաձիրս։ Եւ եկեալ եհաս ի Կիպրոս յա-

ւուր, յորում պատանի արքայն Կիպրոսի՝ կապէր ի Ֆամագոստա զԹագն Երուսաղեմի։ Եւ գնաց նա ի Հանդէսն Թագադրութեան, յորոյ յաւարտել մատոյց զխնդիր իւր առ արքայն (Պետրոս Բ.) և առ իշխանն խնամակալ, զի դարձուսցէ նմա աւատն և զի յետս տացէն նմա հասքն։ Պատասխանի ետ իշխանն յանուն արքայի և ասէ. «Տիկի՛ն, տուչութիւն աւատին, որ եղև քեզ յարքայէ յիզբօրէ իմմէ, անվաւեր է զի ոչ իւր էր այն. մի՛ այլ ևս խօսիր զիրացդ զի չէ՛ քեզ մարթ առնուլ զայն»։ Այսու ահա եղանակաւ զրկեցաւ տիկինն ի պարգևէ անտի և ի ստացուածոց, զոր շնորհեալ էր նմա արքային Պետրոսի։ Նոյն օրինակ արար խնդիր առ արքայ տիկին ոմն Կիպրացի, որ անուանեալ կոչէր Եշիվ Սկանդելիոն, վասն աւատի միոյ իւրոյ, որում տուեալ էր արքայ Պետրոս ականն մի կոչեցեալ Աթալասա, որ էր ի սեպհականութենէ անտի աւատին և զոր վերոյգրեալ իշխանն յետս առեալ էր պէս գունակ այլոցն։ Վասն որոյ տիկինն ի դատ կացեալ յանդիման արար թէ որպէս Թագաւորն Պետրոս շնորհեալ էր նմա զպարգևն առ կենդանեաւ իւրով, ըստ օրինաց ատենին իւրոյ, և տուեալ էր նմա ի ստացումն, զոր և էր նորա վայելեալ ընդ ձիգ ժամանակս. վասն որոյ պնդէր թէ իրաւունք իւր էին ունել զպարգև աւատին այնորիկ։ Պատասխանի ետ իշխանն խնամակալ և ասէ. «Աւատն չէր սեփական ինչ Թագաւորին, վասն որոյ և չէր նմա մարթ տալ ումեք զպատկանեալն այլում. և եթէ տուեալ իսկ իցէ՝ առ ո՛չ ինչ զօրէ պարգևն»։ Եւ յաւել ասել թէ կազմ և պատրաստ է ինքն ցուցանել՝ թէ որպէս չէր պատկան արքայի շնորհել ումեք զայն աւատ։ Եւ ժողովքն հասու եղեալ իրացս ստուգութեան, վճռեաց զի չունէր արքայն Պետրոս

(Ա.) իրաւունս պարգևելոյ ումեք զայն և Թէ՝ աւատն այն պարտէր դառնալ ի բնիկ ժառանգորդսն: Եւ այսպէս կորոյս տիկինն զաւատն, յայնմ օրէ և առ յապա:

Իբրև ետես տիկինն Զապէլ Ռուբինեան զայն վճիռ դատաստանի և զպատասխանի իշխանին առ նա յինքն, յետս դարձոյց ի Մորէա զպարգևսն և զընծայս, զորս բերեալ էր նորա մատուցանել արքայի, իշխանին և այլոց աւագաց. դարձոյց և զմեծ մասն ուխտոյն իւրոյ և կամէր մեկնել ի Կիպրոսէ և գնալ յԵրուսաղէմ: Այլ ոչ եգիտ նա ժամ բարեպատեհ նաւարկութեան, վասն որոյ եկաց մնաց ի Կիպրոս յապարանս տեառն Լևոնի Ռուբինեան զձմեռն ողջոյն. և յայս միջոց ժամանակի զհետ պնդեցաւ այնքան, տուեալ ընծայս և աղաչանս ի ձեռս բարեկամաց խնամակալ իշխանին, մինչև յաջողեաց նմա առնուլ ի ձեռաց նորա՝ յաւատէ անտի շնորհելոյ նմա յարքայէն՝ ականն մի կոչեցեալ Ս. Գէորգ Տունբիայ, որ բերէր ամ ըստ ամէ երեք հազար ոսկեդրամս դահեկանս Կիպրոսի: Եւ իբրև ստացաւ նա զաւատն՝ ետ զայն իշխանին Լևոնի ի ռոճիկ նորա և ի վայելումն. և դարձաւ այնուհետև տիկինն Զապէլ ի Մորէա: Իսկ Լևոն իշխան վայելեաց ընդ երկար ժամանակ զաւատն յանուն տիկնոջն:

---

## ԳԼՈՒԽ ԾԲ.

**Թէ որպէս աւագանին Հայոց գրեցին առ իշխանն Լևոն Ռուբինեան, աղաչելով զնա գալ և առնուլ զթագաւորութիւնն Հայոց և Թէ ընկալան զնա յարգոյ իշխանաց և ի ռամկէ:**

Տեսեալ ազգին Հայոց զի արքայն Կոստանդին ոչ ևս կամէր յանձանձել զերկիրն և զի, որպէս ասացաք, յինքն

շուրթեալ զգանձ աշխարհին, կապտէր զժողովուրդն և արկեալ յանհնարին աղէտս, կամէր մատնել զնոսա ի ձեռս անհաւատից, ընդդէմ ելին նորա և առաքեցին ի ձեռն պատգամաւորաց գաղտնապէս թուղթս առ իշխանն Լևոն, որ էր յայնժամ ի Կիպրոս, աղաչելով զնա զի՝ որովհետև նա ինքն էր բնիկ իրաւամբք տէրն իւրեանց, հաճեսցի գալ իշխել և առնուլ ի ձեռս զժառանգական իրաւունս և զթագն Հայոց, որ նմա իսկ էր անկ. և զի ներեսցէ ֆնասուն և ապիրատութեան, որով մատնեալ էր նոցա ի մահ զնախնիս նորա *). և խոստանային անկեղծաբար զի իբրև հպատակք հաւատարիմք հնազանդեսցին։ Իսկ իշխանին Լևոնի ընկալեալ զպատգամաւորսն պատուով և սիրով, ետ նոցա պատասխանի թէ ախորժ հաճութեամբ առնու նա յանձն զգահն արքայական յօգուտ քրիստոնէութեան. այլ ոչ էր նմա մարթ գնալ անդր միամտութեամբ ի ժամանակին։ Զայս արար պատասխանի իշխանն Լևոն զի գիտէր քաջ զսակաւ հաւատարմութիւն Հայոց առ տեարս իւրեանց. և ոչ կամէր նա գնալ ի Հայաստան սակաւաձեռն գնդաւ վասն երկուց պատճառաց. առաջին՝ զի եթէ ոչ էր նորա ուղեկից բազմութիւն, արկանէին զնա Հայք ընդ ձեռամբ իւրեանց, վարելով ըստ կամս անձանց. և երկրորդ՝ զի եթէ ոչ էր նորա գունդ զօրաց ի ձեռին, չէր նմա մարթ առնել մեծ ինչ ի նպաստ քրիստոնէութեան։ Այսորիկ աղագաւ եկաց մնաց Լևոն իշխան զի խնդրեսցէ ի պապէն և ի թագաւորաց և յիշխանաց քրիստոնէութեան զի ձեռն տացեն նմա ի պահպանութիւն թագաւորութեանն և աշխարհին ընդդէմ

---

*) Իմա զԳուի Լուսինեան և զԲոէմոնդ եղբայր նորա։ Տես գլ. ԼԸ և ԼԹ։ Ծան. Թրգ.

անհաւատից: Եւ զայս ինչ առնելով՝ համարէր նա թէ վարէր իբրև Թագաւոր և իշխան բարի, յառաւելագոյն օգուտ քրիստոնէութեան և պետութեան:

---

## ԳԼՈՒԽ ԾԳ.

Ութէ ամսեա Հայք առանց արքայ Կոստանդեայ և եղեալ զեղխանութեանն ի յետոյ նախկին Թագաւորին Հայոց. և ութ ամսեա գրեցին առ Պետրոս արքայ Կիպրոսի զի հաճեսցի առաքել զեղխանն Լևոն լինել նոցա տէր և Թագաւոր:

Եւ իբրև ետես արքայն Կոստանդին զի չէր նմա հնար անցանել ի Կիպրոս, զի կալեալ ունէին այլազգիք զնաւահանգիստսն, դաշն կռեաց ընդ սուլթանին Եգիպտոսի *) և խոստացաւ տալ ի ձեռն նորա զԹագաւորութիւնն, զաշխարհն և զքրիստոնեայս համօրէն, միայն զի ապրեցուսցէ զանձն իւր և զամենայն ստացուածս: Այլ Հայոց իրազեկ եղեալ դաւանացն, սպանին զնա յամսեանն Ապրիլի, յամի Տեառն 1373, և միաբան հաճութեամբ ետուն զիշխանութիւնն ի ձեռս նախնոյ Թագուհւոյն Հայոց, որ էր լեալ կին առաջնոյ բռնաւոր Թագաւորին (Կոստանդին Գ.)**) մինչև հասեալ գայցէ Լևոն բնիկ տէրն իւրեանց: Եւ իսկ և իսկ միաձայն խորհրդով պատգամաւորս արձակեցին, ասպետ մի՝ որ կոչէր սե-

---

*) Մելիք էլ—Աշրաֆ Շաբան:

**) Այրին Կոստանդնի Գ. Թագուհին Մարիամ էր դուստր Օշնի կոմսին Կոռիկոսի և Յովհաննայ Անժուեցւոյ դստեր փիլիպպոսի Բ. իշխանին Տարենտայ և Մորէայ: Իսկ Յովհաննայ զառաջինն անդ ամուսնացեալ էր ընդ Օշնի Թագաւորին Հայոց: Տես գլ. ԽԲ. Ծան. Խմբ.

պուհ Լեւոն Համուսցի եւ ընդ նմա այս երկուս ի քաղաքէն Սսոյ եւ տանուտէր զոմն ի Պրեստրէ առ երիտասարդ արքայն Պետրոս եւ առ իշխանն Լեւոն ի Կիպրոս, տուեալ ի ձեռս նոցա թուղթս։ Եւ իբրեւ հասին նոքա ի Կիպրոս, ետ կոչել զնոսա արքայ զառաջեաւ եւ ի ձեռն իշխանին Անտիոքայ ետ հարցանել թէ զի՞նչ կամիցին։ Եւ ի լինել նոցա անդ՝ պատասխանի ետուն նմա թէ բերեալ էր նոցա թուղթս ի Հայոց, զորս եւ առաջի արարեալ՝ երկիր պագին նմա եւ ասեն. «Տէ՛ր արքայ, թագուհին Հայոց՝ որ էր լեալ կին Կոստանդին արքայի, առաջնոյ բռնաւորին, եւ որ հաճութեամբ հասարակաց կալեալ ունի այսօր ի ձեռին զիշխանութիւնն թագաւորական եւ Կաթողիկոսն մեր եւ տեարք մեր պարոնայք եւ ասպետք եւ ժողովուրդն համօրէն խոնարհեալ երկրպագեն առաջի տէրութեանդ քո եւ զեկուցանեն զի Աստուած զրաւ արար կենաց թագաւորին իւրեանց Կոստանդնի, որդւոյ պարոնին Հեթմոյ՝ որ ոչ էր բնաւ նոցա տէր ըստ իրաւանց։ Եւ այժմ՝ չիք նոցա թագաւոր. եւ այն որ տէր է նոցա ըստ բնիկ իրաւանց՝ գտանի յաշխարհի աստ ի Կիպրոս եւ է նա ինքն իշխանն Լեւոն Լուսինեան, ձերդ արենակից, սենեշալն Երուսաղեմի։ Արդ աղաչեն նոքա զտէրութիւն քո թախանձագին պաղատանօք զի արձակեսցէ զդա ի Կիպրոսէ գալ եւ առնուլ զթագաւորութիւնն Հայոց, զժառանգութիւն իւր սեփական. զի եւ գիտեմք իսկ զի քեզ ետ ի նուէր զաւառն, զոր ունի նա ի կողմանէ կնոջ իւրոյ՝ յերկիր իշխանութեան քում։ Իսկ եթէ չիցեն կամք տէրութեանդ քում արձակել զնա աստի, գիտուն լիցի քեզ զի բովանդակ աշխարհն Հայոց՝ ամենայն քրիստոնեայ բնակչօք իւրովք հանդերձեալ է մատնել ի կորուստ եւ անկանել

ի ձեռս անհաւատից, որ քա՜ւ մի՛ լիցի, զի եղիցի կորուստ մեծ և աղէտ վասն քրիստոնէութեան։ Այս սակս աղաչեմք զքեզ, տէ՛ր արքայ, աղէ՛ ի սէր Աստուծոյ գթացեալ ողորմեսցիս և մի՛ թողուցուս զի սոյն այս կորուստ և վտանգ յաւուրս թագաւորութեան քո հասցէ ի վերայ քրիստոնէութեան»։ Եւ արքայ ետ նոցա պատասխանել ի ձեռն հօրեղբօր իւրոյ, իշխանին Անտիոքայ, որ ասաց. «Տեա՛րք, բարեաւ լիցի գալուստ ձեր. տեսցէ արքայ զթուղթս ձեր, կալցի ընդ այն խորհուրդ և տացէ ձեզ պատասխանի։ Երթայք և հանգերուք»։ Ընդ այս բան ելեալ պատգամաւորացն մեկնեցան յերեսաց արքայի և չոգան հանգչել։

---

## ԳԼՈՒԽ ԾԳ.

Թէ որպէս պատգամաւորքն յանդիման եղեն իշխանին Լևոնի և տարուցին նմա զթուղթս ազատաց և ժողովրդեան Հայոց։

Իբրև մեկնեցան պատգամաւորքն յարքայէ, գնացին յապարանս Լևոնի իշխանի և առաջի արարին նմա զնամականին և թուղթ դաշանց անփակ, ձեռնագրեալ ի բոլորից առ հասարակ և կնքեալ մեծաւ կնքով պետութեանն. և ասեն ցնա. «Մեծաշուք տէ՛ր, նախկին դշխոյն, Կաթողիկոսն, պարոնայք ամենայն և ասպետք և ժողովուրդն Հայոց առ հասարակ խոնարհին յոտս Տէրութեան քո, որ եւս բնիկ իրաւամբք նոցա տէր։ Եւ որպէս խոնարհ ծառայք քո և հպատակք զգացուցին Տէրութեանդ քում ի բազում նուագս՝ թէ սպանեալ էր նոցա զարքայ Կոստանդին զտէր իւրեանց, փոխանակ զի խաթարեալ էր նորա զաշխարհն և յուխտ մտեալ ընդ

սուլթանին Բաբելոնի մատնել ի ձեռս նորա զաշխարհն, որ կայր մնայր միացեալ ընդ քրիստոնեայս համօրէն. արդ աղաչեն զքեզ և խնդրեն պաղատանօք ի քումմէ Տէրութենէդ զի եկեալ ընկալցիս զքոյդ ժառանգութիւն, թէև մերժեցիր յառաջնումն նուազի զի անվստահ էիր ի նոսա և ի խոստմունս նոցա. և արդ ահա միւսանգամ, մեծաշուք տէ՛ր, խոնարհին յոտս Տէրութեան քում և արկանեն աղաչանս առ քեզ, իբրև առ բնիկ իրաւամբք տէր իւրեանց, զի հաճեսցիս գալ առնուլ զիրաւացի քոյդ ժառանգութիւն և կարկառեսցես նոցա զաջ օգնականութեան փութով վաղվաղակի, ի պահպանութիւն քրիստոնէական հաւատոց. ապ՛ եթէ ոչ՝ աշխարհն կորիցէ միանգամայն։ Եւ առ ի վստահ առնել զՏէրութիւն քո և յապահովել՝ առաքեն առ քեզ զանփակ զայս թուղթ դաշանց, ուր արկեալ է նոցա ձեռնագիր և կնքեալ արքայական կնքով, ցուցանելով զի է քո ի վերայ նոցա լիուլի զօրութիւն և տէրութիւն և՝ որչափ կար է իւրեանց՝ տան քեզ իշխանութիւն առնել ընդ նոսա որպէս և կամիցիս, իբրև ընդ խոնարհ հպատակս և ընդ ծառայս։ Եւ թախանձանս մատուցանեն Տէրութեան քում զի հաճեսցիս ընդունել զնոսա և մի՛ այլ մերժեսցես։ Զի եթէ և զայս նուազ, մեծաշուք տէ՛ր, կամիցիս ապախտ առնել զնոքօք, զոր, քա՛ւ, մի՛ արասցէ Տէր, գիտասջիր զի աշխարհն համօրէն և քրիստոնէութիւն անկցին ի ձեռս սարակինոսաց և լիցի այն մեղք մեծ և աղէտ սոսկալի. և ամենայն վնասու պատճառք լիցի Տէրութիւն քո։ Աղէ՛, մեծաշուք տէ՛ր, ի սէր Աստուծոյ, մի՛ լիցի քեզ լինել պատճառս այնչափ չարեաց և աղետից յապաղելով քո և բացակայութեամբ։ Յայնժամ ընկալաւ Լևոն իշխան զնամականին և զթուղթն դաշանց՝ որ ունէր զկնիքն ար-

՟քայական, և ասէ ցնոսա. «Տեա՛րք, բարեաւ լիցի գալուստ ձեր։ Ի վերայ բանիցդ այդոցիկ, զոր ասէք և խոստանայք ուղղութեամբ մտաց, միաբան ձայնակցութեամբ ժողովրդեան և իշխանացն Հայոց առ հասարակ, խորհեցայց նախ և արարից ապա ձեզ պատասխանի։ Երթա՛յք, հանգերուք»։ Իսկ նոքա մինչև մեկնեալ աղաչեցին զնա զի տացէ նոցա փութագոյնս զպատասխանին. զի Թուրքք և սարակինոսք (Եգիպտացիք) գիտէին քաջ զի կայր երկիրն առանց Թագաւորի և զի երկպառակութիւն մեծ տիրէր ի Հայս վասն իշխանութեանն. քանզի ասէին բազումք թէ իշխանն Լևոն ոչ կամեսցի և ոչ կարասցէ գալ յաշխարհն, սակս մեծի բազմութեան անհաւատից որ անդ։ Այլ Լևոն իշխան չետ ինչ զայնմանէ պատասխանի. և դարձան պատգամաւորքն և գնացին առնուլ հանգիստ։

---

## ԳԼՈՒԽ ԾԹ.

Թէ որպէս արքայն Կիպրոսի կոչեաց զԼևոն իշխան և ծանոյց զհետս Ռուբինեանց, զոր առաւաքէալ էր ՆՏա Հայոց։

Ի վաղիւ անդր յառաւօտու պահուն՝ արքայն Կիպրոսի և խորհրդականք նորա առաքեցին և կոչեցին զիշխանն Լևոն՝ զազգականն արքայի՝ և ասէ ցնա արքայ. «Ազգականդ իմ ազնիւ, ժողովուրդն Հայոց ծանոյց մեզ ի ձեռն հրեշտակացն իւրոց թէ զրաւ ապար Աստուած կենաց բռնաւոր արքային և աղաչէ զմեզ և խնդրէ միահամուռ ժողովով զի թողցուք քեզ գնալ առ նոսա, որ զի եսդ բնիկ տէր նոցա։ Որ՞ինչ ասիցես, ազնի՛ւ ազգականդ, իցէ՞ն քեզ կամք գնալ անդր թէ ոչ»։ Պատասխանի ետ իշ-

խանն Լևոն և ասէ. «Տէ՛ր արքայ, ճշմարիտ է զի չկամիմ բնաւ գնալ ի Հայաստան վասն զինչ և իցէ իրաց. և այս յերկուց պատճառաց. մի՝ զի Հայք թերի են ի հաւատարմութեան առ իշխանս իւրեանց և մանաւանդ զի սպանին նոքա զհօրեղբայրն իմ զքարեմոյն արքայն Գուի Լուսինեան և զեղբայր նորա զիշխանն Բոէմոնդ, զտէրն Կոռիկոսի, որք էին իրաւացի և բնիկ տեարք նոցա, և ի սուր հանին երեք հարիւր այս Գաղղիացիս որ յայնմ կուսէ ծովու և ի մահ մատնեցին զնոսա ի միում աւուր զուր տարապարտուց: Իսկ երկրորդ պատճառ այն իսկ է՝ զի երկոքին բռնաւոր թագաւորք, որք տիրեցին զկնի հօրեղբօր իմոյ Գուի արքային, գտեալ զաշխարհն ի բարւոք պայմանի և ի մեծի ճոխութեան, ետուն զայն յաւեր և յապականութիւն, սպառեցին և զգանձս արքայական և յիւրեանց կամաց մատնեցին ոչ սակաւ քաղաքս և ամուրս ի ձեռս անհաւատից, այնպէս զի՝ կորուսին զողջես զաշխարհն բովանդակ: Եւ վասն այնորիկ ոչ են իմ կամք գնալ ի Հայաստան: Բայց սակայն, արքա՛յ, քանզի Հայք եկին և զայլ նուագ առ իս և խնդրեցին յինէն զթողութիւն վասն չարեացն անցելոց. միանգամայն տեսեալ իմ զտառապանս, յորում գտանին քրիստոնեայք աշխարհին. և զի՛ եթէ երթայց անդր՝ թերևս ապրեցուցից զաշխարհն քրիստոնէական և եթէ դանդաղեցայց՝ հասցէ նմա կորուստ. և յայնժամ պապն և ամենայն թագաւորք և իշխանք քրիստոնէութեան եպերեսցեն զիս ասելով, թէ առ վատթարութեան նորա և անհոգութեան կորեաւ աշխարհն և քրիստոնէութիւն: Այսորիկ աղագաւ կամիմ, տէ՛ր, դնել զանձն իմ և զոր ինչ ունիմ, զի երթեալ առից ի ձեռս զսեպհական զիմ ժառանգութիւն և օգնեցից քրիստոնէութեան յամենայն

զօրութենէ իմմէ, ի պահպանութիւն ուղղափառ հաւատոյ. վասն որոյ աղաչեմ զքեզ Տէրութիւն զի տացես առ այս շնորհս քո և զօժանդակութիւն և արձակեսցես զիս գնալ։ Պատասխանի ետ առ այն արքայ և ասէ. «Ազգականդ իմ ազնիւ, դու ինքն գիտես զկնովին՝ թէ զայժմուս պէտս ունիմք քեզ վասն մալտին պատերազմի, զոր մղեմք ընդ Գենուացիս. այլ յորժամ զբաւ լեցի այնմիկ, արձակեսցուք մեք զքեզ և օգնեսցուք ևս մերովսաննն այնպէս՝ զի գոհ լիջիք դու և աշխարհն քո»։ Եւ Լևոն իշխան մատուցեալ մեծապէս գոհութիւն, ել յերեսաց արքային։

---

## ԳԼՈՒԽ ԾԶ.

**Յաղագս պատասխանւոյն, զոր Լևոն իշխան ետ պատգամաւորացն Հայոց զնամականւոյն, զոր բերեալ էր նոցա։**

Յորժամ իշխանն Լևոն առեալ հրաժեշտ յարքայէն Կիպրոսի եկն յապարանս անդ իւր, կոչեաց զպատգամաւորս Հայոց և ասէ ցնոսա. «Ազնիւ տեարք, տեսայք մեք զթուղթս ձեր որ խնդրեն ի մէնջ գնալ և առնուլ զժառանգութիւն մեր ի Հայս. և գիտասջիք զի ոչ էր մեզ կամ գնալ անդր երբէք, ոչ իբրև տէր և ոչ այլով ինչ իւիք օրինակաւ, ի պատճառս անցից թշնամանաց, զոր յանցելումն արարին Հայք առ հօրեղբարս մեր. այլ քանզի զայժմուս եղաք մեք հասու բարեմիտ կամաց, զոր ունին իշխանքն ընդ մեզ, զղջանալով ընդ չարիսն զոր երբեմն գործեցին, և խնդրեն իսկ ի մէնջ զթողութիւն. այլ և առ սէր քրիստոնէութեան և ի պահպանութիւն կա-

թողեկէ հաւատոց*) և անուան Յիսուսի Քրիստոսի, մտադիր կամիմք երթալ յաշխարհ անդր և դնել զանձն և զոր ինչ ունիմք յօգնութիւն պահպանութեան և բարգաւաճանաց քրիստոնէական հաւատոց»։ Եւ խնդացին պատգամաւորքն ուրախութիւն մեծ ընդ այս պատասխանի և ի ծունր իջեալ առաջի իշխանին Լեւոնի, շնորհակալ եղեն մեծապէս ի վերայ բարեսէր կամաց նորա և քաղցր պատասխանւոյն, զոր հաճեցեալ էր տալ նոցա։

---

# ԳԼՈՒԽ ԾԳ.

Թէ որպէս խնդրեաց արքայն զպատգամաւորսն և եւս տալ նոցա ի ձեռն Հօրեղբօր Իւրոյ Ինք առաքեսցէ ի Հայս զիշխանն Լեւոն՝ զորդին նոցա՝ յորժամ վախճան լեալ Տարթին որ ընդ Գենուացիս. և Ինք օգնեսցէ նոցա ընդ Կարի Իւրում։

Յետ սակաւուց արքայն Կիպրոսի կոչեաց զպատգամաւորս Հայոց և ի ձեռն իշխանին Անտիոքայ հօրեղբօր իւրոյ ետ նոցա ասել. «Տեարք, ողջոյն տուք ազգին Հայոց և ասացէք նոցա՝ թէ հաճութեամբ մեծաւ ընդունիմք զխնդիր նոցա յղել առ նոսա ի Հայաստան զսիրեցեալ ազգականն մեր զիշխանն Լեւոն Լուսինեան՝ զանձնաշալն մեր Երուսաղեմի. փոխանակ զի ուղղակի ժառանգ է նա և նմա անկանի թագն արքայութեան Հայոց։ Այլ ոչ կարեմք արձակել զնա այժմիկ, զի ի պատերազմի եմք ընդ Գենուացիս. ի վճարել մարտին՝ արձակեսցուք մեք զնա և ձեռն տացուք նմա ի բոլոր զօրու-

*) Զնոյն բան յայտարարէ Լեւոն և առ յապա (տես գլ. ՀԶ. ՀԸ. ՁԱ.), որ ինչ նշանակէ ջերմեռանդութեան նորա ի կաթոլիկ հաւատս։ Ծան. Խմբ.

թենէ։ Շնորհ կալան արքայի պատգամաւորքն և աղաչեցին զնա խոնարհաբար զի թոյլ տացէ իշխանին Լևոնի գնալ ընդ նոսա վասն մեծի վտանգին յորում գտանէր պետութիւնն յանհաւատից. և զի մնացեալ կացին անգլուխ և անթագաւոր։ Սակայն ոչ կամեցաւ արքայ լսել աղաչանաց նոցա՝ պատերազմին աղագաւ։ Եւ հրաժարեալ պատգամաւորացն յարքայէ, մեկնեցան թախծեալ տրտմութեամբ վասն պատասխանւոյն զոր ընկալան։

---

## ԳԼՈՒԽ ԾԸ.

Թէ որպէս պատգամաւորքն եկին յապարանս իշխանին Լևոնի և ծանուցին նմա զպատասխանին. և Թէ որպէս գնաց նա յապարանս արքայի խնդրել նմա առ ի անցուցանել զպատգամաւորսն ի Հայաստան։

Ընկալեալ հրեշտակացն Հայոց զոյն զայս պատասխանի, `չոգան յապարանս իշխանին Լևոնի տրտմեալք մեծապէս և ծանրաթախիծք ընդ բանս, զոր արար նոցա արքայն և աղաչեցին զնա տալ նոցա խորհուրդ։ Փութացաւ Լևոն իշխան և գնաց յապարանս արքայի և եգիտ զի դեռ այն ինչ հասեալ էր սուրհանդակ ի Նէապոլսոյ, Մանուէլ անուն*), որոյ էր սերունդ ի վերին Հայոց և գիտէր քաջ խօսել զհայ և զնէապոլսական լեզուս և ունէր թուղթս ի պապէն Գրիգորէ, զոր թագուհին Նէապոլսոյ Յովհաննայ **), և իշխանն Տարեն-

---

*) Զանուէս զայսմանէ տես գլ. ԾԹ. և ԾԲ։

**) Այս Յովհաննայ թագուհի ժառանգեաց զթագն Նէապոլսոյ յետ հաւուն իւրոյ Ռոբերտի, որ զՅովհաննայ զդուստր

տոնի առաքելին առ արքայն Կիպրոսի, աղաչելով զնա զի զսուրհանդակն և զնամականին յղեսցէ ի Հայս, առ նախկին դշխոյն, կինն Կոստանդին արքային Հայոց, առաջնոյ բռնակալին, և զի թէ հնար ինչ իցէ՝ ձեռնտու լիցի արքայն մեկնելոյ դշխոյին ի Հայաստանէ, ուպէսզի գնասցէ ի Նէապոլիս առ Թագուհին Յովհաննա և առ իշխանն Տարենտոնի, որոց էր նա ազգականուհի։ Եւ պատճառ կոչելոյ Թագուհւոյն Նէապոլսոյ զնախկին դըշխոյն էր այս իսկ՝ զի կամէր առնել զնա ժառանգ Թագաւորութեանն Նէապոլսոյ յետ մահուան իւրոյ, ուպէս նշանակեալ էր ի թուղթսն անդ։ Յայնժամ իշխանն Լևոն խնդրեաց յարքայէ զմի ի նաւուց նորա՝ որ էր յայնժամ ի նաւահանգստին Կերինեայ, զի ծովագնաց լիցին այնուիկ պատգամաւորքն և այլ մարդիկն, որոց տուեալ էր հրաման անցանել ի Հայաստան առ ի զօրացուցանել զՀայս աւետեօք գալստեան իւրոյ։ Եւ լուաւ հաճութեամբ արքայ և խնդրեաց ի նմանէ զի և սուրհանդակն եկեալ ի Նէապոլսոյ անցցէ ի Հայս ընդ նոսա. և Լևոն իշխան կատարեաց զբանս նորա հաճութեամբ։

---

եղբօր իւրոյ Փիլիպպոսի Բ. իշխանին Տարենտի ետ ի կնութիւն Օշնի Թագաւորին Հայոց. (Տես ծան. ի գլ. ԾԳ.)։ Ըստ այսմ Մարիամ Թագուհին Հայոց է Թոռն Փիլիպպոսի Բ. իշխանին Տարենտի և դուստր Յովհաննայ. իսկ Յովհաննայ Թագուհին Նէապոլսոյ էր Թոռն Ռոբերտի, եղբօր հաւուն Մարիամու։ Ծան. խմբ.

# ԳԼՈՒԽ ԾԹ.

Թէ որպէս Լևոն իշխան արձակեաց զհրովարտակս Հայոց և եցոյց նոցա զկամս իւր թէ ոյք ոստանիկք վարելոց էին զաշխարհն ի դէմաց նորա. և թէ որպէս յղեաց ընդ նոսա զինակիր մի և զառաջնորդակն Մանուէլ։

Յորժամ այս ամենայն յարդարեցաւ այսպէս, դարձ արար իշխանն Լևոն յապարանս իւր և եգիր զպատգամաւորս Հայոց, որ ի մեծի տրտմութեան սպասէին նմա։ Եւ ասէ ցնոսա. «Գիտէք, տեարք, զառաջարկութիւնս զոր յայլում նուագի արարիք յօգուտ քրիստոնէութեան և համօրէն ժողովրդեան, այս է՝ երթալ առնուլ զժառանգութիւն իմ և դնել զանձն իմ և զգոյս վասն օգնելոյ աշխարհին և առ ի փրկել զայն ի ձեռացն անհաւատից։ Ապաքէն նուիրեմք մեք զանձինս և այժմէն իսկ գնայաք կամակար. այլ չէ մեզ հնար՝ մինչև մարտ պատերազմին, զոր ազգականն մեր արքայ մղէ ընդդէմ Գենուացւոց՝ առնուցու վախճան։ Վասն որոյ հրամայեմք զի դարձջիք դուք յաշխարհն օգնականութեամբն Աստուծոյ և առաքեսցուք մեք ընդ ձեզ զմի ոմն մեր զինակիր, Կոստանդ անուն, որ գիտէ քաջ խօսել զՀայ լեզուն, և որ խորհրդակից լիցի ձեզ և զօրացուսցէ զձեզ ըստ իւրում կարի. և յորժամ լիցի ձեզ հասանել յայնկոյս, ի քաղաքն Սիս, գումարեսջիք զքարեխորհուրդ մարդիկն և ընթերցջիք ի լուր նոցա զթուղթս, զոր առաքեմք. և քաջալերս տաջիք նոցա գալստեամբ մերով, որ ապաքէն ոչ յապաղեցի, եթէ հաճեսցի Տէր։ Եւ հրամայեցաք և կամիմք զի յօրէ աստի յայսմանէ նախկին դշխոյն Հայոց (Մա-

րիամ), *) և կոմսուհի (Ռիմի) կինն հօրեղբօր իմոյ կոմսին Ռոժիկոսի **) և սեպուհն Բարթողիմէ, անհարազատ որդի կոմսին և պարոն Վասիլ (որդի պարոն Թորոսի), ***) չորեքին սոքա միաբանութեամբ պահպանեցին և կառավարեցին զպետութիւնն վասն մեր և ի մեր անուն։ Եւ կամիմք զի ի գիր հարցեն զբովանդակ զանձն պետութեան և զոր ինչ կալցին ի հասից և ի մտից նորա, որպէս զի տացեն մեզ համար՝ յորժամ լիցի մեզ գալ հասանել անդր։ Աղաչեցաք մեք զարքայ Թախանձանօք և ետ մեզ նաւ մի, զոր գտջիք դուք ի նաւահանգստին Պերինեայ, յոր մտեալ գնասջիք դուք անդր, առաջնորդեալք յԱստուծոյ։ Եւ դու, Մանուէլ, երթիցես ընդ նոսա, զի այսպէս հաճեցաք մեք ընդ խնդիր արքայի ազգականին մերոյ զիրացս։ Օն, ուղղոյ լերուք փութով, որքան հնար իցէ, ի սրտապնդութեամբ բարեխորհուրդ մարդկանն։

---

## ԳԼՈՒԽ Կ.

Թէ որպէս ծովագնաց եղեալ հրեշտակացն ի Կիպրոսէ հասին ի Կոստէկնոս և անդուստ գնացին գենէբրայն ի քաղաքն Մէոս։

Ընդ այս հրաման և պատասխանի լուան հրեշտակքն ուրախութեամբ և մեծապէս շնորհս կալան իշխանին Լևոնի։ Եւ հրաժեշտ առեալ յիշխանէն, իբրև ի տեառնէ իւրեանց, գնացին ի նաւահանգիստն Պերինեայ, հանդերձ

---

*) Տես գլ. ԴԸ.
**) Տես գլ. ԽԵ և ՁԲ.
***) Տես գլ. ՃԹ.

զինակրաւն և սուրհանդակաւն Մանուէլի, և գտին զնաւն կազմ և պատրաստ ի չու. և մտեալ ի նա հասին ի Կոււրիկոս։ Եւ լուեալ անդ զի մեծ ոմն զօրավար սարակինոս, որ կոչէր Բեդամուր *), պաշարեալ էր զքաղաքն Սիս զօրութեամբ սուլթանին Բաբելոնի, ոչ համարձակեցան գնալ ի քաղաքն ի տունէ. և հանդիպեալ Թուրք սուրհանդակի ումեմն, որ զգեցոյց նոցա հանդերձս Թուրքաց, գնացին ընդ նմա հետիոտս գիշերայն՝ և զցերեկ դարանամուտ լինէին. և այսպէս գնացեալ գիշերս ութ հասին ի Սիս, որ է մայր քաղաքացն Հայաստանի, և անցին ի միջոյ զօրուն, որ կայր հանդէպ քաղաքին, մինչև օգնականութեամբն Աստուծոյ առանց ուրուք նշմարելոյ մտին ի քաղաք անդր, ուր գտին զբարեխորհուրդ մարդիկն լուծեալս և լքեալս։ Այլ յորժամ իրազեկ եղեն նոքա և տեսին զհրեշտակս իւրեանց վերադարձեալս և զզինակիրն, որ եցոյց նոցա զհրովարտակն և զդրօշս իշխանին Լևոնի, զօրացան ամենեքին և զգիշերն ամենայն անցուցին ի մեծահանդէս ցնծութեան։ Եւ այգուցն կանգնեցին զդրօշն ի վերայ պարսպաց քաղաքին և ելին յարձակեցան արտաքս փառաւորք ի զէն ամենեքին և մարտեան քաջութեամբ և անվեհեր պնդութեամբ ընդդէմ Թշնամեացն անհաւատից և օգնութեամբն Աստուծոյ յաղթահարեցին զնոսա։ Յետ պարտութեանս այսորիկ ի բաց մեկնեցան ճամբարն այլազգեաց և զերծաւ քաղաքն ի պաշարմանէն։

---

*) Բէյդէմուր ոստիկան Ասորւոց։ Ծան. խմբ.

# ԳԼՈՒԽ ԿԸ.

## Թէ ո՛րպէս ընթերցեալ եղեն առաջի ամենեցուն Թուղթքն, զոր բերին հրեշտակքն և զինակիրքն։

Ի վաղիւ անդր յետ յաղթութեանն, զորմէ ասացաք, զինակիրն և հրեշտակք եկին առ Նախկին դշխոյն և ետուն հաւաքել զժողովուրդն և լու ի լու ամենեցուն ընթերցեալ եղեն Թուղթք և հրամանք իշխանին Լևոնի։ Եւ ի մեծի խնդութեան եղեալ համօրէն ժողովրդեանն, առին զԹուղթսն, համբուրէին և բարձեալ դնէին ի վերայ գլխոց։ Եւ 'անսացին հրամանացն անդէն վաղվաղակի և արարին 'տօն ցնծութեան և պատուեցին մեծապէս զզինակիրն և ետուն նմա ընծայս բազում և մեծարէին զնա ի խրախունս կոչնոց զամենայն աւուրս մինչև ի գալուստ իշխանին Լևոնի։ Եւ հնազանդեցան կամակար չորեցուն խնամակալացն, զորս կարգեալ էր իշխանին Լևոնի։

Իսկ վասն արքայական գանձուն և ճոխութեանցն գիտելի է զի Հայք, որ սպանին զարքայ Կոստանդին (Ե.), զողացան զամենայն և բաժանեցին ի մէջ իւրեանց, բայց ի միոյ մասնէ ականցն պատուականաց և ի Թագէն ոսկւոյ, զորս առեալ խնամակալացն չորեցուն կնքեցին և պահեցին մինչև ի գալուստ իշխանին Լևոնի։

Աստ դադարէ պատմութիւնն խօսել զ̃այոց և դառնայ ի Լևոն իշխան։

# ԳԼՈՒԽ ԿԲ.

**Թէ ո՛րպէս Գենուացւոց եկեալ ի Կիպրոս պաշարեցին զՓամագոստա եւ տիրեցին ի նորա քաղաքն եւ կալան զթագաւորն Կիպրոսի եւ զիշխանն Լեւոն, եւ թէ կամակից սպանման Պետրոսի, արքային Կիպրոսի, եղբօրն ազգականին. եւ թէ ո՛րպէս այնուհետեւ աղագաւ արգելեալ եղեւ ի դղեկին Փամագոստայ ընդ այլ մեծամեծս Կիպրացւոց։**

*Իշխանն Լեւոն մնաց ի Կիպրոս վասն մարտի պատերազմին, զոր արքայն իւր ազգակից վարէր ընդդէմ Գենուացւոց. եւ եկաց անդ մինչեւ ի գալ հասանել նոցա ի Կիպրոս զօրու ծանու եւ պաշարել զՓամագոստա, որք եւ դաշամբ իւիք եւ համաձայնութեամբ մտին ի քաղաք անդր։ Եւ արգելեալ զմեծամեծսն եւ զասպետս Կիպրոսի ի դղեկին Փամագոստայ, հարցին զնոսա թէ ո՞յք ոմանք կամակից եղեալ իցեն մահուան Պետրոսի (Ա.) արքային Կիպրոսի եւ պահանջեցին ի նոցանէ արծաթ ի պէտս բանակին։ Զերբակալ եղեւ եւ իշխանն Լեւոն ընդ աւագորերոյն եւ ընդ ասպետացն. խորհեցաւ նա զի Գենուացիք գուցէ արգելցեն զգնալ նորա ի Հայաստան. եւ վասն այնորիկ դիմեաց նա առ տիկինն Էլէոնոր *), թագուհին Կիպրոսի եւ կին արքային Պետրոսի (Ա.), եւ առ ծովակալն Գենուացւոց եւ ասէ ցնոսա. «Դշխոյ Տիկին եւ դուք իշխանք Գենուացւոց, բազումք ի ձէնջ գիտել գիտեն զի ծնեալ է իմ ի Հայաստան. եւ յորժամ հայր իմ զըրւեցաւ ի կենաց եւ սպանին Հայք զհօրեղբայրն իմ, որք*

---

**) Էլէոնոր թագուհին Կիպրոսի՝ կին Պետրոսի Ա. թագաւորին՝ դաշնակից էր Գենուացւոց յայսմ մարտի ի վրէժխնդրութիւն մահուան առն իւրոյ։* Ծան. Խմբ.

էին ժառանգք թագաւորութեանն Հայոց, մայր իմ էած
զիս ընդ իւր այսր առ արքայն Հիւգ՝ իմս ազգակից։
Արդ, յամոյ հետէ առաքեցին առ իս Հայք աղաչելով
զիս ի ձեռն հրեշտակաց զի գնացից անդր առնուլ զիմ
ժառանգութիւն և ձեռն տալ քրիստոնէութեան. այլ
ոչ գնացի ես ի պատճառս պատերազմիս այսորիկ և զի
չեղեն կամք արքայի շնորհել ինձ արձակուրդ։ Եւ եթէ
իցեն ոմանք ի միջի ձերում, տեարք, որք յանդգնեցին ա-
սել թէ եղէ ես կամակից սպանման արքային Պետրոսի,
իմոյ ազգականին, որում ներեսցէ Աստուած, վկայ կո-
չեմ ինձ զմարդիկ աշխարհիս այսորիկ զի անպարտ եմ
ես ամենևին։ Եւ եթէ անհաւատ ձեզ բանք իմ թուի-
ցին, աղաչեմ զձեզ խոյզ խնդրոյ առնել. եթէ եղեալ իցէ
իմ հաղորդ սպանութեանն որով և է օրինակաւ, թող
համարեսցայց ես նենգաժէտ և դատեսցայց իբրև մատնիչ։
Իսկ վասն արծաթոյն՝ զոր խնդրիցէք յինէն ի պէտս բա-
նակիդ, գիտէք ապաքէն զի չէ ինձ մարթ տալ. և եթէ
էր իմ իսկ բաւականութիւն, ոչ էր ձեզ պարտ պահան-
ջել ինչ յինէն. այլ հարկ ի վերայ կայ ձեզ ամենեցուն լի-
նել ինձ ձեռնտու զի թափեցից զաշխարհն իմ ի թշնա-
մեաց անտի անհաւատից, ընդ որոց լծով անկեալ գտանի
մեծաւ մասամբ։ Եւ իբրև լուեալ իշխանն Լևոն ի խօ-
սիցն, եցոյց նոցա թուղթս դրոշմեալս կնքով պապին
Ուրբանոսի Ե. *), զորս տուեալ էր նորա առ արքայն
Կիպրոսի Պետրոս (Ա.), յորժամ գնաց առ նա յԱւինիոն,
և պատուէր տայր Հայոց ընդունել զիշխանն Լևոն ի
թագաւոր և ի բնիկ տէր իւրեանց։ Եւ իբրև եցոյց նո-
ցա զնամականին, աղաչեաց զթագուհին և զիշխանս Գե-

---

*) Տես գլ. ԾԶ. և ԾԷ։

նուացւոց արձակել զնա և թոյլ տալ զի գնասցէ յաշխարհն իւր. և յաւել ես ասել թէ չկամէր այլ ևս մնալ ի Կիպրոս։

---

## ԳԼՈՒԽ ԿԳ.

Թէ ո՛րպէս աւագանին Գէնուացւոց յետ իրազէկ լինելոյ թէ Լեւոն իշխան անպարտ էր ի սպանմանէ արքային Պետրոսի (Ա.), ծանուցին նմա միաբանութեամբ նախկին Թագուհւոյն զի հատուսցէ վասն քանակին երեսուն և վեց հազար արծաթի դահեկանս Կիպրոսի և ապա մեկնեսցի երբ և կամեսցի։

Յորժամ թագուհին Էլէոնոր և Գենուացիք յետ հարցափորձի հասու եղեն զի իշխանն Լեւոն անպարտ էր յարիւնէ արքային Պետրոսի (Ա.) և էր նա անմեղ բոլորովիմբ, ետուն նմա պատասխանի ի ձեռն խորհրդականի իւրեանց թէ ոչ ինչ խնդրէին ի նմանէ վասն մահու արքային Պետրոսի, իրազեկ լեալ թէ չգոյր նորա ինչ մեղ. այլ սակս ծախուց բանակին՝ վճռեալ էր նոցա զի հատուսցէ նա երեսուն և վեց հազար արծաթոյ դահեկանս Կիպրոսի, որ արժէին ինն հազար դուկատս, և թէ այսու օրինակաւ արկեալ էր նոցա հարկս ի վերայ այլոց ազատաց և ասպետաց աշխարհին, իւրաքանչիւր ըստ իւրում աստիճանի. և ասացին՝ զի եթէ չէր նա բաւական հատուցանել միահաղոյն, հատուսցէ զմի մասն, և վասն միւսոյն տուեալ անքոյթ ապահովութիւն, ելեալ գնասցէ ի Հայաստան երբ և թուեսցի նմա հաճոյ։ Պատասխանի ետ նոցա Լեւոն իշխան և ասէ. «Տեարք, շնորհ ունիմ մեծապէս թագուհւոյն և իշխանաց Գենուացւոց զի տան ինձ թոյլ գնալ ի Հայաստան. այլ հատուցանել

զարծաթն ընա՛ւ իւիք ոչ կարեմ։ Բազում և այլ ինչ ասաց նոցա և աղաչեաց իշխանն Լևոն, այլ օգտեցաւ ինչ ոչ, զի ոչ կամէին ունկն դնել նմա։

---

## ԳԼՈՒԽ ԿԴ.

Թէ ո՛րպէս իշխանն Լևոն առաքեաց առ մայր իւր և առ կինն, որք էին ի Նիկոսիա, զի գտցեն երեսուն և վեց հազար արծաթոյ դահեկանս Կիպրոսի։

Տեսեալ իշխանին Լևոնի զի չէր նմա հնար պրծանել այլով օրինակաւ, առաքեաց առ տիկին մայրն իւր և առ կինն, որք էին ի Նիկոսիա, զի փոյթ ընդ փոյթ վաճառեսցեն զկահ իւր և զկարասի և զամենայն ինչ զոր ունէր որով և իցէ գնով և բերցեն նմա կամ առաքեսցեն ի Փամագոստա որչափ ինչ լիցի նոցա հայթայթել անդուստ, առ ի հատուցանել զգումարն և գնալ ի Ճայաստան։ Յորժամ տիկնայքն երկոքեան լուան զհրաման իշխանին Լևոնի, ի վաճառ հանին զկարասի նորա. և այնքան մեծ եղև կորուստն և վնաս՝ զի չեղև նոցա ի ձեռս բերել ոչ զքառորդ և ոչ զհինգերորդ մասն արժէից կարասւոյն, այլ հազիւ վեց հազար դահեկանս Կիպրոսի, զոր առեալ բերին առ իշխանն Լևոն ի Փամագոստա։ Որ իբրև ընկալաւ զարծաթն, առեալ տարաւ առ Թագուհին և առ ծովակալն Գենուացւոց և այնչափ ինչ արար ողոքախառն աղաչանօք և ընծայիւք առ նոսա, զի կալան ի հատուցումն զաւատն, զոր կին նորա ունէր ի Կիպրոս, որ արժէր երեսուն հազար դահեկանս արծաթոյ։ Եւ այսպէս համեցուցեալ զնոսա իշխանին Լևոնի, եւ մեկնեցաւ ի բերդէն Փամագոստայ։

---

## ԳԼՈՒԽ ԿԵ.

**Թէ ո՛րպէս իշխանն Լևոն խնդրեաց ի ծովակալէն Գենուացւոց զի Թոյլ տացէ նմա գնալ ի Բերդն Կոռիկոսի և ձմեռել անդ մինչև ցամառն։**

*Յետ հաւատուցմանն կատարելոյ, իշխանն Լևոն մեկնեցաւ ի բերդէն Փամագոստայ, ուր էրն ի պահեստի ընդ այլոց աւագաց, և ետես զի Գենուացիք յաւարի առնուին և յափշտակէին զաւագն և զանաւագ ի Կիպրոս, ի հաւատուցումն բանակի իւրեանց։ Եւ յիրկքայս եղեալ զնոցանէ, բազում աղաչեաց զծովակալն Գենուացւոց զի տացէ նմա Թոյլ գնալ յամուրն Կոռիկոսի, որ էր ի ձեռս նոցա, և կալ անդանօր զձմեռն ողջոյն և ի գալ ամառան՝ երԹալ յաշխարհն իւր ի Հայաստան։ Եւ զայս խնդրեաց նա զի յապահովի կացցէ ի Գենուացւոց, ուք չարիս մեծամեծս անցուցանէին ընդ կղզին Կիպրոսի, և զի լիցի նմա յանձախագոյնս ունել լուր յաշխարհէ անտի իւրմէ։ Խորհուրդ կալաւ ծովակալն ընդ այլոց Գենուացւոց, և զի չգոյր արքային և ոչ մի ազգական կամ բարեկամ մերձաւոր, զորս լինէր նմա մարԹ տալ ի պատանդ, առ ի լինել կարող տալ նմա առնել զոր կամէրնն, ետուն նմա Թոյլ գնալ յամուրն Կոռիկոսի։*

*Այլ տիկինն Ելէոնոր Արագոնացի, նախկին դշխոյն Կիպրոսի, իբրև լուաւ զայս ամենայն, արգել զերԹն Լևոնի և կոչեցեալ զնա առաջի իւր ասէ ցնա այսպէս. «Գիտել գիտեմ զի ամուրն Կոռիկոսի պատկանէր ԹագաւորուԹեանն Հայոց և զի մեծագոյն մասն բնակչացն նորա են Հայք*). արդ գնաս դու յիրկիրն Հայոց կա-*

*) *Հայք տիրէին Կոռիկոսի մինչև ց1-ն յունուարի* 1363 *ամի։ Տես գլ. ԽԸ։* Ծան. խմբ.

պել զթագն արքայական. ի կասկածի եմք մեք զի եթէ գնասցես դու ի բերդն, ի ձեռն առնուցուս զիշխանութիւն նորա և կալցես զայն վասն քո. և այսր աղագաւ, ուղղակի, ոչ կամիմք զի երթիցես անդր»: Պատասխանի ետ իշխանն Լևոն և ասէ. «Տիկին, գիտասջիր հաստատութեամբ զի ոչ բնաւ արարից զոր ասեսդ. և պատճառ այն իսկ է, զի ամուրն Կոռիկոսի ոչ է օգտակար թագաւորութեանն Հայոց՝ փոխանակ զի հեռի է ի Սսոյ առաւել քան զաւուրս ութ և ծանրագնոյ լինի պահեստ նորա. և վասն այնորիկ իսկ թողին զնա թագաւորքն Հայոց: Եւ արդարև ասեմ քեզ, տիկին, եթէ ամուրն այն էր ընդ իմով իշխանութեամբ՝ տայի զայն արքայի եթէ կամէր նա ընդունել. և առ այս՝ պատրաստ իսկ եմ տալ քեզ երդումն հաւատարմութեան: Բազում և այլ պատճառս ի մէջ բերէր նա և ցուցանէր, այլ ոչ իւիք հաճեցաւ թագուհին զի գնասցէ նա յամուրն Կոռիկոսի. այլ այնչափ արար իշխանն Լևոն ընծայիւք և խոստմամբք զի թագաւորն և թագուհին հաւանեցան զի գնասցէ նա յամուրն Կոռիկոսի՝ միայն զի երդնուցու չմտանել ի բերդն, այլ բնակեսցի ի դղեակ կղզւոյն Կոռիկոսի, որ է ի վերայ ծովուն. և արար նա այսպէս: Եյլ յառաջ քան զհաւանել թագուհւոյն և Գենուացւոց շնորհել Լևոնի զոր խնդրէրն, ետ նա թագուհւոյն զաւատն զայն, զոր կին նորա ունէր ի Կիպրոս, որ բերէր ամ ըստ ամէ հազար դահեկանս արծաթոյ Կիպրացւոց: Բաց անտի՝ խոստացաւ երդմամբ ծովակալին Գենուացւոց զի ի գալն նորա ի Կիպրոս առաքեսցէ նմա Ֆլորէնս տասն հազար:

## ԳԼՈՒԽ Ծ.Թ.

**Թէ որպէս Լեւոն իշխան ընկալաւ զպատգամաւորս Հայոց և եցոյց նոցա զխաչն իւր ընդ որ ազատել կարելոց էին զաշխարհն ի գերեաց նորա. և ընդ որպէս յղեաց ընդ նոսա զինակիր մի և զաշխարհագրական Մանուէլ։**

Յորժամ այս ամենայն յարդարեցաւ այսպէս, դարձ արար իշխանն Լեւոն յապարանս իւր և եգիտ զպատգամաւորս Հայոց, որ ի մեծի տրտմութեան սպասէին նմա։ Եւ ասէ ցնոսա. «Գիտէք, տեա՛րք, զառաջարկութիւնս զոր յայլում նուագի արարիք յօգուտ քրիստոնէութեան և համօրէն ժողովրդեան, այս է՝ երթալ առնուլ զժառանգութիւն իմ և դնել զանձն իմ և զգոյս վասն օգնելոյ աշխարհին և առ ի փրկել զայն ի ձեռացն անհաւատից։ Ապաքէն նուիրեմք մեք զանձինս և այժմէն իսկ գնայաք կամակար. այլ չէ մեզ հնար՝ մինչև մարտ պատերազմին, զոր ազգականն մեր արքայ մղէ ընդդէմ Գենուացւոց՝ առնուցու վախճան։ Վասն որոյ հրամայեմք զի դարձջիք դուք յաշխարհն օգնականութեամբն Աստուծոյ և առաքեսցուք մեք ընդ ձեզ զմի ոմն մեր զինակիր, Մոստանդ անուն, որ գիտէ քաջ խօսել զՀայ լեզուն, և որ խորհրդակից լիցի ձեզ և զօրացուսցէ զձեզ ըստ իւրում կարի. և յորժամ լիցի ձեզ հասանել յայնկոյս, ի քաղաքն Սիս, գումարեսջիք զբարեխորհուրդ մարդիկն և ընթերցջիք ի լուր նոցա զթուղթս, զոր առաքեմք. և քաջալերս տայջիք նոցա գալստեամբ մերով, որ ապաքէն ոչ յապաղեցի, եթէ հաճեսցի Տէր։ Եւ հրամայեցաք և կամիմք զի յօրէ աստի յայսմանէ նախկին դշխոյն Հայոց (Մա-

րիամ), *) և կոմսուհի (Սեմի) կինն հօրեղբօր իմոյ կոմսին Կուրկոսի **) և սեպուհն Բարթողիմէ, անհարազատ որդի կոմսին և պարոն Վասիլ (որդի պարոն Թորոսի), ***) չորեքին սոքա միաբանութեամբ պահպանեցին և կառավարեցին զպետութիւնն վասն մեր և ի մեր անուն։ Եւ կամիմք զի ի գիր հարցեն զբովանդակ զանձն պետութեան և զոր ինչ կալցին ի հասից և ի մտից նորա, որպէս զի տացեն մեզ համար՝ յորժամ լիցի մեզ գալ հասանել անդր։ Աղաչեցաք մեք զարքայ Թախանձանօք և ետ մեզ նաւ մի, զոր գտջիք դուք ի նաւահանգստին Պերինեայ, յոր մտեալ գնասջիք դուք անդր, առաջնորդեալք յԱստուծոյ։ Եւ դու, Մանուէլ, երթիցես ընդ նոսա, զի այսպէս հաճեցաք մեք ընդ խնդիր արքայի ազգականին մերոյ զիրացս։ Օ՜ն, ուղւոյ լերուք փութով, որքան հնար իցէ, ի սրտապնդումն բարեխորհուրդ մարդկանն։

---

## ԳԼՈՒԽ Կ.

Թէ ո՛րպէս ծովագնաց եղեալ հրեշտակացն ի Սիկիլիայէ հասին ի Կոռիկոս և անդուստ գնացին գեղեցկայն ի քաղաքն Սիս։

Ընդ այս հրաման և պատասխանի լուան հրեշտակքն ուրախութեամբ և մեծապէս շնորհս կալան իշխանին Լեոնի։ Եւ հրաժեշտ առեալ յիշխանէն, իբրև ի տեառնէ իւրեանց, գնացին ի նաւահանգիստն Պերինեայ, հանդերձ

*) Տես գլ. ԳԸ.
**) Տես գլ. ԻԵ և ՁԲ.
***) Տես գլ. ԽԹ.

զինակրաւն և սուրհանդակաւն Մանուէլի, և գտին զնաւն կազմ և պատրաստ ի ջուր. և մտեալ ի նա հասին ի Կոռիկոս։ Եւ լուեալ անդ զի մեծ ոմն զօրավար սարակինոս, որ կոչէր Բեդամուր *), պաշարեալ էր զքաղաքն Սիս զօրութեամբ սուլթանին Բաբելոնի, ոչ համարձակեցան գնալ ի քաղաքն ի տունէ. և հանդիպեալ Թուրք սուրհանդակի ումեմն, որ զգեցոյց նոցա հանդերձս Թուրքաց, գնացին ընդ նմա հետիոտս գիշերայն՝ և զցերեկ դարանամուտ լինէին. և այսպէս գնացեալ գիշերս ութ հասին ի Սիս, որ է մայր քաղաքացն Հայաստանի, և անցին ի միջոյ զօրուն, որ կայր հանդէպ քաղաքին, մինչև օգնականութեամբն Աստուծոյ առանց ուրուք նշմարելոյ մտին ի քաղաք անդր, . ուր գտին զքարեխորհուրդ մարդիկն լուծեալս և լքեալս։ Այլ յորժամ իմացեալ եղեն նոքա և տեսին զհրեշտակս իւրեանց վերադարձեալս և զզինակիրն, որ եցոյց նոցա զհրովարտակն և զդրօշս իշխանին Լևոնի, զօրացան ամենեքին և զգիշերն ամենայն անցուցին ի մեծահանդէս ցնծութեան։ Եւ այգուցն կանգնեցին զդրօշն ի վերայ պարսպաց քաղաքին և ելին յարձակեցան արտաքս վառեալք ի զէն ամենեքին և մարտեան քաջութեամբ և անվեհեր պնդութեամբ ընդդէմ թշնամեացն անհաւատից և օգնութեամբն Աստուծոյ յաղթահարեցին զնոսա։ Յետ պարտութեանս այսորիկ ի բաց մեկնեցան ճամբարն այլազգեաց և զերծաւ քաղաքն ի պաշարմանէն։

---

*) Բէյգէմուր ոստիկան Ասորւոց։ Ծան. խմբ.

# ԳԼՈՒԽ ԿԸ.

Թէ ո՛րպէս ընծերեցեալ եղեն առաջի ամենեցուն Լեւոնի, զորս բերին հրեշտակքն և զինակիրն։

Ի վաղիւ անդր յետ յաղթութեանն, զորմէ ասացաք, զինակիրն և հրեշտակք եկին առ Նախկին գշխոյն և ետուն հաւաքել զժողովուրդն և լու ի լու ամենեցուն ընթերցեալ եղեն թուղթք և հրամանք իշխանին Լեւոնի։ Եւ ի մեծի խնդութեան եղեալ համօրէն ժողովրդեանն, առին զթուղթսն, համբուրէին և բարձեալ դնէին ի վերայ գլխոց։ Եւ 'անսացին հրամանացն անդէն վաղվաղակի և արարին 'տօն ցնծութեան և պատուեցին մեծապէս զզինակիրն և ետուն նմա ընծայս բազում և մեծարէին զնա ի խրախութիւնս կոչնոց զամենայն աւուրս մինչև ի գալուստ իշխանին Լեւոնի։ Եւ հնազանդեցան կամակար չորեցուն խնամակալացն, զորս կարգեալ էր իշխանին Լեւոնի։

Իսկ վասն արքայական գանձուն և ծախութեանցն գիտելի է զի հայք, որ սպանին զարքայ Կոստանդին (Ե.), զողացան զամենայն և բաժանեցին ի մէջ իւրեանց, բայց ի միոյ մասնէ ականցն պատուականաց և ի թագէն ոսկւոյ, զորս առեալ խնամակալացն չորեցուն կնքեցին և պահեցին մինչև ի գալուստ իշխանին Լեւոնի։

Աստ դադարէ պատմութիւնն խօսել զ҃այոց և դառնայ ի Լեւոն իշխան։

# ԳԼՈՒԽ ԿԲ.

**Թէ ո՛րպէս Գենուացւոց եկեալ ի Կիպրոս պաշարեցին զՖամագոստա և տիրեցին ի ներքոյ բռնութեամբ և կալան զթագաւորն Կիպրոսի և զիշխանն Լևոն, եւրէ հանդերձ աղաչման Պետրոսի, արքային Կիպրոսի, եւրոպա ազգականի. և ԹԷ ո՛րպէս այնուհետև ազատեալ արձակեցին զնա ի բանտէն Ֆամագոստայ ընդ այլ մեծամեծս Կիպրացւոց։**

Իշխանն Լևոն մնաց ի Կիպրոս վասն մարտի պատերազմին, զոր արքայն իւր ազգակից վարէր ընդդէմ Գենուացւոց. և եկաց անդ մինչև ի գալ հասանել նոցա ի Կիպրոս զօրու ծանու և պաշարել զՖամագոստա, ուր և դաշամբ իւիք և համաձայնութեամբ մտին ի քաղաք անդր։ Եւ արգելեալ զմեծամեծսն և զասպետս Կիպրոսի ի դղեկին Ֆամագոստայ, հարցին զնոսա թէ ո՞յք ոմանք կամակից եղեալ իցեն մահուան Պետրոսի (Ա.) արքային Կիպրոսի և պահանջեցին ի նոցանէ արծաթ ի պէտս բանակին։ Զերբակալ եղև և իշխանն Լևոն ընդ աւագորերոյն և ընդ ասպետացն. խորհեցաւ նա զի Գենուացիք գուցէ արգելցեն զգնալ նորա ի Հայաստան. և վասն այնորիկ դիմեաց նա առ տիկինն Էլէոնոր *), թագուհին Կիպրոսի և կին արքային Պետրոսի (Ա.), և առ ծովակալն Գենուացւոց և ասէ ցնոսա. «Դշխոյ Տիկին և դուք իշխանք Գենուացւոց, բազումք ի ձէնջ գիտել գիտեն զի ծնեալ է իմ ի Հայաստան. և յորժամ հայր իմ զրաւեցաւ ի կենաց և սպանին Հայք զհօրեղբայրն իմ, որք

*) Էլէոնոր թագուհին Կիպրոսի՝ կին Պետրոսի Ա. թագաւորին՝ դաշնակից էր Գենուացւոց յայում մարտի ի վրէժխնդրութիւն մահուան առն իւրոյ։ Ծան. խմբ.

էին ժառանգք թագաւորութեանն Հայոց, մայր իմ էած զիս ընդ իւր այսր առ արքայն Հիւդ՝ իմս ազգակից: Արդ, յամսոյ հետէ առաքեցին առ իս Հայք աղաչելով զիս ի ձեռն հրեշտակաց զի գնացից անդր առնուլ զիմն ժառանգութիւն և ձեռն տալ քրիստոնէութեան. այլ ոչ գնացի ես ի պատճառս պատերազմիս այսորիկ և զի չեղեն կամք արքայի շնորհել ինձ արձակուրդ: Եւ եթէ իցեն ոմանք ի միջի ձերում, տեարք, որք յանդգնիցեն ասել թէ եղէ ես կամակից սպանման արքային Պետրոսի, իմոյ ազգականին, որում ներեսցէ Աստուած, վկայ կոչեմ ինձ զմարդիկ աշխարհիս այսորիկ զի անպարտ եմ ես ամենևին: Եւ եթէ անհաւատ ձեզ բանք իմ թուիցին, աղաչեմ զձեզ խոյզ խնդրոյ առնել. եթէ եղեալ իցէ իմ հաղորդ սպանութեանն որով և է օրինակաւ, թող համարեսցայց ես նենգաժէտ և դատեսցայց իբրև մատնիչ: Իսկ վասն արծաթոյն՝ զոր խնդրիցէք յինէն ի պէտս բանակիդ, գիտէք ապաքէն զի չէ ինձ մարթ տալ. և եթէ էր իմ իսկ բաւականութիւն, ոչ էր ձեզ պարտ պահանջել ինչ յինէն. այլ հարկ ի վերայ կայ ձեզ ամենեցուն լինել ինձ ձեռնտու զի թափեցից զաշխարհն իմ ի թշնամեաց անտի անհաւատից, ընդ որոց լծով անկեալ գտանի մեծաւ մասամբ»: Եւ իբրև լռեաց իշխանն Լևոն ի խօսիցն, եցոյց նոցա թուղթս դրոշմեալս կնքով պապին Ուրբանոսի Ե. *), զորս տուեալ էր նորա առ արքայն Կիպրոսի Պետրոս (Ա.), յորժամ գնաց առ նա յԱւինիոն, և պատուէր տայր Հայոց ընդունել զիշխանն Լևոն ի թագաւոր և ի բնիկ տէր իւրեանց: Եւ իբրև եցոյց նոցա զնամականին, աղաչեաց զթագուհին և զիշխանս Գե-

*) Տես գլ. ԾԶ. և ԾԷ:

նուացւոց արձակել զնա և թոյլ տալ զի գնասցէ յաշխարհն իւր․ և յաւել ևս ասել թէ չկամէր այլ ևս մնալ ի Կիպրոս։

---

## ԳԼՈՒԽ ԿԳ.

Թէ ո՛րպէս առաքանէին Գենուացւոց յետ երկայն քննելոյ թէ Լևոն իշխան անպարտ էր ի սպանմանէ արքային Պետրոսի (Ա.), ծանուցին նմա միաբանութեամբ նախկին Թագուհւոյն զի հատուսցէ վասն բանակին երեսուն և վեց հազար արծաթի դահեկանս Կիպրոսի և ապա մեկնեսցի երբ և կամեսցի։

Յորժամ Թագուհին Էլէոնոր և Գենուացիք յետ հարցափորձի հասու եղեն զի իշխանն Լևոն անպարտ էր յարենէ արքային Պետրոսի (Ա.) և էր նա անմեղ բոլորովիմբ, ետուն նմա պատասխանի ի ձեռն խորհրդականի իւրեանց թէ ոչ ինչ խնդրէին ի նմանէ վասն մահու արքային Պետրոսի, իրազեկ լեալ թէ չգոյր նորա ինչ մեղ․ այլ սակս ծախուց բանակին՝ վճռեալ էր նոցա զի հատուսցէ նա երեսուն և վեց հազար արծաթոյ դահեկանս Կիպրոսի, որ արժեն ինն հազար դուկատս, և թէ այսու օրինակաւ արկեալ էր նոցա հարկս ի վերայ այլոց ազատաց և ասպետաց աշխարհին, իւրաքանչիւր ըստ իւրում աստիճանի․ և ասացին՝ զի եթէ չէր նա բաւական հատուցանել միահաղոյն, հատուսցէ զմի մասն, և վասն միւսոյն տուեալ անքոյթ ապահովութիւն, ելեալ գնասցէ ի Հայաստան երբ և թուեսցի նմա հաճոյ։ Պատասխանի ետ նոցա Լևոն իշխան և ասէ․ «Տեարք, շնորհ ունիմ մեծապէս Թագուհւոյն և իշխանաց Գենուացւոց զի տան ինձ թոյլ գնալ ի Հայաստան․ այլ հատուցանել

զարծաթն ընաւ իւիք ոչ կարեմ։ Բազում և այլ ինչ ասաց նոցա և աղաչեաց իշխանն Լևոն, այլ օգտեցաւ ինչ ոչ, զի ոչ կամէին ունկն դնել նմա։

---

## ԳԼՈՒԽ ԿԴ.

**Թէ ո՛րպէս իշխանն Լևոն առաքեաց առ մայր իւր և առ կինն, որք էին ի Նիկոսիա, զի գտցեն երեսուն և վեց հազար արծաթոյ դահեկանս Կիպրոսի։**

Տեսեալ իշխանին Լևոնի զի չէր նմա հնար պրծանել այլով օրինակաւ, առաքեաց առ տիկին մայրն իւր և առ կինն, որք էին ի Նիկոսիա, զի փոյթ ընդ փոյթ վաճառեսցեն զկահ իւր և զկարասի և զամենայն ինչ զոր ունէր ոսկով և իցէ գնով և բերցեն նմա կամ առաքեսցեն ի Փամագոսա որչափ ինչ լիցի նոցա հայթայթել անդուստ, առ ի հատուցանել զգումարն և գնալ ի Ճայաստան։ Յորժամ տիկնայքն երկոքեան լուան զհրաման իշխանին Լևոնի, ի վաճառ հանին զկարասի նորա. և այնքան մեծ եղև կորուստն և վնաս՝ զի չեղև նոցա ի ձեռս բերել ոչ զքառորդ և ոչ զհինգերորդ մասն արժէից կարասւոյն, այլ հազիւ վեց հազար դահեկանս Կիպրոսի, զոր առեալ բերին առ իշխանն Լևոն ի Փամագոսա։ Որ իբրև ընկալաւ զարծաթն, առեալ տարաւ առ Թագուհին և առ ծովակալն Գենուացւոց և այնչափ ինչ արար ողոքախառն աղաչանօք և ընծայիւք առ նոսա, զի կալան ի հատուցումն զաւատն, զոր կին նորա ունէր ի Կիպրոս, որ արժէր երեսուն հազար դահեկանս արծաթոյ։ Եւ այսպէս հաճեցուցեալ զնոսա իշխանին Լևոնի, եւ մեկնեցաւ ի բերդէն Փամագոսայ։

---

# ԳԼՈՒԽ ԿԵ.

Թէ ո՛րպէս իշխանն Լևոն խնդրեաց ի ծովակալէն Գենուացւոց զի թոյլ տացէ նմա գնալ ի բերդն Կոռիկոսի և մնալ անդ մինչև ցամառն։

Յետ հաստուցմանն կատարելոյ, իշխանն Լևոն մեկնեցաւ ի բերդէն Փամագոստայ, ուր էրն ի պահեստի ընդ այլոց աւագաց, և ետես զի Գենուացիք յաւարի առնուին և յափշտակէին զաւագն և զանաւագ ի Կիպրոս, ի հատուցումն բանակի իւրեանց։ Եւ յերկբայս եղեալ զնոցանէ, բազում աղաչեաց զծովակալն Գենուացւոց զի տացէ նմա թոյլ գնալ յամուրն Կոռիկոսի, որ էր ի ձեռս նոցա, և կալ անդանօր զձմեռն ողջոյն և ի գալ ամառն՝ երթալ յաշխարհն իւր ի Հայաստան։ Եւ զայս խնդրեաց նա զի յապահովի կացցէ ի Գենուացւոց, որք չարիս մեծամեծս անցուցանէին ընդ կղզին Կիպրոսի, և զի լիցի նմա յաճախագոյնս ունել լուր յաշխարհէ անտի իւրմէ։ Խորհուրդ կալաւ ծովակալն ընդ այլոց Գենուացւոց, և զի չգոյր արքային և ոչ մի ազգական կամ բարեկամ մերձաւոր, զոր լինէր նմա մարթ տալ ի պատանդ, առ ի լինել կարող տալ նմա առնել զոր կամէինն, ետուն նմա թոյլ գնալ յամուրն Կոռիկոսի։

Այլ տիկինն Էլէոնոր Արագոնացի, նախկին դշխոյն Կիպրոսի, իբրև լուաւ զայս ամենայն, արգել զերթն Լևոնի և կոչեցեալ զնա առաջի իւր ասէ ցնա այսպէս. «Գիտել գիտեմ զի ամուրն Կոռիկոսի պատկանէր թագաւորութեանն Հայոց և զի մեծագոյն մասն բնակչացն նորա են Հայք*). արդ գնաս դու յերկիրն Հայոց կա-

*) Հայք տիրէին Կոռիկոսի մինչև ց1-ն յունուարի 1363 ամի։ Տես գլ. ԽԸ։ Ծան. Խմբ.

պել զԹագն արքայական. ի կասկածի եմք մեք զի եթէ գնասցես դու ի բերդն, ի ձեռն առնուցուս զիշխանութիւն նորա և կալցես զայն վասն քո. և այսր աղագաւ, ուրեակ, ոչ կամիմք զի երթիցես անդր»: Պատասխանի ետ իշխանն Լևոն և ասէ. «Տիկին, գիտասջիր համատարութեամբ զի ոչ բնաւ արարից զոր ասեսդ. և պատճառ այն իսկ է, զի ամուրն Կոռիկոսի ոչ է օգտակար Թագաւորութեանն Հայոց՝ փոխանակ զի հեռի է ի Սսոյ առաւել քան զաւուրս ութ և ծանրագնոյ լինի պահեստ նորա. և վասն այնորիկ իսկ թողին զնա Թագաւորքն Հայոց: Ու արդարև ասեմ քեզ, տիկին, եթէ ամուրն այն էր ընդ իմով իշխանութեամբ՝ տայի զայն արքայի եթէ կամէր նա ընդունել. և առ այս՝ պատրաստ իսկ եմ տալ քեզ երդումն հաւատարմութեան: Բազում և այլ պատճառս ի մէջ բերէր նա և ցուցանէր, այլ ոչ ինչ հաճեցաւ Թագուհին զի գնասցէ նա յամուրն Կոռիկոսի. այլ այնչափ արար իշխանն Լևոն ընծայիւք և խոստմամբք զի Թագաւորն և Թագուհին հաւանեցան զի գնասցէ նա յամուրն Կոռիկոսի՝ միայն զի երդնուցու չմտանել ի բերդն, այլ բնակեսցի ի դղեակ կղզւոյն Կոռիկոսի, որ է ի վերայ ծովուն. և արար նա այսպէս: Ոչ յառաջ քան զհաւանել Թագուհւոյն և Գենուացւոց շնորհել Լևոնի զոր խնդրէրն, ետ նա Թագուհւոյն զաւատն զայն, զոր կին նորա ունէր ի Կիպրոս, որ բերէր ամ ըստ ամէ հազար դահեկանս արծաթոյ Կիպրացւոց: Բաց անտի՝ խոստացաւ երդմամբ ծովակալին Գենուացւոց զի ի գալն նորա ի Կիպրոս պառաքեսցէ նմա Ֆլորէնս տասն հազար:

## ԳԼՈՒԽ Կ.Զ.

Թէ ո՛րպէս իշխանն Լևոն՝ հանդերձեալ գնալ յամուրն Կոռիկոսի, եւ դնել ի նաւ զկարասի իւր և հալածէ հալ մարդկացն աղաւաղել զայնս. և թէ ո՛րպէս ելին, մայրն իւր և կինն և որդեար մեկնեցան ի Սելևկոյ և հասին ի Կոռիկոս։

Յետ հրաժարելոյ իշխանին Լևոնի յալըքայէ, ի Թագուհւոյն և ի Գենուացւոց, իշխանն Լևոն ետ խնդրել նաւ մի Կոռիկոսի և եդ անդ զմասն մի յորերոյն իւրոյ, զկարասին և Թագ մի ոսկեղէն զարդարեալ ակամբք պատուականօք և մարգարտօք, որ էր կնոջ իւրում, և զամենայն զոր ինչ ունէր, զի առաքեսցէ ի Կոռիկոս առ ահէ Գենուացւոց։ Եւ ուղւոյն եղեալ գնացեալ էր նոցա, եթէ ոչ էր արկեալ խափան ասպետ ոմն, որոյ անուն էր Կարոլոս Հօբերժիէ, յոր վստահացեալ էր իշխանն Լևոն, զի էր նա ի տանէ իւրմէ և ի կալւածէ անտի Տապարի, զոր ինքն իսկ հաստատեալ էր։ Սա ի կողմն դարձեալ Գենուացւոց, ամբաստան լինէր զԿիպրացւոց ի բազում ինչ իրս և առնէր նոցա չարիս որչափ կարէր։ Դէպ եղև նմա գտանել ի տեղւոջն մինչ զկահ և կարասի իշխանին Լևոնի դնէին ի նաւ. և ել նա դաւադրողի, գնաց ձեպ ի ձեպոյ առ Ծովակալն Գենուացւոց և ծանոյց նմա. և Ծովակալն ետ հանել զայն ամենայն ի նաւէ անտի և յինքն էառ զոսկին և զարծաթ և զԹագն ոսկեկուռ։ Եւ եղև իբրև լուաւ զայն Լևոն իշխան, ել գնաց առ Ծովակալն և խնդրեաց զի դարձուսցէ նմա զկարասի իւր և զԹագն և զայլն ամենայն, զորս կորզեալն էր արանց նորա ի նաւէն, յոր հրամայեալ էր նորա բառնալ զայնոսիկ և տանել ի Կոռիկոս.

և ասաց նմա թէ որպէս տրովք, զոր հատուցեալ էր նա թագուհւոյն և նմին իսկ ինքեան, թոյլ տուեալ էր նոցա գնալ ի Կոռիկոս և անցանել անդուստ ի Հայաստան։ Եւ յաւել ևս ասել զի եթէ ոչ դարձուսցեն առ նա զհանդերձս իւր և զայլ կարասին, չունէր նա այլ ինչ որով գոյր նմա հնար կեալ ի Կոռիկոս, ուր հարկ էր նմա մնալ ամիսս չորս, յառաջ քան զգնալ յաշխարհն իւր. և եթէ զրկէր յընչից անտի իւրոց՝ ունէր տառապիլ յանհնարին աղքատութեան։ Եւ թախանձեաց պաղատանօք անդրէն վերստին զի զոր ինչ հանեալ էին ի նաւէ անտի դարձուսցեն առ նա։ Զառաջինն ոչ կամեցաւ ծովակալն կատարել զհայցուածս նորա, այլ իշխանն Լևոն աղաչանօք և խոստմամբք յաջողեցաւ յինքն առնուլ զինչս իւր, բաց ի թագէն ոսկւոյ, զոր մեծաւ դժուարութեամբ վերագնեաց Լևոն երեք հարիւր դուկատից, միով յակընթաւ պակաս, որ պատուականագոյնն էր յակունս պսակին։ Եւ յետ այնորիկ առաքեաց Լևոն զկարասի իւր վաղագոյն որչափ էր հնար և առանց այլ ևս յապաղելոյ ինքն և մայր նորա և կին և որեարն մեկնեցան ի Ֆամագոստայ գնալ ի Կոռիկոս։ Եւ հասին անդր օգնականութեամբն Աստուծոյ յաւուր տօնի Զատկին, որ էր օր երկրորդ ամսեանն Ապրիլի, յամի Տեառն 1374։

---

## ԳԼՈՒԽ ԿԷ.

Թէ որպէս իշխանն Լևոն կամեցաւ կազմել գունդ ասպատակեան զի առցէ զքաղաքն Տարսոնի, զոր ունէր սուլթանն Բաբելոնի, և ոչ կարաց գտանել հնար։

Յորժամ եկն եհաս ի Կոռիկոս Լևոն իշխան, եգիտ զի քաղաքն Տարսոնի էր ի ձեռս սուլթանին Բաբելոնի,

զոր էր մատնեալ նմա առաջին բռնակալ Թագաւորն Հայոց (Կոստանդին Դ.), զի էր քաղաք Թագաւորութեանն։ Եւ ասացաւ Լեւոնի թէ ի քաղաքին գտանէին երեք հարիւր և եթ զօրականք սարակինոսաց (Մամլուքաց), և թէ բնակիչքն համօրէն էին Հայ քրիստոնեայք։ Խորհեցաւ ի միտս իւր կազմել գունդ արանց հազարաց և փորձ փորձել առնուլ զքաղաքն զի կարէր լինել նմա օգտակար յոյժ. փոխանակ զի քաղաքն Տարսոնի կայ առ ափն գետոյն մեծի (Կիւդնոս), ընդ որ նաւք ի ծովէ ելանեն ի վեր, և գնան հասանեն մինչև ցքաղաքն. որով մարթ էր նմա ունել միշտ նպաստ ի Կիպրոսէ և յայլոց իշխանաց քրիստոնէից։ Այլ ի պատճառս մեծամեծ վնասուց, որ հասին նմա ի Կիպրոս, որպէս և առ չկամութեան ծովակալին Գենուացւոց, որ ոչն հաճեցաւ բնաւ երբէք տալ նմա նաւս ընդ արծաթոյ, վասն ուխտի դաշանց վաճառականութեան, զոր ունէին Գենուացիք ընդ սարակինոսս, ոչ կարաց Լեւոն գումարել զգունդն սակաւաձեռն։

---

## ԳԼՈՒԽ ԿԲ.

Թէ ո՛րպէս Լեւոն իշխան առաքեաց լրտեսս ի Տարսոն առ ի գիտել գաղտնապէս ի Հայոց քրիստոնէից բնակչաց քաղաքին Թէ կամիցի՞ն տալ նմա ձեռն օգնականութեան յառնումն քաղաքին։

Եւ եղև իբրև ետես իշխանն Լեւոն զանյաջող ելս կազմելոյ բանակին, ոչ լքաւ ամենևին. այլ առաքեաց լրտեսս ի քաղաքն Տարսոնի հարցանել ի ծածուկ ի Հայոց քրիստոնէից, որ անդն բնակէին, թէ կամիցի՞ն միաբանել ընդ նմա։ Ընդ որ հաճելով նոցա, եղև նմա ուրախութիւն մեծ։

Եւ առաքեաց նա կոչեաց զեբրդակալն Կոռիկոսի գալ խօսել ընդ նմա ի կղզւոջն Կոռիկոսի, յորում բնակէր *)։ Փութացաւ հրամանատարն եկն առ նա վաղվաղակի. և կոչէր անուն նորա պարոն Կոստանդին Երազանացի, ազգաւ Հայ, և յոր վստահ էր մեծապէս Լևոն իշխան։ Եւ յայտնեաց նմա զմիտս իւր թէ որպէս կամէր առնուլ զքաղաքն Տարսոն. և յորդոր եղև նմա օգնել ինքեան նաւուք և զօրօք. և եթէ յաջողեսցէ ինձ Աստուած առնուլ զքաղաքն, տաց քեզ, ասէ, զոր ինչ և խնդրեսցես յինէն։ Եւ հրամանատարն խոստացաւ նմա օգնել նաւուք և զօրու երբ և կամեսցի մեկնիլ։ Ընդ այս խոստումն հրամանատարին Լևոն իշխան եղև նմա շնորհակալ ըստ կարի իւրում և ետ անդէն վաճառել զամենայն անօթս իւր արծաթեղէնս և զմասն ինչ զարդուց կնոջ իւրոյ և զթագն, զոր էր նորա փրկանաւորեալ ի Գենուացւոց երեք հարիւր դուկատից, որպէս ասացաւ։ Եւ առեալ զգինս վաճառելոցն, առաքեաց ի ձեռն հրեշտակաց թուղթս և ընծայս առ արքայն Կիպրոսի, առ թագուհին և առ Գենուացիս, աղաչելով զնոսա առաքել զօրականս բաւականս թուով ի կղզին Կոռիկոսի, զի ընկերասցին նմա ընդ զօրուն իւրոյ մտանել յաշխարհն Հայոց. ըստ որում յանհնարից իսկ էր մտանել անդր առանց բազմութեան զօրաց առ աջի Թուրքաց և սարակինոսաց, որք պահէին զամենայն կիրճս ճանապարհաց՝ ընդ որս հարկ ի վերայ կայր նմա անցանել։ Եւ արքայն Կիպրոսի և թագուհին և Գենուացիք իբրև ընկալան զհրեշտակս Հայոց և զպարգևսն մեծամեծս, ե-

*) Լևոնի խոստացեալ էր բնակել ի դղեկի կղզւոջն Կոռիկոսի։ Տես գլ. ԿՆ։ Ծան. խմբ.

տուն նոցա արս հարիւր թոշակաւորս, էր որ սպառազէն և էր որ աղեղնաւոր. և էր նոցա զօրագլուխ զինակիր ոմն եկեալ յայնմ կուսէ լերանց (ի Դաղլեոյ), որ էր մտեալ ընդ ձեռամբ Դենուացւոց *)։ Իսկ մեկնեցան բանբերքն և զօրականքն Կիպրացիք և հասին ի կղզին Կոռիկոսի և գտին անդ զԼևոն իշխան, որ խնդացեալ ընդ այն մեծապէս՝ արար հանդէս խրախութեան. և առաքեաց զոմանս յարանց անտի իւրոց ի Կոռիկոս խօսել ընդ բնակիչս քաղաքին զի տացեն նմա ձեռն օգնականութեան. և եգիտ անդ արս բարեյօժարս նիտաձիգս և աղեղնաւորս՝ որչափ և կարաց։

---

## ԳԼՈՒԽ ԿԹ.

Թէ ո՛րպէս հրամանատարն Կոռիկոսի՝ դրժելով դաշինն որ ընդ Լևոն իշխան, առաքեաց առ փաղափայերն Տարսոնի զգոյշ կալ ի Լևոնէ։

Իբրև ետես Հրամանատարն Կոռիկոսի զի Լևոն իշխան խնդրեալ էր զօրս ի Կիպրոսէ տանել ընդ իւր յառումն քաղաքին Տարսոնի, խորհեցաւ յանձն իւր թէ. ըստ ուխտի միաբանութեան, զոր ունէր Լևոն ընդ Հայոց քրիստոնէից բնակչաց քաղաքին, կայր նմա տիրել քաղաքին աներկբայապէս, ոգի չար եմուտ ի սիրտ նորա և ստրջացաւ ընդ խոստումն, զոր տուեալ էր Լևոնի, և ոչ յօժարեցաւ տալ նմա նաւս և զօրականս յօգնականութիւն։ Այլ որ չար ևսն է՝ ետ փաղփաղակի հանդերձել

---

*) Նոյն զօրագլխոյն է Մոհիէ Դուլգարդ։ Տես գլ. ՀԲ.

Ծան. խմբ.

նաւ և առաքեաց զայն ի ծածուկ գիշերայն ի Տարսոն առ քաղաքապետն որ էր սարակինոս, ազդ առնելով նմա զգոյշ կալ, զի Լևոն իշխան ունէր ի մտի յարձակել ընդ հուպ ի վերայ քաղաքին։ Ոչ շատացեալ այսուիկ Հրամանատարն յաւել միւս ևս չարութիւն. հանդերձեաց այլ նաւ և առաքեաց ի Կիպրոս առ արքայն և առ ծովակալն Գենուացւոց, կարծեցուցանելով նոցա թէ համախմբումն զօրացն Լևոնի ի կղզւոջ անդ Կոռիկոսի ոչ եթէ ունէր նպատակ գնալ յաշխարհն Հայոց, այլ անցանել գնալ ի Կիպրոս ընդդէմ արքայի և Գենուացւոց և օգնել իշխանին Անտիոքայ, հօրեղբօր արքային Կիպրոսի, զոր կալեալ Գենուացւոց բանտարգել ի Փամագոստայ չարչարեցին յոյժ. և էր իսկ հատեալ զգլուխ նորա՝ եթէ չէր Տեառն զերծուցեալ զնա ի բանտէ անտի կապանաց, որոյ մտեալ ի բերդն Կերինեայ, կալաւ զայն ընդդէմ Գենուացւոց։ Եւ զայս բան Հրամանատարն այն դնէր նենգութեամբ ի վերայ իշխանին Լևոնի, որպէս զի արգելցէ զնա առնուլ զքաղաքն Տարսոնի զի դաշնաւոր էր ընդ սարակինոսս և գտանէր օգնութիւն ի նոցանէ։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

Թէ ո՛րպէս արքայն Կիպրոսի և Գենուացիք բարկացան ի վերայ իշխանին Լևոնի, հաստատելով բանիցն յղելոց առ նոսա ի հրամանատարէն Կոռիկոսի և առաքեցին ի Կոռիկոս ջոկանաւ ձերբակալ առնել զիշխանն Լևոն։

Արդ տրտմեցաւ յոյժ և բարկացաւ Լևոն ընդ դաւաճանութիւն և ընդ մատնութիւն նենգաւոր Հրամանատարին Կոռիկոսի, որ դրժեալ այնքանեաց խոստմանց տուե-

չոց առ նա, իբրև երդմնազանց քրիստոնեայ, ամբաստանեալ ևս էր զնա ստութեամբ առ արքայն Կիպրոսի և առ Գենուացիս, որպէս և ասացաք։ Եւ խռովեցաւ Լևոն իշխան ընդ նենգութիւն հրամանատարին, որով չեղև նմա հնար կազմել զզօրն։ Եւ մինչդեռ նա ընդ այն տանգնապէր, արքայն Կիպրոսի և Գենուացիք ընկալեալ զնենգաժէտ Թուղթս հրամանատարին Կոռիկոսի ընդդէմ իշխանին Լևոնի, հաւատացեալ ստապատիր բանից նորա՝ լցան ցասմամբ և առաքեցին անդէն փաղփաղակի ցռկանաւ մի քաջազէն գաղտնաբար ի կղզին Կոռիկոսի ձերբակալ առնել զիշխանն Լևոն։ Այլ որ ի ցռկանաւի անդ գտանէին արք երկուցեալ, զի էր իշխանն պահպանեալ ի զօրաց, ոչ ումեք իշխեցին ի վեր հանել զբանն, բաց ի նենգաւոր քաղաքապետէն Կոռիկոսի, որ գիտակ իսկ էր այնմ։ Եւ իբրև տեսին թէ չէր նոցա հնար գամագիւտ լինել, դարձան ի Փամագոստա, բերել ընդ իւրեանս զայլ իմն զինեալ ցռկանաւ, զի ի միասին կալեալ զիշխանն Լևոն՝ տարցեն ի Փամագոստա, ի գերութիւն Գենուացւոց։ Իսկ իշխանն Լևոն իբրև եգև իրազեկ ի ձեռն ոմանց ի բարեկամաց, զորս ունէր ի բերդի անդ Կոռիկոսի, ապշեցաւ և տրտմեցաւ յոյժ և ոչ գիտէր զինչ առնել. և չէր ինչ զարմանք, քանզի տեսանէր քաջ զի չէր նմա մարթ գնալ յաշխարհն Հայոց սակաւաձեռն գնդաւն, որով չէր իսկ հնար զդէմ ունել թշնամեաց իւրոց, սարակինոսացն և Թուրքաց, որք պահէին զգուշութեամբ զանցս ճանապարհաց, իրազեկ եղեալ գալստեան նորա ի թղթոց անտի դաւաճան հրամանատարին Կոռիկոսի. և դեռ ևս հազիւ էին նորա երիվարք քսան և հինգ զօրս գնեալն էր։ Այլ քանզի ճանաչէր իսկ քաջ զանցս չարեաց, զոր անցուցանէին Գենուացիք ընդ կա-

լանաւորս իւրեանց, նա մանաւանդ ընդ իշխանս մերձաւորս արքային Կիպրոսի, երկեաւ յոյժ անկանել ի ձեռս նոցա միւսանգամ։ Եւ ասէր նա այսպէս. «Սիրելի է ինձ մեռանել փառօք, քան կեալ անարգութեամբ։ Եւ առ այս՝ լաւ ևս է արկանել զանձն իմ ի վտանգս երթալ առնուլ զժառանգութիւն իմ, պատերազմել անվեհեր քաջութեամբ ընդդէմ թշնամեացն Քրիստոսի և իմոց, և անկանել ի մարտի արիաբար, ի պաշտպանութիւն Հաւատոյ և ի ստացումն ժառանգութեան իմոյ քան մատնիլ ի ձեռս Գենուացւոց և ի տառապանս բանտի զուր տարապարտուց»։

## ԳԼՈՒԽ ՀԸ.

Թէ ո՛րպէս իշխանն Լեւոն առաքեաց ասել առ հրամանատարն Կոռիկոսի թէ կամէր երթալ յաշխարհն իւր, և աղաչէր զնա զի թողցէ նմա ի վերջոյ նաւաւ փախուն անցեալ ելանելոյ ի ի ցամաք։

Իշխանն Լեւոն յապաւեալ ի խորհուրդ մտացն, առաքեաց առ հրամանատարն Կոռիկոսի զի հաճեսցի շնորհել նմա նաւս ինչ ի վարձու՝ զի ի նմին իսկ յաւուր կամէր մեկնել երթալ ի հայրենիս իւր ի Հայաստան։ Թէպէտև նուազունք էին զօրք իւր և երիվարք, բայց և այնպէս՝ կամէր ձեռն ի գործ առնել յԱստուած ապաստան։ Այլ հրամանատարն նենգաւոր՝ որ մնայրն գալըժտեան երկուց ցռկանաւուց, զորս ունէին առաքել Գենուացիք առ ի ձերբակալ առնել զիշխանն Լեւոն, ոչ հաճեցաւ լնուլ զխնդիր նորա այլ մերժեաց ամենևիմբ։ Յայնժամ իշխանն Լեւոն առաքեաց գաղտ առ ոմանս

ի քաղաքայնոց Կուրիկոսի և առ եպիսկոպոսն՝ որ Հայ էր ազգաւ, և առ ոմանս ի ժողովրդականաց անտի զի եկեսցեն առ նա ի խօսել։ Եւ փութացան նոքա գալ, զի սիրելի էր նոցա իշխանն և ցանկային յոյժ յաջողութեան նորա։ Եւ իբրև եկին՝ եցոյց նոցա իշխանն Լևոն թէ զիա՞րդ Հրամանաւ պապին եկեալ էր նորա անդր զի մնացէ ի Հայաստան առ ի ստանալ զժառանգութիւն իւր և թիկունս կալ քրիստոնէութեան և պաշտպանել սուրբ Հաւատոյ. և թէ խորհէր մեկնել փութանակի բայց Հրամանատար նոցա ոչ Հաւանէր տալ նմա ի վարձու ոչ նաւս և ոչ արս զի անցեալ գնասցէ։ Զայս ասելով աղաչեաց զնոսա Թախանձանօք, իբրև զբարեկամս սիրելիս, զի խնդրեսցեն ի Հրամանատարէն նաւս քանի մի առ ի չուել երթալ յաշխարհն իւր։ Եւ նոցա ընկալեալ յօժարութեամբ զբանս իշխանին, չոգան վաղվաղակի առ քաղաքապետն իւրեանց, որ թէպէտև էր այր խիստ և անողոք, սակայն առ բազում պաղատանաց և խոստմանց նոցա, հուսկ ուրեմն Հաճեցաւ տալ իշխանին Լևոնի նաւս ինչ առ ի մեկնել. այլ այսու և եթ դաշամբ՝ զի մի՛ գնասցէ ի քաղաքն Տարսոն, ոչ յարձակեսցի ի վերայ նորա և ոչ առցէ զայն. և վասն այսր երդնուցու ի սուրբ Աւետարանն Քրիստոսի։ Եւ լուեալ նոցա զբանս զայսոսիկ ի Հրամանատարէ անտի, ընթացան վաղվաղակի ի նաւահանգիստն, ուրանօր գտին նաւ մի և եթ, զոր մատուցին առ իշխանն Լևոն, և ասացին թէ Հրաման էր քաղաքապետին առնուլ նաւս որչափ ինչ պիտոյ էր, եթէ միայն երդնուցու ի սուրբ Աւետարանն չերթալ ի Տարսոն յառնուլ զնա և կամ յարձակել ի վերայ նորա. և ի վաղիւ անդր տացեն նմա պատրաստել նաւս որչափ ինչ պիտոյ իցեն նմա. այլ ի ժամուն ոչ գտին բայց զմի միայն զնաւ։ Շնորհ յոյժ կա-

լաւ նոցա իշխանն Լևոն և երդուաւ զերդումն ըստ ա-
սացելոյն և եառ զնաւն. զի քաջ իսկ տեսանէր թէ այ-
լով իւիք օրինակաւ չէր նմա հնար մեկնել անտի։

## ԳԼՈՒԽ ՀԲ.

**Թէ որպէս իշխանն Լևոն հրամայեաց անկանել ի լեռ և մեկ-
նեցաւ գաղտ ի գիշերին հանդերձ սպասիւք ընտրելովք, զի մի
էլեալ հասեալ յանկարծակի երկու նաւացն Պիզանացւոց ի նղղէ
անդր Սոսէկաւէ՝ կալցեն զնա և տարեալ արկցեն զնա ի բանդ,
ի Փամագոստա։**

Ու իբրև ընկալաւ իշխանն Լևոն զնաւն զայն, ոչ
կամեցաւ մնալ առ վաղիւն, այլ ի նմին իսկ ի գիշերին
եմոյծ անդր զմայր իւր և զկին և զոմանս յարանց անտի
իւրոց և յղեաց զնոսա ի բերդն Կոռիկոսի կալ մնալ ան-
դէն յապահովի. և հրամայեաց նոցա մեկնել անտի յայս
ինչ աւուր և երթալ յայս նիշ տեղի և սպասել անդ մին-
չև առաքեսցէ առնուլ զնոսա, ի ժամանել իւրում յեր-
կիր իւր։ Նմանս հրաման ետ Սոհիէ Պուլկարտի՝ զի ի
վաղիւ անդր ի կազմել նաւացն մուծցէ ի նոսա քսան և
հինգ աղեղնաւորս յարանց անտի իւրոց և զքսան և
հինգ երիվարսն *) և ելցեն ի չու զհետ իւր. զի ինքն
ունէր ի մտի ուղւոյ լինել ի նմին իսկ ի գիշերին։ Ու
կարգեալ զայս ամենայն այսպէս և ցուցեալ նոցա զխոր-
հուրդս մտաց իւրոց, եմուտ ինքն ի նաւ անդր ի ծա-
ծուկ, զհասարակ գիշերաւ, առեալ ընդ իւր համհարզս
չորիս, և մեկնեցաւ անտի քերելով զեզերբք ծովուն ի
կողմն կոյս գետոյն Ադանայ. և հեռացան ի Կոռիկոսէ

*) Տես գլ. Հ։

փարախս իբրև երեսուն, զի մի գուցէ երկոքին ցռկանաւքն Գենուացւոց ի վերայ հասեալ յանկարծակի զիշերայն կալցեն զնա և գերի վարեսցեն ի Փամագոստա։ Եւ ի վաղիւ անդր Սոհիէ Գուլկարտ պատրաստեաց զնաւկնեարն և եմոյծ անդր զքսան և հինգ երիվարս և զքսան և հինգ աղեղնաւորսն և զմի մասն ուխտոյն և մեկնեցաւ անտի գնալով առ եզերբ ծովուն ի կողմն գետոյն Եդանայ, մինչև եկեալ եհաս ի տեղին՝ ուր էին իշխանն Լևոն, և կոչէր Գոնդաւլաս, մերձ ի Ս. Կիպրիանոս, յերրորդ պահու առաւօտուն (յինններորդ ժամու)։ Եւ ելեալ ի ցամաք հանեին և զձիանն և հանդերձ անդէն մինչև ցերեկոյ։ Եւ յորժամ զովացաւ օրն ի տապոյն, իշխանն Լևոն և որք ընդ նմայն էին՝ կնքեալ զերեսս իւրեանց նշանաւ խաչին, յանձն արարին զանձինս ի ձեռս Աստուծոյ. և աշտանակեալ ի քսան և հինգ երիվարսն, ի չու անկան հանդերձ քսան և հինգ աղեղնաւորօքն՝ որ երթային հետի, և երկու առաջնորդօքն և գնացին մինչև եկն եհաս գիշեր։ Յայնժամ առաջնորդքն երկոքին ասեն ցիշխանն Լևոն թէ հարկ ի վերայ կայր ծածկընթացս լինել, զի ի ճանապարհի անդ գոյին կիրճք բազմավտանգք՝ զորս պահէին Թուրքք և սարակինոսք, որ քաջ իսկ տեղեակ էին գալստեան նորա. և լաւագոյն ևս էր անցանել ընդ այնս ի գիշերի։ Փութացաւ իշխանն Լևոն և յառաջ խաղայր երագագոյն ճեպ զճեպի. այլ տեսեալ զի աղեղնաւորքն, որք հետիոտս գնային՝ ոչ կարէին ժամանել զհետ նորա, ետ նոցա զմին յերկուց առաջնորդաց զի տարցէ զնոսա ընդ ճանապարհ լեռնակողմանն։ Եւ ձիավարեցին այսպէս արշաւասոյր երկուս տիւս և երկուս գիշերս առանց իջանելոյ յերիվարաց. այլ երկուք ի նոցանէ մեռան պարտասեալք յերկարութենէ ճանապար-

հին և տագնապեալք յանհնարին տօթոյն։ Համայն և այնպէս, շնորհիւն Աստուծոյ, սողոսկեցան ի մէջ ոյ թշնամեացն, որք կալեալ ունէին զանցս ճանապարհացն, առանց կրելոյ վնասս ինչ կամ զնաս, մինչև եկեալ հասին մերձ ի քաղաքն Սիս, իբրև երիւք փարսախօք, և չև էր աւուրն լուսացեալ։ Եւ հանգեան անդ ինքեանք և երիվարք իւրեանց զի էին ամենքին խոնջք և վաստակք։ Եւ իբրև այգ եղև, առաքեաց իշխանն Լևոն հրեշտակս երկուս ձիախաղացս առ Թագուհին և առ ժողովուրդ քաղաքին, ազդ առնել նոցա զգալուստ իւր։

---

## ԳԼՈՒԽ ՀԳ.

Թէ ո՛րպէս բնակիչք քաղաքին Սսոյ ելին ընդառաջ իշխանին Լևոնի ի տօն ցնծութեան և խնդութեանն բազմաւ և փառօք բազմօք ընկալան զնա եկեալ զկնի որ էր ի տերեանց։

Եւ մեծապէս առլցան Հայք խնդութեամբ բազմաւ և արարին տօն ցնծութեան ընդ գալուստ իշխանին Լևոնի, բնիկ տեառն իւրեանց, և զլոհ եառուն ի քաղաքէն, էր՝ որ զինեալ և էր՝ որ անզէն, կէսք ի ձի վերելակեալ և այլք հետիոտս ընթանալով, արք և կանայք, մեծամեծք և փոքունք և ընդ նոսա կաթողիկոսն իւրեանց (Պօղոս Ա.— 1374—1378), զոր ունէին իբրև զպապն աշխարհին, և համօրէն եպիսկոպոսունք և վարդապետք, կազմեալ թափօր մեծահանդէս, ընդ որ և բազմութիւն երաժշտաց պէս պէս նուագարանօք։ Եւ եկին մինչև ի վայր անդր, յորում զտեղի առեալ կայր իշխանն Լևոն, որոյ տեսեալ զնոսա՝ փութացաւ եւ ի նիւս երիվարին, նոյնպէս

և ամենեքին որ ընդ նմայն էին, և եդեալ զսաղաւարտսն ի գլուխս ընդառաջ եղեն նոցա։

Եւ եղև իբրև մերձեցաւ Լևոն իշխան, Հայորեարն խոնարհեալ երկիր պագին նմա և ընկալան ցնծութեամբ և փառօք բազմօք. և ընդ մեծարանացն մատուցելոց՝ կամէին առժամայն տալ նմա և ուխտս հաւատարմութեան, յառաջ քան զմտանել նորա ի քաղաք անդր, զի մի յերկբայս ինչ լինիցի զնոցանէ։ Այլ իշխանն Լևոն շնորհս կալեալ նոցա մեծապէս, հրամայեաց նոցա զի սպասեսցեն մինչև եկեալ գայցէ ի քաղաք անդր և ընկալցի անդանօր զուխտսն կամակար յօժարութեամբ։ Յայնժամ մեծաւ հանդիսիւ առեալ ածին զնա մինչև ի ներքս ի քաղաքն ի Սիս։

Ապաքէն սքանչելիք իմն համարելի է յԱստուծոյ զի իշխանն Լևոն այդքանեաւ սակաւաձեռն գնդաւ կարաց գալ ի քաղաքն Սիս։ Քանզի թշնամիքն հաւատոյ, Թուրքք և սարակինոսք՝ որ տեղեակ էին գալստեան նորա, պահէին զամենայն անցս ճանապարհաց և տեսին զնա մինչդեռ անցանէր և պնդեցան իսկ զհետ նորա, այլ ոչ իշխեցին յարձակիլ ի նա, թէպէտև քսան և հինգ և եթ ունէր նա ընդ ինքեան հեծեալս։ Եւ եթէ ամենակարող զօրութիւն Աջոյ Բարձրելոյն ոչ հասանէր նմա ի թիկունս օգնականութեան, չէր նմա հնար սողոսկել անցանել ի միջոյ նոցա, թէպէտև լինէին զնովաւ արք երկու հազարք սպառազէնք։ Վասն որոյ և Հայք ոչ հաւատային զի կարասցէ իշխանն Լևոն սպրդել անցանել ընդ կիրճս ճանապարհին և գալ մտանել ողջամբ ի Հայաստան այնքան սակաւաթիւ արամբք. և յանկարելեաց սակի թուէր այն յաչս նոցա։ Այլ անհնարինքն ի մարդկանէ հնարաւորք են Աստուծոյ։

Սակայն աներկբայ իմն է և այս զի եթէ իշխանն Լևոն ոչ էր եկեալ հասեալ ի Սիս յաւուրն յայնմիկ, Հայք եղեալ էին ի մտի սպանանել զչորեսին խնամակալսն, որք կառավարէին զերկիրն *) մինչև ի գալուստ նորա, և մատնել զքաղաքն ի ձեռս սուլթանին Բաբելոնի։ Այլ լուեալ զգալ ժամանել նորա յեղակարծում ժամանակի, չեղև նոցա մարթ ի գլուխ հանել զչար խորհուրդս մտաց իւրեանց։ Եւ այսպէս, շնորհիւն Աստուծոյ, զերծաւ քաղաքն որպէս և հայ քրիստոնեայք, որք ի տանջանս մատնելոց էին ի սարակինոսաց անտի և թերևս բազմաց իսկ ի նոցանէ առաջի կայր անկանել ի հաւատոցն Քրիստոսի։ Եւ ահա այս ամենայն չարիք խափանեցան գալստեամբ իշխանին Լևոնի։

---

## ԳԼՈՒԽ ՀԴ.

Թէ որպէս իշխանն Լևոն առաքեաց ի խնդիր մեր Եւրոպ և գնացն ի տեղին, ուր սովորեալ էր նոցա կալ մնալ նմա։

Յաւուր յորում եհաս իշխանն Լևոն ի քաղաքն Սիս, հանգեաւ ինքն և որ ընդ նմայն էին, զի կարի իսկ պէտս ունէին հանգստեան գոլով խոնջեալք և պարտասեալք ամենեքին։ Եւ ի վաղիւ անդր ընդ առաւօտն ընկալաւ զմեծարանս ողջունի և զուխտ հաւատարմութեան մեծաց և փոքունց առ հասարակ։ Եւ յաւուրն չորրորդի արար գաղտ ժողով արանց հարիւր և յիսուն սպառազինաց ի Հայոց անտի և աղաչեաց զնոսա և պատուիրեաց բանիւ բերանոյ, զի երթիցեն առ ծովեզերբն ընդ

---

*) Տես գլ. ԿԹ։

գետն Ադանայ և ածցեն առ նա զմայր իւր և զկին և զմարդիկն, զորս գտցեն յայնմ տեղւոջ։ Եւ յանձն արար արանցն փութալ ճեպել, որպէս զի մի՛ գուցէ թշնամիքն հաւատոյ տեսցեն զկանայսն և զորս ընդ նոսայն էին։ Եւ նոքա մտադիւր կատարեցին զհրամանս նորա աներկիւղք ամենեքին ի թշնամեացն հաւատոյ. այնքան պնդեալք և զօրացեալք էին նոքա գալստեամբ իշխանին Լևոնի, մինչդեռ յառաջագոյն չիշխէին բնաւ ելանել ի քաղաքէն առ ահի։

Արդ ուղղեալ լեալ նոցա ի գիշերի, ձիարշաւ ընթացան համարձակ և անվեհեր, վառեալք պնդակազմ, և եկեալ հասին վաղ ընդ փոյթ ի տեղի անդր, զոր ասաց նոցա իշխանն Լևոն. և գտին անդ զտիկնայսն և զորեար նոցա և այս ոմանս սպառազէնս եկեալս յայնմ կուսէ լերանց, յաշխարհէն որ կոչի Գաղղիա, յորոց կէսք էին վարձկանք իշխանին Լևոնի և կէսքն ի պաշտպանութիւն հաւատոյ և այլք՝ յուսով ակնկալութեան պարգևաց յիշխանէն։ Եւ էր տիկնանցն և որերոյ նոցա մնացեալ անդ զերիս տիւս և զերիս գիշերս։ Եւ Ֆայք, որք եկեալ էին՝ իբրև տեսին զնոսա, մեծարեցին պատուով յարգանաց իբրև զտիկնայս և իշխանուհիս իւրեանց և ըստ հրամանաց նոցա իջին յերիվարացն առ սակաւ մի կազդուրեալ ոգի առնուլ։ Եւ յերեկոյի պահուն հարին զփողսն և ի ձի աշտանակեցին։ Այլ քանզի Ֆայք ոչ սիրեցին երբէք զզինուորս, որ յայնմ կուսէ լերանց, և ոչ կամէին առնել նոցա բարիս, ոչ յօժարեցան տալ երիվարս արանցն այնոցիկ, որ էին ընդ տիկնայսն, թէպէտև բազում աղաչեցին զնոսա իշխանուհիքն և ցուցին ևս զնամականի իշխանին Լևոնի, որ պատուիրէր նոցա զայն առնել։ Սակայն ոչ կամեցան անսալ բանիցն

և ոչ խառն նոցա երիվարս, բայց միայն այնոցիկ, որք հատուցինն զուկատս ոսկւոյ, իւրաքանչիւր ըստ իւրում կարի. և զայն ևս՝ հազիւ հազ և առ ցանկութեան և եթ ոսկւոյ: Իսկ մնացելոցն տեսեալ թէ չեղև նոցա ունել երիվարս և չէր իսկ մարթ գնալ ընդ նոսա ի հետիոտս ընդ երկայն և վտանգալից ճանապարհն, չոգան և մտին ի նաւսն և մեկնեցան, որք և ընտիրքն էին գլնդին. և մնացին սակաւք ոմանք անզօրք, որք գնացին հետի զկնի հեծելոցն: Եւ տիկնայքն ելին ի չու ընդ արուձին Հայոց, ձիարձակ արշաւեալ զերիս տիւս և զերիս գիշերս, և ոչ իջին յերիվարաց մինչև եկեալ հասին ի բերդաքաղաքն Հայոց Անարզաբա: Եւ բնակիչք տեղւոյն ընկալան զնոսա մեծահանդէս ցնծութեամբ և առաքեցին նոյնժամայն հետ ընդ հետ սուրհանդակ ձիախաղաց ի քաղաքն Սիս աւետիս տալ իշխանին Լևոնի եթէ ողջամբ ժամանեալ էր տիկնանցն և ուղեկցաց նոցա ի բերդաքաղաք անդր: Զոր լուեալ Լևոնի գոհացաւ զՏեառնէ և պատուիրեաց նոցա զի փութասցին մեկնել վաղվաղակի յԱնարզաբայ և եկեսցեն ի Սիս, որ մերձ էր կիսաւուր ճանապարհաւ: Եւ ելին տիկնայքն և որեարն և մեկնեցան ի բերդաքաղաքէն Անարզաբայ ի միջօրէի գնալ հասանել ի քաղաքն ի Սիս:

---

## ԳԼՈՒԽ ՀԵ.

Թէ որպէս տիկնայքն ժամանեցին ի քաղաքն Սիս և ընկալեալ եղեն մեծաւ հանդիսիւ և լուսաւորութեամբ:

Մինչ դեռ ևս հեռի էին ի քաղաքէն Սսոյ փարսախաւ միով, առաքեցին տիկնայքն զեկուցանել իշխանին Լևոնի.

և ետ նա հնչեցուցանել զփողն զինուորական, ագաւ զզէն և սպառազինեաց զզօրս իւր գաղղիացիս և զհայս, որ առ նմա կային, և փութացաւ ընդ առաջ: Եւ ամենայն ժողովուրդն երթայր զհետ նորա խուռն բազմութեամբ և այր իւրաքանչիւր ունէր ջահ ի ձեռին: Եւ եղև իբրև հասին ի հանդրուանս անդ տիկնանցն, ընկալան զնոսա ի հանդէս բերկրալից ցնծութեան: Եւ յերեկոյանալ անդ աւուրն՝ լուցին զջահս իւրեանց. և այնքան մեծ էր ամբոխն զի լնոյր իսկ զքաղաքն ի ծագաց մինչև ի ծագս, որոյ չափ տարածութեանն էր փարսախ մի: Եւ խնդացին յոյժ և արարին տօնս ուրախութեան ընդ գալուստ իշխանուհեացն: Եւ արքայ Լևոն գոհացաւ զՏեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ զի ողջ և անվտանգ հասոյց զնոսա անդր: Եւ զարմանալի իմն էր ապաքէն տեսանել զի տիկնայքն փափկասունք տարան անվեհեր վշտաց ճանապարհին, հեծեալ յերիվար արշաւասոյր. այլ շնորհիւն Աստուծոյ քաջադոյնս ձիարկեցին նոքա քան զբազումս յարանց. նա մանաւանդ տիկինն Մարգարիտ Սուասոն, կին իշխանին Լևոնի, որ էրն յղի ամսոց ութից, այնքան կորովաբար ձիավարեաց՝ մինչև սքանչանալ ամենեցուն:

Եւ իբրև ժամանեցին տիկնայքն ի քաղաքն Սիս, շնորհ կալաւ իշխանն Լևոն ամենեցուն առ հասարակ մեծամեծաց և փոքունց որ վաստակ եղեալ էին ածել զնոսա:

## ԳԼՈՒԽ ՀԶ.

**Թէ ո՛րպէս խնամակալքն չորեքին մատուցին առ իշխանն Լեւոն զգանձն արքունի, զոր ունէին ի պահեստի, և կամեցան տալ զհամար ծախուցն, զոր արարեալ էր նոցա վասն աշխարհին։**

Եւ ի վաղիւ անդր խնամակալքն չորեքին, որք կալեալ ունէին զվարչութիւն երկրին *), եկին մատուցին առ իշխանն Լեւոն զգանձն արքունի, զոր պահէին, և կամեցան տալ զհամար ծախուցն, զոր արարեալ էր նոցա վասն աշխարհին ի ժամանակի անդ վարչութեան իւրեանց։ Ընկալաւ զնոսա իշխանն Լեւոն և ետ բանալ առաջի իւր զգանձն և եգիտ զայն յոյժ նուազ քան զոր ակն ունէր գտանել. ետ ևս ի քնին առնուլ և ճշգրտել զհամար ծախուցն, զոր արարեալ էին ի պէտս աշխարհին, և եգիտ զայն տարապայման և անճահ։ Եւ ի միտ էառ իշխանն Լեւոն թէ խնամակալքն չորեքին, որք ունէին ի պահեստի զգանձն, կողոպտեալ էին զայն և բարձեալ անտի. որ ինչ հաճոյ թուեցեալ էր յաչս նոցա։ Եւ ասէ. «Տեարք և տիկնայք, քաջ իսկ գիտէք դուք զի պատգամաւորօք և նամականեաւ զոր յղեցիք առ մեզ ի Կիպրոս կղզի, ծանուցիք մեզ թէ վախճանելոյ արքային էր գանձ բազում. յայնժամ առաքեցաք մեք պատուէր առ ձեզ չորեսին՝ պահել զայդ, կնքեալ մատանեաւ ձերով, մինչ ի գալ հասանել մեր այսր։ Սակայն սակաւ ինչ յոյժ գտանեմք ի սմա. և զծախուց համար, զոր տուաք մեք առնուլ ի քնին, գտանեմք չափազանց և անճահ։ Արդ խնդրեմք ի ձէնջ դարձուցանել առ մեզ զգանձն լռելեայն, մինչ չև իցէ լուեալ ժողովրդեանն, զի

*) Տես գլ. ԿԹ։

ոչ ի պատիւ ձեր է այն։ Զի քաջ իսկ ծանօթ է ձեզ թէ ոչ եկաք մեք վասն գանձուն, այլ առ ի ստանալ զժառանգութիւն մեր սեպհական և ըստ ձեռին բաւականի պաշտպան կալ կաթողիկեայ հաւատոյ և քրիստոնէութեան։ Այլ եթէ դուք և կամ ոմանք ի ձէնջ խորհեցիք ինչ ի գանձուէ աստի յայսմանէ, զոլով յերկրբայս թէ լիցի մեզ արդեօք հնար գալ մտանել յաշխարհ այսր, աղէ՛, հատուսջի՛ք զայն։ Եւ մեք խոստանամք զի զոր ունիմքս և զոր ինչ տալոց էք դուք, ի վար արկցուք ի փառս Տեառն Աստուծոյ և ի սպաս պաշտաման նորա և յօգուտ աշխարհիդ։ Արդ խորհեցարո՛ւք ընդ միմեանս և որ ոք ի ձէնջ դարձուսցէ առ մեզ զոր ինչ առեալն իցէ ի գանձէն, այնչափ ինչ ի մէնջ գտցէ նա շնորհս մինչև շատասցի անձն նորա։ Ապ՚ եթէ ոչ՝ գիտուն լիցի ձեզ, զի վարեսցուք յառաջ զգործն և զոր ինչ պարտ ի վերայ կայցէ մեզ առնել՝ արասցուք ստուգութեամբ»։

---

## ԳԼՈՒԽ ՀԵ:

Յաղագս պատասխանւոյն զոր խնամակալքն չորեքեան ետուն իշխանին Լևոնի զարքունի գանձուցն։

Խնամակալքն չորեքին, տիկնայքն երկոքին ասեմ և ասպետքն երկոքին, որոց կողոպտեալ էր զգանձն արքունի, իբրև լուան զբանս իշխանին Լևոնի, պատասխանի ետուն նմա և ասեն. «Բա՛ւ լիցի, վեհափառ Տէր, ո՛չ է մեր խորեալ և ոչ մի ինչ ի գանձէն արքունի ի շահ անձանց։ Արդարև շատ ինչ գտաք մեք ի գանձու անդ արքային վախճանելոյ. այլ քանզի Տէրութիւն ձեր յապաղեաց յոյժ գալ հասանել այսր, եղև ոչ սակաւ հերձուած հակառա-

կուլթեան ի մեզ մինչև գալ սարակինոսաց ի վերայ մեր և պաշարել զմեզ. յայնժամ և մեր ստիպեալ ի հարկէ՝ բաշխեցաք առատապէս, ոչ միայն նոցա այլ և Հայոց ոմանց զի թողցեն զմեզ յանդորրու. և նուազեաց գանձն այսու աղագաւ»։ Եւ զայս ասելով ի չքմեղս եղեն խնամակալքն. այլ իշխանն Լեւոն ոչ շատացեալ այնու, ի ձեռն բարեկամաց նոցա և խոստովանահայրցն եւ գաղտնապէս խօսել ընդ նոսա ողոք բանիւք, այլ ոչինչ օգտեցաւ զի ոչ առին յանձն դարձուցանել յետս զկորուսեալ գանձուն արքունի։

---

## ԳԼՈՒԽ ՀԸ.

**Թէ ո՛րպէս իշխանն Լեւոն եւս գումարել է ժողով զեպիսկոպոսունս, զվարդապետս, զաւագերէցս և զքահանայս և զժողովուրդն համօրէն և տրտունջ կալեալ զզօրեցունց խնամակալացն զի ոչ կամէին տալ արդարութեամբ զհամար արքայական գանձուն, զոր առնէին ի պահեստի։**

Եւ տեսեալ իշխանին Լեւոնի զի խնամակալքն չորեքին ոչ կամէին յօժարութեամբ յետս դարձուցանել զոր ինչ խորեալ էր նոցա ի գանձէն արքունի և զի անընդունելի ևս էր ջատագովութիւնն զոր տային զանձանց, եւ յաւուր միում գումարել ի ժողով ի դահլիճն արքունական զեպիսկոպոսունս և զվարդապետս աշխարհին, զաւագանին և զասպետս և զտիկնայս և զժողովուրդն առհասարակ և ասէ ցնոսա. «Տեարք, մեծամեծք և կրօնաւորք, զայս ինչ գիտէք հաւաստեաւ զի, շնորհիւն Աստուծոյ, էաք մեք ի կղզւոջ անդ Կիպրոսի ընդ թագաւորին մերում ազգականի ի բարօրութեան և ի փառս

պատուոյ և ոչ կարօտէաք և ոչ իւիք գալ այսր։ Այլ դուք ամենեքին միահամուռ ելեալ մեզ ի խնդիր, ի բազում նուէրս առաքեցիք առ մեզ նամականի և հրեշտակս, արկանելով մեզ աղաչանս գալ ժառանգել զիրաւունս մեր զհայրենի և պաշտպան կալ կաթողիկեայ հաւատոյ և քրիստոնէութեան, ըստ մերում կարի. և պարգևեցիք մեզ զմեծափարթամ գանձ նախորդացն մերոց, որոց թողցէ Տէր զյանցանս. և բաց ի գանձուէն արքունի նաև հարիւր հազար դուկատս ոսկւոյ։ Այլ սակայն և ոչ մի ինչ յայնպիսեաց եղև մեզ գտանել աստանօր. գիտասջիք ապաքէն զի գանձն պետութեան կողոպտեալ է գրեաթէ բոլորովիմբ. քանզի թագն միայն արքայական և դուզնաքեայ մասն գանձուն մատուցան մեզ։ Ոչ զանխուլ ինչ է ի ձէնջ զի ամենայն սակք և հարք մտից արքունականք անկեալ կան ի ձեռս թշնամեաց և ոչ գոյ և ոչ մի հասոյթ, յորմէ լիցի լցուցանել զծախս երկրին և պաշտպանել նմա, առ որ պէտք են բազում արծաթոյ։ Արդ աղաչեմք զձեզ թախանձանօք գտանել զելս իրացն և դարձուցանել առ մեզ զգոյսն արքունի։ Անկամք լսել զձերդ խորհուրդ. ապա թէ ոչ՝ մի՛ ոք ի ձէնջ լիցի մեզ մեղադիր եթէ բուռն հարցուք գործել ըստ իրաւանց արդարութեան։

---

## ԳԼՈՒԽ ՀԹ.

Յաղագս պատասխանւոյն, զոր եկեղեցականքն և ժողովրդականք տուաքին առ վեհապետն Ղևոն. և ընդ որպէս պատրոն Վասակ՝ մին ի խնամակալաց անոյն, արկեալ ի բանդ։

Իբրև լուան եպիսկոպոսունք, ազատանին և ժողովուրդն Հայոց զբանս իշխանին Լևոնի, յոտն կացին առ

համարակ ամենեքին և աղաչէին զնա զի փոյթ յանձին կալցի խնամով յոյժ և խնդիր առնել թէ ո՞ ով գողացեալ իցէ արդեօք զգանձն արքունի, զորմէ կայր կախեալ բարօրութիւն աշխարհին և փրկութիւն. և ասացին թէ ոչ էր հնար հաւատալ զի նոքա, որոց կնքեալ իցէ իւրեանց իսկ մատանեաւ զգանձն՝ չգիտիցեն թէ զի՞նչ եղեալ էր այն։ Եւ յաւելեալ ասէին. «վասն այսորիկ իսկ տամք քեզ խորհուրդ զի ձերբակալ արասցես զպարոն Վասիլ՝ զորդի պարոն Թորոսի, զմին ի չորից անդի խնամակալաց, և արկցես զնա ի բանտ և հարցաքննեսցես զնա թէ զի՞նչ եղև գանձն արքունի. և վստահ իսկ եմք մեք թէ ի ձեռն նորա գայցէ ի յայտ ճշմարտութիւնն»։ Յայնժամ իշխանն Լևոն ասէ ցպարոն Վասիլ. «Իշխա՛ն, տուր պատասխանի զորմէ ամբաստանեն դոքա զքէն»։ Յոտն եկաց անդէն պարոն Վասիլ և ետ պատասխանի. «Վեհա՜զն Տէր, քաւ լիցի քեզ լսել արանցդ այդոցիկ զի ոչ ճշմարիտ ինչ է նոցայն ամբաստանութիւն, վկայ է Աստուած։ Աւասիկ առաջի Տէրութեանդ քո և առաջի արքունական ատենիդ խոստանամ և տամ ես թուղթ գրեալ իմով իսկ ձեռամբ, որպէս սովորութիւն է յերկրիդ, զի եթէ յօրէ աստի մինչև ցամս հարիւր գտցի ինչ առ իս և դանկ մի խորեալ ի գանձուէդ, թող համարեսցայց ես նենգաւոր և մատնիչ և կախեսցայց ես զպարանոցէ և ամենայն որ ինչ իմ է՝ ձե՜զ եղիցի»։ Եւ գրեալ անդէն վաղվաղակի զայն ձև օրինակի զթուղթն մատոյց առ իշխանն Լևոն առաջի ատենին։ Եւ եղև իբրև ընթերցաւ զայն իշխանն, ետ հրաման բանտարգել առնել զպարոն Վասիլ ի միջնաբերդի, առ ի վերահասու լինելոյ ճշմարտութեան։ Եւ պարոն Վասիլ իբրև ետես զի տանէին զնա յարգելանս՝ աղաչեաց զիշխանն զի և զթագու-

Հին *)՝ զկին սպանելոյ արքային (Կոստանդնի Բ․ի վերջ-նոյ) տացէ ունել և արկանել ի միասին ի բանտ, և ի նմանէ գիտասցէ զամենայն։ Եւ իշխանն Լևոն եա ձեր-բակալ առնել և զԹագուհին և տանել ի միջնաբերդն ընդ պարոնին Վասլի։

## ԳԼՈՒԽ Ջ.

Թէ ո՛րպէս իշխանն Լևոն առաքեաց ի քաղաքն զմի ոմն ի ծա-ռայից իւրոց և զոմն դպիր ի ձեռն արկանել զԹագուհին և զպարոն Վասիլ վասն իւրոյն ատացելոյ։

Եւ իբրև երկոքեան նոքա արկան ի բանտ ի միջնա-բերդի անդ, յետ ոչ բազմաց ինչ աւուրց առաքեաց իշ-խանն Լևոն զմի ոմն յաւագաց անտի իւրոց և զոմն դպիր, զի հարց և փորձ արասցեն իւրաց գանձուն և ի գրի հա-րեալ զխոստովանութիւնս նոցա՝ բերցեն առ նա։ Եւ իբրև գնացին նոքա ի միջնաբերդն, քննեցին նախ զԹա-գուհին՝ զկին սպանելոյ արքային. այլ երդուաւ նա և ասաց և եթ թէ ոչինչ գիտէր ամենևին զերացն։ Ապա մատուցին ի հարցափորձ զպարոն Վասիլ և նա ասաց ցնոսա թէ այս ինչ էր ստոյգ զի ինքն և երեքին իմնա-մակալքն, որք պահէին զգանձն, բացեալ էին բազում ան-գամ զգզրոցսն, յորս եդեալ կային ինչքն, և առեալ անտի ոչ գիտէր որչափ ինչ։ Այլ ապա խոստովան եղև և ա-սաց թէ ի գիշերի անդ, յետ սպանանելոյ զարքայն (Կոս-տանդին Բ.), բացին զարկեղս գանձուն և առին անտի դուկատս ոսկւոյ հազար և քսան, յակինթս պատուականս և այլ բազում ինչս, զոր բաժանեցին ի մէջ իւրեանց։ Եւ

*) Տես գլ. ՋԹ. և ԳԼ։

ամբաստան եղև զբազմաց յանցուցելոց և զբազմաց անպարտից ամենեւին։ Ու եղև իբրև էարկ դպիրն ընդ գլով զխոստովանութիւն պարոն Վասլի, եւ ինքն և սեպուհն, զոր առաքեալ էր իշխանին Լեւոնի ի միջնաբերդ անդր, և եկեալ առ իշխանն մատուցին նմա զգրեալ խոստովանութիւնն պարոն Վասլի, զոր իբրև ետես ետ ընթեռնուլ առաջի իւր և ծանեաւ թէ որքան մեղապարտ գտանէր պարոնն Վասիլ, ոչ միայն խոստովանութեամբն այնուիկ այլ և թղթովն զոր գրեալն էր յառաջագոյն, և պարտէր մեռանել զմահ անարգութեան։ Այլ չեղեն կամք իշխանին դատել զնա հապճեպիւ առանց խորհրդոյ և հաւանութեան պարոնայց իւրոց. և ոչ իսկ ետ ձերբակալ առնել զայրն և զկանայս զամբաստանեալս առ ի նմանէ, առ ոչինչ գրեալ զբանս նորա։ Ու զի բազումք էին ի պարոնայց և յաւագաց անտի աշխարհին աղաչեցին զիշխանն Լեւոն զի առ սէր ուրախաբեր գալստեան իւրոյ՝ հաճեսցի ներել նոցա։ Լուաւ բանից աղաչանացն և հրաման արարեալ կոչել զնոսա առաջի իւր, եթող գթութեամբ զյանցանս նոցա. և տուեալ բերել հանդերձս գեղեցիկս և պատուականս ետ արկանել զնոքօք, ըստ սովորութեան աշխարհին։ Ի բանից անտի, զոր ի վեր անդր պատմեցաք, տեսեալ եղև բարեմտութիւն և սէր և հաւատարմութիւն, զոր ցուցին Հայք առ իշխանն Լեւոն նախ քան զգալուստ նորա։ Լուարուք աղէ՛ և զնենգութիւնն, որով դաւաճանեցին նմա յետ գալոյ հասանելոյ նորա յաշխարհն Հայաստանեայց։

## ԳԼՈՒԽ ՁԸ.

Թէ որպէս Հայք աղաչէին զիշխանն Լևոն զի համբերեսցէ պսակել թագաւոր ի կաթողիկոսէ անտի իւրեանց, ըստ հայկական օրինի։

*Յամի Տեառն հազար երեք հարիւր եօթանասուն և չորս, ի քսաներորդի վեցերորդի աւուր ամսեանն Յուլիսի, եկն իշխանն Լևոն յաշխարհ իւր ի Հայաստան առ ի զօրացուցանել և կազդուրել զժողովուրդն։ Եւ ոչ յետ բազմաց ինչ աւուրց հասանելոյ նորա անդր, եկին առ նա Հայք առ հասարակ և աղաչէին կապել ի գլուխ զթագն արքայական, զի ճանաչէին զնա բնիկ տէր իւրեանց և ուղղակի ժառանգ թագաւորութեանն Հայոց։ Եւ խնդրէին ի նմանէ զի հաճեսցի պսակիլ ի ձեռն կաթողիկոսին իւրեանց, ըստ հայկական օրինի, որպէս յառաջ ժամանակաւ սովոր էին առնել նախկին թագաւորքն Հայոց։ Եւ յաւելուին ասել թէ հարկ էր նմա առնել այնպէս՝ որպէս արարեալ էր Գուի Լուսինեան քաջազգօն թագաւորն Հայոց, հօրեղբայր նորա, որ պսակեցաւ ի թագաւոր ի կաթողիկոսէ անտի իւրեանց, ըստ հայկական ձևոյ և օրինաց։ Եւ նոցա պատասխանի Լևոն և ասէ. «Տեարք, շնորհ յոյժ ունիմք սիրոյն, զոր ցուցանէք մեզ. լուաք և զբանս աղաչանաց ձերոց և զայս տամք ձեզ պատասխանի։ Ոչ անծանօթ ինչ է ի ձէնջ զի ի ժամանակս նախկին թագաւորաց աշխարհն Հայաստանեայց կայր ի խաղաղութեան և ոչ ուրուք կարօտէր օգնականութեան և տայր պսակել զթագաւորս իւր որպէս և հաճոյ թուէր նմա։ Այլ այժմուս՝ գիտել գիտէք ամենեքին զի պատեալ պաշարեալ կան զմեօք թշ-*

նամիք հաւատոցն Քրիստոսի և բազում պէտս ունիմք օգնականութեան թագաւորաց և իշխանացն քրիստոնէից, նա մանաւանդ գաղղիացւոց՝ առաւել քան զնոցա ամենեցուն։ Եւ զայս գիտասջիք ապաքէն զի եթէ ազգականն մեր թագաւորն Կիպրոսի ոչ էր ի կռուի ընդ Գենուացիս, էր մեզ գնացեալ ցարդ առ ս. պապն և առ թագաւորն Գաղղիոյ, մերս համարիւն, առ ի խնդրել ի նոցանէ նպաստ օգնութեան և բերել յաշխարհ այսր. այլ չեղև մեզ հնար երթալ առ նոսա ի պատճառս պատերազմին։ Ոչ զանխուլ իսկ է ի ձէնջ, տեա՛րք, զի մեք հնազանդք եմք եկեղեցւոյն Հռոմայ և ունիմք զկաթողիկէ հաւատս, զոր պարտ է և ձեզ ունել. և զի սերունդ մեր է ի Գաղղիոյ, վասն այսորիկ պարտ և պատշաճ իսկ է մեզ հնազանդել կանոնաց եկեղեցւոյ և կամիմք զի պսակեսցուք ի թագաւոր ըստ օրինակի այլոց թագաւորացն քրիստոնէից. և այսորիկ իսկ աղագաւ է մեր ածեալ զեպիսկոպոսն Նեբրոնի, որ է յուխտէ անտի Յակոբեանց, որ և եբեր ընդ իւր ի Կիպրոսէ զիւղն օրհնութեան՝ օծանել զմեզ ըստ նմանութեան այլոց թագաւորացն քրիստոնէից։ Եւ յորժամ ս. պապն և թագաւորքն և իշխանք քրիստոնէից լուիցեն զի պսակեցաք մեք զայս ձև օրինակի, վստահ իսկ եմք զի հաճեսցին բարեյօժար կամօք տալ մեզ թիկունս օգնականութեան որչափ ինչ և խնդրեսցուք մեք ի նոցանէ։ Եւ արդ աղաչեմք զձեզ զի մի անհաճոյ թուեսցին բանք մեր յունկն ձեր, ապա թէ ոչ՝ չէ մեզ մարթ կապել ի գլուխ զթագն արքայական»։ Այլ տեսեալ Լեոնի զի քրթմնջէին Հայք ընդ այն զի ոչ կամէր պսակիլ ըստ նոցայն օրինի և մեծաւ թախանձանօք աղաչէին լսել բանից նոցա, ետ պատասխանի և ասէ. «Տեա՛րք, վասն ժտութեան պաղատանացդ և վասն

սիրոյ ձերոյ, արասցուք այսպէս. յորժամ ելցուք մեք յեկեղեցւոյն առնուլ զպսակն արքայական, եպիսկոպոսն Նեբրոնի կացցէ ընդ աջմէ մերմէ և կաթողիկոսն յահեկէ. և իւրաքանչիւր ոք մատուսցէ զպատարագն ի վերայ այլ և այլ սեղանոյ, և յետ շնորհելոյ մեզ Տեառն օծանիլ և պսակիլ թագաւոր ի ձեռաց եպիսկոպոսին Նեբրոնի ըստ օրինի այլոց թագաւորացն քրիստոնէից, յայնժամ և կաթողիկոսն ձեր օծցէ զմեզ և պսակեսցէ ըստ ձերոցդ օրինաց: Գիտասջիք զի այսպէս առնել չկամիմք բնաւ երբէք»:

Եւ հաւանեցան Հայք բանիցս այսոցիկ և գոհացեալ զնմանէ, ելին յերեսաց նորա և գնացին ուրախութեամբ: Եւ այսպէս իսկ կատարեցաւ:

---

## ԳԼՈՒԽ ԶԲ.

Յաղագս Թագաւորութեանն Լևոնի և իշխանուհւոյն Մարգարտայ Սուասոն կնոջ նորա ի մայր եկեղեցւոջ Սիս քաղաքի:

Յամի Տեառն հազար երեք հարիւր եօթանասուն և չորս, որ օր չորեքտասան էր ամսեանն Սեպտեմբերի, յաւուր տօնի Վերացման սրբոյ Խաչին, պսակեցաւ իշխանն Լևոն Լուսինեան, անուանեալ արքայ Լևոն Ե. և տիկինն Մարգարիտ Սուասոն կին նորա թագաւն Հայաստանի ի մայր եկեղեցւոջ քաղաքին Սսոյ, որ կառուցեալն է յանուն սրբուհւոյն Սոփիայ, ի ձեռն վերոյգրեալ եպիսկոպոսացն և ըստ օրինակի ասացելոց ի վեր անդր: Եւ հանդէսն եղև գեղեցիկ յոյժ հայելով ի հանգամանս երկրին:

Եւ ի նմին իսկ յաւուր՝ պատուեաց թագաւորն զզե-

նակէրն Սոհիէ Գուլկարտ, որ էր եկեալ յայնմ կուսէ լե-րանց (ի Գաղղիոյ), արարեալ զնա ասպետ իւրով իսկ ձեռամբ և ետ նմա ի կնութիւն զտիկինն Որմի *), որ էր յառաջագոյն կին իշխանին Ռոէմոնդի, կոմսին Կո-ռիկոսի, հօրեղբօրն արքայի, և կարգեաց զնա մարաջախտ. թագաւորութեանն Հայոց:

## ԳԼՈՒԽ ՁԳ.

Թէ որպէս խորհեցաւ արքայն առնել զխաղաղութիւն ընդ Նուրէ-էշխանի միոյ, որպէս և արարեալ էին երբեմն Հայք, այլ արգե-լաւ ի յետն ժամանակաց:

Եւ իբրև նստաւ յաթոռն արքայն Լևոն Ե. ետես զի Հայք կորուսեալ էին քաղաքս և գաւառս բազումս և յութ ամաց հետէ ոչ կարէին սերմանել և մշակել զանդս իւրեանց և զօր ամենայն ասպատակէին Թուրքք մինչև ի դրունս քաղաքին Սսոյ և յաւելուին զամ քան զամ զաւեր և զապականութիւն: Եւ էր նոցա դաշնա-ւորեալ ընդ երկուս աւագ իշխանս Թուրքաց, որ էին հանապազ ի շրջակայս Սսոյ, անուն միոյն Դաւուդ Բէգ, և երկրորդին՝ Բուդբէքիր. և էր նոցա իւրաքանչիւր գունդ զօրաց իբր մետասան հազարաց, և Հայք հատուցանէին նոցա հարկս զի հայթայթեսցեն զպիտոյս քաղաքին Սսոյ և զմօտաւոր բերդորէիցն: Այլ զի դեռ ևս նոր կապեալ էր զթագն արքայն Լևոն և կալեալ զիշխանութիւն, պարտ և պատշաճ էր նորոգել զդաշն ուխտին և առա-քել առ միմեանս պատգամաւորս և պարգևս ընծայից:

*) Տես գլ. ԻԵ. ԽԸ:

Արդ մին յերկոցունց աւագ իշխանացն Թուրքաց՝ Դաւուդ Բէգ՝ երկուցեալ թէ գուցէ ածեալ իցէ արքայի ընդ իւր բազմութիւն զօրաց և աղեղնաւորաց, առաքեաց առ նա հրեշտակս պատարագօք. և արքայ ևս առաքեաց նմա զիւրան և յաւել ազդ առնել զի եթէ կամիցի պահել զզէնադադարն ըստ դաշանցն կռելոց ի մէջ նորա և Հայոց, յանձն առնուլ շնորհել նմա զայն ըստ նախկին սովորութեանն և զի յայտ արասցէ և նա զկամս իւր։ Եւ Դաւուդ Բէգ առաքեաց ասել առ Թագաւորն թէ կա՛զմ և պատրաստ էր առնել զամենայն ինչ ըստ կամաց նորա։ Յայնժամ ոմանք ի բնակչաց անտի Սսոյ, որք ոչ կամէին զի կացցէ քաղաքն ի ձեռս քրիստոնէից, արք դաւաճանք և մատնիչք, իբրև գիտացին թէ դաշինս խաղաղութեան դնէ Թագաւորն ընդ Դաւուդ Բէգ, գնացին առ նա ի ծածուկ և ասեն ցնա. «Տէ՛ր, մի՛ լիցի քեզ կռել դաշինս զինադադարման ընդ արքային Լեւոնի, զի ոչ կատարեսցէ նա զխոստմունս իւր. այլ եդեալ է ի մտի յարձակել ի վերայ արանց քոց յեղակարծում և կոտորել զնոսա և յափշտակել զսայլս պաշարաբարձս ի մտանել նոցա ի քաղաք անդր»։ Եւ յետ այնորիկ դարձ արարեալ առ արքայն, ետուն նմա խրատ չհաւատալ խոստմանցն Դաւուդ Բէգի, զի երազեկ լեալ է մեր, ասէին, թէ ի հաստատել անդ զինադադարին ընդ նմա, ժողովեսցէ զաղտ զզօրս իւր և առցէ զքաղաքն։ Եւ այսու օրինակաւ ոչ հաստատեցաւ զինադադարն ի նենգամիտ դաւաճանութենէ անտի Հայոց ոմանց, որ խօսեցան առ Թագաւորն և առ Դաւուդ Բէգ բանս՝ զորս չէր նոցա ածեալ երբէք զմտաւ։

# ԳԼՈՒԽ ՉԳ.

Թէ որպէս Դաւուդ Բէգ ետ արկանել ի բանտ զհրեշտակս արքային և դարձոյց զսայլսն և զգլաստսն, որ տանէին նպարս ի քաղաքն Սիս, և Ընդ որպէս այդ քաղաքէն ելին արտաքս գիշերայն և խաղացին ի վերայ Թշնամեաց կողոպտեցին ի նոցանէ։

Եւ արքն այնորիկ ննջամէտք գրգռեցին յուզեցին զմիտս արքային և առաքեաց նա հրեշտակս առ Դաւուդ Բէգ հաստատել զզինադադարն. և Դաւուդ Բէգ ետ կալանել զնոսա և արկանել ի բանտ և դարձոյց յետս զսայլսն և զգլաստսն, որ տանէին նպար ի քաղաքն Սիս, և ժողովեաց զզօրս իւր կռուել ընդ Թագաւորին՝ պատուիրեալ նոցա դարանակալ լինել և ասպատակել շուրջ զքաղաքաւն և վնասել որչափ և լիցին ձեռնհաս։ Եւ տեսեալ Թագաւորին զի համբարք նուազեալ էին ի քաղաքին, քանզի մեծատունք Հայոց, որք սիրէին զԹուրքս առաւել քան զքրիստոնեայս, չէին գնեալ պաշարս կերակրոց, որով տիրելոց էր ի մօտոյ սով, եթէ չփութասցի դարման տանել աղետիցն, ետ քարոզ կարդալ ընդ քաղաքն համօրէն՝ զի ո՛ ոք և կամեսցի գնալ ընդդէմ Դաւուդ Բէգի, աւար զոր կորզեսցէ ի Թշնամեաց՝ իւր լինիցի։ Յայնժամ Հայք ելին գունդագունդ գիշերայն և դիմեցին յարձակեցան ի վերայ Թշնամեաց և յաւարի առին ի նոցանէ արջառս բազումս և պաշարս ուտելեաց առատութեամբ և բերին ի քաղաք անդր և կերակրեցան ոչ սակաւ ժամանակս։

## ԳԼՈՒԽ ՁԵ.

Թէ որպէս Դաւուդ Բէգ պաշարեաց զքաղաքն Մէս. և թէ որպէս արար ընդ Թագաւորին զինադադար։

Եւ իբրև ետես զայն Դաւուդ Բէգ, ժողովեաց զզօրս իւր իբրև հազարս երկոտասան, ընդ հեծեալ և ընդ հետևակ, և պաշարեաց զքաղաքն Մէս և յարձակէր ի վերայ նորա ասպատակաւ ամիս յամսոյ։ Այլ օգնականութեամբն Աստուծոյ և Տիրամօրն յաղթող հանդիսանայր միշտ Թագաւորին, զի Թուրքք որք ոչն զգուշանային յաղեղնաւորաց անտի, զորս ընդ իւր ունէր Թագաւորին, զային առ պարսպօք քաղաքին անզըրահ և անպատսպար. և աղեղնաձիգքն հարկանէին կոտորէին զնոսա. և տևեաց պատերազմն ընդ ամիս երիս։ Յետ որոյ ի ձեռն ոմանց ի Թուրքաց հաստատեցան դաշինք խաղաղութեան ի մէջ Թագաւորին և Դաւուդ Բէգի. և երդմնեցոյց զնա արքայն ըստ օրինի կեշտին նորա պահել զդաշինսն հաւատարմութեամբ և առաքել պարէն ի քաղաքն ի Մէս և ի շրջակայ բերդորէս, որպէս սովորն էր յառաջագոյն։ Եւ Թագաւորին խոստացաւ առաքել առ նա զհարկն, զոր հատուցանէին Հայք։ Յայնժամ Դաւուդ Բէգ թողեալ զքաղաքն ի պաշարմանէ առաքեաց անդր համբարս կերակրոց ըստ առաջնոյն։

# ԳԼՈՒԽ ՁԶ.

**Թէ ո՛րպէս նենգաւոր Հայքն այնուհետեւ ցասուցեալ ընդ դաշինս որ եղան ի մէջ Թագաւորին և Դաւութ Բէգի, առաքեցին թուղթ առ մեծ ոմն իշխան ի Բաբելոն զի փութասցէ գալ ի Հայաստան բազմագունդ զօրօք, խոստացեալ յանձն առնել ի ձեռս նորա զքաղաքն Սիս և զամենայն երկիրն և կործանել զնա թագաւոր Հայոց։**

Եւ արքն այնոքիկ նենգաւորք ցասուցեալ խոցեցա՛ն ի սիրտս իւրեանց ընդ այն զի հաշտութիւն արարին Թագաւորն և Դաւութ Բէգ, և քաղաքն ոչ անկաւ ի ձեռս Թուրքաց։ Եւ հաստատուն կացեալ ի չար և յանօրէն խորհուրդ մատնութեան, առաքեցին թուղթ ի Բաբելոն առ մեծ ոմն Հայ իշխան հաւատափոխ, եղբայր կնոջ բռնաւոր Թագաւորին Հայոց սպանելոյ (Կոստանդնի Ե.). և էր անուն նորա Աշոտ, որդի պարոն Օշնի Նղրեցւոյ, որոյ էր խոյս տուեալ ի Հայաստանեայց առաջ քան զգալուստ արքային։ Եւ խոստանային թղթովքն այնոքիւք մատնել ի ձեռս նորա զքաղաքն Սիս և զաշխարհն բովանդակ և թագաւորեցուցանել զնա ի վերայ Հայոց, եթէ յարուցեալ եկեսցէ ի Հայս բազմութեամբ զօրաց սուլթանին։ Եւ իբրև ընկալաւ Աշոտ զթուղթս, տարեալ եցոյց սուլթանին Բաբելոնի և ասաց, թէ էր ի Գահիրէ, ուր բնակէր ինքն իսկ սուլթանն, իշխան ոմն Թուրք Բուղբէքիր անուն, որ ընդ զինակցի իւրում Դաւութ Բէգի մատակարարէր զպիտոյս քաղաքին Սսոյ և զշրջակայ բերդորէից. և խորհուրդ տայր նմա կոչել զայրն և պատուիրել նմա պնդագոյնս զի երթիցէ ի Հայաստան և զբռամբ արկցէ զայլսն

և զգրաստս, որք յամենուստ տանեն պաշար ի քաղաքն Սիս և տալ նմա գունդս զօրաց որ բաւական լիցին ի պատել պաշարել զքաղաքն յամենայն կողմանց մինչև առաջեսցես, ասէ, զքանակն քո զմեծ և այսու օրինակաւ տիրեսցես աշխարհին Հայոց համօրէն։ Յայնժամ սուլթանն ետ կոչել առաջի իւր զՌուդբէքիր և խոստացաւ տալ նմա, ինչս բազում. և պատուիրեաց նմա առնել ըստ ասացելումն ի վեր անդր։ Եւ նա խոստացաւ կատարել յօժարամիտ կամօք զհրաման տեառն իւրոյ։

---

## ԳԼՈՒԽ ՁԵ.

### Թէ որպէս Ռուդբէքիր մեկնեցաւ ի Կահիրէէ եկն և բանակեցաւ առաջի քաղաքին Սսոյ։

Եւ մեկնեցաւ Ռուդբէքիր ի Կահիրէէ և եկն եհաս առաջի քաղաքին Սսոյ. և զի մի իրազգած լիցի արքայն թէ խորհէր նա պաշարել զքաղաքն, առաքեաց առ նա հրեշտակս խնդրել զտուրս հարկաց, զոր սովոր էին հատուցանել նախորդք նորա վասն պարենին, զոր ընդ զէնակցին իւրում Դաւուդ Ռէգի առաքէր ի քաղաք անդր և ի շրջակայ բերդորայսն։ Եւ պատասխանի թագաւորն և ասէ. «Եսաաջի՛ք տեառն ձերում թէ հատուցուք մտադիւր զսովորական հարկն, այլ առաքեսցէ նա զպարէնն ի քաղաք այսր և ի շրջակայ բերդորայս, որպէս համհայրդ նորա Դաւուդ Ռէգ երդուեալ է մեզ զայդ»։ Եւ մեկնեցան հրեշտակքն և տարան զպատգամս թագաւորին առ Ռուդբէքիր. և նա սկսաւ առ սակաւ սակաւ արգելուլ զսայլսն և զգրաստս, որք բարձեալ տանէին զուտեստ ի քաղաքն և ի բերդորայս. այլ կեղծաւորեցաւ

մինչև ի հատուցումն հարկին։ Եւ իբրև վճարեցաւ նմա ամենայն, եւ պատուէր հրամանի զի մի՛ ոք տայցի համբարս ի քաղաք անդր։ Եւ տեսեալ զայն արքայի՝ առաքեաց առ Ռուդբէքիր զհայ ոմն անուանեալ Վահրամ, որ էր մին ի դաւաճանաց անտի, որք կամէին մատնել զքաղաքն ի ձեռս սարակինոսաց, այլ անգիտանայր զայն Թագաւորն. և պատուէր եւտ նմա ասել առ Ռուդբէքիր՝ թէ զարմացեալ էր յոյժ ընդ արգելուլ նորա զսայլս և զգրաստս բերել կերակուր ի քաղաքն, մինչդեռ արդէն իսկ ընկալեալ էր զհարկն, և դժէր այնու երդմանն, զոր տուեալ էր համաձայն նորա. աղաչէր զի թողցէ գալ պարէնին ի քաղաքն ըստ կարգելոյ սովորութեանն։

---

## ԳԼՈՒԽ ՁԸ.

Թէ որպէս մատնիչն Վահրամ, յոր վստահացեալ էր արքայն, նախ քան զըմբռնելն իւր ի հրեշտակացն Ռեան յորդորեալ զդաշնակիցս իւր ի քաղաքացւոց, առնել փորձ ի նոցանէ նամականի, յորս խոստանայր Ռուդբէքիր մատնել զքաղաքն։

Եւ մատնիչն Վահրամ մինչև մեկնեալ ի քաղաքէն Սոյ հրեշտակութեամբ առ Ռուրբէքիր, գնաց խօսել գաղտ ընդ դաւակից քաղաքացիսն և էած զնոսա ի հաւանութիւն տալոյ յետկար, յորում խոստանայր Ռուդբէքիրի մատնել մտադիւր ի ձեռս նորա զքաղաքն։ Եւ յետ այնորիկ եւ գնաց առ Ռուդբէքիր, բայց ոչ ասաց ինչ յորոց պատուիրեալ էր նմա Թագաւորին խօսել, այլ բանս ի մէջ էառ զմատնութենէ իւրմէ և թէ որպէս մեծ մասն ժողովրդեանն կամէր տալ ի ձեռս նորա զքաղաքն։ Եւ յաւել անդէն տալ նմա ծանօթս զկարևոր տե-

զեւացն քաղաքին, յորոց դիւրագոյնս կարէր անկանել ի ներքս. և ասէր թէ պարտ էր յարձակիլ ստէպ ստէպ և կռուել անդուլ ի տուընջեան և ի գիշերի, որպէս զի և որք անհաւանքն գտանէին մատնութեանն, պարտասեալ հուսկ ուրեմն՝ յօժարեսցին ի դոյն: Եւ ասացեալ զբանս զայսոսիկ նենգաւոր պատգամաւորն Վահրամ, ել յերեսաց Ռուդբէքիրի և դարձ արար առ Թագաւորն. և այն դաւաճան ասաց նմա զհակառակն բանիցն զոր խօսեցաւ Ռուդբէքիր. որպէս զի անզգոյշ լիցի արքայն ի գիշերախառն յարձակմանէ անտի, որպէս տուեալ էր խրատ դաւաղիր Հայոցն առ թշնամին:

## ԳԼՈՒԽ ՁԹ.

Թէ ո՛րպէս Ռուդբէքիր էմն յարձակեցաւ ի վերայ քաղաքին Սսոյ գիշերայն և չկարաց քրիստոնէայս բաղդաւ և պարտեալ ապա դարձաւ:

Թուղթք ոմանք ի բանակէն Ռուդբէքիրի՝ որոց էր բարեխիղճութիւն առ Թագաւորն, զեկուցին նմա ի ծածուկ զի Ռուդբէքիր ունէր ի մտի յարձակել ի վերայ քաղաքին ի գիշերի: Զայն լուեալ արքային՝ եւ քարոզ կարգալ ընդ քաղաքն ողջոյն զերիս աւուրս, զի այր իւրաքանչիւր զերծցի ընչիւք իւրովք ի միջնաբերդն և յաւանն. զի չէր քաղաքն փակեալ յամենայն կողմանց: Այլ նոքա՝ որ գիտակքն էին մատնութեանն՝ ոչ կամեցան մտանել յամուրն ըստ հրամանի Թագաւորին: Եւ արար Ռուդբէքիր ժողով արանց հնգետասան հազարաց ընդ հետևակ և ընդ այրուձի և եկն մերձ ի Սիս ի նախընթաց աւուր տօնի Աստուածայայտնութեան և ի մէջ գիշերի յարձակեցաւ

յեղակարծումն ի վերայ քաղաքին և արար աւեր բազում։ և վարեալ ի գերութիւն ոչ սակաւս ի քրիստոնէից անտի, պատեալ պաշարեաց զքաղաքն։

---

## ԳԼՈՒԽ Գ.

Թէ ո՛րպէս Կաթողիկոսն և նենգաւորքն ի քաղաքացւոց անտի առաքեցին առ ամիրայն Հալպայ զի ելցէ անձամբ անցցէ եկեսցէ հանդէպ քաղաքին, տայցեն նմա զՍիս յանուն սուլթանին։

Յորժամ տեսին դաւաճանքն ի քաղաքացւոց անտի զի Ռուզբէքիր ածեալ պատնէշ պաշարեալ ունէր զքաղաքն, բանս եդին ի ծածուկ ընդ Կաթողիկոսին իւրեանց (զոր ի պատուի ունէին իբրև զպապ, որպէս մեք զՍրբազան Հայրն՝ յԱրևմուտս), և գրեցին յետկար առ ամիրայն Հալպայ, խոստանալով նմա զի եթէ հաճեսցի գալ անձամբ ի Սիս բանակաւ իւրով, մատնեսցեն ի ձեռս նորա զքաղաքն, յանուն սուլթանին Բաբելոնի։ Եւ իբրև ընկալաւ ամիրայն Մելէք զնամականին Հայոց, առաքեաց վաղվաղակի առ սուլթանն հարցանել զկամս նորա։ Եւ լուեալ նորա զիրացն՝ ուրախ եղև և բերկրեցաւ յանձն իւր, զի ի բազմաց հետէ ցանկայր նուաճել ընդ ձեռամբ զքաղաքն Սիս և ոչ կարէր։ Վասն այնորիկ առաքեաց անդէն առ նա ինքն ամիրայն Հալպայ Մելէք խաղալ գնալ վաղվաղակի ամենայն զօրօք իւրովք և առնուլ զքաղաքն Սիս։

---

## ԳԼՈՒԽ ՂԸ.

Թէ ո՛րպէս ամիրայն Մելէք եկն բանակեցաւ դէմ յանդիման քաղաքին Սսոյ և եդիր անդ զԲուդբէքիր պաշարել զքաղաքն. և թէ ո՛րպէս թագաւորն ետ զաւանն այրել հրով առեալ զի յանձնարէցն էր նմա զդէմ ունել այնքանոյ բուռն զօրութեան:

Եւ եղև իբրև ընկալաւ ամիրայն Մելէք զպատուէր հրամանի սուլթանին Բաբելոնի, եառ ընդ իւր արս հնգետասան հազար և եկն եհաս ի Սիս յաւուր քսաներորդի չորրորդի ամսեանն Փետրուարի. և եգիտ անդ զԲուդբէքիր զի պաշարեալ զքաղաքն, յարձակէր զօր ամենայն ի վերայ աւանին այլ ոչ կարէր առնուլ, զի որք պահէին զայն ի ներքուստ՝ քաջութեամբ զդէմ ունէին նոցա՝ օգնականութեամբն Աստուծոյ: Այլ յորժամ ետես Թագաւորն զբազմութիւն զօրու Մելէքայ, խորհեցաւ ընդ միտս իւր թէ չէր նմա այլ ևս հնար զդէմ ունել այքանոյ մեծի բանակի. վասն որոյ հանեալ անտի զաղտնապէս զարս իւր գիշերայն տարաւ ի միջնաբերդ անդր և ետ հրձիգ առնել զաւանն:

---

## ԳԼՈՒԽ ՂԹ.

Թէ ո՛րպէս երդմնեցոյց արքայն զհայս՝ զի կեցցեն և մեռցին ի միասին իբրև զճշմարիտ քրիստոնեայք:

Այլ ամիրայն Մելէք իբրև եհաս ի Սիս՝ ոչ յարձակեցաւ ի վերայ քաղաքին և բանակեցոյց զզօրն արտաքոյ աւանին, զոր հրկիզեալ էր արքային իբրև փնասակար

միջնաբերդին. և հանգոյց անդ զնոսա, զի պարտասեալ էին։ Եւ ի նմին աւուր ժողովեաց արքայ զարս իւր ի փոքրկանց մինչև ցմեծամեծս և ճառս ի մէջ արկեալ խօսեցաւ ընդ նոսա զկրօնից քրիստոնէութեան և զօրացոյց զնոսա ի հաւատս. և աղաչեաց զամենեսին առ հասարակ զի երդնուցուն նմա լինել բարի և հաւատարիմ, և յանձն առնուցուն կեալ և մեռանել ի միասին իբրև բարի և ճշմարիտ քրիստոնեայք։ Եւ հրամայեաց զի եթէ ծանուցեալ գիտէր ոք մատնիչս ի բերդին՝ ամբաստան լիցի, զի անդէն իսկ անկցին ի սուր սուսերի առանց թողութեան։ Յորժամ լուան Հայք ի Թագաւորէն զբանս զայսոսիկ՝ յանձն առին երդնուլ։ Իսկ դաւաճանքն՝ թէպէտ և ոչ հաճեցան ընդ այն յօժարութեամբ այլ և ոչ իսկ ժտեցին հրաժարիլ, զի մի ի վեր ելցէ խորհուրդ մատնութեանն։ Յայնժամ նա ինքն արքայ յառաջ քան զամենեսին եդ ծունր առաջի սրբոյ Աւետարանին, զոր կալեալ ունէր եպիսկոպոսն ՛Եբրոնի, և երդուաւ և խոստացաւ ըստ վերոգրելումն։ Եւ զկնի նորա մատեան մի ըստ միոջէ Կաթողիկոսն, եպիսկոպոսունք, իշխանք, ասպետք և քաղաքացիք և որեայն ոք ի բերդին, այր իւրաքանչիւր ըստ կարգի, և ուխտեցին տուեալ խոստումն Աստուծոյ և Թագաւորին զի լիցին բարի և հաւատարիմ։

---

## ԳԼՈՒԽ ՂԳ.

Թէ որպէս ամիրայն Մելէք յարձակեցաւ ի վերայ եկեղեցին, և զդէտ չալան առ Թագաւորին. և Թէ որպէս ընկալաւ արքայ վէրս ի Ճամբլէ։

Եւ ի վաղիւ անդր հասանելոյ Մելէքայ դէմ յանդիման քաղաքին, յառաւօտու պահուն ետ գումարել զզօրս

իւր և զզօրս Ռուդբէքիրի և յարձակեցան ի վերայ բեր-
դին Սսոյ անվեհեր և աներկիւղ, վստահացեալ ի բանս
Հայոց, որոց խոստացեալն էր մատնել ի ձեռս նոցա զբերդն։
Եւ ոչ յաջողեցան ի գլուխ հանել անդէն զոր ինչ խոր-
հեցան, զի զօրաւոր էր յոյժ բերդն, հոծ և լի զօրօք և
ամրացեալ քարամբք և քարընկէց մեքենայիւք, զորս
տուեալ էր արքայի հանել ի վերայ պարսպացն. և չէր
հնար մարտնչել այլուստ ընդ բերդին բայց եթէ առաջի
դրանն։ Եւ յորժամ եկին մերձեցան զօրք սարակինոսաց
և Թուրքաց, ետ արքայ բանալ զդուռնն և խուժեցին
արտաքս Հայք. և ընդ նոսա աղեղնաձիգքն և զօրականք,
զորս էր արքայի ածեալ ընդ իւր, և մեծաւ քաջութեամբ
մարտեան ընդ թշնամիսն առ դրամբ բերդին և օգնա-
կանութեամբն Աստուծոյ հարեալ խորտակեցին զնոսա,
սրոյ ճարակ տուեալ զքաղուածս ի նոցանէ։ Եւ յերկարեաց
տևեաց մարտն յառաւօտէ մինչև ցերեկոյ։ Իսկ Թագա-
ւորն կայր ի վերայ պարսպին և տայր խրախոյս զօրաց
իւրոց և նետաձիգ լինէր ի թշնամիս։ Եւ ահա բեկոր
երկաթոյ արձակեալ ի վերգահանէ անտի սարակինոսաց
եկն շեշտակի և ջաղխեալ փշրեաց զմի մասն ծնօտին և
ատամունս երիս և խրեալ կառեաւ ի ներքս ի բերանին։
Եւ ել արքայ և մեկնեցաւ լռելեայն և երկոքին զինա-
կիրք նորա ընդ նմա. և ոչ ոք յիւրոց անտի և յայլազ-
գեաց գիտաց որ ինչ եղեն։ Եւ մտեալ ի սենեակ իւր,
առաքեաց և կոչեաց զբժիշկն և ժուժկալեալ արիաբար
ցաւոցն՝ ետ կորզել ի բերանոյն զերկաթն։ Իսկ ամիրայն
Մելէք տեսեալ զի մատնեցաւ ի պարտութիւն և զի
բազումք ի զօրաց անտի նորա անկան ի մարտին և զի
տարաժամեալ էր օրն, դարձոյց յետս զբանակն։ Զնոյն
յայնժամ արար և արքայ. և ի ներքս առեալ զիւրսն,

հրամայեաց փակել զդրունս բերդին զի մի ոք ի նենգամիտ Հայոց անտի ելեալ պատմիցէ սարակինոսաց զանցս որք անցին ընդ Թագաւորին, և տացէ ծանօթս զբերդէն։

---

## ԳԼՈՒԽ ԳԴ.

**Թէ որպէս Մելքէ ամիրայն Հալպայ առաքեաց առ Թագաւորն ասել նմա ի կողմանէ սուլթանին, զի եթէ տապանեսցէ զբերդն և ընկալցի զհաւատս սարակինոսաց, կարգեսցէ զնա ամիրապետ իւր մեծ և պարգևեսցէ առ նա զաշխարհն համօրէն։**

Եւ իբրև դարձոյց Մելէք՝ ամիրայն Հալպայ՝ զզօրսն ի բանակատեղս իւրեանց, առաքեաց Թուղթ առ Թագաւորն ասելով զի եկեալ էր նա հրամանաւ տեառն սուլթանին Բաբելոնի և թէ գրեալ էր սուլթանն, զի եթէ յանձն առցէ արքայ տալ զբերդն և ուրանալ զհաւատս Յիսուսի Քրիստոսի և դառնալ ի դէն սարակինոսաց, յայնժամ, ի վարձս փոխարինի, շնորհեսցէ նմա սուլթանն սպարապետութիւն մեծ և զաշխարհն համօրէն։ Իսկ եթէ ոչ հաճոյ թուեսցի նմա այս և կամիցի անցեալ ընդ ծով գնալ յաշխարհ իւր, երդնոյր յօրէնս իւր և ի գլուխ սուլթանին զի թողացուսցէ նմա երթալ առանց վնասու՝ հանդերձ ամենայն որերով իւրով և գանձուք և տացէ նմա ուղտս պաշարաբարձս և եթէ պէտք ինչ իցեն՝ յաւելցէ տալ մտադիւր և արս յուղարկաւորս, որք երթիցեն ընդ նմա մինչև ի ծովեզրն։ Եւ ընթերցեալ Թագաւորին զԹուղթ Մելէքայ ամիրային Հալպայ, պատասխանի արար նմա այսպէս. «Տէ՛ր զօրագլուխ, գիտասջիր զի ոչ է մեր եկեալ աստանօր մատնել զերկիր մեր ի կամս ձեր և յուրաստ լինել զարարիչն

մեր և զամենազօր Աստուած, զՅիսուս Քրիստոս, և անցեալ ընդ ծով դարձ առնել յաշխարհ բնակութեան մերոյ. այլ եկեալ է մեր այսր մանաւանդ առ ի կեալ և մեռանել ի պաշտաման անդ Աստուծոյ և առ ի չթողուլ ի ձեռս օտարաց զմերն ժառանգութիւն։ Այլ եթէ հաճոյ իցէ տեառնդ ձերում սուլթանին ընդունել զհարկն, զոր հատուցանէին նախորդքն մեր, կամ և պատրաստ եմք մեք առնել ըստ սահմանելումն։ Իսկ եթէ ոչ՝ մեք ի ձեռս Աստուծոյ մերոյ եմք ապաստան. թող արասցէ ընդ մեզ որպէս և կամեսցի։ Ո՛չ է մեզ մարթ այլազգագոյնս գործել։

Եւ բարկացաւ սրտմտութեամբ ամիրայն Մելէք ընդ պատասխանի թագաւորին և լքաւ լուծաւ սրտաբեկ, իբրև ետես զի ոչ որպէս ինչ զրիցինն ի գլուխ հանին —այք։

---

## ԳԼՈՒԽ ԳԵ.

### Թէ որպէս ամիրայն Մելէք յարձակեցաւ անդրէն ոտէղ ոտէղ ի վերայ Բերդին։

Եւ ի վաղիւ անդր ամիրայն Մելէք կազմեաց զբանակն իւր և մերձեցաւ ի բերդն տալ պատերազմ ընդ նմա. այլ ոչ կամեցաւ արքայ բանալ զդրունսն և ելանել արտաքս, զի բազում յոյժ էին սարակինոսքն և վտանգ մեծ էր իւրոցն ի նետաձգութենէ նոցա։ Եւ յարձակեցան նոքա բազում անգամ ի վերայ, այլ դարձան կորակոր կորստեամբ, շնորհիւ Բարձրելոյն և Տիրամօր Կուսին, որպէս և ի քաջամարտիկ պաշտպանութենէ անտի աղեղնաւորաց և սպառազէն ուրիրոյ թագաւորին։ Յանժամ

ամիրային Մելէք յաւել կրկին անգամ գրել թուղթ առ թագաւորն ըստ նմին օրինակի։ Զնոյն և թագաւորն արար ըստ առաջնոյն պատասխանի, գրելով զի մի այլ իմիք ակն կալցի ի նմանէ, ընդ որ բարկացաւ սրտմտութեամբ ամիրային Մելէք։ Նա սրտաթափ լեալ՝ արձակեաց զմի մասն բանակին գաղտ ի գիշերի։

---

## ԳԼՈՒԽ ՂԶ.

Թէ որպէս դաւաճանքն ի Հայոց գրեցին առ Մելէք զհանգամանաց արտաքին և թէ ոչ յետ ճակատմանց ինչ առ որս մարտնչեցեն զՄելիքն ի յետս նորա, զի առն սատակեցեալ էր յոյժ ի նմին։

Նա լուան դաւաճանքն ի Հայոց, որք ի ներքս ի բերդին էին, զի ամիրային Մելէք ոչ ևս ակն ունելով առնուլ զբերդն, կամէր բառնալ զպաշարումն, և տագնապեցան յոյժ։ Նա անդէն վաղվաղակի գումարեալ ի ժողով, գրեցին թուղթ առ Մելէք, յորում զգացուցանէին նմա զի անկեալ դնէր ի մահիճս արքայն ի վիրաց անտի՝ զոր ընկալեալ էր և թէ էր սով մեծ ի բերդին. և աղաչէին զնա կալ մնալ դեռ ևս աւուրս ինչ, խոստանալով նմա մատնել զայն ի ձեռս նորա։ Նա իջուցին գիշերայն զայր ոմն պարանաւ ընդ պարիսպն տանել զթուղթն առ Մելէք. և նա եւս անդէն վաղվաղակի քարոզ կարդալ ընդ բանակն համօրէն զի եթէ ոք ի զօրուէն ի բաց գնասցէ՝ գլխապարտ եղիցի։

---

## ԳԼՈՒԽ ԴԵ.

Թէ որպէս դաւաճան հայք միաբանեցան սպանանել զարքայ, այլ կամօքն Աստուծոյ է դերև ելին չար խորհուրդք նոցա։

Տեսեալ տէրանենգ հայոց զի չէր հնար մատնել ի ձեռս Մելէքայ՝ ամիրային Հալպայ՝ զաշտարակ բերդին՝ ուր ամրացեալ էր արքայն, եթէ ոչ յանկուցեն յինքեանս զմտերմագոյնն յարանց անտի թագաւորին, մատեան առ մի ոմն ի նոցանէ, որ կոչէր Մատթէոս դը Շապպ ասպետ՝ որ նմին արքայի պալատէր որ զինչ և էրն. զի այնքան մեծարեալ էր զնա պատուով Լևոն՝ մինչև ի նմին իսկ աւուր թագաւորութեանն՝ ինքնին իւրով ձեռամբ արարեալ էր զնա ասպետ և տուեալ նմա ի կնութիւն զկին Կոստանդնի (Ն.) երկրորդ բռնակալ թագաւորին և առ մեծի սիրոյն յաւելեալ ևս էր կարգել զնա դիւանադպիր տէրութեան իւրոյ։ Յայնժամ Կաթողիկոսն և կինն Մատթէի և պարոն Վասիլ, որք ի գլուխ կային դաւաճանութեանն, մատեան առ նա և հարցանէին թէ առնուցո՞ւ յանձն միաբանել ընդ նոսա և գործակից լինել սպանութեան արքային. և առ այս խոստանային կարգել զնա իւրեանց իշխան և տալ բերել նմա ճոխաձիր պարգևս և պատիւ բազում ի սուլթանէ անտի ի ձեռն Մելէքայ ամիրայի։ Յայնժամ ոգի անօրէնութեան և մոլեկան փառասիրութեան եմուտ ի սիրտ Մատթէի դը Շապպ, և խոստացաւ կատարել զոր խնդրէին ի նմանէ։ Նա եկեալ վաղվաղակի մատեաւ առ մտերիմս ի սպայից անտի, զորս ածեալ էր արքայի ընդ իւր ի Կիպրոսէ, և խօսեցաւ ընդ նոսա այսպէս. «Տեա՛րք, այս ինչ յայտնի լիցի ձեզ ստուգութեամբ զի ամիրայն Մելէք առաքեաց

ասել առ Թագաւորն զի Թողեալ զբերդն ի պաշարմանէ՝ յետս ընդ կրունկն դարձցի բանակաւ իւրով, եթէ կալեալ զամենեսին զմեզ արքայի առաքեսցէ առ նա ի գերութիւն, զոր յանձն էառ արքայ։ Արդ խորհեցարուք առնել զոր ինչ արժան է»։ Եւ նոցա լուեալ, հաւատացին բանից անօրինին. և խորհուրդ ի մէջ առեալ սահմանեցին զի ի միում գիշերի յարձակեսցին ի վերայ աշտարակին և սպանցեն զարքայ և զհայ մարդիկն, որ էին անձնապահ նորա։ Եւ արարին իսկ այսպէս. զի ի քսաներորդի չորրորդի աւուր ամսեանն Մարտի, որ էր յառաջընթաց օր տօնի Աւետման Տիրամօր Կուսին, զհասարակ գիշերաւ, Մատթէոս դը Շապպ և դաւակիցք նորա յարձակեցան ի վերայ աշտարակին և սուր ի վերայ եդեալ կոտորեցին զհայ Թիկնապահսն։ Եւ Թագաւորն, որ ննջեալ դնէր ի մահիճսն՝ հէգ և անզօր, տառապելով ի վերաց անտի վիրգահանին, լուեալ զաղմուկն՝ ի վեր վազեաց, առաւ շտապ տագնապաւ զզրահն և փութացաւ ի զէն։ Եւ էին ի սենեկին անդ արքունի ասպետք երկու հայազունք և աղեղնաւոր մի հռոմ ազգաւ, որ էր պետ ի վերայ մեքենայիցն և անուանեալ կոչէր Կոստանդին Լեմիրացի։ Եւ եղև իբրև խորտակէին դաւաճանքն զդրունսն ի հարուածս տապարի զի մտեալ ի ներքս սպանցեն զնոսա ընդ արքայի, հռոմն այն կապեաց ճեպ զճեպի զարքայն պարանաւ և իջոյց զնա ընդ ճեմիշն ի բերդն երկրորդ. և փութացան իջանել զհետ նորա և նոքա երկքին. այլ ի շտապ տագնապին ոչ եղև նոցա պարապ զերծուցանել և զԹագուհին և զմանկունսն զի խորտակեցաւ դուռնն։ Եւ հորդան տուեալ դաւաճանացն ի ներքս և ոչ գտեալ անդ զարքայն, յապուշ կրթեցան, այլ ոչ մխեցին ձեռս ի Թագուհին և

յարքայորդիսն. և եղին ի մտի առաքել զնոսա յընծայ առ ամիրայն Մելէք, միանգամայն և զառումն աշտարակին. ունելով նմա ի ձեռն առն ուրումն, զոր կամէին իջուցանել պարանաւ ի վայր։ Եւ յորժամ գրեցին միաբանութեամբ զթուղթ առ ամիրայն Մելէք, Մատթէոս դը Հապպ, որ էր պատճառ երկպառակութեանն և առաջնորդ դաւոյն, յուսով մեծաց վարձուց ի սարակինոսաց ալաչեաց զդաւակիցս իւր զի նմա յանձն լիցի տանել զթուղթն առ ամիրայն։ Եւ իբրև հաճեցան նոքա, ետ կապել զանձն ի կառան, զի իջեալ յաշտարակէն ի վայր՝ երթիցէ աւետաւոր առ Մելէք ամիրայ։ Այլ յարդարադատ վրէժխնդրութենէն Աստուծոյ, մինչև ես էր հասեալ նորա ի կէս աշտարակին, և ահա բեկաւ կառանն և անկաւ նա գահավէժ թաւալգլոր յերկիր և յօդակոտոր եղեալ սատակեցաւ անարգամահ տիրադրուժն այն Մատթէոս դը Հապպ։

---

## ԳԼՈՒԽ ԳԲ.

Թէ որպէս առաքեաց արքայն առ զինուորսն, որոց մերժեալ էր աշտարակէն, դարձուցանել զայն առ նա, խոստանալով ներել նոցա զյանցանսն։

Եւ իբրև արքայն և երկոքին ասպետքն Հայկազունք և աղեգնաւորն Հոռոմ իջին ընդ ճեմիշն ի ստորին բերդն, որպէս ասացաք, գնացին յապարանս տիկնոջն Մարիամու, որ էր դուստր պարոն Օշնի, իշխանին Կոռիկոսի, և էր լեալ կին առաջնոյ բռնակալ թագաւորին. և ընկալեալ եղեն ի տիկնոջէն բազում մեծարանօք և պատուով։

Եկն առ արքայ պարոն Մոհրէ Գուլկարտ, որոյ չէր բնաւ կամակից եղեալ ապիրատ մատնութեանն, և խնդակից յոյժ եղև արքային։ Եւ Թագաւորն Լևոն ի ձեռն քարոզաց հրամայեաց ծանուցանել ընդ քաղաքն ամենայն զտիրանենգ մատնութիւն արանցն, որք նստէին յաշտարակի անդ։ Եւ լուեալ ժողովրդեանն՝ ծանրացաւումն եղև, և գունդք գունդք գռոհ տուեալ դիմեցին առ Թագաւորն, վառեալք ի զէն և կազմ և պատրաստ սպասէին հրամանաց նորա։ Շնորհս կալաւ արքայ և աղաչեաց կալ մնալ անդէն, զի, ասէր, «տունիմ ինչ խօսել ընդ ձեզ»։ Եւ անսացին նոքա և դադարեցան անդանօր։ Եւ առաքեաց արքայ ասել առ դաւաճանսն՝ որ էին յաշտարակի անդ, թէ քաջ իսկ լեալ էր հասու զի մեղան նոքա յանգէտս, անսացեալ չար խրատու ապիրատ մարդկան. վասն որոյ շնորհէր նոցա զթողութիւն յանցանացն՝ եթէ տացեն նմա զաշտարակն և ելեալ գայցեն առ նա աներկիւղ վստահութեամբ. և խոստանայր արձակել զնոսա առանց իրիք պատժոյ պատուհասի յաշխարհ անդր իւրեանց, եթէ այսպէս հաճոյ թուէր նոցա, օգնելով ևս նոցա իւրովսանն։ Այլ նոքա ոչ մատուցին ունկն բանից պատգամաւորացն։ Յայնժամ Թագաւորն ել ինքն անձամբ անձին և գնաց խօսել ընդ նոսա. սակայն ոչ և նորա բանքն եղեն ինչ լսելի. զի ոչ թողին զաշտարակն և կազմեցան մանաւանդ կռուել ընդ Թագաւորին և ընդ զօրս նորա, եդեալ ի մտի մտանել ի վաղիւ անդր զաշտարակն ի ձեռս Մելէքայ ամիրային Հալպայ։

## ԳԼՈՒԽ ԳԹ.

### Թէ որպէս արտայն ի նմին գիշերի յարձակեցան Տաճիկք ի վերայ աշտարակին և ոչ կարացին առնուլ զայն։

Եւ տրտմեցաւ յոյժ թագաւորն ի սրտի զի ոչ լուան բանից իւրոց և ոչ թողին զաշտարակն փոխանակ ընդ խոստմանցն, զորս արար նոցա․ և եկն խօսեցաւ ընդ Հայս և ասէ․ «Սիրեցեալք իմ բարեկամք և տեարք, դուք ինքնին աչօք իսկ ձեռովք տեսէք՝ զի զոր ինչ պարտէաքն առնել արարաք, աղաչելով զապիրատ մարդիկն՝ որք ընդդէմ կամաց մերոց արկեալ են ընդ բռամբ զաշտարակն մեր, ելանել անտի․ այլ ոչ կամեցան լսել մեզ։ Ապաքէն դուք ինքնին տեսանէք զվտանգն կորստեան, որ առաջի կայ մեզ և ձեզ համանգամայն եթէ ի ձեռս նոցա կացցէ մնասցէ աշտարակն։ Յայս սակս՝ ինձ այնպէս թուի եթէ հարկ ի վերայ կայ մեր փոյթ և բուռն զօրութեամբ յարձակել ի վերայ և առնուլ զայն յառաջ քան զլուսանալ աւուրն․ զի ընդ առաւօտն թշնամիք մեր այլազգիք եկեսցեն յօգնականութիւն նոցա և ստիպեսցիմք մարտնչել յառաջոյ և ի թիկանց, ընդ աշտարակին ասեմ և ընդ այլազգիս»։ Եւ իբրև լուան Հայք զբանս թագաւորին, վառեցան պատրաստեցան և դիմեալ անկան բուռն յարձակմամբ ի վերայ աշտարակին․ այլ որք ի ներքս անդ էին՝ զդէմ կալան նոցա մեծաւ պնդութեամբ։ Եւ ի նոյն գիշերի չորիցս յարձակեցան Հայք ի վերայ աշտարակին, այլ ոչ կարացին առնուլ, զի ամուր էր յոյժ և մուտ դրանն այնպէս նեղ և նուրբ՝ զի մի մի մարթ էր և եթ մերձենալ․ և վասն այսորիկ իսկ բազումք անկան վիրաւոր և յերկոցունց կողմանց միանգամայն։

## ԳԼՈՒԽ Ճ.

Թէ որպէս պարոն Վասիլ՝ որդի պարոն Թորոսի, խորհեցաւ սպանանել զարքայն և տիրանել աշխարհին ի յետս անհաւատից։

Ու յայն աղէտս տագնապի չգիտէր Թագաւորն զի՛նչ առնել կամ զի՛նչ առնել, զի կորուսեալ էր զհաւատարիմ մարդիկն, զորս ածեալ էր ընդ իւր. վասն որոյ կայր ի վարանս տարակուսի.Թէ ընդ ո՛ւմ ումեք լինիցի խորհրդակից։ Յայնժամ պարոն Վասիլ, որդի պարոն Թորոսի, որում յառաջ ժամանակաւ նիրեալ էր արքայի զյանցանսն, որպէս ի վեր անդր ասացաք, խորհուրդ արարեալ ընդ դաւակիցս իւր որ ի Հայոց անտի, եդին ի մտի սպանանել զԹագաւորն և մատնել զաշխարհն ի ձեռս սուլթանին Բաբելոնի։ Մատեաւ առ Թագաւորն պարոն Վասիլ և ասէ. «Տէ՛ր արքայ, ե՛լ ի տանէս այդ և խօսեա՛ց ընդ որս են յաշտարակի անդ, Թերևս տեսցեն զքեզ և լուեալ առ ի քէն՝ անսասցեն Թողուլ քեզ զաշտարակդ»։ Այլ զայս խրատ վասն այնորիկ իսկ տայր արքայի պարոն Վասիլ, զի յելանել Թագաւորին ի տանիսն ձեռնտուութեամբ դաւակցացն կործանեսցէ զնա ի գետին և սպանցէ։ Այլ Աստուած ոչ կամեցաւ զվերելս նորա անդր. զի Թէպէտ և յօժար էր արքայ ելանել ի տանիս անդր, այլ մի ոմն այր հաւատարիմ՝ որ ոչ կամի զի յայտնեսցի անուն նորա, ըստ դիպաց իմն իրազեկ եղեալ դաւոյն, ի վեր եհան զայն և կասեցոյց զարքայ։ Ու յետ սակաւուց արք աշտարակին իջուցին պարանաւ զոմանս յիւրեանցայնոց անտի, զի յառաջեալ քան զՄատԹէոս դը Շապպ (որ անկեալ սատակեալ էր գահավէժ, և զորոյ անգիտանային զմահ կորստեան), ա-

սասցեն ցամիրայն Մելէք թէ կան ի պատրաստի մատնել ի ձեռս նորա զաշտարակն։ Այլ ոչ հաւատաց նոցա այրն, ի կարծիս անկեալ թէ ստիցեն նմա, զի ոչ էին նոքա Հայ ազգաւ, և անգիտակ իսկ էր մարտի պատերազմին, զոր տային ընդ միմեանս արք աշտարակին և որք էին արտաքոյ։ Այլ ընդ լուսանալ առաւօտուն՝ տեսեալ զի կռուէին այր ընդ ընկերի, վառեաց զզօրն վաղվաղակի և եկն մինչև ի դրունս բերդին, յոր կամէր յարձակել. և որք էին յաշտարակին՝ նշանացի արարեալ Թուրքացն և սարակինոսաց արս տասն ի նոցանէ հանին ձգեցին ի վեր չուանօք։

Իսկ իբրև ետես նենգաւորն Վասիլ զարս ամիրային զի ելեալ մտեալ էին յաշտարակն՝ ի միտ էառ զի եթէ և ինքն Մելէք յարձակեսցի ի վերայ բերդին, տիրեսցէ նմա անշուշտ և ոչ իւիք այնուհետև ունիցի նմա շնորհ. խորհեցաւ կորզել յանձն իւր զպատիւ յաջողութեան իրացն, զի հաճոյ զանձն ընծայեցուսցէ ամիրային և զի օգնեսցի ինքն անտի, վասն որոյ ել ի վերայ պարսպացն և ասէ ցՄելէք. «Տէ՛ր, աւելորդ իմն է արկանել ի վտանգ մահու զզօրս քո յառումն բերդին. զի ահա տեսանես զի արք քո կան յաշտարակին. և մեք առ մեզ ունիմք զԹագաւորն. կալցուք մեք զնա և զկուսակիցս նորա և մատնեսցուք ի ձեռս քո։ Աղէ, ի բաց տա՛ր զզօրականդ»։ Եւ ամիրայն, որ գիտէրն ստուգութեամբ զի պարոն Վասիլ հաւատարիմ էր նմա, հաւատաց բանից նորա և հրաման ետ զօրուն նահանջել յետս։

# ԳԼՈՒԽ ԺԱ.

Թէ որպէս է բռնան եարլ արքայն Լևոն զաշտարակն ի յձեռն Յակոբեան կրօնաւորի ուրուք, հետևողի եպիսկոպոսին Սեբրոնի։

Եւ մինչդեռ խօսակից լինէին ընդ միմեանս պարոն Վասիլ և ամիրայն, և յորոց յաշտարակին էին՝ ոմանք ձգէին պարանօք ի վեր զԹուրքս և զսարակինոսս, որպէս ասացաք, և այլք կռուէին ընդ Հայս, որ քաջաբար յարձակէին ի վերայ, այր ոմն ի Յակոբեան ուխտէ, որոյ անուն էր Գուլիէլմոս, հետևող եպիսկոպոսին Սեբրոնի, որ գտանէրն յաշտարակին, խորհեցաւ ի միտս իւր զի կայր նմա մեռանել և կամ ուրանալ զհաւատս Քրիստոսի այնու զի կալան անհաւատք զաշտարակն. սորա և ոմանց ի սենեկապանացն արքայի, որք մնացեալք էին անդ՝ տեսեալ զի մի ոմն յայնցանէ որք առին զաշտարակն, կայր միայնիկ ի պահականոցի միում, դիմեցին ի վերայ նորա և սպանին զնա։ Եւ էր ի պահականոցի անդ ճեմիշ, ընդ որ իջուցին պարանս զի ձգեսցեն ի վեր զհաւատարիմ մարդիկն արքային։ Եւ իբրև գիտաց զայն արքայ աղաչեաց զոմանս ի Հայոց անտի զի կապեսցին զպարանացն և ելցեն ի վեր, խոստացեալ նոցա պարգևս մեծամեծս։ Եւ ահա արք տասն կորովիք, լուեալ աղաչանաց արքայի ելին ի վեր. և մարտուցեալ արիաբար ընդ Թուրքացն և սարակինոսաց և ընդ այլոցն՝ որ էին յաշտարակին, յաղթեցին նոցա յաջողելով Տեառն և կոտորեցին զամենեսեան. և իսկ և իսկ իջեալ ի վայր բացին զդուռն աշտարակին։ Այսպէս տիրեաց վերստին արքայ աշտարակին իւրում ի շնորհաց Տեառն Աստուծոյ, յաւուր տօնի Աւետեաց։

Եւ մինչդեռ սպասեալ մնայր ամիրայն Հալպայ կատարելոյ խոստմանց պարոն Վասլի, և ահա ետես յանկարծ զդրօշս արքայի կանգնեալս յաշտարակին և լսելի եղև նմա ձայն աղաղակի ցնծութեանն Հայոց «առաւ աշտարակն, առաւ աշտարակն». յապուշ կրթեցաւ ընդ միտս իւր այլն և զահի հարան ամենեքին որք ընդ նմայն էին ընդ անակնկալ դէպս իրացն։ Եւ գնաց եմուտ Մելէք ի խորանս իւր և հրաման ետ զօրաց իւրոց դառնալ յետս և դադարեցուցանել զխաղմն։ Առաքեաց ապա թուղթ առ թագաւորն, որպէս յառաջն, խրատելով զնա տալ նմա զբերդն։ Եւ արքայ արար նմա պատասխանի վերստին թէ քաւ լիցի նմա, ցորչափ իցէ կենդանի՝ ուրանալ զՔրիստոս և մատնել ի ձեռս նորա զբերդն. այլ զդէմ կալցի նմա որքան լինիցի հնար։ Եւ Մելէք ամիրայ յարձակեցաւ վերստին ի վերայ բերդին բազում անգամ, այլ օգնականութեամբն Աստուծոյ և երանեալ Տիրամօրն ոչ ինչ կարաց ստնանել։

---

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Թէ որպէս խարդաւանողքն ի հայոց մատնեցին զբերդն ի ձեռս Մելէքայ ամիրային։

Այլ արքայ Լեւոն իբրև յինքն եկաւ վերստին զաշտարակն, տեսեալ զի գայթ ի գայթի կային Հայք, կասկած իմիտս անկաւ զնոցանէ և կամեցաւ զի նորոգեսցեն զերդումն ուխտին. այլ ոչ մատուցին բնաւ ունկն բանից նորա, զի էր նոցա եդեալ ի մտի մատնել զնա։ Եւ թողեալ զթագաւորն, դէմ եդեալ գնացին ի տուն Կաթողիկոսին, զոր ունէին ի պապ իւրեանց, և խորհուրդ կալան

թէ ո՞ր լաւ իցէ, սպանանել զԹագաւորն, թէ ձերբակալ արարեալ մատնել զնա ի ձեռս ամիրային Մելէքայ։ Եւ ոչ ոք յատենի անդ խօսեցաւ ի նպաստ արքային. և ամենեքին առհասարակ ուխտադրուժք և տիրանենգք, միաբանեցան մատնել զԹագաւորն ի ձեռս Մելէքայ, ընտրելագոյն համարեալ մտանել ընդ լծով սարակինոսաց, քան կալ ընդ իշխանութեամբ բնիկ տեառն իւրեանց, թէպէտ և ունէին և ոչ մի ինչ պատճառս ատելոյ զԹագաւորն. զի իշխէր նոցա քաղցրութեամբ և պաշտպանէր զնոսա հզօր զօրութեամբ։

Այլ գիտել արժան է զի են նոքա այք մեղմեխք և փոփոխամիտք, յօժարեալք կարգել ամսոյ ամսոյ իշխան նոր, որպէս յայտ իսկ է անտի՝ զի ի հարիւր և աւելի ևս ամաց հետէ՝ միշտ և հանապազ՝ է՛ զի դաւաճանեցին և է՛ զի ի մահ մատնեցին զԹագաւորս իւրեանց և զիշխանս։

Եւ իբրև հաստատեցան միաբանութեամբ յայս խորհուրդ և տեսին զի Թագաւորն ո՛չ ինչ զօրէր վնասել նոցա, քանզի թողեալ լքեալ էր ի բոլորեցունց, և զինուորքն զորս ածեալ էր ընդ իւր՝ էին ամենքեան սպանեալք, գրեցին թուղթ և առաքեցին առ ամիրայն Մելէք ի ձեռն քաղաքացւոց ոմանց Սսոյ, ծանուցանելով նմա զի ի վաղիւ անդր ընդ առաւօտն մատնեսցեն ի ձեռս նորա զբերդն։ Եւ արարին իսկ այնպէս. զի ի ծագել անդ արևու խորտակեցին զդրունս բերդին բռնութեամբ, փոխանակ զի զփականսն առեալ պահէր Թագաւորն յաշտարակին, ուր անկեալ դնէր նա ի մահիճս, տառապելով ի վէրաց անտի վիրգահանին. և ոչ զոք ունէր առ իւր, բայց միայն զԹագուհին և զորդիս. քանզի էր ամենեցուն թողեալ զնա և հեռացեալ ի բաց և չէր

ոք մնացեալ նմա հաւատարիմ բայց միայն իշխանն Սո-հիէ Գուլկարտ։ Յայնժամ Կաթողիկոսն և պարոն Վ-ա-սիլ և այլք ամենեքին գնացին առ Մելէք ամիրայն և մատնեցին նմա զբերդն. զնոյն կամէին առնել և ընդ Թա-գաւորն, այլ ոչ կարացին զի կայր նա յաշտարակին յա-կաստանի։

---

# ԳԼՈՒԽ ՃԳ.

Թէ ո՛րպէս Մէլէք առաքեաց առ Թագաւորն զի տացէ նմա զաշխարհն և եկեսցէ առ ինքն անկասկած. և խոստանայր յա-ղարկել զնա յապահովս—Ռեւանէ յաշխարհն իւր, եթէ ցանկայր դառ-նալ անդր։

Իսկ եղև իբրև ետես Մելէք ամիրայն Հալպայ թէ եղև տէր բերդին և գիտաց զի ոչ զոք ունէր Թագաւորն ընդ իւր և յաշտարակին, առաքեաց առ նա թուղթ, յո-րում գրեալ էր նորա զայս ձև օրինակի. «Տէ՛ր արքայ, տեսանես զի արք քո մատնեցին ի ձեռս իմ զբերդն և ինքեանք ամենեքին դիմեցին առ իս. և գիտեմ զի կա-ցեալ մնացեր յաշտարակիդ մէն միայնակ։ Արդ քէն մարթ է ինձ առնել ընդ քեզ որպէս հաճոյ թուիցի յաչս իմ. այլ առ գթութեան՝ կամիմ ազդ առնել քեզ յառաջա-գոյն։ Վասն այսորիկ խորհուրդ տամ քեզ մեկնել անտի և գալ առ իս աներկիւղ և անվեհեր։ Իսկ երդուեալ քեզ յօրէնս իմ զի եթէ յօժարեսցիս գալ, առաքեցից առ քեզ զյետկայն ապահովութեան, զոր խոստացեալ է իմ քեզ երբեմն. ապա թէ ոչ՝ գիտեմ և ես զոր ինչ պարտ է առ-նել»։

Իսկ լուեալ Թագաւորին զիմաստ բանի թղթոյն Մե-

լէքայ, խորհեցաւ ընդ միտս իւր թէ ճշմարիտ էին բանք նորա, զի որոց պարտ էր զնա պահել՝ նոքա դաւաճանութեամբ մատնեցին զնա. պատասխանի ետ հրեշտակացն և ասէ թէ՝ զի այսպէս հաճոյ եղև Աստուծոյ, յանձն առնոյր երթալ առ ամիրայն, եթէ առաքեսցէ նմա գրեակարն ապահովութեան։ Եւ մեկնեցան հրաշտակքն ի թագաւորէն և եկին առ իշխանն իւրեանց և բերին նմա զպատգամս արքային։ Եւ ի վաղիւ անդր ընդ առաւօտն ետ նա գրել զթուղթն խոստացեալ և առաքեաց առ թագաւորն յաշտարակ անդր և հրամայեաց տանել նմա ի ձեռն եղբօր իւրոյ երիվար ազնիւ՝ զի հեծեալ յայն եկեսցէ առ նա. յղեաց և արս հինգ հարիւր ի սարակինոսաց անտի ընդ նմա։

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Պատճէն Թղթոյն ապահովութեան, Թարգմանեալ յարաբացւոյ բարբառոյ։

«Յանուն Աստուծոյ, ողորմածաց ողորմածին, ես Մելէք սպարապետ Աշէշամուր (Աշրգթիմուր), այս է ապահովութիւն առ ի յԱստուծոյ Բարձրելոյ և ապահովութիւն առաքելոյն նորա Մահմեդի, յորոյ վերայ հանգիցէ՜ շնորհ և փրկութիւն, և ապահովութիւն տեառն մերում հզօր Սուլթանին, սուլթանին Արաբացւոց և Պարսից, որ է գլուխ հաւատոյ մոլեմանաց, դատաւոր համօրէն աշխարհի և կործանիչ անհաւատից և թշնամեաց մերոցս օրինաց, Մելէք ամիրայ Լասարաբ (էլ Աշրաֆ), Շաբան՝ իշխան աշխարհի և հաւատոյ, որդի տեառն մերոյ սուլթանին, Զամալէդդին Հիւսէյինի որդի տեառն մերոյ սուլթա-

նին և երաշխաւորող Մելէք Մասար (Նասըր), Մահմեդի որդւոյ տեառն մերոյ երաշխաւորողի Մելէք Մանսուր Գալլահոմի (Քելաունի)։ Բարձրեալն տացէ նմա զօրութիւն ի վերայ ժառանգութեան իւրոյ և արասցէ զնա տէր ի վերայ ամենայն երկրածնաց։ Այս է յիտկար ապահովութեան Թագաւորին՝ որ հզօրագոյնն է արարածոց, քաջի Առիւծուն, մկրտելոյն ի ջուրս աւազանին, պահազին պատուիրանաց Աւետարանի, հայազարմ արքային և մեծին յերկրպագուս խաչին, զօրագլխին քրիստոնէական բանակի և հիման հաւատոյ քրիստոնէից, բարեկամին թագաւորաց և սուլթանաց, արքային Լևոնի, որդւոյ Յովհաննու իշխանի, զոր Տէր Աստուած պահեսցէ ընդ երկայն աւուրս։ Եւ տամք նմա զայս գիր յապահովութեան զի եկեալ յաշտարակէն յանձն արասցէ զայն սուլթանին հզօրի. և երթիցէ ուր և կամեսցի։ Եւ սովին յիտկարաւ յապահովեալ է անձն նորա և թագուհւոյն, անձինք զաւակաց նորա, ինչք նորա և ամենայն մարդիկ, և լեցի անկասկած և մեծարեալ յամենեցունց։ Եւ զի գիտասցէ, զի հաստատուն է այս յիտկար, որ տուաւ վասն նորա, վասն թագուհւոյն, վասն որդւոց և ընչից նորա։ Գրեցաւ յամսեանն Ապրիլի, ի թուին մահմեդականաց 777։ Գոհութիւն Աստուծոյ, զի Աստուած արար զգթութիւն իւր ի վերայ Մոհամմեդի և ի վերայ աշակերտացն նորա»։

# ԳԼՈՒԽ ՃԸ.

Թէ զիարդ Ջեննեյա Ռազմաւորն յաղթահարէին և անձնատուր եղև ամիրային Մելէքայ, որ առաջի արար նմա պէսպէս ընտրութիւնս։

Եւ իբրև ընկալաւ զյետկայն ապահովութեան թագաւորն Լևոն, որ կայր հիւանդ յանկողնի, խոստովան եղև զմեղս իւր, ետ մատուցանել պատարագ և հաղորդեցաւ Սրբոյ Խորհրդոյն ջերմեռանդն հաւատով, որպէս թէ երթալոց էր ի մահ։ Զի թէպէտ և ունէր ի ձեռին զթուղթն ապահովութեան, այլ ակնկալեալ մնայր մահուան. զի տեսանէր զանձն կալեալ և մատնեալ ի ձեռս անհաւատից, թշնամեացն Յիսուսի Քրիստոսի և իւրոցն։ Եւ ապա յանձն արարեալ զանձն ի ձեռս Աստուծոյ և Տիրամօր Կուսին Մարիամու, կնքեաց զերեսն նշանաւ խաչի՝ իբրև ճշմարիտ քրիստոնեայ, և էջ յաշտարակէ անտի, առեալ ընդ իւր զբանալիս բերդին ել և գնաց առ Մելէք։ Եւ իբրև եմուտ առ նա՝ ետ նմա ողջոյն ըստ հրահանգի սարակինոսացն, խոնարհեցուցեալ զգլուխն մինչև յերկիր հնգիցս և վեցիցս, յառաջ քան զխօսելն։ Եւ հրամայեաց ամիրայն զգեցուցանել նմա պատմուճան մետաքսեայ ոսկեհիւս՝ ըստ սովորութեան իւրեանց, և ասէ ցնա. «Տէ՛ր արքայ, հրաման է ինձ ի տեառնէ մերմէ ի սուլթանէն ասել քեզ. նախ՝ զի եթէ հաճեսցիս ընդունել զդէն սարակինոսաց, մեծածուցէ զքեզ յոյժ և դարձուսցէ առ քեզ զթագաւորութիւն քո. այլ եթէ կամիցիս կալ մնալ աստանօր իբրև քրիստոնեայ, տացէ քեզ զմին ի բերդորէիցդ ընդ որ հաճեսցիս։ Իսկ եթէ ոչ կամիցիս մնալ աստանօր այլ երթալ յաշխարհն քո, տաց

քեզ գունդ զօրաց, որ տարցէ զքեզ անքոյթ մինչև ի քաղաքն Տարսոն, որ է մերձ ի ծովն, և անտի դիւրագոյն իցէ քեզ գնալ անցանել յաշխարհ քո:

---

## ԳԼՈՒԽ ՃՁ.

**Թէ ո՛րպէս Թագաւորն շնորհակալ եղև ամիրային Մելէքայ վասն շնորհացն, և զի Մելէք ետ հարկանել խորան ի բնակութեան արքային:**

Յոյժ շնորհակալ եղև Թագաւորն ամիրային Մելէքայ վասն առաջի արկելոյն ի նմանէ և ասէ ցնա: «Տէ՛ր, վասն առաջնոյ բանիդ, զոր ասացեր, այսինքն զի եթէ յանձն առից տանջկանալ՝ դարձուցես յիս զիմ Թագաւորութիւն, այս ինչ յայտնի լիցի քեզ, զի ընտրեմ մեռանել և պատառ պատառ կոտորիլ՝ քան ուրանալ զարարիչն իմ զՅիսուս Քրիստոս և զհաւատն որ ի նա: Իսկ վասն երկրորդին՝ շնորհելոյ ինձ դղեակ մի ի բնակութիւն յերկրիս յայսմիկ, որովհետև այնպէս իսկ եղեն կամքն Աստուծոյ զի կորուսից ես զամենայն, քա՛ւ լիցի ինձ ստանալ ինչ ընդդէմ կամաց Նորա, որ կարող է շնորհել ինձ զբովանդակն երբ և թուեսցի Նմա հաճոյ: Այլ ես շնորհակալ եմ քեզ մեծապէս: Իսկ վասն երրորդին, գնալոյ ասեմ յերկիրն իմ հայրենի, ոչ կարեմ այժմէն տալ քեզ առ այն պատասխանի, այլ խնդրեմ ի քէն զի թոյլ տացես ինձ խորհել մինչև ի վաղիւն»: Հաճոյ թուեցան Մելէքայ բանք Թագաւորին և հրամայեաց հարկանել խորան մեծ զի բնակեսցի անդ արքայ ի հանգստեան և ի պատուի. և առաքեաց առ նա վիրաբոյժս երկու զի դարմանեսցեն զվէր նորա. և հրամայեաց տալ նմա ռոճիկս առատա-

պէս։ Եւ յետ. այնորիկ առաքեաց Մելէքն զարս իւր յաշտարակն և կալաւ զայն յանուն սուլթանի տեառն իւրոյ։

---

## ԳԼՈՒԽ ՃԴ.

Թէ որպէս եհարց Թագաւորն զերկոտասանեայս ոստանս ուրացեալս, որ էին ի խորհրդականաց Մելէքայ, եւ թէ կարէ՞ց արդեօք մեկնել անտի աներկիւղ։

Եւ բազում խորհեցաւ արքայ ի վարանս տարակուսի թէ զի՞նչ տացէ պատասխանի ցՄելէքն ի վաղիւ անդր յառաւօտու վասն գնալոյն յերկիր իւր, որպէս խոստանայր նմա։ Եւ ի գալ գիշերին՝ առաքեաց զաղտ առ ոմանս յիշխանաց անտի Հայոց, որք խորհրդականք էին ամիրային։ Եւ թէպէտ էր նոցա ուրացեալ զհաւատս, այլ սիրելի էր նոցա անձն արքայի. և խնդրէր ի նոցանէ զի եկեսցեն ի խորան նորա խօսել ընդ նմա։ Եւ փութացան նոքա գալ յօժարութեամբ. և թագաւորն երդմնեցուցեալ զնոսա ըստ օրինաց նոցա, աղաչէր իբրև զբարեկամս զի տացեն նմա խորհուրդ՝ թէ կարէ՞ր արդեօք մեկնել յաշխարհ իւր անվտանգ, որպէս խոստանայր նմա ամիրայն Մելէքն, և թէ մա՞րթ ինչ էր վստահանալ ի բանս նորա։

Պատասխանի ետուն նոքա և ասեն. «Տէ՛ր արքայ, երդնումք յօրէնս մեր ասել քեզ զճշմարիտն, առ մեծի սիրոյ քո և առ գութ անհնարին թշուառութեանն, յոր անկեալ կաս։ Գիտասջիր քաջ, տէ՛ր, զի կամին դաւաճանել զքեզ. այո՛, թողցեն զքեզ մեկնել աստի, այլ յորժամ ի մէջ քոյոց լինիցիս՝ դարանամուտ եղեալ յարիցեն ի վերայ և սպանցեն զքեզ։ Ո՛չ գիտելով գիտեն

նոքա զի այր ազնուատոհմ ես դու, համարիմ զարքայն Գաղղիոյ և այլոց Թագաւորաց քրիստոնէից և զոն քո բարեկամք հզօրք։ Ոչ զանխուլ ինչ է ի նոցանէ զի եթէ թողցեն զքեզ գնալ, արեանառուք քո և բարեկամք ձեռըն-տու լիցին քեզ, շնորհելով զօրս առ ի զվրէժ լուծանել անցից չարեաց, զոր անցուցին ընդ քեզ։ Վասն այսորիկ լաւագոյն ես թուի մեզ զի խնդրեսցես յամիրայէն ա-ռաքել զքեզ առ սուլթանն Բաբելոնի. և յելանել քո առաջի նորա՝ ցուցցես նմա զգիրդ ապահովութեան՝ տուեալ ի զօրավարէ անտի նորա, որոյ հրամանաւ գնա-ցեալ է քո առ նա. և լիցի քեզ առաւել ես պատուով մեկնել անդուստ՝ քան աստուստ»։

Ի լուր բանիցս այսոցիկ գոհացաւ զնոցանէ Թագա-ւորն. և տուեալ իշխանացն զողջոյն հրաժեշտի ելին յե-րեսաց նորա և դարձան զաղտագողի ի տեղիս իւրեանց։ Եւ ի վաղիւ անդր գնաց Թագաւորն առ զօրագլուխն և խնդրեաց ի նմանէ՝ զի առաքեսցէ զնա առ սուլթանն. և նա խոստացաւ զայն յօժարութեամբ։

---

## ԳԼՈՒԽ ՃԲ.

Թէ որպէս ետ Թագաւորն ի ձեռս ամիրային Մ՚ելէքայ զամենայն ինչս և զգանձս արքունի, զոր եգիտ ի ժամանել անդ ի-րում ի Հայաստան. և թէ որպէս առաքեաց զայնս Մ՚ելէք առ սուլթանն։

Եւ լուեալ արքայի զի ամիրայն Մ՚ելէք եդեալ էր ի մտի խնդրել ի նմանէ զգանձն արքունի, որ տուաւ նմա ի պսակիլ անդ իւրում ի Թագաւոր Հայոց, խորհեցաւ զի լաւ ես էր նմա տալ զայնոսիկ ի ձեռս նորա յօժա-

րակամ, յառաջ քան զինդրելն. և գնացեալ առ նա խօսեցաւ ընդ նմա և ասէ. «Տէ՛ր, որովհետև հաճոյ եղև Աստուծոյ զի աշխարհն Հայոց համօրէն անցցէ ի ձեռս սուլթանին, ցանկալի է ինձ յիմմէ կողմանէ մատուցանել նմա ի նուէր զգանձն արքունի, զոր գտի ի Հայաստան։ Այլ աղաչեմ զքեզ, տո՛ւր կոչել այսր զամենայն Հայս, զի տեսցեն զգանձն թէ իցէ՞ որպէս և էրն յաւանդել ինձ նոցա զայն. զի ճանաչեմ ես զնոսա և զոն արք նենգամիտք և բանսարկուք ի նոսա, որ յետ մեկնելոյ իմոյ ասասցեն քեզ, թէ խորեալ իցէ իմ անտի և կալեալ մասն մի առ իս։ Եւ մատոյց Թագաւորին առ Մելէք զգլոց մի, յորում էին մարգարիտք և ականք պատուականք երկուց արքայական Թագիցն և այլ ևս գոհարք ծանրագինք և ականակապ գօտիք և ճարմանդք, որոց ամենեցուն գին հատեալ էր, յորժամ մատուցան առ արքայ, հինգ հարիւր հազար դահեկանս ոսկւոյ։ Իսկ ամիրայն բազում շնորհ կալաւ արքայի, այլ ոչ կամեցաւ ընդունել զգանձն ի ծածուկ, զի էին նորա թշնամիք ի սարակինոսաց անտի, և առաւել քան զամենեսին թշնամի էր նորա Նեդամուր՝ ամիրայն Դամասկոսի, որ յաճախ ամբաստան լինէր զնմանէ առ սուլթանն։ Եւ ասէ ցարքայ. «Տէ՛ր արքայ, կա՛ զգլոցդ և զականսդ. վաղիւ ընդ առաւօտն ելից ես յաշտարակն առեալ և զքեզ ընդ իս, և եղիցին առ ետեգ մեծամեծքն սարակինոսաց և Հայոց համօրէն. և անդ առաջի ամենեցուն տացես բերել զուզայնոսիկ և մատուսցես առ իս. այսպէս բարւոք լինիցի քե՛զ և ի՛նձ միանգամայն։ Եւ էառ Թագաւորն զգանձն և կալաւ առ իւր ի գիշերին. և ի վաղիւ անդր յառաւօտուն գնաց յաշտարակ անդր ընդ Մելէքայ և լու ի լու զօրավարաց սարակինոսաց և իշխանացն Հայոց ասէ.

*

«Տէ՛ր Մելէք ամիրայ, ահա մատուցանեմ քեզ զամենայն զգանձս արքունի, զոր ետուն ինձ Հայք ի գալստեան իմում այսր, և խնդրեմ ի քէն զի առաքեսցես զայն յիմմէ կողմանէ առ սուլթանն Բաբելոնի։ Եւ հարցջէր նախ ցիշխանսդ Հայոց, որ աստ կան, եթէ իցէ՞ գանձդ բովանդակ թէ ոչ»։ Եւ ընկալաւ Մելէք զգանձն և հարցանէր ցիշխանսն եթէ պակասիցէ՞ ինչ։ Պատասխանի ետուն և ասեն. «Տէ՛ր, արդարև տեսանեմք մեք զի պակասի և ոչ ինչ ի գանձուէն»։ Եւ ետ անդէն Մելէք կշռել և զգրի հարկանել զամենայն առաջի աչաց իշխանաց, որք անդն կային, և նոյն հետայն առաքեաց առ սուլթանն ի ձեռն եղբօր իւրոյ հարազատի և քարտուղարին։

---

## ԳԼՈՒԽ ՃԹ.

Թէ որպէս ամիրայն Մելէք մեկնեցաւ ի քաղաքէն Սսոյ և տարաւ ընդ իւր զԹագաւորն և զԹագուհին և զորդիս նոցա և զայլ բազումս ի քաղաքն Հալէպ։

Յաւուրս տօնի սրբոյ Զատկի, որ օր քսաներորդ երկրորդ էր ամսեանն Ապրիլի, մեկնեցաւ ամիրայն Մելէք ի քաղաքէն Սսոյ և էառ ընդ իւր զԹագաւորն և զԹագուհին և զորդիս նոցա և զնախկին Թագուհին Հայոց, որոյ էր լեալ կին առաջնոյ բռնաւոր Թագաւորին Կոստանդնի, և զիշխանն Սոհիէ Գուլկարտ և զկոմսուհի կին նորա և զիշխանս Հայոց և զմեծամեծս քաղաքին Սսոյ, ընդ ամենայն՝ արս իբրև քսան. և կարգեալ ի տեղի իւր զմի ոմն հրամանատար ի քաղաքն Սիս, ել անտի և եկն եհաս ընդ նոսա ի Հալէպ, քաղաք իշ-

խանութեան իւրոյ, ի վերջնում անդ աւուր ա. Ապրիլի, և տուեալ հարկանել զխորանս իւր և զտաղաւարս դէմ յանդիման քաղաքին, ագաւ անդանօր և գիշերեաց ինքն և որք ընդ նմայն էին, և ոչ. մտին ի քաղաք անդր։ Եւ առաքեաց հրաման առ բնակիչս Հալպայ զարդարել և պաճուճել զքաղաքն ոսկեհուռն դիպակօք և ընդ առաւօտն ելանել գալ ընդ առաջ իւր, ըստ իւրեանցն օրինաց կազմեալ թափօր, և գունդք զօրաց ըսպառազէնք ընդ նոսա։ Եւ զայս այսպէս տնօրինէր նա նախ՝ վասն յաղթութեանն տարելոյ, և երկրորդ՝ զի ցուցանել կամէր արքային Լևոնի զփառս իւր և զպերճութիւն։ Եւ ի վաղիւ անդր՝ վառեալ զզօրս իւր ի զէն և ի զարդ, մեծահանդէս փառօք և բազում պատուով եմուտ ի քաղաքն, ընդ իւր ունելով և զթագաւորն։ Եւ իբրև մտին ի քաղաք անդր, չև հասեալք յապարանս Մելէքայ, անցին առաջի բերդի քաղաքին, ուր էր հրապարակ մեծ, և յորում շուկայն վաճառականաց․ և տեղի էառ Մելէք ի միջի զօրացն և երամ երամ ժողովրդեան, և հրաման տուեալ իջուցանել յերիվարացն զարքայ և զարս նորա, բաց ի կանանց, ետ մեծագոչ բարբառով գովաբանել և փառաւորել և մեծացուցանել զդեն իւրեանց։ Եւ պատուիրեաց թագաւորին և արանց նորա խոնարհեցուցանել զգլուխ իւրեանց մինչև յերկիր ի փառաւորութիւն անուան նորա և կրօնիցն։ Եւ թէպէտ երկիր եպագ արքայն և որք ընդ նմայն էին, այլ ոչ փառաւորեցին նոքա զդեն ամիրային և ոչ զՄահմէդ նորա, այլ իբրև ճշմարիտ քրիստոնեայք օրհնէին ի սիրտս իւրեանց զՔրիստոս Յիսուս։ Եւ զայս ամենայն ետ առնել ամիրայն վասն երկուց պատճառաց, մի՝ ի պատիւ օրինաց իւրոց և Մահմէդի և զի մեծարեալ փառաւո-

բեսցի նա վասն երեւելի յաղթութեանն, զոր տարաւ ի վերայ քրիստոնէից. և երկրորդ՝ զի նուաստացեալ անշքասցին քրիստոնէութիւն և թագաւորքն քրիստոնէից։

Յետ այսորիկ հրաման տուեալ զի թագաւորն և իւրքն հեծցին վերստին յերիվարս իւրեանց, կացոյց զնոսա ի հրապարակի միում և ինքն համայն զօրօք իւրովք էանց առաջի նոցա առ ի ցուցանել զմեծվայելչութիւն փառաց իւրոց. և գնացեալ եմուտ յապարանս իւր։ Եւ ետ թագաւորին օթեւան ըստ արժանի պատուոյ նորա և զկերակուրսն հրամայեաց տալ նմա և նորայոցն պատշաճապէս։

Եւ յետ այնորիկ պնդադեսպան արձակեաց առ սուլթանն ի Կահիրէ, հարցանել զկամս նորա զթագաւորէն Հայոց։ Եւ ինքն ամիրայն Մելէք գուն գործէր իւրովսանն հաճոյակատար լինել արքային։

Եւ եղև իբրև եկն անդ թագաւորն Լևոն, եգիտ ի բերդին քահանայ զոմն հայ և զպատգամաւորն, զոր արձակեալ էր նորա ի Կոռիկոսէ ի Հայաստան ընդ Մանուէլին այնորիկ, զոր իշխանն Տարենտոնի առաքեալ էր առ թագաւորն, որպէս յառաջագոյն ասացաք. և էր Մանուէլ ի բանտի ընդ քահանային և ընդ պատգամաւորին և անկեալ ի հաւատոց՝ զսարակինոսացն ընկալեալ էր զդէնն։ Իսկ այլքն երկոքին՝ կացեալ մնացեալ էին հաստատունք ի ճշմարիտ հաւատս իւրեանց։ Էր անդ ի բերդին և այլ ոմն հայ, որ յերեսուն և հինգ ամաց հետէ ծառայէր սարակինոսաց, կացեալ մնացեալ անդրդուելի ի հաւատս Քրիստոսի։ Զնոցա չորեցունց խնդրեաց թագաւորն զազատութիւն ի Մելէքայ, որ առ սէր նորա արձակեաց զնոսա. և նոքա գնացին յուպետ յուկամ։

## ԳԼՈՒԽ ՃԺ.

Թէ որպէս ամիրայն Մելէք առաքեաց զԹագաւորն և զօրս ընդ նմա ի Գահիրէ առ սուլթանն Բաբելոնի։

Եւ եկաց մնաց Թագաւորն ի Հալէպ ընդ բոլոր ամիսն Մայիսի։ Եւ ի վերջնումն աւուր նորին ամսեան՝ դարձաւ եհաս ի քաղաք անդր պնդադեսպանն յղեալ յամիրայէն առ սուլթանն հարցանել զԹագաւորէն. և եբեր ի նմանէ հրովարտակ առ Մելէք առաքել զԹագաւորն ի Գահիրէ. և կատարեաց նա զհրամանն։

Յառաջներորդի աւուր ամսեանն Յունիսի մեկնեցաւ Թագաւորն ընդ իւրայոցն ի Հալպայ, երթալ ի Գահիրէ. և հասին անդր յիններորդ աւուր ամսեանն Յուլիսի, և օրն էր չորեքշաբաթի, յամի Տեառն հազար երեք հարիւր եօթանասուն և հինգ. և սուլթանն էր անդանօր ի քաղաքին, այլ ոչ իսկ և իսկ մօտին առ նա. սակայն տուաւ նոցա տեղի բնակութեան վայելչապէս։

---

## ԳԼՈՒԽ ՃԺԱ.

Թէ որպէս սուլթանն ետ ածել առաջի իւր զԹագաւորն և զօրս ընդ նմա և յորդորեաց զնոսա ընդունել զդէն սարակինոսաց։

Եւ ի գալ երկուշաբաթուն որ օր քսաներորդ երրորդ էր ամսեանն Յուլիսի և էր օր ԱողոՏի, զի զաւուրս երկուս յեօթնեկին՝ զերկուշաբաթին և զհինգշաբաթին կոչեն նոքա բարբառովն իւրեանց աւուրս ԱողոՏի, և յայն երկուս աւուրս ելանէ սուլթանն ի սենեկէ անտի իւրմէ

և հրևի որոց կամիցին զնա տեսանել։ Եւ ամենայն իշխանք և զօրավարք նորա կան առաջի հրեսաց նորա ի սրահ ատենին և ապա առնէ նոցա հացկերոյթ յապարանս իւր։ Եւ յերկուշաբաթօջն յայնմիկ, որ էր օր Աւղոտի, ետ սուլթանն ածել զթագաւորն և զնորայինսն զառաջեաւ իւրով և սարակինոսք փութացան հետուն ալքայի բանալ զգլուխ իւր և խոնարհեալ երիցս երկրպագել։ Եւ սուլթանն յոտին կացուցեալ զալքայն դէմ յանդիման իւր և ասէ ցնա. «Արքա՛յ, ուրացի՛ր զհաւատս քո, լե՛ր սարակինոս և արասցուք մեք զքեզ իշխան մեծ»։ Եւ պատասխանի թագաւորն աղաչելով զի մի՛ անհաճոյ թուեսցին նմա բանք իւր զի ոչ էր նմա հնար մինչև ցմահ ուրանալ զՏէր Յիսուս Քրիստոս և զհաւատս որ ի նա. և շնորհակալ եղև ընդ խոստումն իշխանութեանն և ապա խնդրեաց ի սուլթանէն զի հաստատեսցէ զյետկար ապահովութեան՝ զոր Մելէք զօրավար նորա տուեալ էր նմա հրամանաւ իւրով։ Պատասխանի ետ նմա սուլթանն թէ հաճէր զի գիրն այն լիցի վաւեր, բայց ոչ բարւոք համարէր թողուլ զնա գնալ յԱրևմուտս, յայնկոյս լերանց, այլ կարող էր կեալ յապահովի յամենայն կողմանս տէրութեան իւրոյ՝ ուր և հաճոյ թուիցի նմա։ Եւ երկրպագեալ նմա վերստին, ել թագաւորն յերեսաց սուլթանին և գնաց յօթևանս իւր։

Եւ առաքեաց սուլթանն զմին ի զօրապետաց անտի իւրոց՝ Գեստամուր անուն, հարցանել զալքայ և զօրս ընդ նմա, թէ յորում քաղաքի կամիցին հաստատել բնակութիւն, զի հրամայեսցէ զպարէնն առօրեայ։ Եւ թագաւորն, որ ոչ ուստեք ունէր ինչ ի կերակուր, և լեալ էր տեղեակ ի բարեկամաց անտի իւրոց թէ այլուր ոչ

կարէր այնքան դիւրագոյնս գտանել զպիտոյսն որքան ի Բահիրէ, խնդրեաց բնակել անդէն։

Յայնժամ կոչեաց Գիստամուր զմեծամեծս և զպատուաւորս Հայոց, որք ի վաղուց հետէ բնակէին ի Բահիրէ և էին ստրուկք սուլթանին, և եհարց զնոսա թէ կամիցի՞ն երաշխաւոր լինել Թագաւորին և ածել զնա առ սուլթանն երբ և հրամայիցէ։ Եւ նոքա խնդրեցին և ընկալան ի Գիստամուրէ ժամանակ զի գնասցեն նախ խօսել ընդ Թագաւորին և եղիցին վստահացեալք ի նմանէ։ Եւ չոգան առ նա խօսել զիրացն. և ի բանից անտի նորա հաճեցեալ, դարձան առ Գիստամուր և երաշխաւորեցին զԹագաւորն. և արձանագրեցաւ երաշխաւորութիւնն նոցա։ Եւ յետ այնորիկ եկեալ Հայոց ընկալան զարքայ սիրով և ետուն նմա տուն բնակութեան ըստ հաճոյից կամաց իւրոց։ Եւ սուլթանն հրամայեաց տալ նմա վասն ուտեստի վաթսուն դրամս արծաթոյ զօր հանապազ։

## ԳԼՈՒԽ ՃԺԲ.

Թէ որպէս նախկին Թագուհին և իշխանն Սոհիէ Պուլկարտ խնդրեցին ի Գիստամուրէ զի գնասցեն բնակել յԵրուսաղէմ. և կաթողիկոսն և այլքն ի Հայոց խնդրեցին շնորհս դառնալ ի Հայաստան։

Եւ յետ այնորիկ զօրապետն Գիստամուր եհարց զնախկին Թագուհին Հայոց և զիշխանն Սոհիէ Պուլկարտ և զկոմսուհի կինն իւր թէ ո՞ւր կամիցին բնակել։ Եւ նոցա պատասխանի արարեալ ասեն թէ կամին երթալ յԵրուսաղէմ։ Եւ շնորհեաց նոցա գնալ անդր և սահ-

մանկաց նոցա զպարէնն. բայց ոչ բարւոքապէս վճարեցաւ նոցա այն։

Եւ յետ այնորիկ կոչեաց զկաթողիկոսն և զհայսն, որ եկեալ էին ընդ Թագաւորին ի քաղաքէն Սսոյ, և հարց զխորհուրդս մտաց նոցա։ Եւ նոքա խնդրեցին շնորհս ի սուլթանէն զի թողցէ զնոսա դարձ առնել յաշխարհն հայրենի և վայելել զինչս ժառանգութեան իւրեանց, կացեալ ընդ լծով իշխանութեան նորա. և սուլթանն եթող զնոսա գնալ։

Իսկ ընդ նոսա և պարոնն Վասիլ, որ լեալ էր խորհրդակից կաթողիկոսին ի մատնել զԹագաւորն և զքաղաքն Սիս. սա ուրացաւ զՔրիստոս և արք չորք ընդ նմա և դարձան ի դէն սարակինոսաց և այլքն ընդ կաթողիկոսին իւրեանց դարձան ի քաղաքն ի Սիս։ Եւ յետ ընդունելոյ զսարակինոսացն դէն խնդրեաց պարոն Վասիլ ի սուլթանէն շնորհս բազմադիմիս. այլ զի քաջ իսկ գիտէր սուլթանն թէ նորա էր մատնեալ զարքայն, զընիկ տէր իւր և զԹագաւոր, նաև զքաղաքն, ուր էրն ծնեալ, վասն այնորիկ իսկ ոչ կամեցաւ շնորհել նմա և ոչ մի ինչ յորոց խնդրէրն։

---

## ԳԼՈՒԽ ՃԺԳ.

Թէ որպէս պատուէրեաց կաթողիկոսն քահանայից Հայոց մի՛ ևս աղօթել վասն Թագաւորին և սուրբ պատարագին և յայլ ամենայն Տաճկական իշխանաց.

Թէպէտ և ոչ յոյժ հաւատարիմք իցեն Հայք տէրանց իւրեանց, այլ է նոցա առանձինն ինչ բարւոք սովորութիւն զի քահանայքն ամենայն աղօթեն ի սուրբ

պատարագին և յայլ մաղթանսն հանապազօրեայս վասն թագաւորացն Հայոց վախճանելոց և յականէ յանուանէ վասն թագաւորին, որ կենդանին է։ Բայց կաթողիկոսն՝ քանզի լեալ էր կամակից մատնութեան թագաւորին և քաղաքին, ոչինչ շատացաւ այնու, այլ առ չարամտութեանն և անգթութեան՝ հրամայեաց քահանայիցն Հայոց բնակելոց ի Կահիրէ և ի Հայաստան, սպառնալեօք բանադրանաց, զի մի՛ այլ ևս աղօթեսցեն ի պատարագի վասն Լևոն թագաւորի տեառն իւրեանց և մի յիշեսցեն զանուն նորա յայլ յամենայն մաղթանս. այլ փոխարէն հակառակն՝ աղօթեսցեն վասն սուլթանին Բաբելոնի։ Սակայն ոմանք ի Հայոց, որք բնակէին ի Կահիրէ, տեսեալ զի այս հրաման հակառակ էր Աստուծոյ և նախնի սովորութեան իւրեանց, պատասխանի ետուն ցկաթողիկոսն և ասեն. «Տէ՛ր սրբազան, դու ես գլուխ մեր և տէր հոգևոր և կարես հրամայել մեզ իբրև հպատակաց քոց. այլ մի՛ անհաճոյ թուեսցի ինչ քեզ եթէ ոչ հնազանդեսցուք քեզ ի բանիդ. վասն զի հակառակ է Աստուծոյ և բարի և սուրբ սովորութեան թագաւորութեանն Հայոց։ Եւ քանզի աղօթեմք մեք վասն հանգուցեալ թագաւորացն մերոց որպէս և վասն սուլթանին Բաբելոնի, պարտ և պատշաճ է մեզ աղօթել և վասն տեառն մերոյ արքայի, որ է քրիստոնեայ հաւատով, և յայդքան վիշտս տառապանաց անկեալ գտանի վասն մեր ամենեցուն։ Եւ արդ գիտասջիր զի պատուէր քո այդ և հրաման՝ ընդդէմ թուի մեզ բանի և արդարութեան»։ Եւ այսպէս ոչ դադարեցին Հայք աղօթել վասն թագաւորին իւրեանց, որպէս սովորեալ իսկ էին, և ոչ հնազանդեցան ի բանիդ յայդմիկ կամաց կաթողիկոսին իւրեանց։

## ԳԼՈՒԽ ՃԺԴ.

Թէ ո՛րպէս բռնադատեաց սուլտանն զԹագաւորն գրել գի-
տակար ուխտի զի մի՛ երբէք մեկնեսցի ի Կահիրէէ։

*Արդ եղեւ յետ անցանելոյ ամսոց իբրեւ երից ի գալըստեանն անտի Թագաւորին ի Կահիրէ, վարանեալ սուլթանին խորամանկութեամբ ի միտս իւր, եղեւ ի կասկածի՝ թէ մի՛ գուցէ արքայն Լեւոն թողեալ մեկնեսցի անտի եւ դարձցի ի հայրենիս իւր. զի քաջ իսկ գիտէր թէ տոհմակից էր նա մեծազունիցն ի Թագաւորաց եւ իշխանաց քրիստոնէից. եւ եթէ մի ոմն ի Թագաւորաց անտի եւ յիշխանաց առաքեալ հրեշտակս խնդրեսցէ զարքայն, չգոյր եւ ոչ մի պատճառ մերժելոյ նմա զայն, մանաւանդ զի ունէր նա ի ձեռին թուղթ յամիրայէն Հալպայ տուեալ հրամանաւ նորին ինքեան սուլթանին, մեկնելոյ երբ եւ հաճոյ թուեսցի նմա։ Վասն որոյ խորհեցաւ ի միտս իւր զայն զայս հնար չարութեան. հրաման ետ զօրագլխին իւրում Դիստամուրի կոչել զարքայ յապարանս իւր եւ սպառնալեօք եւ կամ այլազգ ինչ օրինակաւ առնուլ թուղթ ի ձեռաց նորա զի մի՛ երբէք մեկնեսցի ի Կահիրէէ։ Արդ կոչեցեալ զօրագլխին զարքայ, ծանոյց նմա զհրաման սուլթանին։ Իսկ Թագաւորն հրաժարէր տալ զգիտակարն, պատճառս առբերելով յոլովագոյնս։ Այլ իբրեւ յաւել նա սպառնալիս՝ ստիպելոյ զնա յուրաստ կալ զարարիչն իւր եւ արկանելոյ զնա ի բանտ, հաւանեցաւ արքայ թէ կամօք թէ ակամայ գրել զթուղթն զայն ձեռամբ իւրով, ըստ յօժարութեան սուլթանին, որ ցանկայր յոյժ ունել առ իւր գիտակար ուխտին, զի ցուցցէ այնոցիկ, որք*

առաքեսցեն առ նա Հրեշտակս առ ի խնդրել զարքայ, և իցեն նմա իրաւունք չարձակելոյ զնա։

---

## ԳԼՈՒԽ ՃԺԵ.

### Թէ ո՛րպէս առաքեաց արքայն Կիպրոսի կրօնաւորս երկուս Յակոբեանս առ սուլտանն վասն խնդրելոյ զԹագաւորն։

Յետ սակաւ ինչ ժամանակի ի վերայ անցանելոյ ըմբռնման իւրոյ, առաքեաց Թագաւորն Լևոն առ արքայն Կիպրոսի արեանառու իւր, զի յղեսցէ պատգամաւորս առ սուլթանն առ ի խնդրել զարձակումն նորա։ Եւ արքայն Կիպրոսի առաքեաց կրօնաւորս երկուս Յակոբեանս առ սուլթանն, տուեալ ի ձեռս նոցա նամակ մի լոկ, յորում աղաչէր զնա զի արձակեսցէ զԹագաւորն Լևոն։ Այլ արգելան երկոքին կրօնաւորքն ի Դամասկոս և ոչ եղև նոցա երթալ առ սուլթանն, զի աղքատք էին, հանդերձիւք գձուձք և ունայնաձեռն, առբերեալ և ոչ մի պարգև. և առեալ ի ձեռաց նոցա զԹուղթն՝ հասուցին առ սուլթանն։ Եւ ասացին ցնոսա թէ ի զուր խնդրէին զԹագաւորն, զի կամէր նա կալ մնալ ի Գահիրէ զամենայն աւուրս կենաց իւրոց որպէս յայտ էր ի յետկարէ անտի գրելոյ իւրով իսկ ձեռամբ։ Եւ այսպէս եկաց մնաց Թագաւորն ի Գահիրէ մինչև ցմահ սուլթանին, որ կոչէր Մելէք Աշրաֆ, որ և կորեաւ խեղդամահ յիւրայնոց անտի, յերկոտասաներորդի աւուր ամսեանն Մարտի, յամին հազար երեք հարիւր ութսնասուն և ութն։

---

# ԳԼՈՒԽ ՃԺԶ.

Թէ ո՛րպէս խնդրեաց Թագաւորն ի կրօնաւորէ ումեմնէ՝ որ կոչէր Յովհան Գարդէլ՝ յաշխարհէն Գաղղիոյ, զի հաճեսցի կալ ծառայ առ իւր:

Յամի Տեառն հազար երեք հարիւր եօթանասուն և եօթն եկին ի Գահիրէ ուխտաւորք բազումք՝ ասպետք, ազնուականք, զինակիրք և այլք, յորս էր և կրօնաւոր ոմն, անուանեալ եղբայր Յովհան Գարդել, ծնեալ յՆատամպ, յաշխարհին Գաղղիոյ, և ընկեր նորա եղբայր Անտոն Մոնոպոլեցի, որք երթային յուխտ յԵրուսաղէմ և ի լեառն Սինայ: Եւ իբրև լուան ուխտաւորքն զի թագաւորն Հայոց կայր արգելական ի Գահիրէ, եկին մեծարել զնա ի պատիւ քրիստոնէութեան և էր օրն այն տօն սրբուհւոյն Մարգարիտայ: Եւ եղբայր Յովհան մատոյց զսուրբ պատարագն առաջի թագաւորին: Եւ յաւարտել խորհրդոյն, աղաչեաց արքայ զՅովհան Գարդել կալ ծառայ անդէն առ իւր. զի զուրկ էր ի մխիթարութենէ և ոչ ունէր դպրանեկէց և ոչ զոք խորհրդական, բայց զԱստուած և եթ միայն: Եւ տեսեալ եղբօրն Յովհաննու զթշուառութիւն արքային՝ գթացաւ ի նա և ասաց թէ յետ կատարելոյ զուխտ իւր յԵրուսաղեմ, խնդրեսցէ արձակուրդ ի տէրանց իւրոց և եթէ հաւանեսցին նոքա՝ դարձցի առ նա աներկբայ:

Եւ արքայ ի ձեռն թղթոց մատոյց աղաչանս տեարց նորա. և իբրև հասին նոքա յԵրուսաղէմ՝ արձակեցին զեղբայրն Յովհան դառնալ անդրէն ի Գահիրէ առ թագաւորն, որ կալեալ զնա առ իւր իբրև հայր խոստովանութեան: Եւ մխիթարէր եղբայր Յովհան իւրովսանն

զթագաւորն յամենայն տառապանս նորա: Զի ոչ դադարէին սարակինոսք ի ստիպելոյ զթագաւորն ուրանալ զՔրիստոս և զօրէնս նորա, էր զի խոստանալով դարձուցանել ի նա զթագաւորութիւնն և առնել նմա բարիս որպիսիս չէր նորա տեսեալ ցայնվայր, և էր զի սպառնալիօք կորուսանելոյ զնա չարաչար մահուամբ. և բազում այն էր զի օրն ողջոյն թողուին անսուաղ զնա և զթագուհին և զդուստր նոցա և զամենայն ընտանիսն:

Եւ եկաց մնաց անդէն եղբայր Յովհան Դարդել ընկերաւն հանդերձ մինչև ցամն հազար երեք հարիւր եօթանասուն և ինն և գրեաց զամենայն զթուղթսն, զոր առաքէր թագաւորն յարևմուտս կոյս:

---

## ԳԼՈՒԽ ՃԺԵ.

Թէ ո՛րպէս որդի սուլթանին սպանելոյ՝ որ էր եօթնամեայ՝ յաջորդեաց զհայր իւր. և զի չև էր հասեալ յարբունս՝ եդաւ ընդ խնամակալութեամբ զօրավարի միոյ Քրդի՝ որ անուանեալ կոչէր Գարաչ:

Եւ յետ խեղդամահն սատակելոյ սուլթանին Մելէք Աշրաֆայ, միաբանեալ աւագանւոյն կարգեցին ի սուլթան զերէց որդի նորա, որ կոչեցաւ Մելէք Մանսուր. զի սովորութիւն էր երկրին յորդւոց յորդիս ժառանգել զսուլթանութիւնն: Եւ զի չև ևս էր նորա հասեալ յարբունս, գոլով ամաց եօթնից, խնամակալ եդաւ նմա և պետութեանն զօրավար ոմն աւագաշուք, Գարաչ անուն, որ վասն ուրախաբեր դահակալութեան սուլթանին՝ բաշխէր շնորհս առատապարգևս ամենեցուն առ հասարակ: Զայն լուեալ արքայի՝ գնաց առ նա և ե-

ցոյց զյետկարս, զոր տուեալ էր նմա սուլթանն վախճանեալ, և խնդրեաց ի նմանէ պատուալից թախանձանօք յակն արկանել զայն և կատարել զբովանդակեալն ի գրի անդ և առնել նմա շնորհս տալով թոյլ զի գնասցէ ուր և կամեսցի։ Եւ Գարաշ ետ նմա վստահութիւն թէ վարեսցի ընդ նմա որպէս պատշաճ և օրէն էր։ Եւ պատուիրեաց նմա առնել աղերսագիր առ սուլթանն և բերել առ նա ի վաղիւ անդր ընդ յետկարին, զի յանդիման արասցէ ժողովոյն, և ակն ունէր բարւոք պատասխանւոյ։ Շնորհս մատուցեալ նմա արքային, դարձաւ յապարանս իւր և ետ գրել զթուղթն աղերսանաց. և ընդ առաւօտն՝ գնացեալ անդրէն առ իշխանն, մատոյց նմա զաղերսագիրն և զյետկարն, զորս ընկալեալ նորա՝ առաջի արար ժողովոյն և զուն գործեաց, առ գութ սիրոյ արքային, պաշտպանել զիրաւունս նորա. և բազմահնար ջանիւք հաւանեցոյց զնոսա արձակել զթագաւորն։ Այլ մի ոմն յաւագաց անտի, Ենէրեգ անուն, շրջեաց զմիտս նոցա։ Վասն այսորիկ եկաց մնաց արքայ Լևոն ի Գահիրէ, որպէս յառաջն։

---

## ԴԷՊՔ.

Եւ զօրավարն Ենէրեգ, այր չար և ժանտաբարոյ, արձակեալ էր զաչս ի պաշտօն խնամակալութեան Գարաշի ի վերայ անտիական սուլթանին. և ի կեղծիս լեալ բարեկամութեան, խոստացաւ խնամակալին տալ նմա զդուստր իւր ի կնութիւն. և ի հաստատել դաշանց ամուսնութեանն, սահմանեցաւ օր հարսանեացն. և այր ընդ ընկերի իւրում երդուան յօրէնս իւրեանց ուխտ հաւատարմութեան առ միմեանս։ Եւ իբրև եհաս օրն

սահմանեալ, Ինէբէգ, որ գիտէրն քաջ զի Գարաշ ըմպէր զգինի անչափ, եւ բերել պէսպէս գինիս և մատուցանէր նմա յարբումն. և զի վաղագոյն եւս զինեհարեսցի եւ խառնել դեղս արբեցուցիչս յըմպելին։ Եւ Գարաշ՝ որ անկասկածն էր ամենեւին՝ էարբ յորդագոյնս, ինքն և որք ընդ նմայն էին, մինչև զինին կալաւ զխելս նոցա ամենեցուն։ Յայնժամ Ինէբէգ վառեցաւ ի զէն և առեալ յիւրոցն զինուորս հազար և հինգ հարիւր, դիմեաց ընդ նոսա ի դղեակ սուլթանին և զբռամբ արարեալ զնա եւ փակել զդրունսն և քարոզ կարդալ ընդ քաղաքն ողջոյն զի որ ոք հաւատարիմ իցէ սուլթանին՝ եկեսցէ առ նա. և որք իցեն նորա թշնամիք՝ երթիցեն առ Գարաշ։ Եւ ի լուր բանիցն՝ ոմանք գնացին առ սուլթանն և կէսք չոգան առ Գարաշ, վասն սիրոյն, զոր առ նա ունէին, զի էր այր ազնուական բարուք և առատաձեռն։ Եւ տեսեալ զնա յայսպիսի պայմանի, ոչ գիտացին թէ զինեհարեալ իցէ, այլ կարծեցին զնա յանզգայեալ, վասն որոյ թողեալ լքեալ զնա գնացին ի դղեակ անդր առ սուլթանն։ Եւ առաքեաց անդէն Ինէբէգ յանուն սուլթանին յաւարի առնուլ զամենայն գոյս Գարաշի՝ որ էին յապարանս նորա և հալածեաց զնա յերկիրն Նսորւոց։ Եւ կալաւ Ինէբէգ զխնամակալութիւն սուլթանին և զպետութեանն։

---

## ԳԼՈՒԽ ԾԺԲ.

**Թէ որպէս արքայն աղաչեաց զԻնէբէգ ի յետս առնել զօ-րսն Տփխիսի ոչ է արձակեաց զնա երկնալ այլ Ինէբէգ զերե-ալսն և էր հնաց յիշխանութեանն։**

Եւ իբրև եհաս իշխանութեանն Ինէբէգ, որ առ չարութեան իւրում խափան եղև սզատութեան արքայի,

որպէս ի վեր անդր ասացաք, կացոյց հազարապետ տան իւրոյ զայր ոմն աւագ, ուրացող, որ կոչէր Սաֆէդդին Բահադուր. և էր նա հոռոմ ազգաւ, ի Կիպրոսէ. և թագաւորն Լևոն կապեալ էր ընդ նմա սիրով բարեկամութեան։ Սաֆէդդին՝ առ սէր արքային ջան ի կիր արկեալ շրջեաց զմիտս տեառն իւրոյ տալ հրաման ազատութեանն արքայի և թողուլ զնա երթալ յաշխարհ իւր։ Եւ արդարև գոյր նմա զերծանիլ, եթէ էր Լէնէրէգի տեւեալ յիշխանութեանն առաւել քան զամիսս երիս։ Քանզի զօրավարք Ասորւոց և Հալպայ ոչ կամեցեալ հնազանդել նմա, գումարեցին գունդս գունդս զօրաց, որոց առաջնորդ և հրամանատար էր Դեստամուր Դուեդար, ամիրայն Դամասկոսի, աթենադպիր սուլթանին սպանելոյ։ Եւ եկին ի դրունս Քահիրէի, հարկանել վանել զԼէնէրէգ։ Յայնժամ և նա հանդերձեցաւ և կամեցաւ ճակատ տալ ընդ նոսա, այլ իբրև էջ ի դաշտ մարտին, երկեաւ թէ գուցէ մատնեսցի յեւրայնոց անտի, զի էր ատեցեալ յամենեցուն առ վատթարութեան իւրոյ և ժլատ ագահութեան։ Վասն որոյ եւ խուսափեաց ի ծածուկ և ոչ ոք գիտաց թէ զի՞նչ եղև։

---

## ԳԼՈՒԽ ԾԺԹ.

Թէ որպէս Դեստամուր, ամիրայն Դամասկոսի, կալաւ զիշխանութիւնն և եկն առ նա Լէնէրէգ՝ փոխն զապարանոցաարկեալ։

Եւ իբրև փախստական եղև Լէնէրէգ, երկուք ոմանք ի զօրավարաց անտի, Բարգուխ և Բարեկ, որք էին

սարուկք սուլթանին սպանելոյ, առին ի ձեռս զիշխանութիւնն մինչև ի գալուստ Գեստամուրի ամիրային Գամասկոսի, զոր առաքեցինն կոչել։ Եւ նորա եկեալ ի Կահիրէ, կալաւ զիշխանակալութիւն սուլթանին և զպետութեանն։ Զայն իբրև լուաւ Ինէբէգ՝ որ խուսափեալն էր, եկն ինքնակամ առ Գեստամուր՝ տոռն արկեալ ի պարանոց իւր և հայցէր թողութիւն ի նմանէ. և նա ընկալաւ զթութեամբ և շնորհեալ նմա զկեանս, առաքեաց յԱղեքսանդրիա արկանել ի բանտ, ուր սատակեցաւ նա չարալլուկ։

---

## ԳԼՈՒԽ ԺԴ.

Թէ ո՛րպէս պատգամաւորք ազգաց եկին ի Կահիրէ առ սուլտանն խնդրել զԼևոն թագաւորն. և թէ զի՛նչ էր նոցա պատասխանի խորհրդականն սուլտանին։

Թէպէտ և յորմէ հետէ մատնեցաւ Թագաւորն և ածաւ ձերբակալ յաշխարհէն Հայոց ի Կահիրէ, գրեաց ստէպ ստէպ առ պապն, առ կայսերս Հռոմայ և Կոստանդնուպոլսոյ և առ Թագաւորն Գաղղիոյ՝ համարիւնն իւր և առ ամենայն Թագաւորս քրիստոնէից, խնդրելով ի նոցանէ Թախանձանօք զի առաքեսցեն հրեշտակս պարգևաբերս առ սուլթանն և խնդրեսցեն ի նմանէ զազատութիւն իւր. և անշուշտ իսկ լսելի լինիցին բանք նոցա։ Այլ սակայն ցորչափ ժամանակս եկաց արքայ արգելական ի Կահիրէ, յիններորդ օրէ անտի, ասեմ, ամսեանն Յուլիսի, հազար երեք հարիւր եօթանասուն և հինգ ամին շնորհաց, մինչև ցամիսն Ապրիլի հազար ե-

*

րեք հարիւր հօթանասուն և եօթն տարւոյն, ոչ ոք յարեմտականաց անտի խնդրեաց զնա ի սուլթանէն, բայց միայն թագաւորն Կիպրոսի՝ արհանառուն նորա, միով նամակաւ և պապն Գրիգոր, որ առաքեաց թուղթ առ սուլթանն ի ձեռն Յակոբեան կրօնաւորի ուրումն, եղբայր Ռանոլդ կոչեցելոյ, որ և սա եկն առանց ընծայից. և էր նա այր չքաւոր, աղքատահանդերձ և գձուձ տեսլեամբն։ Ընդ նմին օրինակի և տիկինն Յովհաննա, թագուհին Նէապոլսոյ, առաքեաց զպահապանն անկելանոցին Երուսաղեմի՝ որ անուանեալ կոչէր Անտոն դը լա Մուր, խնդրել զթագաւորն ի սուլթանէն։ Նոյնպէս և կայսրն Կոստանդնուպոլսոյ առաքեաց զոմն, խնդրանօք և ծախիւք Իզապէլ տիկնոջ Լուսինեան, դստերն Գուիդոնի Լուսինեան բարեխորհուրդ արքային Հայոց, որ էրն հօրեղբայր արքային Լևոնի և եղբայր հարազատ Ժեհան իշխանին Լուսինեան, որոյ էր լեալ գունդստապլ Հայաստանի, հայր արքային Լևոնի, և սոյն այս տիկին Իզապէլ՝ էր դուստր հօրեղբօր թագաւորին։ Եւ այնպէս իմն դիպեցաւ զի ամենայն պատգամաւորքս այսոքիկ ի միում ի նմին աւուր եկին հասին ի Գահիրէ, յամսեանն Օգոստոսի, վասն խնդրելոյ զթագաւորն. և ոչ էր նոցա շուք վայելչութեան և ոչ ի ձեռին պարգևք. բայց միայն պատգամաբերն Յունաստանի Գէորգ Փօֆ (Փոտ?) անուն, բերեալ էր ընդ իւր պարգևս դուզնաքեայս՝ որ ոչ եղեն հաճոյ։ Եւ ամենեքին միանգամայն մատուցին ի մի և նոյն աւուր առ սուլթանն զթուղթս առաքողացն իւրեանց և խնդրեցին զազատութիւն թագաւորին։ Եւ սահմանեցաւ նոցա օր ի պատասխանի և մեկնեցան գնացին յօթևանս իւրեանց։ Եւ սարակինոսացն ընդ խաղ արկեալ առէին. «Տեսէք, ա՜ղէ, որպիսի հրեշտակս առաքեն առ մեզ մե-

ծագոյնքն յիշխանաց անտի քրիստոնէից»: Եւ յաւուրն սահմանելոյ յանդիման եղեն սուլթանին հրեշտակքն և կրկնեցին զխնդիր իւրեանց: Եւ խորհրդականն սուլթանին պատասխանի արար նոցա և ասէ այսպէս. «Տեա՛րք, Թագաւորն՝ զոր դուքդ խնդրէք, կամի բնակել աստ ի Բահիրէ զամենայն աւուրս կենաց իւրոց. որպէս տուեալ իսկ է նորա մեզ թուղթ գրեալ մատամբ իւրով»: Եւ հրեշտակացն պատասխանի տուեալ ասացին՝ թէ անզօր էր այն թուղթ թագաւորին, զի ի բանտի էր նա և ընդ բռնութեամբ ստիպեալ ի գրել զայն յոչ կամաց ամենևին: Եւ յաւելուլին ասել պատգամաւորքն թէ գիտէին զի ունէր թագաւորն. ի սուլթանէն վախճանելոյ յետկար ազատութեան, մեկնելոյ յաշխարհ իւր. և վասն այսորիկ իսկ չէին իրաւունք պահել արգելական զթագաւորն Հայոց, այլ պարտէին մանաւանդ արձակել զնա: Իսկ նոցա պատասխանի տուեալ ցպատգամաւորսն ասացին՝ թէ ոչ կարեն գործել ինչ այլազգագոյնս: Եւ ապա, ըստ իւրեանցն սովորութեան, ետուն նոցա հանդերձս և գրեալ նամականւոյն պատասխանի, արձակեցին զնոսա ի բաց:

Ապաքէն քաջայայտ իսկ է զի եթէ էր հրեշտակացն եկելոց առաքելեալ պարգևս և ընծայս պատուականս, ազատեալ լինէր թագաւորն. զի սարակինոսք ընչաքաղցք են ի բնէ և աչս արձակեն ի գոյս օտարաց. և են նոքա մեծամիտք և ամբարտաւանք և արհամարհոտք: Այլ վասն ի տեսանել անդ պատգամաւորս եկեալս առանց ընծայից պատարագաց, անգոսնեն զնոսա:

# ԳԼՈՒԽ ԾԳԸ.

**Թէ որպէս ամիրայն Դեստամուր արար նենգութեամբ հարցուածս երկուս առ Թագաւորն՝ որ գիտաց առնել նմա իմաստութեամբ պատասխանի:**

Իսկ եղև իբրև մեկնեցան անտի հրեշտակքն, Դեստամուր՝ որ ունէր զխնամատարութիւն սուլթանին և զպետութեանն, կոչեաց զԹագաւորն յապարանս իւր և արար նմա հարցուածս երկուս նենգութեամբ: Առաջին, թէ գրեա՞լ էր նա երբէք նամակ ի գաւառ իւր Հայրենի. և երկրորդ՝ թէ կամի՞ր արդեօք մեկնել անտի կամ բնակել յԵրուսաղէմ: Այսոցիկ երկուց հարցուածոց պատասխանի ետ Թագաւորն և ասէ. . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . (պակասէ բնագիրն)

ի հատուցումն վնասուց և Թշնամանաց զոր, արարեալ էր սուլթանին և իւրայնոցն նախաճառեալ Նուիրակն: Իսկ պատմեցան բանքս այսոքիկ առաջի արքային Արագոնի. և առաքեաց նա դեսպան ի Բարսիլոնէ, զանուանեալն Փրանսուա Սակլոզա, առ սուլթանն, հանդերձ պարգևօք և Թղթովք աղաչանաց զի հաճեսցի ի բաց տալ զգոյս վաճառականացն այնոցիկ. և պատուիրեաց ևս դեսպանին՝ զի յետ տալոյ զպատգամ իւր, աղաչեսցէ զսուլթանն բանիւ բերանոյ և եթ զի և զԹագաւորն Հայոց հանցէ յազատութիւն: Իսկ եկն Փրանսուա ի Գահիրէ և եգիտ անդ զսուլթանն և մատոյց նմա զպատարագսն նամականեաւ արքային Արագոնի ի խնդիր ազատութեան ընչից վաճառականացն: Իսկ շնորհեաց նմա զայն սուլթանն: Յայնժամ աղաչեաց զնա Փրանսուա զի առ սէր

տեառն իւրոյ, արքային Արագոնի, հաճեսցի արձակել զթագաւորն Հայոց։ Եհարց զնա սուլթանն թէ ունե՞ր արդեօք նամակս յարքայէ անտի իւրմէ զթագաւորէն Հայոց։ Ետ պատասխանի Փրանսուա թէ՝ ոչ։ Յայնժամ խօսեցաւ Բարեկ յանուն սուլթանին և ասէ ցպատգաւորն. «Եւ զի՞րդ իցէ այս զի բերես թուղթս վասն վաճառականացն և վասն թագաւորին Հայոց՝ ո՞չ։ Եւ ո՞ր ինչ առաւել արգոյ և պատուական իցէ. թագաւո՞րն Հայոց թէ՝ վաճառականքն ձեր։ Գիտասջի՛ր դու զի սուլթանն ոչ հաւատայ բանից քոց. այլ երթ գնա՛ դու առ թագաւորն քո և ասասջիր նմա զի յորժամ առաքեսցէ ուրոյն հրեշտակս և թուղթս աղաչանաց յազատութիւն թագաւորին Հայոց, ընկալցի նա զշնորհն ի սուլթանէն։ Եւ ոչ այլ ինչ էին բանիցս այսոցիկ պատճառք, բայց եթէ ընչաքաղց ցանկութիւն ընդունելոյ պարգևս և ընծայս ի պատգամաւորաց անտի յեկելոց ի թագաւորէն Արագոնի ի խնդիր ազատութեան արքային Հայոց։

---

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Թէ ո՛րպէս թագաւորն Հայոց առաքեաց զԽոստովանահայրն իւր զՅովհան Դարդէլ առ թագաւորն Արագոնի, ի պատճառս ազատութեան իւրոյ։

Եւ տրտմեցաւ յոյժ ի սրտի իւրում թագաւորն Լևոն ընդ պատասխանին Բարեկի, զոր տուեալն էր ցհրեշտակն արքային Արագոնի զնմանէ յանուն սուլթանին. և տեսանէր քաջ զի ոչ գոյր նմա ելանել յազատութիւն յարգելանաց անտի, եթէ ոչ առաքեսցէ զքարեջան զոք այր առ ազգականս իւր հոգալ զիրացն։ Եւ առ այս՝ կարգեաց

զխոստովանահայրն իւր զեղբայր Յովհան Պարդեւ, յուխտէ անտի կրտսեր եղբարց՝ յաշխարհէն Գաղղիոյ, որ ի բազում ժամանակաց հետէ բնակեալ էր ընդ նմա ի Կահիրէ, և արար զնա ընդհանուր գործակալ իւր և առանձին պատգամաւոր, տուեալ ի ձեռս նորա գիր վաւերական։ Եւ զի հաւատարմագոյն ևս լիցին բանք եղբօր Յովհաննու, ետ նմա զմատանին իւր զոսկի, յորում դրոշմեալ կային զինանշանք իւր։ Եւ առաքեաց զնա աղերսական Թղթովք առ Թագաւորն Արագոնի և պատուիրեաց նմա զի եԹէ նա ոչ կամիցի կատարել զիւր պարտս և խնդրել զազատութիւն նորա ի սուլԹանէ անտի, դէմ եդեալ գնասցէ առ այլս ի Թագաւորաց քրիստոնէից և ջան ի գործ եդեալ ճգնեսցի ի փրկութիւն անձին իւրոյ։ Եւ եւ մեկնեցաւ անտի կրօնաւորն Յովհան, խոստովանահայրն արքայի, կրօնակցաւն հանդերձ, երԹալ յաշխարհն քրիստոնէից, յամի Տեառն հազար երեք հարիւր եօԹանասուն և ինն, ի մետասաներորդի աւուր ամսեանն Սեպտեմբերի, հոգալ վասն ազատութեան Թագաւորին ըստ յաջողելոյ Տեառն։

---

## ԳԼՈՒԽ ՃԻԶ.

Թէ ո՛րպէս եղբայր Յովհան Պարդեւ եհաս ընդ կրօնակցին ի Բարսեղոն և մատոյց զԹուղԹսն Թագաւորին առ արքայն Արագոնի։

Եւ յառաջնում անդ աւուր ամսեանն Մարտի կրօնաւորն Յովհան եհաս ընդ ընկերակցի իւրում ի Բարսեղոն և ի հնգերորդումն աւուր ամսեանն մարտոյ առ Թագաւորն Արագոնի զԹուղԹսն աղաչանաց, զորս առա-

քէր արքայն Հայոց. և խնդրեաց ի նմանէ խոնարհաբար զի ի փառս Աստուծոյ և ի սէր արքայական վեհափառութեան և վասն գթութեանն, զոր պարտին առ միմեանս քրիստոնեայք, հաճեսցի առաքել հրեշտակս առ սուլթանն, տուեալ ի ձեռս նոցա և պարգևս և պատարագս արժանիս արքայական վեհափառութեանն և թուղթս ընծայութեան, խնդրելով ի սուլթանէն զազատութիւն արքային՝ հայրազատին իւրոյ։ Եւ թագաւորն Արագոնի խոստացաւ նմա կատարել զխնդիրն ախորժ հաճութեամբ, ըստ ձեռին բաւականի. այլ բանիւք և խոստմամբք մնոտեօք թարթափեցուցանէր զնա զամիսս իբրև ութ։ Եւ տեսեալ Յովհաննու զի թագաւորն Արագոնի շատանայր և եթ բանիւք, յորդորեաց զնա և աղաչեաց խոնարհաբար զի հաճեսցի նպաստել թագաւորին Լևոնի ի հասից անտի, զորս ընդունէր նա յաշխարհին իւրում ի մտից եկեղեցւոյ, քանզի չև էր նորա յարեալ ի մի յերկոցունց պապիցն։ Եւ եցոյց նմա համոզկեր բանիւք թէ զոր ինչ ծախեալ վատնիցէ ի հասից անտի վասն ազատութեան թագաւորին Հայոց, պապն՝ յորոյ կողմն ունիցի յարել, վաւերացուսցէ սիրով և հաճութեամբ։ Եւ արքայն Արագոնի ետ նմա զովորական պատասխանին, այլ յաւել ի վերայ զայս նուագ և խոստացաւ տալ նմա նաւ, որոյ անուն էր Յաղթութիւն, և թուղթ կնքեալ մատանեաւ երից զօրապետաց։ Եւ մինչ կարծէր աբեղայն թէ տացի նմա նաւն, թագաւորն Արագոնի ոչ կարելով զանց զխոստմամբն առնել, ետ ասել ցնա զի եթէ կամիցի ունել զնաւն՝ նմա՛ իսկ անկ էր հանդերձել զայն։ Եւ զայս ասէր՝ քանզի գիտէր հաւաստեաւ զի աբեղայն այն չունէր ի ձեռին արծաթ բաւական ի հանդերձանս նաւին. և այսպէս կամէր ճողո-

պրիլ ի Նմանէ։ Հանդերձ այսու ամենայնիւ ոչ ինչ կասեալ թուլացաւ եղբայրն Յովհան, մինչև տեսեալ թագաւորին թէ չէր մարթ զերծանիլ ի ձեռաց նորա, խորհեցաւ երկուս հնարս հայթայթանաց առ ի կատարել զհայցուածս նորա, առանց առնելոյ ծախս յիւրմէ կողմանէ։ Առաջին, գրեաց թուղթս առ սուլթանն և յանձն արար զայն ի ձեռս ասպետի ուրումն ուխտաւորի, որ դէմ եդեալ գնայր ի քաղաքն սուրբ. և էր անուն նորա պարոն Յովհան Ալփոնս Լորիկ։ Այլ զթուղթն զայն՝ որ վնասակար էր բարւոյ և փրկութեան թագաւորին Հայոց, ետ յետս առնուլ աբեղայն ի ձեռն արքայազամ իշխանին Արագոնի, եղբայր Պետրոս կոչեցելոյ, որ էր հօրեղբայր թագաւորին Արագոնի։ Եւ երկրորդ, գրեաց թուղթս առ եպիսկոպոսունս, առ կոմսս և առ պարոնս թագաւորութեան իւրոյ զի օգնեսցեն և նոքա ազատութեան թագաւորին և ետ զթուղթսն ի ձեռս աբեղային։ Եւ նորա՝ ի խոր խոցեալ ի սրտի, էառ տարաւ զայնս ընդ ամենայն թագաւորութիւնն Արագոնի, ի Կաթալոնիա, ի Վալենցիա և ի կոմսութիւնն Ռուսիլոնի և և առաջի արար եպիսկոպոսաց և մեծամեծաց աշխարհին։ Եւ նոքա պատասխանի ետուն նմա թէ անկ էր թագաւորին ինքնին տալ նախ առ այդ զօրինակ։ Եւ այսպէս անշահ մնաց աբեղայն Յովհան։

---

# ԳԼՈՒԽ ՃԴ.

Թէ որպէս ոմն յասպետաց Բարսելոնի խնդրեաց ի Յովհան Գարդելէ երթալ ընդ նմա ի Կաստիլիա և եցոյց յօժարու-թիւն իւր ծախելոյ ֆլորինս հինգ հարիւր յազատու-թեան թա-գաւորին Հայոց։

Եւ իբրև ետես արքայն զի ոչ ինչ օգտէր յԵրագոն և զի Թագաւորն խոստմամբք և եթ տանէր և ածէր զնա, խորհեցաւ երթալ առ արքայն Կաստիլիոյ, Յովհան, որոյ բարութիւնն և զգօնութիւն և մեծափարթամ ճոխութիւն և առատաձիր պարգևացն համբաւ հռչակէր ընդ ամենայն երկիր։ Կամէր անցանել և ի Գաղղիա․ այլ յաւուրսն յայնոսիկ պակասեաց ի կենաց բարեմոյն Թագաւորն Կարոլոս, որում Տէր Թողցէ զյանցանս։ Եւ մինչդեռ հանդերձէր Յովհան գնալ ի Կաստիլիա, ասպետ ոմն Բարսելոնի, որոյ անուն էր Բոննա Սապէրա, աղաչեաց զնա ի ձեռն բարեմիտ քաղաքացւոյ ուրումն Բեռնարդոս Մարիմոն կոչեցելոյ, զի երթիցէ ընդ նմա ի Կաստիլիա, պատրաստ գոլով յօժարակամ ծախել ֆլորինս հինգ հարիւր յազատութիւն արքայի, զթացեալ ի վերայ աղէտից նորա, յանձն առեալ մինչև անգամ երթալ առ սուլթանն Բաբելոնի, միայն զի հաճեսցի ընդ այն Թագաւորն Երագոնի, տէրն նորա։ Եւ ապա և ինքն իսկ ասպետն եկն բանիւ բերանոյ խօսել ընդ արքային և հաստատեալ զխոստմունս իւր երդուաւ նմա աննենգ հաւատարմութիւն։ Եւ ընկալաւ արքայն գոհութեամբ բազմաւ։

# ԳԼՈՒԽ ԺԻԲ.

Թէ որպէս իշխանն Երագոնի և ամենայն խորհուրդ նորին թէ՝ զի՞ր պատասխանի տայցեն Թագաւորին Կաստիլիոյ՝ եթէ հարցանիցէ զնոսա թէ որչափ ինչ օգնեալ էր արքայն Երագոնի ի փրկանս Թագաւորին Հայոց։

Իշխանն Երագոնի և խոստովանահայրն և ասպետն, զորմէ գրեցաք ի վեր անդր, մեկնեցան ի Բարսելոնէ յութևտասներորդի աւուր ամսեանն Հոկտեմբերի, յամին հազար. երեք հարիւր ութսուն, և գնացին ի Կաստիլիա և գտին զարքայն ի քաղաքին Մեդինա Դաշտական (դել Կամպօ) ի նախընթաց աւուր տօնի առաքելոյն Անդրէի։ Բայց յառաջ քան զմտանելն առ Թագաւորն, առեալ աբեղային մեկուսի զիշխանն Երագոնի խորհուրդ կալաւ ընդ նմա և ասէ. «Տէ՛ր, ոչ զանխուլ ինչ է ի քէն զի արքայն Երագոնի՝ եղբօրորդին քո՝ ոչ ինչ նպաստ եղև ի փրկութիւն Թագաւորին Հայոց տեառն իմում. և տեսանես քաջ զի եթէ ոչ գտանէր յաշխարհի այլ ոք Թագաւոր բաց ի նմանէ, ոչ էր երբէք նմա հնար ելանել ի բանտէն։ Եւ արդ, Տէ՛ր, ինձ այնպէս իմն թուի թէ հարկ ի վերայ կայցէ մեզ խորհել զի եթէ հարցանիցէ մեզ արքայն Կաստիլիոյ թէ՝ ե՞տ ինչ Թագաւորն Երագոնի յազատութիւն արքային Հայոց, զի՞նչ ունիցիմք առ այդ տալ պատասխանի. եթէ ասիցեմք՝ այո՛, ստիցեմք ի նախատինս անձանց. իսկ եթէ ասիցեմք՝ թէ ետ նա և ոչ մի ինչ, չիցէ այն ի պատիւ արքայականն վեհափառութեան և գրեսցի նմա ի յանցանս և յանագորոյն անգթութիւն զի այսպէս վարեալ իցէ քրիստոնեայ ոմն Թագաւոր ընդ աթոռակից քրիստոնեայ Թագաւորին։

Յայնժամ պատասխանի ետ իշխանն Արագոնի առ եղբայրն Յովհան և ասէ՝ Թէ «քա՜ջ իսկ հաստատեալ է իմ ի վերայ զի Թագաւորն Արագոնի, որդին եղբօր իմոյ, ոչ ինչ կամի շնորհել, ընդ որ ամաչեալ շառագունիմ ես. այլ որպէս զի մի՛ վնաս ինչ հասցէ գործոյ փրկութեան Թագաւորին Հայոց, ասասցուք Թագաւորին Կաստիլեոյ, զի զոր ինչ տացէ արքայն Արագոնի՝ մատուսցուք ի նուէր առ սուլթանն. իսկ զոր ինչ հաճեցի նա ինքն շնորհել ի կեր առցի ի նպաստ և յուտեստ ազգականի իմոյ, Թագաւորին Հայոց»։

---

## ԳԼՈՒԽ ԾԸԹ.

Թէ որպէս իշխանն Արագոնի և աբեղայն Դաւրէլ և ատեան մատեան առ Թագաւորն Կաստիլեոյ և առաջի արարին նմա զնա-զնա արքային Հայոց։

Եւ յետ այնորիկ երկքին նոքա, զորս ի վեր անդր յիշեցաք, յանդիման եղեն Թագաւորին Կաստիլեոյ, որ անկեալ դնէր ի մահիճս առ խօթութեանն։ Եւ իբրև մատուցին նմա մեծարանս, ետ ի նա աբեղայն զԹուղթս Թագաւորին Հայոց և եցոյց նմա աղիողորմ բանիւք զնեղութիւնս բանտին և զվիշտս Թագուհւոյն Մարգարիտայ՝ կնոջ նորա և զօրիորդին Մարիամու, դստեր նոցա. և Թէ զիա՛րդ զօր ամենայն բռնադատէին զնա ուրանալ զՔրիստոս։ Եւ գութս ողորմանաց արկանէր առաջի արքային զի հաճեսցի տալ ձեռն օգնականութեան ի փրկութիւն Թագաւորին Հայոց։ Յետ այնորիկ և իշխանն Արագոնի խօսեցաւ ըստ խորհրդոյն, զոր էր նոցա կալեալ յառաջագոյն։

Եւ յուզեցան գութք արքային Կաստիլէոյ ի վերայ Թագաւորին և ընդ տիկնայցն Հայոց և խոստացաւ տալ ի նպաստ փրկութեան արքային նաւս, ոսկի և արծաթ և ականս պատուականս ըստ ձեռին բաւականի: Եւ պատուէր ետ իշխանին Արագոնի և ապետին զի դարձցին և հանդերձեալ կազմեսցեն, զոր ինչ արքայն Արագոնի առաքելոց էր առ սուլթանն ի պատարագ. և աբեղայն Յովհան կացցէ, ասէ, առ իս ի պատրաստութիւն պիտոյից ազգականի իմոյ՝ Թագաւորին Հայոց, յայնքան աղէտս թշուառութեան տուայտելոյ: Եւ ի վերայ ածեալ ասէր թէ պարտ ի վերայ կայ իւրաքանչիւր ումեք քրիստոնէի ունել գութ խանդաղատանաց ի վերայ նորա: Եւ դարձան իշխանն և ապետն յԱրագոն, առ արքայն իւրեանց:

---

## ԳԼՈՒԽ ՃԴ.

Թէ որպէս՝ դէպք արգելեալք հասին ի վերայ արքային Կաստիլէոյ, որով ոչ կարաց ըստ ցանկութեան փութանակի արձակել ի բաց զաբեղայն Յովհան Դ՚ուրսէլ:

Յայնմ ժամանակի ոչ սակաւ դէպք խափանարարք կուռ զկնի միմեանց հասեալ ի վերայ, խոչընդոտ եղեն արքային Կաստիլէոյ ի բաց արձակելոյ զՅովհան կրօնաւոր, որչափ ցանկայրն փութանակի: Նախ զի՝ տառապէր արքայ դժնդակ ախտիւն քարի երիկամանց մինչև մերձ լինել ի մահ: Իսկ իբրև բժշկեցաւ յախտէն յայնմանէ արգել զնա հոգ եկեղեցւոյ յերեաց խռովութեանցն երկոցուն պապից: Եւ ետ արքայ ի սոյն պէտս գումարել ի ժողով զամենայն եպիսկոպոսունս և զեկեղեցականս

տէրութեան իւրոյ, որք մաքառեալ ընդ երկար, յուզաքըննին եղեն ի կանոնաց և յիրաւանց առ ի գտանել թէ ո՞ յերկուց անտի իցէ օրինաւորն պապ։ Եւ յորժամ զարդարադատ քննութիւնս իւրեանց և զիրացն սերտ ստուգութիւնս մատուցին առ թագաւորն, երդուեալ ի մարմին Յիսուսի Քրիստոսի, արքայն Կաստիլեոյ յիննևտասներորդի աւուր ամսեանն. Մայիսի, յամի Տեառն հազար երեք հարիւր ութսուն և մի, յաւուր կիւրակէի, ի քաղաքին Սալամանքա, յեկեղեցւոջ անդ Կուսին Մարիամու, առաջի համախումբ եպիսկոպոսաց, իշխանաց և ժողովրդեան յարեցաւ ի պապն Կղեմէս Է. և բաշխեաց ամենեցուն հանդերձս սպիտակաթոյրս։ Անդ էր և եպիսկոպոսն Պլակենտիայ, որում հակապապն Հռոմայ՝ Բարթողոմէոս, անուանեալն Ուրբանոս, առաքեալ էր գլխարկ կարմիր և արարեալ զնա հակակարդինալ, որ և առաջի թագաւորին, եպիսկոպոսաց, պարոնայց և այլոց, հրաժարեցաւ ի գլխարկէ անտի։ Յայնժամ, ըստ խնդրանաց արքային՝ կարդինալն Լունա, որ գտանէրն անդ իբրև նուիրակ պապին Կղեմայ, դարձոյց առ եպիսկոպոսն զգլխարկն և զհակակարդինալն արար կարդինալ։ Եւ այսմ ամենայնի գտաւ ականատես կրօնաւորն Յովհան Դարդէլ, խոստովանահայր և հրեշտակ թագաւորին Հայոց։

Իսկ երրորդ խափան ցանկութեան սրտի արքային Կաստիլեոյ՝ եղև վերահաս մահ Յովհաննայ թագուհւոյն, մօրն իւրոյ, ի քաղաքի անդ Սալամանքայ, ի քսաներորդի իններորդի աւուր ամսեանն Մայիսի։

Չորրորդ խոչ յարեաւ յերեսաց Ալփոնսի, կոմսին Աստուրիոյ, խորթ եղբօր թագաւորին Կաստիլեոյ, որ նշկահեաց զնա. և արքայ ստիպեցաւ խաղալ գնալ յԱստուրիա։

Հինգերորդ, պատերազմն ընդդէմ Թագաւորին Պորտուգալի, որ վասն եւ գնաց արքայն Կաստիլեոյ ի Պորտուգալ և զինու զօրութեամբ էառ զբերդն կոչեցեալ Ելմեդա։

Եւ իբրև ետես Թագաւորն Կաստիլեոյ զի Հրեշտակն և խոստովանահայր արքային Հայոց երթայր զհետ նորա յոր կոյս դէմ եդեալ գնայր նա, ասաց նմա թէ տուեալ էր հրաման զի աւանդեսցեն ի ձեռս նորա ի Վալադոլիդ քաղաքի զոր ինչ սահմանեալն էր նորա ի փրկանս Թագաւորին Հայոց. այսինքն՝ անօթ մի արծաթեայ, գեղեցիկ յոյժ, պատեալ ոսկւով, բաժակ մի ոսկի հանդերձ կափարչաւ, կտաւս չորս կարմիրս բարակամանս, երեք հազար մորթս սկիւռի և չորս բազէս։ Եւ հրաման ետ արքայ միում ումեք ի զինակրաց անտի իւրոց, որոյ անուն էր Ալփոնս դը Կելլար զի ուղեկից լիցի նմա հաւատարմութեամբ, յորժամ կամեսցի մեկնել անտի և երթալ ի Բարսելոն. ընդ որ յոյժ շնորհակալ եղև արքայի աբեղայն Յովհան։ Եւ զի ասպետն Բոննա որ ի Կաստիլեոյ դարձ արարեալ յԱրագոն, գրեալ էր առ Յովհան զի Թագաւորն Արագոնի հրամայեալ էր հանդերձել նաւս և պարգևս առաքել առ արքայն Հայոց, եւ գնաց աբեղայն ի Բարսելոն վասն ստուգելոյ զիրսն, այլ ետես զի ոչ նաւք և ոչ ընծայք էին պատրաստեալ, վասն որոյ և տրտմեցաւ խիստ յոյժ. և դարձաւ անդրէն ի Կաստիլեա վշտացեալ սրտիւ և չոգաւ ի Վալադոլիդ, ուր խորհէր գտանել զընծայսն պատուականս կազմ և պատրաստ ըստ հրամանի Թագաւորին։ Այլ բանս ստապատիրս եդեալ էին յունկն Թագաւորին թէ խոստովանահայրն արհամարհեալ զընծայիւքն՝ անցեալ գնացեալ էր ի Բարսելոն։ Եւ իրազեկ այնմ եղեալ եղբօր Յովհաննու, գնաց ի

Կաստիլեա առ Թագաւորն ի քաղաքն Սեվիլլայ, ուր տուեալ էր նորա բերել զանօթսն ոսկեղէնս, և բերկրեցաւ Թագաւորն մեծապէս ի տեսանել անդ զնա. և աբեղայն արդարացոյց զանձն առաջի արքային, պատմելով նմա թէ յինչ պատճառս երթեալ էր նորա ի Բարսելոն։

---

## ԳԼՈՒԽ ՃԼԸ.

Թէ ո՛րպէս Յովհան աբեղայ եկեալ է քաղաքէն Սեվիլլայ առեալ զոմն ասպետ հայազգի, որ ուրացեալ էր զՔրիստոս և ընկալեալ զդէն սարակինոսաց։

Եւ յետ արդարանալոյ Յովհաննու առաջի Թագաւորին, եկիտ ի քաղաքին Սեվիլլայ զխաբեբայ ոմն ասպետ ազգաւ հայ, Մանուէլ անուն, որ ուրացեալ էր զՔրիստոս և ընկալեալ զսարակինոսացն զդէն և էր եղեալ նորա յառաջագոյն քահանայ. և երթայր ընդ ամենայն կողմանս առ Թագաւորս և իշխանս քրիստոնէից և կեղծաւորեալ զանձն իբրև հրեշտակ Թագաւորին Հայոց, խնդրէր ի նոցանէ զի օգնեսցեն արծաթով ի փրկանս նորա, այնպէս իմն կարծեցուցանելով թէ զոր ինչ շնորհեսցեն՝ եղիցի ի նպաստ ազատութեան արգելական արքային. այլ պատրէր զնոսա ստութեամբ, զի զոր ինչ տային՝ յինքն շորթէր։ Եւ այնքան համոզէր բանիւք ողոքեաց պատրեաց զԹագաւորն Կաստիլեոյ, մինչև հաւանել նմա, զի յանձնեսցին ի ձեռս նորա պատարագքն, զորս խօսեցաք, որպէս զի տարեալ մատուսցէ առ սուլթանն յանուն արքային։ Բայց եղբայր Յովհան գնաց առ կարդինալն Լունա ի Սալամանքա և խնդրեաց ի նմանէ տալ կոչել առաջի իւր զխաբեպատիր զայն ասպետ զի խօսեսցի

ընդ նմա. և կարդինալն կատարեաց զխնդիր նորա։ Եւ իբրև եկն՝ աղաչեաց կրօնաւորն զկարդինալն զի հրամայեսցէ առնն տալ զնամականի, զորս Թագաւորք և իշխանք քրիստոնէից գրեալ էին առ սուլթանն ի խնդիր ազատութեան արքային Հայոց, և բերել ի մէջ զամենայն ընծայսն և զարծաթ՝ զոր ընկալեալ էր ի նոցանէ. և արար նա այնպէս։ Յայնժամ պատուիրեաց մի՛ ևս այլ այդպիսի սուտ հրեշտակութեամբ պատրել զԹագաւորս և զիշխանս և առնուլ ի նոցանէ ինչս իբրև թէ ի պէտս արքային Հայոց և պահել առ իւր։ Այլ սակայն զիրացս այստցիկ ոչ խօսեցաւ ինչ առ Թագաւորն Կաստիլեոյ խոստովանահայրն այն, զի մի՛ խափան ինչ անտի հասանիցէ փրկութեան արքային Հայոց։

Եւ յետ աւուրց ոչ բազմաց՝ Թագաւորն Կաստիլեոյ հրամայեաց հրեշտակացն իւրոց երթալ ի միասին ընդ խոստովանահօրն առ սուլթանն և մատուցանել նմա զընծայսն։ Եւ որք առաքեցանն՝ էին սոանուն ասպետն և Ալփոնս Ռուէլար և Պետրոս Սեգովիացի։ Իսկ եղբայր Յովհան, որ ճանաչէր քաջ զխաբեպատիր ասպետն, ասէ ցնա դէմ յանդիման Թագաւորին, զի եթէ և լեալ իսկ էր նա հայր իւր՝ ոչ կամէր զի գնասցէ նա անդր։ Եւ Թագաւորն հարցանէր զարեղայն թէ՝ առ ի՞մէ ասէր նա զայդ։ Եւ պատասխանի և ասէ. «Տէ՛ր արքայ, եթէ նենգէն ոք քեզ խաբէութեամբ, զի՞նչ, ա՛ղէ, առնէիր դու նմա»։ Եւ Թագաւորն ասէ. «Օ՜ն և օն, տայի հատանել զգլուխ նորա»։ Եւ եղբայր Յովհան ասէ. «Եւ ահա զայդ արասցէ սուլթանն ընդ առնդ այդմիկ, եթէ անկցի նա ի ձեռս նորա. այլ սակայն մահ դորա ոչ միայն գործիցէ և ոչ մի ինչ օգուտ ի փրկութիւն արքային Հայոց, այլ մանաւանդ լինիցի ևս այնմ խափան և վնա-

սակար։ Եւ թէպէտ զայդ ինչ ասաց Յովհան աբեղայ, այլ ոչ ի վեր եհան Թագաւորին թէ կեղծեալն այն աս-պետ՝ էր յառաջագոյն քահանայ և լեալ ապա քրիստո-սուրաց. այլ զայս և եթ ասաց նմա թէ «ոչ համարձա-կեսցիս անշուշտ ելանել ընդ առաջ սուլթանին, քանզի դու ինքն գիտելով գիտես զի սարակինոսք մատնեսցեն զքեզ ի մահ, զի ոչ գտար հաւատարիմ յոր ինչ խոստա-ցարն նոցա և նմին ինքեան սուլթանին»։ Իսկ խաբե-բային՝ արդարացուցանել կամելով զանձն առաջի Թա-գաւորին, ասէ. «Տէ՛ր արքայ, ի բոլոր սրտէ իմմէ ցան-կամ բարութեան արքային իբրև բնիկ տեառն իմում»։ Եւ զայս ասէր նա առ կեղծաւորութեան, զի ակն ու-նէր բարիս ինչ ընդունել ի Թագաւորէն. և ոչ ունէր ի մտի երթալ մինչև առ սուլթանն. քանզի հասեալ ի Բար-սեղոն ընդ խոստովանահօրն և ընդ այլոց պատգամաւո-րաց, մեկնեցաւ ի նոցանէ և գնաց ի բաց։

Յայնժամ Թագաւորն Կաստիլեոյ հրամայեաց հրեշ-տակացն ուղղոյ լինել և ետ նենգաւորին երեք հարիւր Ֆլորէնս, կերպաս ազնիւ ի հանդերձս. և խոստովանա-հօրն՝ Ֆլորէնս երեք հարիւր և յիսուն. ետ և զինակրաց իւրոց դրամ բաւական ի պէտս ճանապարհին, ի գնալ և ի դառնալ. և հրամայեաց նոցա լինել նմա ընկերակից հաւատարմութեամբ և անսալ յամենայնի խորհրդոց նորա։ Եւ հրեշտակացն երկրպագեալ արքային, ելին յե-րեսաց նորա և անկեալ յուղի չոգան ի Բարսեղոն։

# ԳԼՈՒԽ ՃԼԲ.

Յաղագս հակառակութեանն որ եղեւ ի մէջ պատգամաւորացն և աւագերէն Բոննայի, հրեշտակի արքային Արագոնի, ի պատճառս պատարագաց արքային Կաստիլեոյ։

*Եւ եղև իբրև հասին աբեղայն Յովհան և պատգամաւորք արքային Կաստիլիոյ ի Բարսելոն, սուտանուն ասպետն եթող զնոսա և մեկնեցաւ յուկամ առանց տալոյ զողջոյն հրաժեշտի։ Եւ սեպուհն Բոննա, ասպետ և հրեշտակ արքային Արագոնի մատեաւ առ աբեղայն և ասաց նմա եթէ ունէր յարքայէն Արագոնի գիր ամբաստանաց առ սուլթանն. և աղաչեաց զնա զի համձեսցի առնուլ զնա ընդ իւր և ընդ հրեշտակս արքային Կաստիլեոյ, զի մատուսցէ զթուղթն առ սուլթանն յերեսաց թագաւորին Արագոնի. և նա խոստացաւ նմա առնել զայդ։ Եւ մտեալ պատգամաւորացն ի նաւ, մեկնեցան անտի ի քսաներորդի առաջներորդի աւուր ամսեանն Մայիսի, յամին հազար երեք հարիւր ութսուն և երկու, և յետ բազում ալեկոծութեան հասին ի քաղաքն Աղեքսանդրիա, ի չորեքտասաներորդում աւուր ամսեանն Օգոստոսի։ Եւ եղև հակառակութիւն մեծ ի մէջ Յովհաննու աբեղայի և ասպետին Բոննայ, պատգամաւորին արքային Արագոնի. քանզի կամէր սա զի պատարագքն, զորս առաքէր արքայն Կաստիլեոյ, մատուսցին առ սուլթանն յանուն թագաւորին Արագոնի. այլ սակայն աբեղայն Յովհան և ընկերակիցք նորա, զինակիրք արքային Կաստիլեոյ, ոչ հաւանեցան ընդ բանս նորա. և պատասխանի ետուն նմա ասելով թէ ոչ բնաւ յօժարեսցին յանձն առնուլ զայն, զի հակառակ է իրաւանց և արդարութեան։*

Եւ տեւեաց ձգեցաւ գժտութիւնն ի մէջ նոցա մինչեւ եկին ի Գահիրէ։

Եւ իբրեւ հասին անդր, աբեղայն Յովհան եւ երեքին զինակիրքն Կաստիլեոյ գնացին դէպ ուղիղ առ Թագաւորն Հայոց. եւ եղբայր Յովհան՝ խոստովանահայրն արքայի, պատմեաց նմա թէ զորպիսի՛ ընծայս առաքէր առ նա արքայն Կաստիլեոյ ի փրկանս. եւ եւս ապա բերել զայնս եւ մատուցեալ առաջի, ասաց ցարքայ բաշխել ըստ հաճոյից կամաց իւրոց. եւ յանձնեաց նմա եւ զթուղթն եւս, զոր առաքէր արքայն Կաստիլեոյ։ Եւ հրամայեաց արքայն Հայոց բաժանել զընծայսն յերկուս մասունս, զմին տանել պատարագ առ սուլթանն եւ զմիւսն առ Բարկուկ՝ որ էր յայնժամ խնամակալ սուլթանին եւ պետութեանն։ Եւ արարին որպէս եւ հրամայեաց նոցա արքայ։

---

## ԳԼՈՒԽ ՃԼԳ.

Թէ որպէս մատուցին պատգամաւորք զնուէրն առ իշխանն Բարկուկ եւ թէ զինչ խօսեցաւ Բարկուկ ընդ պատգամաւորսն Արագոնի.

Եւ ի վեցերորդում աւուր ամսեանն Սեպտեմբերի եկին հրեշտակքն առաջի մեծի իշխանին Բարկուկայ եւ ետուն նմա զթուղթսն, զորս թագաւորք իւրեանց առաքէին առ սուլթանն։ Այլ յառաջ քան զմատչելն առ նա՝ համբուրեցին զերկիր երիցս. եւ պատմեաց նմա Յովհան աբեղայ թէ որպէս երկոքին թագաւորքն Կաստիլեոյ եւ Արագոնի խնդրէին եւ հայցէին ի սուլթանէն զի ի սէր Աստուծոյ արասցէ շնորհս արձակել յարգելանէն

անտի. զհէք արքայն Հայոց քրիստոնեայ, զզրկեալն յաթոռոյ իշխանութեան իւրոյ։ Յայնժամ իշխանն Բարկուկ ասէ ցհրեշտակն Արագոնի. «Զիա՞րդ իցէ, զի նամակ մի և եթ բերես դու ի Թագաւորէն Արագոնի. բայց գիտասջիր զի ոչ սիրեմք մեք առնուլ բանի. Թագաւոր քո ոչ է քաջածանօթ մերոցս սովորութից։ Յորժամ առաքէ այսր առ մեզ խնդիր վասն վաճառուց իւրոց, առաքէ միանգամայն և ականս պատուականս և ընծայս ի նուէր։ Իսկ առ ի խնդրել զայր որք Թագակալ ոչ բերես և ոչ մի՞ ինչ ընդ քեզ։ Իբր ոչ եթէ սուլթանն և ես կարօտ ինչ իցեմք պատարագաց ձիրոց և պատմուճանաց, այլ եթէ բերեալ էր քո և խնձոր մի, շատ իսկ էր այդ ի նշան բարեկամութեան. և եթէ կամեցեալ էր Թագաւորիդ գնոց առնուլ զերի զոմն ստրուկ, պարտ իսկ էր նմա հատուցանել դրամս հազար»։ Եւ դարձեալ առ պատգամաւորսն Կաստիլիոյ. «Դուք մեք, ասէ, զխնդիր ձեր. տեսցէ սուլթանն զԹուղթսդ և կալցի խորհուրդ և ապա տացէ ձեզ պատասխանի»։ Եւ պատգամաւորացն խոնարհեալ յերկիր, ելին յերեսաց նորա և դարձան ի տեղիս իւրեանց։

---

# ԳԼՈՒԽ ՃԼԴ.

Թէ ո՛րպէս պատգամաւորքն դարձեալք ի սուլթանէն՝ Տարացին նմա ընծայան։

Եւ առաքեաց սուլթանն ասել ցպատգամաւորսն զի եկեսցեն առ նա յուԹետամնեւորդում աւուր ամսեանն Օգոստոսի։ Այլ մինչ դեռ ևս ի տան էին, առաքեաց նոցա հանդերձս նորս, զի արկեալ զանձամբ երևեսցին

առաջի երեսաց իւրոց, զի այս սովորութիւն էր սուլթանաց։ Եւ յղեաց զոմանս յաւագորերոյն տեսանել զպատարագս արքային Կաստիլիոյ, զի Թագաւորն Արագոնի ոչ էր առաքեալ և ոչ մի ինչ։ Եւ իբրև մտին առաջի սուլթանին և երկիրպագին երիցս անգամ, իշխանն մեծ Բարկուկ եհարց ցնոսա թէ զի՞նչ խնդրեն։ Պատասխանի ետ եղբայրն Յովհան և ասէ. «Տէ՛ր, խնդրեմք զի ի սէր Աստուծոյ և վասն պաղատանաց արքայից տերանց մերոց, որ բարեկամք ձեր են և յորոց առաքեցաքս առ ձեզ, հաճեսցի սուլթանն առնել շնորհս և արձակել ի բանտէ զհէք Թագաւորն Հայոց քրիստոնեայ»։ Պատասխանի ետ Բարկուկ և ասէ. «Սուլթանն կալցի խորհուրդ վասն բանիդ այդորիկ և ապա տացէ ձեզ պատասխանի»։ Յայնժամ հրեշտակացն երկրպագեալ որպէս յառաջն, մատուցին զընծայսն՝ որք պատուականք յոյժ երևեցան յաչս ամենեցուն. և ելեալ գնացին ի տեղիս իւրեանց։

---

## ԳԼՈՒԽ ՃԼԵ.

### Թէ ո՛րպէս իշխանն Բարկուկ արձակեաց ի բանտէ զԼևոն արքայ Հայոց։

Եւ յետ ոչ բազմաց ինչ աւուրց, ի վերջնում աւուր ամսեանն Սեպտեմբերի, եկն եհաս բարենշան օր ազատութեան Թագաւորին Հայոց։ Իշխանն Բարկուկ ետ կոչել առաջի իւր զհրեշտակսն և զԹագաւորն Հայոց, ազուցեալ նմա հանդերձս ոսկեհուռս արտակիտեալս կընդմենեաւ. և յերկրորդել նոցա զաղաչանսն, արձակեաց զարքայ յանպայման ազատութիւն. և ոչ խնդրեաց ինմանէ երդումն կամ խոստումն չմնասելոյ սուլթանին առ յա-

պայն։ Եւ արքայ մատոյց նմա շնորհս։ Եւ ելեալ անտի յապարանս իւր նոյնհետայն փրկանաւորեաց ի գերութենէ զարս և զկանայս, որք էին ի Գահիրէ, ի փոխարէն շնորհին զոր արար նմա Աստուած։

Եւ մինչդեռ արքայն Լևոն էր ի հանդերձանս չուոյն, իշխանն Բարկուկ եկն յեզր գետոյն Նեղոսի, սեպհական գետանաւուն սուլթանին, ուր էրն կազմեալ պատրաստեալ վասն Թագաւորին, և ելեալ անտի գնաց ի տուն իւր. և առաքեաց հեծեալս չորս յապարանս Թագաւորին Հայոց, որ առեալ ածին զնա ի տեղին ուր էր գետանաւն։

---

## ԳԼՈՒԽ ՃԼԶ.

Թէ ո՛րպէս եղև արքայ ընդ խորայնոյն յԱղէքսանդրիա և ըստ ո՛րպէս սուլթանն խորհրդակցութեամբ իշխանացն առաքեաց հրովարտակ յԱղէքսանդրիա առ քաղաքապետն զի կալցէ զԹագաւորն և դարձուսցէ ի ձեռս սուլթանին։

Եւ ել Թագաւորն և որք ընդ նմայն էին ի գետանաւ անդր սուլթանին և նաւարկեալք հասին յԱղեքսանդրիա։ Եւ նոյնհետայն ետ Թագաւորն խնդրել նաւոլով և իցէ գնով, յոր մտեալ ծովամուխ եղև յիօթներորդում աւուր ամսեանն Հոկտեմբերի։

Եւ ստրջացաւ սուլթանն և իշխանք նորա զի արձակեցին զԹագաւորն. և ասէին թէ մարթէր նմա դեռ ևս զվնասել նոցա, զի ամենայն Թագաւորքն քրիստոնէից տոհմակիցք էին նորա։ Եւ խորհուրդ արարեալ առաքեցին առ քաղաքապետն Աղեքսանդրիոյ հրովարտակս ի սուլթանէն, հրաման տուեալ սպառնալեօք գլխապատութեան, զի մի՛ թողացուսցէ Թագաւորին Հայոց մեկնել

ի քաղաքէ կամ ծովագնաց լինել, այլ զի ձերբակալ արարեալ զնա դարձուցէ ի բանտ սուլթանին, ի Բաբելոն, ուստի արձակեալն էր:

Այլ սակայն, շնորհելովն Աստուծոյ, ոչ յաջողեաց նոցայն ձեռնարկութիւն. զի հրովարտակն եհաս ի ձեռս քաղաքապետին ընդ արեւագալն, մինչդեռ արքայն մեկնեալ էր ծովագնաց ընդ իւրոցն զհասարակ գիշերաւ:

Եւ իբրև ետես աւագանին թէ ի դերև ել խորհուրդ նոցա, սպանին զսուլթանն և բազմեցուցին ի տեղի նորա զմեծ իշխանն Բարկուկ:

Եւ Թագաւորն և որք ընդ նմայն էին՝ նաւարկեալք յաջողակ հողմով հասին ողջամբ շնորհիւ Տեառն ի Հռոդոս կղզի, ի քսաներորդի առաջներորդի ամսեանն Հոկտեմբերի: Անդ եգիտ արքայ զտիկինն Իզապէլ, զդուստր հօրեղբօր իւրոյ Գուիդոնի Լուսինեան՝ Թագաւորին Հայոց: Եւ եգիտ անդ արքայն Լևոն և զայր ոմն ազնուական, զսեպուհն Յովհան Սուրսէն (Սորսինի) զեղբայր կարդինալին Փլորենտիոյ, որ ընկալաւ զնա պատուով մեծաւ՝ հանդերձ դստերբ հօրեղբօր Թագաւորին:

Եւ յիշեաց արքայ զհաւատարմութիւն և զխնամս, զվիշտս և զնեղութիւնս, որոց տարաւ սիրով աբեղայն Յովհան Դարդել, իւրն խոստովանահայր, յազատութիւն անձին իւրոյ: Եւ կարգեաց զնա ատենադպիր Հայոց:

---

## ԳԼՈՒԽ ՃԼԵ.

Թէ ո՛րպէս լուաւ արքայ զգոյժ մահուն Թագաւորին Սիկղիոյ և տրտմեցաւ ընդ այն մեծապէս:

Եւ մինչդեռ էր Թագաւորն ի Հռոդոս կղզւոջ լուաւ

զգոյժ մահու արեանառուին իւրոյ Թագաւորին Կիպրոսի, որդւոյ լաւակամ Թագաւորին Պետրոսի, որ էառն զԱղեքսանդրիա. և էր նորա զրաւեալ ի կենաց ի տասներորդում աւուր ամսեանն Հոկտեմբերի, յամի Տեառն հազար երեք հարիւր ութսուն և երկու։ Եւ տրտմեցաւ արքայ տրտմութիւն մեծ, ոչ միայն ընդ այն զի համարիւն իւր էր արքայն, այլ զի տեսանէր զապականութիւն աշխարհին ի ձեռաց Գենուացւոց, որք տիրեալ Փամագոսայ, նուաճեալ էին զպետութիւնն ընդ իշխանութեամբ իւրեանց։ Եւ իղձ լինէր արքայ անցանել գնալ ի Կիպրոս առ ի ստանալ զիրաւունս ժառանգութեան, որ անկանէր նմա, և զօրավիգն լինել բնակչացն, եթէ միայն գտանէր նաւ տանել զնա անդր. սակայն ոչ կարաց բերել ի ձեռս ոչ ոսկւով և ոչ արծաթով։ Հուսկ ուրեմն խնդրեաց նաւ ի կարգապետէ Հիւրընկալացն Հռոդոսի, առ ի յղել պատգամաւորս և թուղթ մխիթարութեան ի Կիպրոս. զոր և ետ նմա յօժարութեամբ։ Այլ երկուցեալ Հիւրընկալացն թէ գուցէ զչարեացին Գենուացիք, ոչ թողին Թագաւորին վարձել նաւ զի անձամբ գնասցէ ի Կիպրոս։

Եւ տեսեալ արքային թէ ոչ էր մարթ առնել ինչ, կազմեցաւ հանդերձեցաւ երթալ յԱրեւմուտս, և նախ առաջինն՝ առ պապն, յԱվինիոն. և այնուհետև՝ առ Թագաւորս և իշխանս քրիստոնէից, զի խնդրեսցէ ի նոցանէ օժանդակութիւն ստանալոյ վերստին զԹագաւորութիւն իւր։

# ԳԼՈՒԽ ՃԼԲ.

Թէ ո՛րպէս եհաս արքայ ի Նաւահանգիստն Վենետիկոյ և անտի գնաց յԱնկոնիոն՝ առ պապն։

Եւ մեկնեցաւ արքայ ի Հռոդոսէ. և էին ընդ նմա արքն իւր և Յովհան Ասուրսէն և ազնուական ոմն կրօնաւոր՝ անուանեալ եղբայր Դոմինիկոս, առաքեալ ի կարգէ սրբոյն Յովհաննու Երուսաղէմի, հրամանատար Նէապոլսոյ և ապա Կիպրոսի, և ծովամուխ եղեալ ի քսաներորդի առաջներորդի ամսեանն Նոյեմբերի, հասին ողորմութեամբն Աստուծոյ ի Նաւահանգիստն Վենետկոյ յերկոտասաներորդի աւուր ամսեանն Դեկտեմբերի. և ընկալեալ եղև անդ Թագաւորն մեծաշուք փառօք։ Եւ իբրև հանգեաւ արքայ և որք ընդ նմայն էին, ետ գումարել զժողովս և զաւագանի քաղաքին յապարանս իւր և խնդրեաց ի նոցանէ զի շնորհեսցեն նմա նաւս երթալ ի Կիպրոս, կալ զօրավիգն ժողովրդեանն և ամոքել զանհնարին տրտմութիւն նորա ընդ մահ արքային, արեանառուին իւրոյ։ Եւ Վենետկեցիք պատասխանի ետուն և ասացին թէ վասն ուխտի դաշանցն կռելոյ ընդ Գենուացիս՝ ոչ կարէին առնել զայդ։

Յետ այսորիկ մատեան առ Թագաւորն հակակարդինալն Ռաւեննայ և հակապատրիարքն Գարդոյի (Գրադոյի) յարեցուցանել զնա ի պապն իւրեանց Բարթողոմէոս, որ էր ի Հռոմ. և ասէին, թէ նա իցէ օրինաւոր պապ. և խոստացան ձեռնտուութեամբ նորին դարձուցանել զնա յաթոռ թագաւորութեան իւրոյ։ Եւ պատասխանի Թագաւորն և ասաց թէ հասու եղեալ ճըշմարտութեանն՝ արասցէ զոր ինչ ցուցցէ նմա Տէր ի բարին։

Եւ ել յետ այնորիկ և մեկնեցաւ Թագաւորն և որք ընդ նմայն էին, զերեսս հաստատեալ գնալ առ պապն։ Եւ անցին ընդ գաւառսն իշխանացն Պատաւիոնի և Վերոնայ. և յամենայն քաղաքս և յաւանս ընդ որ անցանէր՝ իշխանք, քաղաքացիք և ժողովուրդն համօրէն ընկալան զնա մեծահանդէս շքով, ելեալ ի Թափօր ընդ առաջ նորա. և ետուն նմա ընծայս և պարգևս։ Եւ յառաջ վարեալ արքայի զճանապարհ իւր, եկն եհաս յԱվինիոն։ Այլ նախ քան զմտանել նորա անդր, յղեաց ընդ առաջ նորա պապն Կղեմէս Է. զԹափօրս քաղաքին և արս իբրև հազարս երկուս և ընկալաւ զնա աւագաշուք հանդիսիւ և սիրով մտերմութեան։ Եւ կրօնաւորն Յովհան, հայրն խոստովանութեան արքային, ի ժողովի անդ պապին պատմեաց մի առ մի զանհնարին վիշտս տառապանաց, զորս կրեալ էր նորա ի բանտի կապանաց՝ յԵգիպտոս. և թէ որպէս սարակինոսք բռնադատէին զնա դառնալ ի դէն իւրեանց և յուրաստ լինել զՔրիստոս. և թէ որպէս շնորհիւն Աստուծոյ զդէմ կալաւ նոցա անվրկանդ արիութեամբ։ Եւ յաւել պատմել թէ որպէս դիմեալ էր արքային առ պապն և խնդրեալ ի նմանէ օգնականութիւն առ ի զօրամբ արկանել զերկիր իշխանութեան իւրոյ, զոր յափշտակեալ էր սարակինոսաց։ Եւ ի լսել նորա ի խօսիցն, արքայն Լևոն, իբրև բարի և ճշմարիտ կաթողիկեայ դաւանեցաւ ի ժողովի անդ զպապն իբրև զարդարև փոխանորդ Յիսուսի Քրիստոսի, որպէս վայել է հարազատ որդւոյ սրբոյ եկեղեցւոյ. և մերժեաց զբանս հակակարդինալին և հակապատրիարքին նախաճառելոց, որ հրապուրեալ էին զնա խոստմամբ ի Վենետիկ քաղաքի՝ յարել ի կողմն իւրեանց.

Յայնժամ պապն մարդասիրութեամբ բազմաւ ըն-

կալաւ զԹագաւորն Հայոց եւ պարգեւեաց նմա նուէրս առատաձիրս առ ի ստանալ վերստին զԹագաւորութիւնն իւր։ Եւ յառաջնում անդ աւուր ամսեանն Մարտի ետ նմա զպատուական վարդն ոսկեղէն իբրեւ քան զամենեսին ազնուագոյնի ի Թագաւորս։ Եւ ի մետասաներորդի աւուր ամսեանն Ապրիլի, առաջի ժողովոյն կարդինալաց ամբարձ պապն զեղբայր Յովհան Դարդել, զխոստովանահայրն Թագաւորին, յեպիսկոպոսութիւն քաղաքին Տորտիբոլեայ (ի Թագաւորութեան Նէապոլսի), ի վարձ փոխարինի վաստակոցն եւ վշտաց եւ բազմաչարչար տուայտանաց, զորս կրեաց նա ի փառս սրբոյ եկեղեցւոյ, ջանահնար եղեալ ազատել զարքայն Հայոց։

Յետ այսորիկ կարգեաց արքայ զեղբայր Յովհան Կուրսէն ատենադպիր Հայոց, փոխարէն մեծամեծ երախտեաց նորա եւ վաստակոց յանցելումն ժամանակի։

---

## ԳԼՈՒԽ ՃՂԹ.

### Թէ ո՛րպէս Լեւոնեան Թագաւորն յԱվինիոնէ երթայ յԱրագոն եւ ի Կաստիլիա։

Ի չորրորդում անդ աւուր ամսեանն Մայիսի մեկնեցաւ արքայն Հայոց ի քաղաքէ անտի պապին գնալ յԱրագոն եւ ի Կաստիլիա, զի մատուսցէ շնորհակալիս Թագաւորացն երկոցուն, վասն ջանիցն տարելոց յազատութիւն անձին իւրոյ։ Եւ չոգաւ նախ յԱրագոն։ Եւ արքայն, Թագուհին, դուքսն Ժիրոնի, դքսուհի կին նորա եւ որդի նոցա Մարտինոս եւ ամենայն ժողովուրդն ընդառաջեալ՝ ընկալան զնա Թափօրիւ եւ մատուցին

նմա բազում պարգևս և ընծայս։ Զնոյն արարին և ամենայն քաղաքք, ընդ որս անցանէր արքայ։

Եւ թողեալ զԱրագոն դէմ եդ Թագաւորն գնալ ի Կաստիլիա։ Եւ արքայն Կաստիլիոյ լուեալ զգալստենէ նորա, առաքեաց զերկուս յասպետաց անտի իւրոց ընդ առաջ նորա, ի մուտս սահմանաց աշխարհին, զի ընկալցին զնա պատուով և հատուսցեն զծախս նորա յարքունուստ, մինչև ի գալ հասանել նորա առաջի տեառն իւրեանց։ Եւ էր յայնժամ Թագաւորն Կաստիլիոյ ի Ռատայօջ քաղաքի, ուր հանդերձեալ էր առնուլ ի կնութիւն զդուստր արքային Պորտուգալի, որոյ անուն էր Բէատրիքս, յերկոտասաներորդում աւուր ամսեանն Մայիսի, յամի Տեառն հազար երեք հարիւր ութսուն և երեք. և ազդ արար արքային Հայոց զի կացցէ միասցէ մտադիւր գալստեան նորա առ ի կատարել զհարսանիսն։ Եւ Թագաւորն Հայոց թէպէտ ձիավարէր սրաշաւ ընդ տիւ և ընդ գիշեր, այլ չեղև նմա հնար ժամանել ի սահմանեալ աւուրն։ Եւ արքայն Կաստիլիոյ յերկարաձգեաց վասն նորա զօր հանդիսի հարսանեացն։ Եւ եհաս հուսկ ուրեմն Թագաւորն Հայոց ի դրունս Ռատայօջի. այլ մինչ չև՛ էր նորա մտեալ ի քաղաքն, ել ընդ առաջ նորա արքայն Կաստիլիոյ, առեալ ընդ իւր զկարդինալն Լունայ, զնուիրակ պապին, և զեշխանն Նավարրայ և արքեպիսկոպոսունս և եպիսկոպոսունս բազումս, ի շուք Թափօրի։ Եւ եղև իբրև մատեան առ միմեանս Թագաւորքն երկոքին, իջին յերիվարաց իւրեանց, այլ նախ զառաջինն փութացաւ էջ արքայն Հայոց, ի մեծարանս Թագաւորին Կաստիլիոյ, վասն շնորհաց փըրկանաւորութեան իւրոյ։ Եւ գիրկս արկեալ համբուրեցին զմիմեանս արքայքն երկոքին և կատարեցին տօն ցնծու-

թեան. զնոյն պատիւ մեծարանաց մատուցին Թագաւորին Հայոց և դասք եպիսկոպոսացն։ Եւ երկրպագեալ Թագաւորացն տէրունական խաչին և համբուրեալ զսուրբ նշխարսն, զորս բերեալ էին ընդ առաջ, աշտանակեցին ի նիւս երիվարաց և չոգան յապարանս իւրեանց։

Եւ ի վաղիւ անդր, որ էր տօն Ամենասուրբ Երրորդութեան և օր վեշտասաներորդ ամսեանն Մայիսի, կատարեցաւ մեծաշուք փառօք հանդէս հարսանեաց արքային Կաստիլիոյ. և Թագաւորն Հայոց եղև կնքահայր նորա։ Եւ եղեն յաւուր յայնմիկ նիզակախաղք և մրցանք հեծելոց ի հրճուանս հասարակաց։

---

## ԳԼՈՒԽ ԺԵ.

Թէ ո՛րպէս Թագաւորն Կաստիլիոյ գնաց յԱրագոնիա և արքայն Հայոց ուխտեաց յուխտ ի Ս. Յակոբ որ ի Գալիկիա։

Եւ ի կատարել աւուրց հարսանեացն մեկնեցան երկոքին Թագաւորքն ի Բատայօզէ և գնացին ի քաղաքն Լվիոն. և արքայն Կաստիլիոյ ել անտի և գնաց ընդդէմ կոմսին Ալփոնսի՝ անհարազատ եղբօր իւրոյ, ընդվզելոյն ի նմանէ, որ ոչ յապաղեաց լինել նմա անձնատուր. և Թագաւորն ընկալաւ զնա քաղցրութեամբ։

Իսկ Թագաւորն Հայոց գնաց ի Լվիոնէ ի Ս. Յակոբ Գալիկիոյ կատարել զուխտն, զոր ուխտեալ էր մինչ էրն ի բանտի սուլթանին։ Եւ ի վերադարձի անդ՝ եկին երկոքին Թագաւորքն ի քաղաքն Լվիոն. և ելեալ անտի՝ գնացին ի քաղաքն Սեգովիա, անցեալ ընդ Վալադոլիդ։ Եւ զի ոչ ատակեաց Թագաւորն Կաստիլիոյ արձակել զարքայն Հայոց ի Լվիոն և ի Վալադոլիդ, աղաչեաց զնա

գալ ընդ իւր ի Սեգովիա, ուր գումարելոց էր զխորհրդարանն և խոստանայր արձակել զնա անտի։

## ԳԼՈՒԽ ՃԽԸ.

Թէ ո՛րպէս եղբայրն Յովհան Դարդել ընկալաւ զօծումն եպիսկոպոսութեան Տորտիբոլեայ. և թէ որպէս Թագաւորն Հայոց առաջի արար զխնդիր իւր առ Թագաւորն Կաստիլեայ։

Ի չորեքտասաներորդում աւուր ամսեանն Օգոստոսի, ի նմին տարւոջ, եկին ի միասին երկոքին Թագաւորքն ի Սեգովիա. և անդ եղբայր Յովհան Դարդել ընկալաւ զօծումն եպիսկոպոսութեան Տորտիբոլեայ, ի մայր եկեղեցւոջ անդ քաղաքին, որ յանուն Կուսին Մարիամու, առաջի Թագաւորացն երկոցուն և իշխանին Նավառրայ և բազմութեան մեծամեծաց և եպիսկոպոսաց և կատարեաց արքայն Կաստիլեայ տօն մեծահանդէս։

Եւ յետ աւուրց գումարեաց անդ արքայ զատեան իւր։ Յայնժամ Թագաւորն Հայոց առաջի արքային Կաստիլեայ, կարդինալին Լիւնայ, իշխանին Նավառրայ և եպիսկոպոսաց, ազատաց և պարոնայց, ասպետաց և զինակրաց Գաղղեայ, Արագոնի, Պորտուգալի և այլոց աշխարհաց, խօսեցաւ և եցոյց թէ ո՛րպէս ի սէր քրիստոնէութեան եկեալ էր ի Կիպրոսէ ի Հայս, առնուլ զթագաւորութիւն իւր հրամանաւ պապին Ուրբանոսի, որ խոստացեալն էր օգնել նմա, այլ ոչ էր կարացեալ հասանել ի թիկունս. և թէ ո՛րպէս կորոյս զթագաւորութիւնն մատնութեամբ և տարեալ ի Բաբելոն արկաւ ի բանտ սուլթանին և կրեաց անդ տառապանս վշտաց ազգի ազգիս ընդ ամս եօթն և զերծաւ ի ձեռն հօրեղբօրորդւոյ

իւրոյ սիրելւոյ, Թագաւորին Կաստիլիոյ՝ որ կայր յատենի անդ, ի ծունր իջեալ առաջի նորա, շնորհահատոյց եղեւ նմին. այլ Թագաւորն Կաստիլիոյ փութացաւ կանգնեաց զնա եւ յորժամ Թագաւորքն երկոքին բազմեցան ի գահոյս, ասէ արքայն Հայոց ցԹագաւորն Կաստիլիոյ. «Սիրեցեա՛լդ իմ տէր եւ հօրեղբօրորդի. որովհետեւ հաճեցաւ Աստուած զի ի ձեռն քո տացի ինձ շնորհ ելանելոյ ի բանտէ կապանաց, Թէպէտ եւ կապուտ կողոպուտ յամենայնէ, աղաչեմ զքեզ Թախանձանօք, որ զի եսդ համբաւեալ ընդ աշխարհ համօրէն ոչ միայն իշխանութեամբ աջոյդ հզօրի այլ եւ պարգեւացդ առատաբաշխութեամբ, հաճեսջի՛ր, աղէ, կարկառել առ իս ձեռն օգնականութեան ի պահպանութիւն արքայական շքոյն եւ ի վերականգնութիւն Թագաւորութեանս իմոյ. ես եւ իմքս, քեզ եւ քոյոցդ լիցուք պարտապան ցորչափ գուցէ ի մեզ շունչ կենդանի։

---

## ԳԼՈՒԽ ՃԽԲ.

**Թէ որպէս Թագաւորն Կաստիլիոյ ետ արքային Հայոց զհասս երից քաղաքաց Թագաւորութեան իւրոյ ցկեանս՝ ի պահպանութիւն արքայական շքոյն. և ետ նմա ֆլորէնս հնգետասան հազար՝ ի պէտս ծախուց նորա ի Պաղղիա։**

Եւ իբրեւ խօսեցաւ արքայն Հայոց զտուայտանաց իւրոց, ի գութ խանդաղատանաց շարժեցաւ Թագաւորն Կաստիլիոյ եւ ասաց Թէ ցաւ էր յոյժ նմա վասն աղետից նորա. եւ Թէ պարտ եւ արժան էր ամենայն Թագաւորաց եւ իշխանաց քրիստոնէից ձեռնտու լինել նմա. եւ Թէ ինքն իսկ իւրովի գնացեալ էր ժառանգեցուցանել նմա զԹագաւորութիւն իւր, եթէ չէր շուրջանակի պա-

տեալ պաշարեալ յանհաւատից և ի թշնամեաց հաւատոյ։ Նա զոյգ ընդ բանիցն շնորհեաց նմա քաղաքս երիս երևելիս, զՄադրիդ, զՎիլլարէալ և զԱնդիւեար, որոց են տարևոր հաւք հարիւր հազար դահեկանք մարաւեդիք Սպանիոյ. շնորհեաց նմա զայն ընդ ամենայն աւուրս կենաց իւրոց։ Նա յաւել ևս ասել ցնա թէ յորժամ հաճոյ թուիցի նմա գնալ յաշխարհ իւր, տացէ նմա ցռկանաւս վեց և նաւս վեց կազմեալս ամենայն հանդերձանօք և պիտոյիւք՝ յօգնականութիւն նմա, առ ի ստանալ զթագաւորութիւն իւր, յորմէ զրկեալն էր։ Նա հրամայեաց տալ նմա ֆլորէնս հնգետասան հազար ի պէտս ծախուց ճանապարհին գնալոյ ի Գաղղիա առ թագաւորն՝ եղբայր իւր և արեանառու. և ՚ասաց օժանդակել նմա առաւելապէս եթէ պէտք ինչ լինիցին։ Նա թագաւորն Հայոց շնորհակալ եղև նմա յոյժ վասն այնոցիկ ամենեցուն պարգևաց։

---

## ԳԼՈՒԽ ՃԼԳ.

Թէ որպէս արքայն Հայոց հրաժեշտ առեալ է Թագաւորէն Աստիլէոյ գնաց ողջանալ [illegible]. և ապա անց է ՚Նաւառրա և է Բէհէերնա (Բէառն) և անտի ընթացաւ առ Պապն։

Նա հրաժարեալ արքային Հայոց ի թագաւորէն Աստիլէոյ, չոգաւ ի ստացումն քաղաքացն երեցունց շնորհելոց. և ընկալաւ անդէն զմեծարանս հպատակութեան յասպետաց և ի բնակչաց քաղաքացն այնոցիկ, որք են ընդարձակք յոյժ և հոյակապք և մարդաշատք. և ամենքեան ընկալան զնա պատուով ի տէր իւրեանց՝ ա-

լարեալ թափօր մեծահանդէս. և բերին յոտս նորա նուէրս և ընծայս առատապարգևս։

Եւ ի վերջնում անդ աւուր ամսեանն Փետրուարի, յամի Տեառն հազար երեք հարիւր ութսուն և չորս եկ ի Կաստիլեայ արքայ Լևոն և եկն ի Նաւարրա։ Եւ արքայն Նաւարրայ իբրև գիտաց զգալուստ նորա, եկ ընդ առաջ ի Պերալդա և ընկալաւ զնա մեծաւ փառօք. և ընծայեաց նմա ականս պատուականս և պարգևս և ի պէտս ընդ բազում արկանելոյ վերստին զթագաւորութիւնն՝ շնորհեաց նմա զօրականս հարիւր և աղեղնաւորս հարիւր հանդերձ թոշակօք, զորոց գոհացեալ մեծապէս արքայի, ետ զողջոյնն հրաժեշտի։

Եւ եկն ի Բիհեռնա (Բէառն) առ կոմսն Փուա, որ եկ ընդ առաջ նորա և ընկալաւ զնա մեծաշուք հանդիսիւ, բերեալ ի նուէր ականս պատուականս և պատարագս. և զի կարող լիցի տիրել վերստին թագաւորութեան իւրում շնորհեաց նմա արս զօրականս հարիւր և աղեղնաւորս հարիւր հանդերձ թոշակօք։ Եւ արքայ Լևոն շնորհ կալեալ կոմսին, ետ զողջոյն հրաժեշտի և մեկնեցաւ անտի։

Եւ եկն յԱրագոն առ թագաւորն, որ խոստացեալ էր նմա զի ի գումարել խորհրդարանին իւրոյ՝ օգնեսցէ նմա նաւուք և զինուորօք առ ի զքռամբ ածել կրկին զթագաւորութիւնն իւր։ Եւ գնաց ընդ նմա մինչև ի Լէրիդա, այլ ոչ արար նմա օգնութիւն և ոչ մի. զի ոչ եթէ ինքն էր որ իշխէր, այլ թագուհին տիրէր ի վերայ նորա. և էր երկպառակութիւն մեծ ի մէջ նորա և ի մէջ ատենակալացն արքունի։ Բայց ազնուազուն դուքսն Ժիրոնի, անդրանիկ որդի թագաւորին Արագոնի, խոստացաւ նմա զի եթէ ունիցի ինչ պէտս՝ տացէ նմա ցուկանաւս հինգ զինեալս և հանդերձեալս մինչև ցամիսն

վեցերորդ. զորմէ գոհացաւ յոյժ Թագաւորն։ Եւ մեկնեալ անտի, եկն յԱվինիոն առ պապն, որ ընկալաւ զնա փառօք բազմօք. և կարդինալք ընդ առաջ եղեն նմա մինչև ի քաղաքն Ավինեոն։

---

## ԳԼՈՒԽ ՃԽԴ.

Թէ որպէս Թագաւորն Հայոց եկն ի Պարիս և արքայն Գաղղիոյ ել ընդ առաջ նորա ամբոխիւ մեծաւ բազմութեամբ։

Եւ ի վերջնում աւուր ամսեանն Յունիսի, յամի Տեառն հազար երեք հարիւր ութսուն և չորս, եհաս Թագաւորն Հայոց ի մայրաքաղաքն Պարիս. և Թագաւորն Գաղղիոյ Կարոլոս ել ընդ առաջ նորա մեծաւ բազմութեամբ դքսից, կոմսից, իշխանաց, պարոնայց և ասպետաց, կարդինալաց և եպիսկոպոսաց և այլոց բազմաց աւագաց, որ հեծեալ և որ հետևակ, և անթիւ բազմութեամբ ժողովրդեանն։ Եւ զարմացան առ հասարակ ամենեքին ընդ ելանել Թագաւորին ի մայրաքաղաքէ անտի իւրմէ ընդ առաջ արքային Հայոց. զի որպէս վկայեն ամենեքին, ոչ ոք ի Թագաւորաց անտի Գաղղիոյ ել երբէք ընդ առաջ Թագաւորի միոյ սոսկականի, այլ միայն ընդ առաջ կայսեր, հօրեղբօր իւրոյ։ Այլ Թագաւորն Գաղղիոյ զայս շուք մեծարանաց ետ արքային Հայոց, նախ՝ ի պատիւ և ի փառս Աստուծոյ և կաթողիկեայ սուրբ հաւատոյ. և երկրորդ՝ ի պատիւ երեսաց Թագաւորին Հայոց, որ առ սէր օգտի քրիստոնէութեան էր զրկեալ ի Թագաւորութենէ անտի և վարեալ ի գերութիւն և արկեալ ի դժնդակ բանտ կապանաց սուլթանին ընդ ամս եօթն և կէս։ Այլ եկեսցէ

ժամանակ, յորում, օգնականութեամբն Աստուծոյ, նպաստեսցէ արքային Հայոց Թագաւորին Գաղղիոյ, առ ի ժառանգել վերստին զաթոռն արքունի. որպէս հաստատեացն անդրէն յիշխանութեան անդ իւրեանց զբազումս ի պապից, որոց լեալ էր գահընկէց և տարագրեալ յանիրաւի. և իշխանս բազումս զրկեալս՝ դարձոյց ի բնիկն տէրութիւն։

Եւ Թագաւորն Գաղղիոյ ընկալաւ բազում պատուով և մեծապայծառ հանդիսիւ զարքայն Հայոց և արար նմա հացկերոյթ շքեղ։ Եւ յետ նորա՝ զնոյն արարին և դուքսն Բերրիի և դուքսն Բուրգոնեի։ Եւ յերեկոյն հացկերոյթսն յայնոսիկ՝ ամենայն խորտիկք, որ եդան առաջի իշխանացն, էին՝ ի սակս մեծի փառաւորութեան՝ ի սկուտեղս ոսկիս դրոշմեալս զինանշանօք իւրաքանչիւր իշխանի։ Յետ այնորիկ դարձեալ միւս անգամ արքայն Գաղղիոյ ի Լուվր, յապարանս իւր, արար խրախութիւն կոչնոց Թագաւորին Հայոց. և ի ճաշի անդ մատոյց ընծայ Թագաւորին Հայոց Լեւոնի և ամենեցուն, որոց ընդ նմայն էին, զարդս մեծագինս յոսկւոյ և արծաթոյ։

## ՎԵՐՋ

